ՈՒԱՇԻՆԳՏՕՆ ԻՐՎԻՆԳ

# ՄԱՀՄԵԴԻ ԿԵԱՆՔԸ

---

Անգլիերէնից Թարգմանեց

[illegible] ՎԱՐԴԱՆԵԱՆ

ԹԻՖԼԻՍ

Տպարան Յովհաննէս Մարտիրոսեանցի։

Тифлисъ. Тип. И. Мартиросіанца, Орб. ул., № 1—2.

1894

ՈՒԱՇԻՆԳՏՈՆ ԻՐՎԻՆԳ

# ՄԱՀՄԵԴԻ ԿԵԱՆՔԸ

*Անգլիերէնից Թարգմանեց*

ՓԻԼԻՊՊՈՍ ՎԱՐԴԱՆԵԱՆ




ԹԻՓԼԻԶ


Տպարան Յովհաննէս Մարտիրոսեանցի։


Тип. И. Мартиросіанца, Орб. ул., № 1—2.

1894

# ԹԱՐԳՄԱՆՉԻՑ

Գրքիս հեղինակը ծնուել է 1783 թ. Նիւ-Եօրկում։ Դեռ համալսարանում ուսանելիս լաւ գրագէտի անուն հանեց իւր քննադատական յօդուածներով։ 1804—1806 թուականներին մի պտոյտ արաւ Եւրոպայում։ Տուն վերադառնալուց յետոյ դատաւորի պաշտօն ստացաւ, բայց երկար չվարեց այդ պաշտօնը, եւ միջոց ունենալով իւր գլխաւոր հակման նուիրուելու՝ մատենագրութեան անձնատուր եղաւ։ 1815 թ. այցելեց Անգլիան, ուր իւր անունն արդէն քաջ յայտնի էր, եւ սերտ բարեկամութիւն հաստատեց անգլիացոց ականաւոր հեղինակների հետ, որոնց մէկն էր, օրինակի համար, եւ Վալտեր Սկօտը։ Երեսնական թուականներին երրորդ անգամ գնաց Եւրոպա, եւ յատկապէս Աւստրիա, Գերմանիա, հարաւային Ֆրանսիա եւ վերջապէս Սպանիա, ուր երկար ժամանակ նիւթեր էր հաւաքում իւր պատմական գրուածքների համար, որ եւ սկսաւ հրատարակել Ամերիկայում. 1842 թ. դարձեալ մի անգամ ոտք դրաւ Սպանիա, բայց ոչ միայն հարցասէր գիտնականի պաշտօնով, այլ դեսպանի։ Չորս տարի մնաց այնտեղ եւ ապա թէ վերջնական բնակութիւն հաստատեց հայրենի երկրում՝ Հիւսիսային Ամերիկա, ուր եւ վախճանուեցաւ 1859 թուին։

Ուաշինգտոն Իրվինգը նշանաւոր է ամերիկացոց գրականութեան մէջ իւր ճանապարհորդական, փիլիսոփայական, պատմական եւ կենսագրական երկերով։ Հեղինակի ազնիւ սիրտը, նուրբ միտքն ու քաղցր զուարթութիւնը, միանալով ոճի պարզութեան ու մաքրութեան հետ, հրապուրում են ընթերցողին, եւ նա վաղուց 'ի վեր դասական գրագէտների կարգն է անցել։ Նրա ոճն ու լեզուն այնքան յստակ եւ թեթեւ են, որ սովորաբար նրանով են սկսում՝ անգլիերէնի ուսումը։

Հեղինակիս գլխաւոր վաստակներն են. „Sketch Book“ կամ Ստուերագիրքը, «Ալհամբրան», «Գրէնադայի նուաճումը», «Կոլումբի կեանքը», «Մահմեդի կեանքը», «Խալիֆների պատմութիւնը» եւ հնգահատոր «Գէորգ Ուաշինգտոնը։»

Երկար բացատրութեան կարօտ չէ, թէ այդ երկերից ինչու յատկապէս «Մահմեդի կեանքն» ենք առաջարկում հասարակութեան։

Առաջարկում ենք, որովհետեւ դա ցոյց է տալիս, թէ ինչ է Իսլամը, ով է դրա հիմնադիրը, ինչ էին այդ նշանաւոր մարդու կեանքի հանգամանքները, ինչպէս յղացաւ եւ ինչ միջոցներով տարածեց իւր ուսմունքն այլ եւ այլ ազգերի մէջ, որոնց հետ հայերս էլ դարերէ 'ի վեր շաղկապուած ենք նիստ ու կացով, առեւտրով, բարք ու վարքով, խինդ ու վշտով, չար ու բարով։ Իսլամի ծագման եւ տարածման խնդիրն այն աստիճան հետաքրքրելի է, որ դրա պատմութեան նուիրուած մի լաւ գրքի հայերէն թարգմանութիւնը կարծեօք ինքն ըստ ինքեան անհրաժեշտ է։

«Մահմեդի կեանքի» հայերէն լոյս տեսնելը արդարացնելու փոխանակ՝ իրաւացի կլինէր թերեւս զարմանալ, թէ ինչու մեր նոր գրականութեան մէջ մինչեւ այժմ

չէ հրատարակուած մի այսպիսի գործ։ Միթէ մեզ հարկաւոր չէ՞ ստոյգ իմանալ, թէ ո՛վ էր Մահմեդը, որի զինակիր աշակերտներն արեան հեղեղներ են հոսեցրել Հայաստանում եւ տակաւին մեր երկրի տէրերն են հանդիսանում։

Մահմեդի անձնաւորութիւնը գիտութեան լուսով պարզելու համար Եւրոպայում հրատարակուած երկերից նախամեծար համարեցինք Ուաշինգտոն Իրվինգի „The Life of Mahomet“-ը, որ արժանացել է թարգմանուելու ամեն եւրոպական լեզուներով։

Գրքիս մեր առաջին թարգմանութիւնը հրատարակուած է 1885 Թ. «Նոր-Դարում»։ Այս անգամ հարկ համարեցինք նորից թարգմանել ամբողջ երկն անգլիերէն բնագրից *) եւ առանձին գրքով լոյս ընծայել։

*) „The Life of Mahomet by Washington Irving“, Leipzig. *(Collection of British Authors, Tauchnitz edition.)*

# Ա.

*Համառօտ գիտելիք Արաբիայի եւ արաբացոց մասին։*

Արաբիայի մեծ թերակղզին, որ շրջապատուած է Կարմիր ծովով, Եփրատ գետով, Պարսից ծոցով և Հնդկական ովկիանոսով, երկար ու ձիգ ժամանակ,—գրաւոր պատմութեան ամենահին շրջանից սկսած մինչև քրիստոնէութեան եօթներորդ դարը,—անփոփոխ և գրեթէ մեկուսի էր մնում Ասիայի միւս մասերը դղրդող և Եւրոպան ու Աֆրիկէն մինչև ներսերը ցնցող դէպքերից։ Ծագում էին պետութիւններ և տապալվում, անհետանում էին հին արքայական զարմերը, փոխվում էին աշխարհների անուններն ու սահմանները, բնաջինջ էին լինում նրանց բնակիչներն և կամ գերվում. սակայն այդ անցքերը շօշափում էին միայն Արաբիայի սահմանին մօտիկ գաւառները, իսկ անապատների խորքում նա շարունակ պահպանում էր իւր նախկին բնաւորութիւնն ու անկախութիւնը, և իւր թափառական ցեղերի հպարտ գլուխն ազատ էր մնում ստրկութեան լծից։

Արաբացիք շատ ալեւոր հնութեան են հասցնում իրենց աշխարհի աւանդութիւնները։ Նրանց

ասելով Արաբիան շէնցել է անմիջապէս ջրհեղեղից յետոյ Նոյեան որդու Սեմի սերունդներով. դրանք հետզհետէ բաժանուել են զանազան ցեղերի, որոնց մէջ նշանաւոր են հանդիսացել ադիացիք և Թամուդացիք։ Այդ բոլոր նախկին ազգերը կամ ջնջուել են երկրի երեսից 'ի պատիժ իրենց անօրէնութեան, և կամ խառնուել օտար ցեղերի հետ. այնպէս որ բացի նսեմ աւանդութիւններից և Կուրանի մի քանի էջերից՝ ուրիշ ոչ մի յիշատակ չէ մնացել նրանց մասին։ Արևելեան պատմութեան մէջ նրանք յիշվում են անցողաբար իբրև «նախկին արաբացիք»—«կորած ազգեր»։

Թերակղզու հաստատուն բնակիչները, միևնոյն աւանդութեան նայելով, ծագել են Կահտանից կամ Ջոկտանից, որ Սեմի չորրորդ սերունդն էր։ Դրա յաջորդները տարածուեցան Թերակղզու հարաւային մասում և Կարմիր ծովի եզերքի վրայ։ Եարաբը՝ Ջոկտանի որդիներից մէկը, հիմնեց Եմէնի Թագաւորութիւնը, ուստի և Արաբա նահանգն և արաբացիք այդ անունով սկսան կոչուիլ։ Ջուրհամը՝ միւս որդին, հիմնեց Հեջազի Թագաւորութիւնը, ուր իւր շառաւիղներն երկար ժամանակ իշխեցին։ Դրանք էին որ սիրով ընկալան Հագարին և Իսմայէլին, երբոր Աբրահամն արտաքսեց նրանց իւր տանից։ Մի քանի ժամանակ անցնելուց յետոյ Իսմայէլն ամուսնացաւ Ջուրհամեան տոհմի Մոդադ իշխանի դստեր հետ, և այսպէս արաբական բուն ծառին մի օտարական և եբրայեցի ճիւղ պատուաստեցաւ։ Այդ ճիւղը հզօր ոստեր արձակեց. Իսմայէլի կինը տասներկու որդի ծնաւ, որոնք տիրացան ամբողջ երկրին, և նրանց մարդա-

շատ սերունդը տասներկու տոհմի բաժանուելով՝ արտաքսեց և կամ իւր մէջ լուծեց ու ջնջեց Յոկտանի բուն յաջորդներին։

Այդպէս են պատմում իրենց ծագումը Թերակղզու արաբացիք*), և քրիստոնեայ մատենագիրները յառաջ են բերում դրան որպէս կատարումն Աստուծու ուխտին առ Աբրահամ, որ յիշուած է Սուրբ Գրքում. «Եւ ասէ Աբրահամ ցԱստուած. Իսմայէլս այս կեցցէ առաջի քո։ Եւ ասէ Աստուած ցԱբրահամ. Եւ վասն Իսմայէլի ահա լուայ քեզ և օրհնեցի զնա և աճեցուցի զնա և բազմացուցի զնա յոյժ. և երկոտասան ազգ ծնցի, և տաց զնա յազգ մեծ»։ (Ծնունդք, ԺԷ, 18, 20)։

Այս տասներկու ազգերի մասին Սուրբ Գրքում ասուած է, թէ նրանք բնակվում էին «յԵւիլայ մինչև ցՍուր, որ է յանդիման Եգիպտոսի, մինչև ի գալ յԱսորեստանեայս» (Ծնունդք, ԻԵ, 18.),—մի երկիր, որ բիբլէական աշխարհագիրներն Արաբիայի մէկ մասն են համարում։ Ցիշեալ ազգերի վարած կեանքի

---

*) Թերակղզու վրայ բնակուող սեմական ցեղի արաբներից զատ՝ կային և Քուշանք կոչուած արաբացիք, որոնք սերվում էին Քամի որդու Քուշից։ Դրանք բնակվում էին Եփրատ գետի և Պարսից ծոցի եզերքում։ Սուրբ Գրքի մէջ Քուշ անունը տրվում է թէ բոլոր արաբացոց և թէ նրանց երկրին ընդհանրապէս։ Երևի թէ այդ ցեղի արաբներն են, որ այժմ թափառում են նախկին Ասորեստանի անապատներում և նորերս գործ էին դրվում Նինուէի աւերակները փորելու համար։ Երբեմն դրանք կոչվում են Ասորի արաբացիք։ Ներկայ երկասիրութեան մէջ մենք խօսում ենք միայն Թերակղզու կամ բուն Արաբիայի արաբացոց մասին։

հին նկարագիրը նման է այժմեայ արաբացոց բարք ու վարքի նկարագրին։ Ոմանք ունեցել են քաղաքներ և ամրոցներ. միւսներն ապրել են վրաններում և կամ անապատի գիւղերում։ Իսմայէլի երկու անդրանիկ որդիքը՝ Նաբէովդ և Կեդար միւս իշխաններից աւելի են հռչակուած եղել իրենց խաշների բազմութեամբ և ոչխարների նուրբ բրդով։ Նաբէովթից սերուել են Նաբովթացիք, որոնք բնակուել են Քարուդ Արաբիայում. մինչդեռ Կեդարի անունը Սուրբ Գրքի մէջ երբեմն տրվում է ամբողջ արաբական ազգին։ «Վայ ինձ», ասում է Սաղմոսերգուն, «զի երկար եղև պանդխտութիւն իմ, զի բնակեցայ ՚ի վրանս Կեդարու»։ Երկու եղբայրն էլ, ինչպէս երևում է, թափառական կամ խաշնարած արաբների՝ անապատում ազատ շրջող հովիւների նահապետ են եղել։ «Ազգ դադարեալ», ասում է Երեմիա մարգարէն, «որ նստի ՚ի հանգստեան, որոց ոչ դրունք և ոչ նիգք, առանձինն բնակեալք»։

Արդէն հին ժամանակներից սկսած մի խիստ տարբերութիւն յառաջ եկաւ քաղաքաբնակ ու բերդաբնակ արաբների և վրանաբնակ արաբների միջև։ Առաջիններից ոմանք գրաւեցին լեռների ստորոտում ձգուած բարեբեր հովիտներն և քաղաքներ ու բերդեր շինեցին, որոնք շրջապատուած էին այգիներով, պարտէզներով, արմաւենեաց անտառներով, արգաւանդ արտերով և խաշնաւէտ արօտներով։ Նրանց բարքն ու վարքը հաստատուն էր, և զբաղմունքը՝ երկրագործութիւն և անասնաբուծութիւն։

Ոմանք էլ այդ կարգի արաբներից վաճառականութեան անձնատուր եղան. ունէին նաւահանգիստ-

ներ ու քաղաքներ Կարմիր Ծովի եզերքին, Թերաւ կղզու հարաւային մասերում և Պարսից Ծոցի վրայ, և նաւերի ու կարաւանների միջնորդութեամբ առ և տուր էին անում տարաշխարհի հետ։ Այս գործին հետամուտ էր մանաւանդ Եմէնի կամ Երջանիկ Արաբիայի ժողովուրդը, այն երկրի, որ համեմների, կնդրուկի և անուշահոտ խունկերի հայրենիքն էր, բանաստեղծների Սաբէան և սուրբ Գրքի Սաբան։ Նրանք արևելեան ծովերի ամենաժիր վաճառականներն էին. Բերբերիայի հանդիպակաց ափերից նաւերով բերում էին Եմէն զմուռս ու բալասան, իսկ Հնդկաստանից և արևադարձային Աֆրիկէից՝ ոսկի, համեմներ և ուրիշ Թանգագին ապրանքներ։ Այս բոլորն իրենց բուն երկրի բերքերի հետ միասին հասցնում էին կարաւաններով, անապատի միջից, մինչև Ամմոնի, Մօաբի և Եդոմի կէս արաբական պետութիւնները, մինչև Միջերկրական Ծովի փիւնիկեան նաւահանգիստները, և այն տեղից տարածում արևմտեան աշխարհի մէջ։

Ինչպէս որ ուղտն անապատի նաւ է կոչուած, այնպէս էլ կարելի է կարաւանը անապատի նաւատորմիղ անուանել։ Եմէնի կարաւաններն կազմող, պատրաստող, առաջնորդող և պաշտպանող անձինքն բստ մեծի մասին Թափառական, վրանաբնակ արաբներն են, որոնք և այս առմամբ կարող են անապատի նաւագնացներ անուանուիլ։ Նրանք հասցնում էին կարաւանին Թէ ուղտեր և Թէ ապրանք և յատկապէս բուրդ, որ ստանում էին իրենց անհամար հօտերից։ Մարգարէների գրքերից երևում է, Թէ որքան մեծ նշանակութիւն ունէր հին դարերում այդ վա-

ճառականութեան ներքին շղթան, որով Հարաւի Հարուստ երկիրները՝ Հնդկաստանը, Եթովպիան և Երջանիկ Արաբիան կապուած էին Ասորւոց աշխարհի հետ։

Եզեկիէլը Տիւրոսի վրայ ողբալով ասում է. «Արաբացիք և ամենայն իշխանք Կեդարու, և նոքա վաճառականք ընդ ձեռամբ քով՝ ուղտ և խոյս և որոջս վաճառէին քեզ։ Սաբա և Հռեգմա, և նոքա վաճառականք քո. իւղս անուշունս և ականս պատուականս և ոսկի ետուն 'ի վաճառս քո։ Հառան և Քանան և Դադան *), և նոքա վաճառական քո»։ (Եզեկիէլ, Իէ, 21, 22, 23։) Իսկ Եսային ասում է, Երուսաղէմին դառնալով. «Եւ եկեսցեն 'ի քեզ երամակք ուղտուց և ծածկեսցեն զքեզ ուղտերամակքն Մադիամու և Գեփայ. ամենեքեան 'ի Սաբայ եկեսցեն, բերել ոսկի և կնդրուկ և ականս պատուականս...։ Եւ ամենայն խաշինքն Կեդարու ժողովեսցին առ քեզ, և խոյքն Նաբէովթայ անցին և մատուցին ընդունելի պատարագ 'ի վերայ սեղանոյ իմոյ»։ (Եսայի, Կ. 6, 7։)

Սակայն երկրագործ ու վաճառական՝ քաղաքներում ու բերդերում բնակուող արաբացիք երբէք արաբական ցեղի բուն տիպարներ չէին համարվում. Նրանք փափկացել էին խաղաղ աշխատութեամբ և կորցրել իրենց սկզբնական նկարագիրը, այպազգիների հետ շփուելով։ Եւ Եմէնը, որ Արաբիայի միւս մասերից աւելի էր դիւրամատոյց և յափշտակասէր թշնամիներին մատչելի, շատ անգամ ասպատակուել էր և լուծի տակ ընկել։

---

*) Նաւահանգիստներ են Հնդկական ծովի վրայ։

Ազգային բնաւորութեան նախկին տիպն աւելի թարմ ու կենդանի պահպանուեցաւ անապատաշրջիկ կամ վրանաբնակ արաբների մէջ, որոնք առաջիններից շատ աւելի բազմաթիւ էին։ 'Ի բնէ թափառական և 'ի պաշտօնէ հովուական ազգ՝ նրանք փորձով և աւանդաբար ծանօթ էին անապատի հայթայթած բոլոր գաղտնի միջոցներին. վարում էին անկայուն կեանք և անցնում մի տեղից դէպի միւսը, միևնոյն աղբիւրներն ու հորերը որոնելով, որոնք դեռ նահապետական օրերում իրենց պապերի հանգստութեան վայրերն էին եղած. խփում էին վրաններն ուր որ միայն կարելի էր ստուեր գտնել արմաւենեաց ներքև և պարարտ արօտ խաշների, արջառների և ուղտերի համար, և ճարակը սպառուելուն պէս՝ իսկոյն քաշվում մի ուրիշ տեղ։

Այս թափառական արաբները բաժանուած էին անթիւ փոքրիկ տոհմերի կամ ընտանիքների, որոնցից իւրաքանչիւրն իւր շէյխը կամ էմիրը, այսինքն նախկին նահապետի ներկայացուցիչն ունէր, որի վրանի մօտ գետին վարսուած նիզակը նրա իշխանութեան նշանն էր։ Նրա պաշտօնը թէև սերնդէ սերունդ միևնոյն գերդաստանի մէջ էր մնում, բայց խստիւ ժառանգական չէր, այլ կախուած ազգատոհմի ազատ կամքից։ Նրան կարելի էր գահընկէց անել և փոխարէն ուրիշին ընտրել ազգատոհմի միւս ճիւղից։ Իշխանութիւնն էլ սահմանափակ էր և կախուած իւր անձնական արժանիքից և իրեն ընծայուած հաւատարմութիւնից։ Շէյխի արտօնութիւնն էր հաշտութեան և պատերազմի համար բանագնաց լինել, իւր ցեղը թշնամու դէմ վարել, բանակելու տեղ ընտրել, անուա-

նի հիւրերին ընդունել և մեծարել։ Մինչև անգամ այս և սրանց նման արտօնութիւնների մէջ նա լիազօր չէր, այլ տոհմի կարծիքներին ու հակումներին հպատակ *)։

---

*) Ամառային ժամանակ, ասում է Բուրկհարտը, սակաւ է պատահում որ թափառական արաբացիք մի և նոյն վայրում երեք կամ չորս օրից աւելի մնան. հենց որ անասուններն սպառում են ջրամերձ դաշտի դալարը, ցեղը հեռանում է մի նոր անդաստան որոնելու, իսկ առաջուայ դաշտի վրայ, արօտները վերստին կանաչելուն պէս, գալիս է նստելու մի ուրիշ բանակ։ Վրանների թիւն այդ բանակների մէջ հասնում է վեց հարիւրից մինչև ութ հարիւրի։ Քիչ լինելիս՝ նրանք շարվում են բոլորաձև շրջանով. իսկ երբ շատ են՝ նստում են, ըստ մեծի մասին ծոր և է վտակի երկարութեամբ, ուղիղ գծով, երբեմն մի կարգի, երբեմն երեք կամ չորս կարգի բաժանուած։ Ձմեռը, երբ ճարակի ու ջրի պակասութիւն էլ չկայ, բոլոր ցեղը ցրվում է տափարակի վրայ, երեք-երեք կամ թէ չորս-չորս վրանի բաժանուելով, և խմբերը նստում են մէկը միւսից կէս ժամ հեռաւորութեամբ։ Շէյխի վրանը հաստատվում է միշտ այն կողմում, որտեղից կարելի է թշնամիներ կամ թէ հիւրեր սպասել։ Դիմադրել թշնամուն և մեծարել հիւրին—այս է շէյխի առաջին պարտքը։ Իւրաքանչիւր ընտանեաց տէր գետին է վարսում վրանի մօտ իւր նիզակն և կապում է ձին վրանի առջև։ Նրա ուղտերն էլ այդ տեղ են հանգչում գիշերով։—*Burckhardt*, Notes on Bedouins, *vol. 1. p. 33.*

Ասորեստանցի արաբների հետևալ նկարագրութիւնը կարելի է ընծայել, ըստ մեծի մասին, և ամեն ցեղի արաբներին.

„Դժուար է նկարագրել դէպի մի նոր արօտավայր տեղափոխուող մարդաշատ ցեղի պատկերը։ Շուտով մենք ընկանք անհուն տարածութեան վրայ փռուած հօտերի և ուղտերամակների մէջ տեղը։ Աջ ու ձախ կողմից և առջե-

Ո՛րքան էլ սակայն բազմաթիւ լինէր ցեղի տըրոհմունքը, դարձեալ զանազան ճիւղերի արենակցական կապերը խիստ կերպով պահպանվում էին։ Մէկ ցեղի բոլոր շէյխերը հպատակվում էին շէյխերի շէյխ կոչուած ընդհանուր պետին, որ բոյն դնելով մի վիմափոր դղեակում և կամ բնակուելով իւր երամակների ու հօտերի հետ արձակ դաշտում, կարող էր ազգատոհմի բոլոր ցրուած անդամներին իւր դրօշակի տակ համախմբել, եթէ այդպէս պահանջէր հասարակաց օգուտը։

Այս թափառական ցեղերի բազմութիւնը, որոնցից իւրաքանչիւրն իւր փոքրիկ իշխանն ու երկիրն ունէր, սակայն զուրկ էր մի համալսարանային վեհապետից, անվերջ ընդհարումներ էր յառաջ բերում։ Վրէժխնդրութիւնը կրօնական սկզբունք էր նրանց մէջ։ Սպանուած մարդու վրէժն հանելը նրա գեր-

---

ւից, ինչքան որ զօրում էր տեսնել մեր աչքը, մի և նոյն շարժական տեսարանն էր երևում։ Սև սև վրաններով, ահագին կաթսաներով և գոյն զգոյն կարպետներով բեռնաւորուած եզներ ու էշեր. տնային կարասիքի դէզի վրայ կապուած մանգալու անզօր ծերուկներ ու պառաւներ. Թամբերի՛ մի կողմից խուրջիններում պպզած մանուկներ՝ դուրս ընկած թաթիկներով, և հակառակ կողմից, իբրև հաւասարակշիռ, ուլիկներ ու գառնուկներ կախուած. մարմնի սիրուն ձևերն աւելի երևցնող քան թէ ծածկող շապիկ հագած նորատի արաբ աղջիկներ. երեխաներին շալակած մայրեր. այծ ու ոչխար քշող տղայք. փնջազարդ տէգերով զինուած դէս ու դէն արշաւող ձիաւորներ. ուղտ հեծած և ազնիւ մատակների սանձից բռնած կտրիճներ. ամբոխի մէջ վազվզող քուռակներ,—ահա այդ էր այն խայտաբղէտ բազմութիւնը, որի միջով պէտք եղաւ մեզ անցկենալ։“—*Layard's Nineveh, I, 4.*։

դաստանի սուրբ պարտաւորութիւնն էր և երբեմն պատուի խնդիր նրա բոլոր ցեղի համար, և շատ անգամ այս արեան պարտքն անցնում էր սերնդէ սերունդ, մահառիթ կռիւներ պատճառելով։

Անապատի արաբացին ստիպուած լինելով միշտ պաշտպանել իւր երամակներն ու հօտերը, արդէն մանկութիւնից զէնք բանեցնելու հմուտ ու վարժ էր։ Ոչ ոք չէր կարող նրանից լաւ նետ արձակել, տէգ շարժել, սուր ճօճել, նրա նման քաջ ձի հեծնել։ Նա հուղկահար գինուոր էր, և թէպէտ երբեմն ծառայում էր վաճառականին՝ ուղտ և առաջնորդ հասցնելով նրան ապրանքների տեղափոխութեան համար, սակայն և՛ս աւելի սիրում էր բռնաբար հարկ պահանջել կարաւանից և կամ կողոպտել նրան անապատի տաժանելի ճանապարհին։ Այս բոլորը նա համարում էր զէնքի ազնիւ գործածութիւն և սովոր էր արհամարհանքով նայել առևտրի շահասէր որդոց վրայ, որոնք նրա աչքում ոչ այլ ինչ էին, բայց միայն գարշելի բարք ու վարքով ապականուած ստոր էակներ։

Այսպէս էր ահա անապատի վրանաբնակ արաբացին, որի վրայ ճշմարտուել էր իւր նախահօր Իսմայէլի վերաբերմամբ ասուած խօսքը, թէ «Նա եղիցի այր վայրագ. ձեռք նորա յամենեսին և ձեռք ամենեցուն 'ի նա»։ (Ծնունդք ԺԶ, 12։) Բնութիւնը յարմարցրել էր նրան իւր կոչման։ Նա մարմնով թեթև ու նիհար էր, բայց ջլապինդ, շարժուն և ամեն տեսակ յոգնութեան ու նեղութեան համբերող։ Չափաւոր և մինչև անգամ ժուժկալ էր. կերածն էր քիչ, այն էլ շատ հասարակ բան։ Նրա ոգին մարմնի պէս

թեթև ու ժիր էր։ Լիովին ամփոփելով իւր մէջ սեմական ցեղի հոգեկան յատկութիւնները, նա ունէր թափանցիկ միտք, նուրբ խելք, արագ ըմբռնողութիւն և պայծառ երևակայութիւն։ Զգայմունքները դիւրագրգիռ ու սաստիկ էին, թէև ոչ տևական։ Գունատ երեսը ցոյց էր տալիս մի անվեհեր ու խրոխտ ոգի, որ փայլատակում էր սև ու հրացայտ աչքերից։ Դիւրամէտ էր ոգևորուելու պերճ խօսքերով և յափշտակուելու բանաստեղծական հրապոյրներով։ Տէր լինելով մի վերին աստիճանի ճոխ լեզուի, որի բառերը ոմանց ասելով ակունքների ու ծաղիկների նըման են, նա 'ի բնէ ճարտասան էր, բայց աւելի հաճոյք էր զգում առածներից ու հանելուկներից, քան թէ ատենախօսութեան երկար ոճից, և սիրում էր արևելեան եղանակով՝ այլաբանօրէն և առակով արտայայտել իւր միտքը։

Չնայելով իւր անհանգիստ և ռազմասէր բնաւորութեան՝ արաբացին հիւրընկալ էր և վեհանձն։ Պարգև տալը նրա համար մեծ հաճոյք էր. նրա դուռը միշտ բաց էր ուղևորի առջև, որի համար պատրաստ էր իւր վերջին պատառից մաս հանել. և նրա մահացու թշնամին անգամ, հետը մի անգամ հաց ուտելուց յետոյ, կարող էր վստահ քնել նրա վրանի նուիրական յարկի տակ։

Տգիտութեան օրերում, ինչպէս որ ասում են արաբացիք, նրանք դաւանում էին երկու կրօն՝ սաբէականն և մոգականը, որոնք այն ժամանակ շատ էին տարածուած Արևելքում։ Սակայն արաբացոց մեծ մասը սաբէութեան հետևող էր։ Նրանց ասելով՝ այդ դենի հիմնադիրն էր Սեթի որդի Սաբին, որ ինչ-

պէս կարծում են՝ բուրգերի մէջ է թաղուած իւր Սեթ հօր և Ենոք եղբօր հետ։ Ոմանք ածանցում են այդ անունն եբրայական սաբա՝ աստղեր բառից, և վերագրում են կրօնի սկզբնաւորութիւնը Ասորեստանի հովիւներին, որոնք լայնատարած դաշտերի վրայ, անամպ երկնքի տակ իրենց հօտերը գիշերով պահպանելիս՝ դիտում էին երկնային լուսատուների տեսքն ու ընթացքը և զանազան տեսութիւններ յօրինում նրանց՝ մարդկային ազգի վրայ ունեցած չար ու բարի ազդեցութեան մասին։ Յետոյ քաղդէական փիլիսոփաների ու քուրմերի այդ անորոշ գաղափարներից մի տեսակ դրութիւն կազմեցին, որ իբր թէ աւելի հին է, քան թէ նոյն իսկ եգիպտականը։

Ոմանք էլ այդ կրօնն աւելի բարձր հեղինակութեան են վերածում, ասելով թէ դա այն հաւատն է, որ դաւանում էին ջրհեղեղից առաջ։ Նա մնացել է, ասում են, ջրհեղեղից յետոյ և պահպանուել նահապետների օրով։ Այդ այն կրօնն է, որ քարոզել է Աբրահամը, որ ընդունել են նրա յաջորդները՝ Իսրայէլի որդիքը, և սրբագործուել ու հաստատուել է օրինաց տախտակների վրայ, որոնք որոտմամբ ու փայլակով տրուած էին Մովսէսին Սինայ լերան գագաթին։

Սաբէական հաւատն իւր նախկին վիճակի մէջ մաքուր և ոգեկան էր. քարոզածն էր Աստուծու միութիւն, հանդերձեալ աշխարհի դատաստան և երջանիկ անմահութիւն, որին հասնելու համար անհրաժեշտ էր առաքինի ու սուրբ կեանք։ Այնքան խորն էր սաբէականների երկիւղածութիւնը Գերագոյն Էից, որ երբէք չէին արտասանում նրա անունն և միայն հրեշտակների միջնորդութեամբ էին համարձակվում

մերձենալ նրան։ Նրանք կարծում էին թէ այդ հրեշ-
տակները լուսատուների մէջ են բնակվում, կենդա-
նութիւն շնորհելով դրանց, ինչպէս որ հոգին բնակ-
վում է մեր մէջ, կեանք տալով մեր մարմնին։ Ամեն
մի հրեշտակ իւր որոշ շրջանակն ունէր՝ Ամենաբարձ-
րելոյ իշխանութեան ներքոյ աշխարհի վրայ հսկելու
և կառավարելու համար։ Ուստի սաբէականք աստ-
ղերին և միւս երկնային մարմիններին դիմելիս՝ աս-
տուածների տեղ չէին պաշտում նրանց, այլ միայն
խնդրում նրանց հրեշտակային բնակիչներին՝ բարե-
խօս լինել Գերագոյն Էի առջև, և այդ ստեղծուած
իրերի միջով վերառաքում իրենց հայեացքը դէպի Աս-
տուած՝ ստեղծիչն ամենայնի։

Յետզհետէ այս կրօնն իւր սկզբնական պարզու-
թիւնն ու մաքրութիւնը կորցրեց, խորհուրդներով
նսեմացաւ և կռապաշտութեամբ ապականուեցաւ։
Սաբէականք՝ փոխանակ միջնորդող հրեշտակների
բնակարան համարելու երկնային մարմինները, սկսան
աստուածների տեղ պաշտել նրանց և արձաններ
կանգնել նրանց պատուին սրբազան քարայրներում
և մութ մութ անտառներում. իսկ յետոյ մեհեան-
ների մէջ դրին այդ արձաններն և արդէն իբրև
աստուածների երկրպագութիւն մատուցին։ Սաբէա-
կան կրօնն էլ շատ փոփոխութիւններ կրեց զանա-
զան երկիրներում։ Եգիպտոսի վրայ վաղուց ի վեր մի
մեղադրանք էր ծանրանում, թէ նա այդ կրօնն ա-
մենաստոր անարգութեան էր հասցրել. որովհետև
կարծիք կար, թէ այդ խորհրդաւոր աշխարհի անգ-
րիները, նուիրական քանդակներն ու շիրիմները ոչ
միայն երկնային ոգիների երկրպագութեան նշան-

ներ են, այլ և ամենայետին արարածների, նոյն իսկ անշունչ իրերի պաշտաման ապացոյցներ։ Սակայն նորագոյն ժամանակի հետազօտութիւններն ու խուզարկութիւնները հետզհետէ ազատեցին հնութեան ամենաուշիմ ազգը վերոյիշեալ մեղադրանքից և Եգիպտոսի գերեզմանների վրայ փռուած խորհրդաւոր վարագոյրը փոքր առ փոքր վերցնելով ցոյց տուին, որ այն բոլոր պաշտելի համարուած առարկաները ոչ այլ ինչ էին, բայց միայն մէկ Գերագոյն Էի ստորոգելեաց նշանակներ, Էի, որի սուրբ անունը ներելի չէր արտասանել մահկանացու շրթունքով։

Արաբացոց մէջ սաբէական կրօնը վայրենի սնապաշտութեան հետ խառնուեցաւ և կոպիտ կռապաշտութեամբ պղծուեցաւ։ Իւրաքանչիւր ցեղ իւր առանձին աստղն էր պաշտում և կամ իւր սեփական կուռքը կանգնում։ Մանկասպանութեան ոճիրն անգամ սովորական էր նրանց կրօնական ծէսերի մէջ։ Թափառական ցեղերի համար աղջկայ ծնունդը դժբախտութիւն էր համարվում, որովհետև նա չէր կարող մի առանձին օգուտ բերել շրջմոլիկ և աւազակաբարոյ ժողովրդին, մինչդեռ իւր վատ ընթացքով և կամ թէ ուրիշի ձեռքը գերի ընկնելով՝ կարող էր ամօթ պատճառել իւր տոհմին։ Հետևաբար կարելի է կարծել, թէ արաբացոց կրօնական զգացմունքներն ազատ չէին անբնական շահասիրութեան դիտումներից, երբոր նրանք զոհում էին կուռքերին իրենց էգ մանկանց և կամ թէ ողջ ողջ թաղում գետնի մէջ։

Սաբէականին ժամանակակից մոգերի կամ հրապաշտների դենը, որ ինչպէս արդէն ասացինք, նրա

հետ միասին էր տիրապետում արևելեան աշխարհում, սկիզբն առաւ Պարսկաստանի մէջ, ուր փոքր ինչ յետոյ այդ կրօնի բերանացի աւանդութիւնները Զենդաւեստա կոչուած գրքում ամփոփուեցան Զրադաշտի ձեռքով, որ նրանց մեծ մարգարէն էր և վարժապետը։ Այդ կրօնն էլ, սաբէականի պէս, նախ պարզ ու ոգեկան էր, ճանաչելով մի յաւիտենական Աստուած, որի մէջ է և որով կայ տիեզերքը։ Դա իւր արարչական բանիւ երկու ներգործական սկըզբունք ստեղծեց՝ Որմզդին, որ լուսոյ և բարւոյ սկզբունքն է կամ հրեշտակը, և Ահրիմանին, որ է խաւարի և չարի սկզբունքը կամ հրեշտակը։ Որմիզդն և Ահրիմանը իրենց հակադիր տարրերի խառնուրդից աշխարհս կազմեցին և միշտ պատերազմում են իրար դէմ դրա գործերը կարգադրելիս։ Այս տեղից է յառաջ գալիս բարւոյ և չարի փոփոխական յաջորդութիւնը, նայելով թէ ով է յաղթում՝ լուսոյ հրեշտակը թէ խաւարի։ Նրանց պատերազմը տևելու է մինչև 'ի կատարած աշխարհի. այն ժամանակ ընդհանուր յարութեան և դատաստանի օր կըգայ. չարի հրեշտակն և իւր արբանեակները յաւիտենական խաւարի մռայլ անդունդը կ'աքսորուին, իսկ նրանց հակառակորդները՝ անվերջ լուսոյ երանելի աշխարհը կըմտնեն։

Այդ կրօնի սկզբնական ծէսերը վերին աստիճանի պարզ էին։ Մոգերը չունէին ոչ տաճար, ոչ սեղան, ոչ էլ որ և է կրօնական նշանակ, այլ վերառաքում էին իրենց աղօթքն ու երգերն անմիջապէս Աստուծուն, դառնալով դէպի արեգակը, որ իրենց կարծիքով Աստուածութեան բնակարանն էր։ Նրանք

յարգում էին այդ լուսատուն, իբրև Աստուծու օթե-
վան, իբրև լուսոյ և ջերմութեան աղբիւր, որից գոյա-
ցած են միւս ամեն երկնային մարմինները, և կրակ
էին վառում լեռների գլխին, որպէսզի լոյսը բոլորո-
վին մնայ արեգակի բացակայութեան միջոցին։
Զրադաշտն եղաւ տաճարների հիմնարկութեան ա-
ռաջին հեղինակը, ուր իբրև թէ երկնքից իջած սրբ-
բազան հուրը շարունակ անշէջ էր պահվում քուր-
մերի ձեռքով, որոնք գիշեր ցերեկ հսկում էին նրա
վրայ։

Ժամանակի ընթացքում այդ դենն էր, սաբէ-
ականի նման, նշանակների կամ սիմբոլների մէջ ար-
տայայտուած աստուածային սկզբունքը մոռանալով,
սկսաւ պաշտել լոյսն կամ հուրը, որպէս բուն Աս-
տուածութիւն, և գարշիլ խաւարից, իբրև սատա-
նայից կամ դևից։ Մոգերի մոլեռանդութիւնն այն
տեղ հասաւ, որ նրանք բռնում էին անհաւատներին
և կրակը նետում, կարծելով հաշտ անել իրենց հրա-
նիւթ աստուծուն։

Այս երկու դենի նկատմամբ են ասուած Սողո-
մոնի իմաստութեան հետևեալ գեղեցիկ տուները.
«Զի ընդունայն էին ամենայն մարդիկ բնութեամբ՝
յորս էր աստուածանգիտութիւն, և յերևելի բա-
րութեանցն ոչ կարացին գիտել զայն որ Էրն, և ոչ
'ի գործս հայեցեալ ճանեան զճարտարապետն։ Այլ
կամ զհուր, կամ զհողմ, կամ զօդ երագ, կամ զաստե-
ղաց շրջանս, կամ զջրոց բռնութիւնս, կամ զլուսա-
ւորս երկնաւորս՝ զարբանեակս աշխարհի՝ աստուածս
համարեցան»։ (Սողոմ. իմաստ. ԺԳ. 1, 2. 3։)

Այս երկու կրօնից, ինչպէս որ վերն ասացինք,

սաբէականն աւելի էր տարածուած արաբների մէջ, միայն թէ սաստիկ աղաւաղուած ձեւերով. Նա ապականուել էր ամեն տեսակ զեղծումներով և տարբեր էր այլ և այլ ցեղերի մօտ։ Մոգերի կրօնն ընդունուած էր Պարսկաստանի հետ յարաբերութիւն ունեցող սահմանաբնակ ցեղերի մէջ. մինչդեռ միւս ցեղերը հետևում էին այն ազգերի սնապաշտութեան ու կռապաշտութեան, որոնց հետ որ շփվում էին։

Հրէութիւնը վաղուց արդէ՛ն մուտք էր գործել Արաբիա, բայց միայն անկատար և թոյլ կերպով. այսու ամենայնիւ հրէական ծէսերից ու կարգերից և մտացածին աւանդութիւններից շատերն արմատ արձակեցին այդ երկրում։ Յետոյ, երբոր հռոմայեցիք ասպատակեցին Պալէստինն և կողոպտեցին Երուսաղէմը, բազմաթիւ փախստական հրէաներ ապաստան գտնելով արաբների մօտ, բնիկների հետ միացան, համայնքներ կազմեցին, բարեբեր հողեր գրաւեցին, դղեակներ ու բերդեր շինեցին և մեծ ազդեցութեան ու զօրութեան տէր դարձան։

Քրիստոնէական հաւատն էլ հետևողներ ունէր արաբների մէջ. Պօղոս առաքեալն անձամբ ասում է իւր թղթում առ Գալաթացիս, թէ հեթանոսներին քրիստոնէութիւն քարոզելու համար կոչուելուց յետոյ՝ իսկոյն գնացել էր Արաբիա։ Իսկ երրորդ դարու սկզբին, երբ շատ կրօնական վէճեր ծագեցան Արևելեան եկեղեցում, ուր իւրաքանչիւր նոր աղանդ զօրութիւն ստանալուն պէս հալածում էր միւսին, աքսորուածներից շատերն Արևելքի հեռաւոր աշխարհները ցրուեցան, Արաբիայի անապատները ճրգ-

նաւորներով լեցրին և մի քանի ցեղերի մէջ քրիստոնէութիւն տարածեցին։

Վերոյիշեալ Փիզիքական և բարոյական հանգամանքները բաւական պարզում են, թէ որոնք էին արաբացոց կեանքի դարևոր միակերպութեան պատճառները։ Մինչդեռ երկրի կզզիացած դիրքն ու լայնածաւալ անապատները պաշտպանում էին նրանց օտարների լծից,—ներքին կռիւներն և մի ընդհանուր կրօնական կամ քաղաքական շաղկապի պակասութիւնը արգելում էին նրանց վտանգաւոր աշխարհակալներ դառնալու։ Նրանք կազմում էին զանազան ու տարբեր մասերից բաղկացած մի մեծ խառնուրդ. իւրաքանչիւր մաս անհատօրէն ուժեղ էր, սակայն միաւորիչ զօրութիւն չկար։ Թէև նրանք թափառական կեանք վարելով համարձակ ու ժիր մարդիկ էին և 'ի բնէ զինուորներ, բայց միայն իրար դէմ էին զէնք վերցնում, բացի մի քանի սահմանամերձ բնակիչներից, որոնք մերթ ընդ մերթ մասնակցում էին տարաշխարհի պատերազմներին, որպէս վարձկան զօրականներ։

Ուստի մինչդեռ Միջին Ասիայի միւս շրջմոլիկ ազգերը, որոնք նրանցից աւելի յաջողակ չէին պատերազմական գործերում, դարերի ընթացքում մի քանի անգամ հեղեղեցին ու նուաճեցին քաղաքակրթուած աշխարհը,—իրենց զօրութեան անգիտակ, ռազմասէր ու կորովի արաբացիք բաժանուած և անվնաս էին մնում հայրենի անապատների խորքերում։

Հասաւ վերջապէս այն ժամանակը, երբ Արաբիայի անմիաբան ցեղերը մէկ հաւատով պիտի կապուէին, մէկ ընդհանուր նպատակով ոգևորուէին.

երբ յառնելու էր մի հզօր հանճար, որ այդ ցրուած անդամներն իրար հետ պիտի յօդէր, խիզախ ու բորբոքուն ոգով վառէր և որպէս մի անապատի հսկայ յառաջ մղէր աշխարհիս պետութիւնները ցնցելու և տապալելու համար։

## Բ.

### Մահմեդի ծնունդն եւ ազգականները։—Նրա մանկութիւնը։

Մահմեդը՝ Իսլամի մեծ հիմնադիրը ծնուել է Մէկկայում ապրիլ ամսին 569 Թ. Քրիստոսի։ Նա պատկանում էր Կորէյշների հռչակաւոր ու քաջ տոհմին, որ երկու ճիւղ էր բաժանվում, սերուելով Հաշէմ և Աբդ Շէմս կոչուած երկու հարազատ եղբայրներից։ Հաշէմը, որ Մահմեդի նախահայրն էր, մեծ բարերար էր հանդիսացած Մէկկայի համար։ Այս քաղաքը կենում է ամուլ ու քարուտ գաւառի մէջ, և առաջ ստէպ նեղութիւն էր կրում դառն սովից։ Վեցերորդ դարու. սկզբին Հաշէմն երկու կարաւան կարգեց—մէկը ձմեռուան, որ գնում էր հարաւային Արաբիա կամ Եմէն, միւսն ամառուան, որ գնում էր Ասորիք։ Դրանց միջնորդութեամբ Մէկկան սկսաւ առատ պաշար և բազմատեսակ ապրանք ստանալ։ Քաղաքն առևտրի միջավայր դարձաւ, և կարաւանների հետ ընդարձակ գործեր ունեցող Կորէյշեան տոհմը հարստացաւ ու զօրացաւ։ Այդ միջոցին Հաշէմը Քեաբէի տեսուչ էր, տեսուչ Արաբիայի այն նշանաւոր տաճարի և սրբազան ուխտատեղու, որի պահպանութիւնը յանձնվում էր միայն ամենարգոյ

տոհմերին, ինչպէս որ երբեմն Երուսաղէմի տաճարը յանձնվում էր ղևտական ցեղին։ Եւ Քեաբէի տեսչութեան պաշտօնը կապուած էր քաղաքային պատիւների և առաւելութիւնների հետ. Նա Մէկկայի վրայ իշխանութիւն բանեցնելու իրաւունք էր տալիս այդ պաշտօնը վարողին։

Հաշէմի մահուանից յետոյ Նրա վայելած պատիւներն և հայրենասիրութեան եռանդը Աբդ ալ Մօթալէբ որդին ժառանգեց։ Սա փրկեց սուրբ քաղաքն այն ժամանակ Եմէնի վրայ բռնացող աշխարհաւեր զօրքերից ու փղերից, որ ուղարկել էին Հաբեշստանի քրիստոնեայ իշխանները։ Հօր և որդու մատուցած այս էական ծառայութիւնների շնորհիւ Քեաբէի տեսչութեան պաշտօնը Հաշէմեան տոհմի մէջ հաստատուեցաւ, մեծ դժգոհութիւն ու նախանձ պատճառելով Աբդ Շէմսի շառաւիղին։

Աբդ ալ Մօթալէբը բազմաթիւ զաւակներ ունէր։ Դրանցից պատմութեան մէջ դեր խաղացին Աբու Թալէբը, Աբու Լահաբը, Աբբասը, Համզան և Աբդալլահը։ Վերջինս ամենափոքրն էր և ամենից սիրելին։ Դա ամուսնացաւ Ամինայի հետ, որ միևնոյն հռչակաւոր Կորէյշեան զարմի մի ուրիշ ճիւղից սերուած աղջիկ էր։ Աբդալլահն այն աստիճան գեղեցիկ էր և այնքան օժտուած աղջիկների սիրտը դիւթող հրապոյրներով, որ եթէ իսյամական աւանդութեան հաւատալու լինինք, Նրա հարսանիքի գիշերն երկու հարիւր Կորէյշեան ազգատոհմի կոյսեր մեռան յուսակտուր լինելուց։

Այսպիսի աղէտալից պատահարով տօնուած պըսակի առաջին և միակ պտուղը Մահմեդն եղաւ։ Նոյն

արեւելեան վէպն ասում է, թէ Նրա ծննդեան ժամանակ շատ հրաշքներ ու նշաններ կատարուեցան, գերբնական երեխայի աշխարհ գալն աւետելով։ Նրա մայրը ծննդեան երկունք չկրեց։ Նրա ծնունելու րոպէին բոլոր շրջակայքն երկնային լուսով լուսաւորուեցաւ, և նորածին մանուկը, աչքերն երկինք ամբառնալով, աղաղակեց. «Մեծ է Աստուած։ Չկայ Աստուած, բացի Աստուծուց, և ես Նրա մարգարէն եմ»։

Երկինք և երկիր սասանուեցան, ասում են, Նրա գալստեան միջոցին։ Սեւա լիճը դէպի իւր ծածուկ աղբերակունքը քաշուեցաւ, չոր չոր ափեր թողնելով, մինչդեռ Տիգրիսը դուրս յորդեց և շրջակայ երկիրները հեղեղեց։ Պարսից Խոսրով թագաւորի ապարանքը մինչև հիմքը դղրդուեցաւ և աշտարակները կործանուեցան։ Այդ աղմկալից գիշերը Կադին կամ պարսից մեծ դատաւորը մի ամեհի ուղտ տեսաւ երազում, որ յաղթուել էր արաբական երիվարից։ Առաւօտեան նա պատմեց երազը թագաւորին և մեկնեց, թէ մի ահագին վտանգ է գալու Արաբիայից։

Միևնոյն արկածալից գիշերը Զրադաշտի սուրբ կրակը, որ ամբողջ հազար տարի անշէջ էր պահուած մոգերի խնամքով, յանկարծ հանգաւ, և աշխարհի բոլոր կուռքերը տապալուեցան։ Նենգաւոր ազդեցութեամբ մարդկանց սիրտը մոլորեցնող դեւերն էլ, որոնք թաքչում էին աստղերի մէջ և կենդանական բոլորակներում, սուրբ հրեշտակների ձեռքով աքսորուեցան և գահավէժ ընկան ծովի անդունդը իրենց Էբլիս կամ Արուսեակ իշխանի հետ։

Նորածին երեխայի ազգականները, միևնոյն վկաների ասելով, երկիւղածութեամբ ու հիացմամբ

ցուեցան։ Նրա աստղագէտ մօրեղբայրը, մոլորակների գիրքը դիտելով, գուշակութիւն արաւ, թէ նա մի օր անչափ զօրութիւն կըստանայ, մի պետութիւն կըհիմնէ և նոր հաւատ կըպարգևէ մարդկային ազգին։ Իսկ Արդ ալ Մօթալլէբը թոռի ծննդեան եօթներորդ օրը խնջոյք տուաւ Կորէյշեան ցեղի մեծերին և մասնացոյց լինելով երեխայի վրայ, որ իրենց ազգի նորածագ փառքն էր, Մահմեդ դրաւ նրա անունը՝ ի նշան նրա ապագայ հռչակի *)։

Այս են իսլամական պատմիչների վկայութիւնները Մահմեդի մանկութեան մասին, և բացի այդ տեսակ հրաշազարդ սռակներից՝ ուրիշ ոչ մի տեղեկութիւն չէ մնացել նրա առաջին տարիների նկատմամբ։

Մահմեդը դեռ երկու ամսական էր, որ նրա հայրը մեռաւ, հինգ ուղտ, մի քանի ոչխար և Բարաքատ կոչուած մի եթովպացի գերուհի թողնելով ժառանգին։ Էմինա մայրը մինչև այժմ ինքն էր սնուցել իր մանկան. սակայն հոգսերից ու վշտերից նրա ստինքը ցամաքել էր, և որովհետև Մէկկայի օդն էլ երեխային վնասակար էր, այս պատճառով նա ուզեց հարևան բէդուինների կանանց մէջ դայեակ գտնել։

Այդ կանայք սովորաբար տարին երկու անգամ՝ գարնան և աշնան, Մէկկա էին գալիս՝ քաղաքի մանկանց սնուցելու համար. բայց աշխատում էին հարուստ մարդկանց զաւակներ գտնել, որոնցից

*) Մահմեդ կամ Մուհամէդ արաբերէն նշանակում է արժանագով։ Ծան. Թարգ.

յոյս ունէին առատ վարձատրութիւն ստանալու, և քամահանքով հրաժարվում էին այս չքաւոր ժառանգից։ Վերջապէս Հալէմա անունով մի սաադեան խաշնարածի կին գթաց անոք երեխային և իւր տունը տարաւ։ Նրա տունը գտնվում էր մի լեռնային հովտում *)։

Հալէման շատ սքանչելի բաներ էր պատմում իւր սանիկի մասին։ Մէկկայից հեռանալիս երեխայի նստած ջորին հրաշապէս խօսելու շնորհք է ստացել և յայտնել, թէ տանում է իւր մէջքի վրայ մարգարէներից ամենամեծին, առաքեալների գլխաւորին, Ամենակալի սիրելւոյն։ Ճանապարհին ոչխարները մանկան առջև չոքել են, և երբ նա պառկած է եղել որորանում, լուսնի փայլին նայելով, լուսինն էլ մեծարանօք խոնարհուել է դէպի նա։

Հալէմայի մարդասիրութեան փոխարէն, ասում են արաբական պատմիչները, Աստուած առատօրէն օրհնեց նրան։ Քանի որ մանուկը նրա յարկի տակ էր, ամեն բան բարգաւաճում էր նրա շուրջը։ Աղբիւրներն ու ջրհորները ոչ մի անգամ չցամքեցան, արօտները միշտ կանաչ մնացին, խաշները տասնապատիկ աւելացան, դաշտերում զարմանալի լիութիւն տիրեց և տանը՝ խաղաղութիւն։

Արաբացոց աւանդութիւններն անչափ գովում

---

*) Բէնի Սաադեան ցեղը մի շատ հին անցեալ ունի և Կատանեան արաբների հետ միասին Նախկին արաբների միակ մնացորդն է։ Նրանց հովիտն ընկած է Տաէֆից դէպի հարաւ ձգուող լեռների միջև։—*Burckhardt*, *on the Bedouins*, *vol. II. p. 47.*

են երեխայի մարմնի ույժն և մտքի գերբնական կորովը, որոնք երևցել են նոյն իսկ անտիական հասակից։ Դեռ երեք ամսուայ հասակում նա մենակ կանգնել է. եօթն ամսուայ հասակում վազել է. տասն ամսական դառնալուն պէս նետ է արձակել միւս տղաների հետ։ Ութ ամսից յետոյ կարողացել է հասկանալի կերպով խօսել, և դարձեալ մէկ ամիս անցնելուց յետոյ՝ ազատ ազատ խօսակցել, ա՛յնպիսի իմաստութիւն ցոյց տալով, որ ապշեցրել է ամենքին։

Երեքամեայ լինելիս՝ մինչդեռ խաղում էր դաշտում իւր կաթնեղբօր Մասրուդի հետ, նրան երևցան երկու լուսազգեստ հրեշտակներ։ Հրեշտակները զգուշութեամբ գետնի վրայ պառկեցրին նրան, և մէկը, և յատկապէս Գաբրիէլը, նրա կուրծքը բաց արաւ, սակայն առանց ո՛ր և է ցաւ պատճառելու։ Յետոյ դուրս հանեց սիրտն և քամեց միջից սկզբնական մեղքի այն սև ու պառն կաթիլները, որոնք ժառանգուած են մեր Ադամ նախահօրից և ծածկուած լինելով մինչև անգամ նրա լաւագոյն յաջորդների սրտի մէջ, դէպի չարութիւն են դրդում նրանց։ Մանկան սիրտը բոլորովին մաքրելուց յետոյ՝ Գաբրիէլը լցրեց նրան հաւատով, գիտութեամբ, մարգարէութեան շնորհով և նորից դրաւ կուրծքի մէջ։ Ապա թէ, ասում են միևնոյն վկաները, սկսաւ շողալ Մահմեդի երեսին այն խորհրդաւոր լոյսը, որ Ադամից մինչև Իսահակի և Իսմայէլի օրերն անցել է մարգարէների սրբազան շարքի միջով, որ սակայն մարած է եղել Իսմայէլեան սերնդի մէջ, մինչև որ վերստին փայլել է Մահմեդի երեսից նորանշոյլ պայծառութեամբ։

Այդ հրաշալի այցելութեան ժամանակ էր, շարունակում է աւանդութիւնը, որ դրուեցաւ երեխայի ուսերի միջև մարգարէութեան կնիքը՝ Նրա աստուածային առաքելութեան ակներև նշանը, թէ և անհաւատ մարդկանց աչքում դա մի հասարակ բիծ էր՝ աղաւնու ձուի մեծութեամբ,—ուրիշ ոչինչ։

Հալէման և իւր ամուսինը հրեշտակների սքանչելի այցելութեան լուրն որ առին, մեծ տագնապի մէջ ընկան, կարծելով թէ վտանգ է սպառնում երեխային, և կամ թէ գերբնական այցելուներն այն չար դևերից կլինին, որոնք ամայի անապատում շրջելով վնաս են տալիս մարդկային ազգի զաւակներին։ Ուստի սաադեան դայեակը յետ տարաւ Նըրան Մէկկա և յանձնեց Էմինա մօրը։

Մինչև վեցամեայ հասակը մանուկը մնաց իւր մօր մօտ։ Այդ միջոցին Էմինան, երեխային հետն առնելով Մէդինա գնաց իւր ազգականներին տեսնելու համար, որոնք Էդիջի տոհմից էին, բայց մեռաւ վերադարձին և թաղուեցաւ Աբուա գիւղում՝ Մէկկայի ու Մէդինայի մէջ տեղը։ Յետոյ կըտեսնենք, որ Նրա գերեզմանը բարեպաշտ ուխտագնացութեան և սիրալիր յիշատակների տեղ դարձաւ որդու համար, այդպէս էլ մնաց մինչև Նրա կեանքի վերջը։

Բարաքաթը՝ հաւատարիմ հաբեշստանցի աղախինը որբացած երեխայի մօր տեղն անցաւ և տարաւ Նրան Աբդ ալ Մօթալլէբ պապի մօտ, որի տանն էլ երկու տարի պահեց մանուկը, խնամք ու սէր վայելելով։

Աբդ ալ Մօթալլէբն այժմ մարդկային կեան-

քի սովորական սահմանն անցած մի բազմամեայ ծերունի էր։ Մահուան մօտենալն զգալով, նա կանչեց իւր աւագ որդուն՝ Աբու Թալէբին, և նրա առանձին հովանաւորութեան յանձնեց Մահմեդին։ Բարեսիրտ Աբու Թալէբը սիրով գրկեց եղբօրորդուն և մինչև իւր վերջին շունչը հայրական գութ ընծայեց նրան։ Եւ որովհետև նա հօր մեռնելուց յետոյ ժառանգել էր Քեաբէի տեսչութիւնը, ուստի Մահմեդը մի քանի տարի սուրբ յարկի տակ բնակուեցաւ, ուր նուիրական տան ծէսերն ու կարգերն ամենայն խստութեամբ էին պահպանվում։ Այս տեղ պատշաճ ենք դատում փոքր ինչ ընդարձակ տեղեկութիւն տալ Քեաբէի ծագման և նրա մէջ տիրող ծէսերի, աւանդութիւնների և սնոտի պաշտամունքների մասին, որովհետև այդ բոլորը սերտ կապուած է Իսլամի և դրա հիմնադրի պատմութեան հետ։

Գ.

Մէկկային եւ Քեաբէին վերաբերեալ աւանդութիւնները։

Ադամն ու Եւան դրախտից արտաքսուելուց յետոյ աշխարհի զանազան կողմերն ընկան, ասում են արաբական աւանդութիւնները։ Ադամն ընկաւ Սերէնդիբ կամ Ցէյլօն կղզու մի սարի վրայ, իսկ Եւան՝ Արաբիա, Կարմիր ծովի եզերքը, ուր այժմ գտնվում է Ջուդդայի նաւահանգիստը։ Երկու հարիւր տարի իրարուց բաժան և մենակ թափառեցան նրանք երկրի վրայ, մինչև որ Աստուած նրանց ապաշխարութեան ու թշուառութեան փոխարէն թոյլ տուաւ

վերստին միանալ Արարատ լերան գլխին՝ այժմեայ Մէկկայի մօտերքում։ Ադամն իւր խորին տրրտմութեան ու զղջման մէջ ձեռքերն ու աչքերը դէպի երկինք բարձրացրեց և դիմելով Աստուծու ողորմութեան՝ աղաչեց, որ մի սեղան շնորհուի իրեն, նման դրախտի այն սեղանին, որի առջև նա աղօթում էր արքայութեան մէջ և որի շուրջը հրեշտակները սովոր էին թափօր կազմել, փառաբանելով Աստուծուն։

Ադամի աղաչանքը լսելի եղաւ, և հրեշտակները լուսափայլ ամպերից շինուած մի վրան իջեցրին երկնքից և կանգնեցրին ճիշդ երկնային արքայութեան նախատիպ խորանի տակ։ Այնուհետև աղօթելիս Ադամը միշտ այդ երկնառաք սրբութեան էր դիմում և ամեն օր եօթն անգամ նրա շուրջը պտտում, ինչպէս որ անում էին երկնային հրեշտակները։

Ադամի մահից յետոյ, ասում է աւանդութիւնը, ամպեղէն վրանն անհետացաւ կամ թէ նորից երկինք ամբարձաւ. բայց Սեթը՝ Ադամի որդին, մի ուրիշ քարեղէն վրան շինեց միևնոյն տեղում։ Դա ոչնչացաւ ջրհեղեղի ժամանակ։ Շատ սերունդներ անցնելուց յետոյ, նահապետների օրով, երբ Աբրահամն և նրա Իսմայէլ որդին պապակվում էին անապատում ծարաւով, հրեշտակը մի աղբիւր ցոյց տուաւ նրանց նախկին վրանի կանգնած տեղում։ Դա էր Զէմ Զէմ աղբիւրը, որ սուրբ է մինչև այս օրս Իսմայէլեան ազգի համար։ Փոքր ինչ յետոյ Ամալէքեան հսկայ ցեղից երկու մարդ, իրենց մոլորուած ուղտը որոնելիս՝ այդ աղբիւրը գտան, և ծարաւներն

կտրելուց յետոյ՝ ընկերներին էլ այն տեղ կանչեցին։ Այնտեղ նրանք Մէկկա քաղաքը հիմնեցին և իրենց հովանաւորութեան տակ առին Իսմայէլին և Ագարին։ Սակայն երկրի բնիկներն արտաքսեցին նրանց, իսկ Իսմայէլին իրենց մօտ թողին։ Հասակ առնելուց յետոյ Իսմայէլն ամուսնացաւ մի կալուածատէր իշխանի դստեր հետ և շատ զաւակներ ունեցաւ, որոնք և արաբական ազգի նախնիքը դարձան։ Ժամանակի ընթացքում նա, հետևելով Աստուծու հրամանին, սկսաւ շինել Քեաբէի տաճարը ճիշդ ամպեղէն վրանի տեղում։ Այդ աստուածահաճոյ գործի մէջ նրան օգնում էր իւր Աբրահամ հայրը։ Սուրբ տաճարի որմերը կանգնելիս հայր Աբրահամը յատակի տեղ մի հրաշալի քար էր գործածում, որ իւր հետ միասին բարձրանում և իջնում էր։ Այդ քարը մինչև այս օր էլ պահվում է Քեաբէում իբրև անգին սրբութիւն, և ամեն ճշմարիտ հաւատացող պարզ տեսնում է նրա վրայ նահապետի ոտքերի հետքը։

Մինչդեռ Աբրահամն և Իսմայէլն այսպէս զբաղուած էին, Գաբրիէլ հրեշտակապետը մի քար բերաւ նրանց համար, որի մասին աւանդական զրոյցներն իրարուց փոքր ինչ տարբերվում են։ Ոմանց ասելով դա առաջ արքայութեան պատուական ակներից մէկն էր, որ ընկել էր գետնի վրայ Ադամի հետ և կորել ջրհեղեղի տիղմի մէջ, ապա թէ գտնուել Գաբրիէլի ձեռքով։ Բայց աւելի ընդունուած է այն աւանդութիւնը, թէ յիշեալ քարն սկզբում դրախտի մէջ Ադամի վրայ հսկելու կարգուած հրեշտակն է եղել, որ սակայն արթուն չլինելուն պատճառով քարի է փոխուել և նրա հետ միասին ցած գլորուել

երկնքից։ Աբրահամն և Իսմայէլը պատշաճաւոր երկիւղածութեամբ վերցրին այդ քարն և զետեղեցին Քեաբէի արտաքին որմի մի անկիւնում, ուր մինչև այս օր էլ կեցած է, ջերմ համբոյր ընդունելով ուխտաւորներից, երբոր նրանք թափօր են անում տաճարի շուրջը։ Պատմում են, թէ որմի մէջ դրուելիս՝ այդ քարը մի լուսափայլ սպիտակ յակինթ էր, սակայն հետզհետէ սևացել է մեղաւոր մարդկանց համբոյրներից։ Յարութեան ժամանակ նա կրկին կըստանայ իւր հրեշտակային պատկերն և վկայութիւն կըտայ Աստուծու առջև ՚ի նպաստ այն մարդկանց, որոնք սրբութեամբ են կատարել ուխտագնացութեան ծէսերը։

Դրանք են այն արաբական աւանդութիւնները, որոնց շնորհիւ Քեաբէն և Զէմ Զէմ ազբիւրն ամենահին ժամանակներից ՚ի վեր արտաքոյ կարգի երկրպագութեան առարկայ են դարձել արևելեան ազգերի և մանաւանդ Իսմայէլեան սերունդների համար։ Այդ սրբազան առարկաներն իւր մէջ պարունակող Մէկկան դեռ Մահմեդից շատ դարեր առաջ սուրբ քաղաք էր համարուած, ուր Արաբիայի ամեն կողմերից ուխտաւորներ էին հաւաքվում։ Եւ այն աստիճան ընդհանրացած և խորն էր այդ կրօնական սովորութեան զգացմունքը, որ իւրաքանչիւր տարուայ չորս ամիսն ուխտագնացութեան էր նուիրվում, և այդ միջոցին ամեն բռնութիւն ու պատերազմ դադարում էր։ Այն ժամանակ թշնամի ցեղերը մեկուսի էին դնում զէնքերը, հանում էին նիզակների սրածայր սլաքը, անվախ անցնում էին դեռ նոր վտանգաւոր եղած անապատից, ուխտաւո-

րի շորեր հագած գունդագունդ ներս էին մտնում Մէկկայի դռներով, եօթն անգամ պտտում էին Քեաբէի շուրջը, երկնային զօրաց օրինակին հետեւելով, շօշափում ու համբուրում էին խորհրդաւոր սեւ քարը, ջուր էին խմում Զէմ Զէմ աղբիւրից եւ լուացվում 'ի յիշատակ իրենց Իսմայէլ նախահօր, եւ ուխտագնացութեան միւս ամեն հին կարգերն աւարտելուց յետոյ՝ փառահ սրտով վերադառնում դէպի տուն՝ վերստին զէնք վերցնելու եւ կռուելու։

Այդ «տգիտութեան օրերում», այսինքն Իսլամի քարոզուելուց առաջ, արաբացոց կրօնական ծէսերի մէջ աղօթքն ու պահքը նախապատիւ էին համարուած։ Տարուայ մէջ երեք գլխաւոր պահք ունէին—մէկն եօթնօրեայ, միւսն իննօրեայ եւ երրորդն երեսնօրեայ։ Ամեն օր երեք անգամ էին աղօթում՝ արշալուսին, կէսօրին եւ արեւմուտքին, երեսները դէպի Քեաբէն դարձնելով, որ նրանց քէբլան էր, կամ երկրպագութեան կէտը։ Ունեցել են բազմաթիւ կրօնական աւանդութիւններ, մասամբ հին հրէաներից փոխ առած, եւ յագեցրել իրենց բարեպաշտական զգացմունքը Սաղմոսների գրքով եւ մի ուրիշ բարոյագիտական մատեանով, որի հեղինակը, ինչպէս ասում են, Սեթն է եղել։

Սրբազան տաճարի հետ կապ ունեցող այդ կարգերն ու ծէսերը հաւանական է որ հենց սկզբից մի որոշ հակումն տուած լինին Քեաբէի վերատեսչի տանն ապրող Մահմեդին, ուղղելով նրա միտքը կրօնական նիւթերի վրայ, որոնք վերջ 'ի վերջոյ բոլորովին գրաւեցին նրան։ Թէպէտ նրա իսլամական կենսագիրներն եւ կրցանկային հաւօոգել մեզ, թէ նրա բարձր

կոչումն արդէն մանկութիւնից յայտնուած էր նշաններով ու հրաշքներով, բայց և այնպէս երևում է, որ նա էլ միւս հասարակ արաբացի տղաների նման անխնամ էր դաստիարակուած, որովհետև նրան ոչ կարդալ էին սովորեցրել և ոչ գրել։ Սակայն նա մի ուշիմ և լաւ դիտող, դիտած բաները մտքում կըշռող մանուկ էր՝ համարձակ, ճոխ ու վառվռուն երեւակայութեամբ։ Հեռաւոր կողմերից իւրաքանչիւր տարի Մէկկա հաւաքուող ուխտաւորների պատճառով այդ քաղաքը դարձել էր ամեն տեսակ գիտելիքների պահարան, և երևում է որ Մահմեդն ագահութեամբ մթերում ու պահում էր նրանց իւր զօրաւոր յիշողութեան մէջ. և որքան հասակ էր առնում, այնքան էլ ընդարձակվում էր նրա դիտողութեան շըրջանը։

## Գ.

*Մահմեդի առաջին ուղեւորութիւնը դէպի Ասորւոց երկիրը։*

Մահմեդն այժմ տասներկու տարեկան տղայ էր, բայց ինչպէս որ ասացինք՝ իւր հասակից վեր իմացութեամբ օժտուած։ Քննասիրութեան ոգին արդէն զարթել էր նրա մէջ, շփուելով Արաբիայի ամեն կողմերից Մէկկա եկող ուխտաւորների հետ։ Նրա Աբու Թալէբ հօրեղբայրը ոչ միայն սրբազան Քեաբէի տեսուչն էր, այլ և Կորէյշեան ազգատոհմի ամենաժիր վաճառականը, որ ընդարձակ գործեր ունէր իւր Հաշէմ պապի կազմած և Ասորիքի ու Եմէնի հետ առեւտուր անող կարաւանների հետ։ Այդ կարաւանների

անց ու գարձը Մէկկայի դռներից և հրապարակներում յարուցած զուարճալի շարժումը գրգռիչ դէպքեր էին Մահմեդի նման պատանու համար, որի երևակայութիւնը թռչում էր դէպի հեռաւոր աշխարհներ։

Նա չկարողացաւ այլ ևս զսպել իւր բորբոքուած հետաքրքրութիւնը, և մի օր, երբ հօրեղբայրը պատրաստվում էր ուղտ նստել կարաւանի հետ Ասորիք գնալու համար, փարուեցաւ նրան և աղաչեց, որ իրեն էլ իւր հետ տանէ։ «Որովհետև, հօրեղբայր իմ», գոչեց նա, «ո՞վ կըխնամէ ինձ այս տեղ, երբոր դու հեռանաս»։

Խնդիրը զուր չանցաւ։ Բարեսիրտ Աբու Թալէբը մտածելով թէ պատանին արդէն այն հասակի մէջ է, որ կարող է արաբական կեանքի ասպարէզը ոտք դնել և կարաւանին օգտակար լինել, կատարեց նրա ցանկութիւնը և տարաւ նրան Ասորիք։

Ճանապարհի վրայ գտնուող նահանգները հարուստ էին առակներով և առասպելախառն աւանդութիւններով, որ արաբացիք վերին աստիճանի սիրում են պատմել ու լսել կարաւանի երեկոյեան դադարների ժամանակ։ Անապատի անսահման ամայութիւնը, որի մէջ թափառական ազգն անցէկացնում իւր կեանքի մեծ մասը, ընդունակ է սնոտի ցնորքներ յառաջ բերելու, ուստի և արաբացիք բնակեցրել են նրան չար ու բարի ոգիներով, զարդարել կախարդական զրոյցներով ու հին օրերում պատահած հրաշալի դէպքերով։ Բնական է, որ կարաւանի այդ երեկոյեան դադարների միջոցին Մահմեդի պատանեկան ոգին տոգորուէր անապատի սնապաշտական

հեքիաթներով, որոնք այլ և ս չանհետացան նրա մտքից և երևակայութեան վրայ ուժգնապէս ազդեցին։ Մենք կըյիշատակենք յատկապէս երկու առասպել, որ նա լսած էր այդ միջոցին և յետոյ Կուրանում պատմած։ Մէկը վերաբերվում է Հէջարի լեռնոտ գաւառին։ Այն տեղ, մինչ կարաւանն անցնում էր լռիկ ու դատարկ հովիտների միջով, խորշեր էին յերևան գալիս լեռների դառիվայրում, ուր երբեմն ապրել էին Թէնի Թամուդ կամ Թամուդի որդիք՝ Արաբիայի «կորած ազգերից» մէկը, և ահա թէ ինչ աւանդութիւն կար նրանց մասին։

Նրանք մի գոռոզ ու վիթխարի և դեռ Աբրահամից առաջ ապրող ազգ էին։ Եւ որովհետև կռապաշտութեան մէջ էին ընկել, Աստուած Սալէհ անունով մի մարգարէ առաքեց նրանց մօտ, որպէս զի արդարութեան ճանապարհի վրայ դարձնէ նրանց։ Սակայն նրանք չուզեցին լսել մարգարէին, մինչև որ նա իւր աստուածային առաքելութիւնն ապացուցանելու համար մի չղի ուղտ դուրս չբերէ սարի գոգից։ Սալէհն աղօթեց, և ահա ժայռը բացուեցաւ, և մի ջից դուրս եկաւ մի մատակ ուղտ, որ և իսկոյն մի կողռ ծնեց։ Թամուդեաններից ոմանք հաւատի եկան այդ հրաշքով և ուրացան կռապաշտութիւնը. բայց մեծ մասը դարձեալ անհաւատ մնաց։ Սալէհը նրանց մօտ թողաւ մատակ ուղտը, իբրև մի յուշարար, և սպառնաց, որ նրանք երկնային պատիժ կըստանան, եթէ որևէ վնաս հասցնեն ուղտին։ Մի քանի ժամանակ ուղտը հանգիստ արածում էր, առաւօտները դաշտ գնալով և երեկոները յետ գալով։ Ճըշմարիտ է, երբ մի անգամ նա վիզը կռացնէր աղբիւ-

րից ջուր խմելու համար, էլ չէր վերցնիլ, մինչև որ յետին կաթիլը չքամէր․ բայց դրա փոխարէն այնքան էլ կաթ էր տալիս, որ բաւում էր ամբողջ ցեղին։ Սակայն որովհետև խրտնեցնում էր դաշտի միւս ուղտերին, ուստի Թամուդեանք ատեցին նրան, կարթակոտոր արին նրան և վերջապէս սպանեցին։ Այն ժամանակ մի ահեղ ձայն լսելի եղաւ երկնքից, շանթը որոտաց, և միւս առաւօտ բոլոր մեղապարտները մեռած գտնուեցան և երեսն 'ի վայր գետնի վրայ տարածուած։

Այսպէս ահա ամբողջ ցեղն աշխարհիս երեսից ջնջուեցաւ և ընդ միշտ նրանց երկիրն երկնային անէծքի տակ մնաց։

Այս պատմութիւնն այնպիսի զօրեղ ազդեցութիւն արաւ Մահմեդի վրայ, որ հետևեալ տարիները նա արգելում էր իւր մարդկանց իջևանել այդ գաւառի մէջ և շտապում էր խոյս տալ այն տեղից, իբրև մի նզոված երկրից։

Մի և նոյն ուղևորութեան միջոցին Մահմեդի լսած երկրորդ առասպելը վերաբերվում էր Կարմիր ծովի վրայ գտնուող Էյլա քաղաքին։ Այն տեղ, ասում են, մի եբրայական ցեղ էր բնակվում անցեալում, որ կռապաշտութիւն էր ընդունել և շաբաթը պղծել, այդ սրբազան օրը ձուկ որսալով․ դրա համար էլ ծեր մարդիկ խոզ էին դարձել, իսկ փոքրերը՝ կապիկ։

Գիտութեամբ յառաջ բերինք այս երկու աւանդութիւնը, որովհետև երկուսն էլ յիշատակուած են Կուրանի մէջ, որպէս օրինակներ աստուածային պատուհասի կռապաշտութեան մեղքի համար, և ցոյց

են տալիս այն ուղղութիւնը, որ բռնած էր պատանի Մահմեդն այդ կարեւոր նիւթի նկատմամբ։

Իսլամական մատենագիրներն իրենց սովորութեան համեմատ հրաշալի բաներ են պատմում՝ ցոյց տալու համար երկնքի յարատեւ հսկողութիւնը պատանու վրայ այդ ճանապարհորդութեան միջոցին. Մի օր, մինչ նա անցնում էր հրատոչոր անապատի միջով, նրա վրայ սաւառնում է մի հրեշտակ եւ հովանի լինում աներեւոյթ թեւերով,—մի հրաշք, որ սակայն ոչ մի ականատես վկայի խօսքով չէ հաստատուած։ Մի ուրիշ անգամ, կէս օրուայ տօթին, մի ամպ է իջնում նրա վրայ եւ պատսպարում արեւից. մի անգամ էլ, երբ նա պառկած էր մի գօսացած ծառի տակ, ծառը յանկարծ տերեւներ ու բողբոջներ է արձակում։

Սուրբ Գրքում ստէպ յիշատակուող Մոաբացոց եւ Ամոնացոց հին երկիրների մօտով անցնելուց յետոյ՝ կարաւանը հասաւ Բօսրա կամ Բօստրա, որ գտնվում էր Ասորիքի սահմանի վրայ, Մանասէի գաւառում, Յորդանանի միւս կողմը։ Նահապետների ժամանակ դա ղեւտացոց քաղաք էր, իսկ այժմ Նեստորեան քրիստոնեաների բնակարան։ Բօսրան վաճառաշահութեան բանուկ շուկայ էր եւ կարաւանների իջեւան. այն տեղ կանգ առաւ եւ մեր կարաւանը, վրան զարնելով մի Նեստորեան վանքի մօտ։

Վանքի միաբանները մեծ սիրով ընդունեցին Աբու Թալէբին եւ նրա եղբօրորդուն։ Կրօնաւորներից մէկը, որի անունը ոմանց ասելով Սարգիս էր եւ ոմանց՝ Բահիրա, Մահմեդի հետ խօսակցելիս շատ զարմացաւ նրա վաղահաս մտքի վրայ եւ հետաքրքրուե-

ցաւ նրա եռանդուն հարցասիրութեամբ, որ անշուշտ կրօնական խնդիրներին նուիրուած կլինէր։ Նրանք շատ անգամ իրար հետ տեսակցութիւն ունեցան, այդ տեսակ նիւթերի վրայ խօսելով, և ներելի է կարծել, թէ վարդապետի ջանքերը գլխաւորապէս կռապաշտութեան դէմ ուղղուած լինէին, որի մէջ որ դաստիարակուած էր Մահմեդը. որովհետև Նեստորեանք արգելում էին ոչ միայն երկրպագել պատկերներին, այլ և նոյն իսկ ’ի ցոյց դնել։ Այս մասին նրանք այն աստիճան խիստ էին, որ ստէպ մերժում էին մինչև անգամ քրիստոնէութեան այդ ընդհանուր նշանը։

Շատերի ասելով Մահմեդի ծանօթութիւնը քրիստոնէական սկզբունքների և աւանդութիւնների հետ, որ նա ցոյց տուաւ վերջերը, վերագրելի է յիշեալ կրօնաւորի հետ ունեցած առաջին խօսակցութեան. սակայն շատ հաւանական է, որ նա յետոյ էլ մի քանի անգամ Ասորիք գնալիս նոյն վարդապետին տեսած լինի։

Իսլամական պատմիչները վկայում են, թէ աբեղան այն պատճառով էր ուշք դարձրել այլազգի պատանու վրայ, որ պատահմամբ նշմարել էր նրա ուսերի միջև դրոշմած մարգարէութեան հրաշալի կնիքը։ Նա, ասում են, խորհուրդ տուաւ Աբու Թալէբին, երբ սա պատրաստվում էր վերադառնալ դէպի Մէկկա, մեծ զգուշութիւն բանեցնել, որ եղբօրորդին հրէաների ձեռքը չընկնի. վասնզի մարգարէական հեռատեսութեամբ գուշակել էր այն հակառակութիւնն ու չարիքը, որ կրելու էր նա այդ ազգից։

Սակայն ոչ մի հրաշալի նշանի պէտք չկար

նորահաւատներ որսալու հետամուտ աղանդաւոր վարդապետի միտքը մի խելացի և ուշիմ պատանու վրայ դարձնելու համար, որ Քեաբէի վերատեսչի եղբօրորդին լինելով, կարող էր Մէկկա տանել իւր մատաղ հոգում ցանուած քրիստոնէութեան սերմերը. և շատ բնական է որ վարդապետը Մահմեդի այն ժամանակուայ կրօնական կարծիքների խախուտ վիճակը տեսնելով, ուզենար հեռու պահել նրան հրէաների հաւատից։

Մէկկա վերադառնալիս Մահմեդի երևակայութիւնը բորբոքուած էր անապատի առասպելական առակներով ու զրոյցներով, իսկ միտքը զբաղուած Նեստորեան մենաստանի կրօնական սկզբունքներով։

Նա վերջերն էլ մի տեսակ խորհրդաւոր յարգանք էր զգում դէպի Ասորիքը, և հաւանական է որ պատճառը նոյն երկրում ընդունած կրօնական տպաւորութիւնները լինէին։ Ասորիքն այն երկիրն էր, ուր գնացել էր քաղդէացոց աշխարհից Աբրահամ նահապետը, միակ Աստուծու ճշմարիտ հաւատը տանելով իւր հետ։

«Այո», սովոր էր ասել յետագայ տարիներում Մահմեդը, «Աստուած միշտ ունեցել է Ասորիքում իւր բանի հետևողներ՝ թուով քառասուն։ Երբ որ մէկը մեռնում էր, միւսն էր առաքվում նրա փոխարէն. և նրանցով է օրհնուած այդ երկիրը»։ Եւ դարձեալ. «Խնդա, ո՜վ դու ասորոց ազգ, որովհետև բարի Աստուծու հրեշտակները հովանաւորում են քեզ թևատարած։» *)

---

*) Միշկատ ուլ Մազաբիհ, հատ. II, էջ 812.

Ծանօթութիւն։ Կուրանի վեցերորդ գլխում յիշուած է Աբրահամի դարձը կռապաշտութիւնից, որի մէջ աշխարհն ընկղմել էր ջրհեղեղից յետոյ։ Աբրահամի հայրը՝ Ազեր կամ Թերահ, մի կուռք շինող հեթանոս էր։

„Եւ Աբրահամն ասաց իւր հօրը.—Ինչո՞ւ ես կուռքեր շինել։ Արդարեւ դու և քո ազգը մոլորուած էք։

„Այն ժամանակ երկնքի հաստատութիւնն Աբրահամի առջև բացուեցաւ, և նա տեսաւ թէ ի՞նչպէս է կառավարվում տիեզերքը։

„Եւ երբ գիշերը վրայ հասաւ և երկրին խաւար տիրեց, Աբրահամը մի լուսաւոր աստղ տեսաւ, որ փայլում էր երկնքում, և գոչեց իւր քաղդեայ ժողովրդին.—Ահա ձեր պաշտած աստուածը՛։

„Սակայն աստղն անհետացաւ, և Աբրահամն ասաց.—Չեմ հաւատում անհետացող աստուծուն՛։

„Տեսաւ յետոյ լուսնի ծագիլն և գոչեց.—Երևի թէ սա է Տէրը։ Բայց լուսինն էլ մայր մտաւ, և նա շուարած աղօթք արաւ Աստուծուն, ասելով.—Առաջնորդիր ինձ, որպէսզի ես էլ այս ազգի նման չխոտորուիմ։

„Երբոր արեգակի ծագումն էլ տեսաւ, աղաղակեց. Սա ամենից փառաւորն է. անշուշտ սա կը լինի բուն Աստուածը։ Սակայն արեգակն էլ մայր մտաւ։ Այն ժամանակն Աբրահամն ասաց.—Չեմ հաւատում, ո՜վ իմ ազգ, այդ մարմիններին, որոնց դու աստուածներ ես անուանում։ Այլ դարձնում եմ երեսս դէպի Նա, որ երկնի և երկրի Ստեղծիչն է և տիեզերքի Արարիչը։“

## Ե.

### Մահմեդի առեւտրական զբաղմունքը։—Խադիջայի հետ ամուսնանալը։

Այժմ Մահմեդը, իւր ազգականների հետ զանազան արշաւանքների մասնակցելով, յիովին ոտք էր դրել գործնական ասպարէզի վրայ։ Մի անգամ նա,

տասնուվեց ամեայ հասակին, իւր Զոբէյր հօրեղբօր հետ կարաւանով Եմէն գնաց. փոքր ինչ յետոյ որպէս զինակիր ուղեկից եղաւ նոյն Զոբէյրին, որ Կորէյշեան զօրքով արշաւել էր Հաւազեան ցեղի դէմ՝ Քէնանի ազգատոհմին օգնելու համար։ Այս դէպքը Մահմեդի առաջին արութեան գործն է համարուած պատերազմի հանդէսում, թէև կռուի ժամանակ նա ուրիշ ոչինչ չէր արել, բայց միայն նետեր հասցրել հօրեղբօրը և վահանով պաշտպանել նրան թշնամու տէգերից։ Արաբացի պատմիչներն Ալֆաջար կամ անօրէն մարտ են անուանում այդ պատերազմը, որովհետև կատարուել էր ուխտագնացութեան սուրբ ամսին։

Մահմեդը հետզհետէ զարգանալով առևտրական գործակատարի պաշտօն վարեց այլ և այլ անձանց մօտ և մի քանի անգամ Ասորիք, Եմէն և այլուր գընաց կարաւանի հետ։ Այս բոլորը նպաստեց նրան ընդլայնել իւր դիտողութեան շրջանը, արագ ըմբռնել պէսպէս մարդկանց բնաւորութիւնն և ծանօթանալ մարդկային գործերի հետ։

Նա ստէպ յաճախում էր և տօնավաճառները, որոնք Արաբիայում ոչ միայն առևտրի ժամավայրեր էին, հապա և տարբեր ցեղերի բանաստեղծական մըրցութեան ասպարէզ, ուր յաղթողներին պարգև էին տալիս, և դրուատիք գտած երգերն իշխանների դիւանում պահվում։ Այդպէս էր մանաւանդ Օքազի վաճառատեղին *), ուր մրցանակի արժանացած եօթն

*) Օքազեան մրցումները պարզ ցոյց են տալիս, որ արաբացիք 'ի բնէ բանաստեղծութիւն սիրող ազգ էին։ Ոսկի տառերով մետաքսի վրայ գրուած և Քեաբէյում կա-

ընտիր քերթուածները Քեաբէի մէջ գրուեցան, իբրև յաղթութեան նշաններ։ Այդ առևտրական շուկաներում երգվում էին նմանապէս արաբացոց աւանդութիւններն և հաղորդվում Արաբիայի մէջ տարածուած կրօնական գաղափարները։ Այս տեսակ կենդանի աղբիւրներից էր, որ հետզհետէ ամբարուեցան Մահմեդի մտքում դաւանութիւնների և կրօնների վերաբերեալ այն պէսպէս գիտելիքները, որ նա յետոյ 'ի ցոյց հանեց։

Այդ միջոցին Մէկկայում ապրում էր Քադիջա անունով մի այրի կին, Կորէյշեան ցեղից։ Նա արդէն երկու անգամ ամուսնացած էր։ Վերջին ամուսինը, որ մի հարուստ վաճառական էր, նոր էր վախճանուել, և տան ընդարձակ գործերը մի կառավարչի պէտք ունէին։ Այրիի կուզիմա քեռորդին իւր առևտրական ուղևորութիւնների ժամանակ ծանօթացել էր Մահմեդի հետ և նկատել այն ճարտա-

---

խուած վերոյիշեալ եօթ ոտանաւորները կոչվում են Մօալլաքաթ, այսինքն ոսկեգիր, և նրանց եօթն հեղինակից նըշանաւոր են մանաւանդ երկուսը՝ Ամրիկային և Անթարան։—Ամրիկային, որին Մահմեդը „բանաստեղծներին գեհեն տանող դրօշակիր“ էր անուանում, մի թուն արաբացի Գօն-փուան էր։ Հայրը նրան վռնտել էր տանից վատ բարքի համար։ Մի օր Ամրիկային լսեց, թէ տոհմակիցներն սպանել են իւր հօրը։ Այդ գոյժն առնելիս նա նստած էր մի զուարթ խնջոյքում, և ոչ մի տխրութեան նշան ցոյց չտուաւ։ Սակայն հետևեալ օրն ուխտեց բռնութեամբ հանել սպանուածի վրէժը, մերժել տուգանքն և գնալ կուռքից պատգամ հարցնել։—Կուռքի բագնում նա երեք անգամ վիճակ հանեց նետերով, և երեք անգամ նետերի վրայ գրուած „Անձդ պաշտպանէ“ բառերը իմաց տուին նրան, թէ բռնութիւն բանեցնելը վտանգաւոր է։ Բանա-

րութիւնն և հաւատարմութիւնը, որ նա ցոյց էր տալիս ամեն տեսակ պարագաներում։ Նա մատնացոյց արաւ մօրաքրոջը Մահմեդի վրայ, որպէս մի շատ յարմար գործակալի վրայ։ Երևի թէ Մահմեդի արտաքին երևոյթն էլ ուժ տուաւ այդ յանձնարարութեան. որովհետև այժմ նա մօտ քսանհինգ տարեկան կորիճ էր՝ արիական գեղեցկութեամբ ու գրաւիչ ձևերով, ինչպէս որ ասում են արաբացի գրագէտները։ Քադիջան այնպիսի փափագ զգաց օգուտ քաղելու նրա ծառայութիւնից, որ կրկնապատիկ վար-

ստեղծը զայրացաւ, նետերը փշրեց և բեկորները կուռքի երեսին տալով՝ գոչեց․ „Եթէ քո հայրը սպանուած լինէր, այդպիսի խորհուրդ չէիր տալ ինձ“։—Մի քանի ժամանակից յետոյ նա գնաց Կ. Պօլիս և սիրային բարեկամութիւն ունեցաւ մի արքայազն օրիորդի հետ, և Յուստինիանոս կայսրը թունաւոր շապկով պատուհասեց նրան։ Բանաստեղծը մեռաւ Անկիւրիայում։

Երկրորդ բանաստեղծն էր Անթարան։ Դրա երգերը շատ յայտնի են մինչև անգամ եւրոպական գրականութեան մէջ։ Բանաստեղծն իւր ասպետական արկածների միջոցին միշտ յիշում է իւր սիրական Աբլահին և ամեն պարգևներից բարձր դասում նրա միակ հաւանութիւնը։ Կանանց պաշտպանելը սրբազան պարտք է բանաստեղծի համար, թոյլերին օգնելը՝ պատուի խնդիր, և դրա համար նա ոչ մի ժամանակ վարձատրութիւն չէ ուզում։ „Երբ պատահում եմ իմ պաշտպանած էակին, աչքերս խոնարհում եմ, մինչև որ նա կրկին թաքչի իւր տանը“, ասում է նա։

Արաբացոց սիրերգութեան այս ասպետական յատկանիշները, ուրիշ գծերի հետ միասին, անցան յետոյ Սպանիա, Սպանիայից՝ Ֆրանսիա, Ֆրանսիայից՝ Գերմանիա և Անգլիա։ Նրանք մեծ ազդեցութիւն ունեցան եւրոպական ղըվ-ղըէի վրայ և դարձան ասպետական բանաստեղծութեան ընդհանուր սեփականութիւն։ Տան. Թարգմ.

ձատրութիւն առաջարկեց նրան, եթէ նա յանձն առնէր առաջնորդել մի կարաւան, որ գնալու էր Ասորիք։ Մահմեդը խորհուրդ տեսաւ Աբու Թալէբ հօրեղբօր հետ և նրա հաւանութեամբ Քադիջայի առաջարկն ընդունեց։ Կարաւանի մէջ Մահմեդին ուղեկից ու աջակից էին այրի կնոջ քեռորդին և նրա Մայսարա գերին։ Քադիջան այն աստիճան գոհ մընաց իւր գործակալի յաջողակութիւնից, որ նրա յետ գալուն պէս պայմանուած վճարի կրկնապատիկը տուաւ նրան։ Այնուհետև այրին մի քանի անգամ Արաբիայի հարաւային երկիրներն ուղարկեց նրան միևնոյն գործով, և ամէն անգամ առաջուայ պէս գոհ էր մնում նրանից։

Քադիջան այժմ քառասնամեայ հասակի մէջ էր և մի առողջադատ, փորձառու կին։ Մահմեդի մտաւոր ձիրքերն օր ըստ օրէ գրաւում էին նրա յարգանքը, և առոյգ ու սիրուն երիտասարդը ըսկսել էր դիւր գալ նրա սրտին։

Հենց այդ միջոցին, ասում է աւանդութիւնը, մի շատ բարեդէպ հրաշք պատահեցաւ Քադիջայի սրտի հակումը զօրացնելու և սրբագործելու համար։ Մի անգամ նա, կէսօրուայ դէմ, աղախինների հետ միասին իւր տան տափակ կտուրի վրայից սպասում էր Մահմեդի առաջնորդած կարաւանի վերադարձին։ Կարաւանը որ մօտեցաւ՝ այրին հիացմամբ երկու հրեշտակ նշմարեց, որոնք թևատարած պատըսպարում էին Մահմեդին արեգակի ջերմութիւնից։ Նա դարձաւ աղախիններին և ասաց. «Տեսէք, Ալլահ երկու հրեշտակ է առաքել հովանի լինելու իւր սիրելուոյն»։

Արդեօք նաժիշտներն էլ տիրուհու լիահաւատ աչքով նայեցան և նմանապէս հրեշտակներ նշմարեցի՞ն,—այդ մասին աւանդութիւնը լռում է։ Բաւական է ասել, որ այրին ջերմ հաւատ ընծայեց երիտասարդ գործակալի գերբնական արժանիքին և խիկոյն իւր հաւատարիմ Մայսարա գերու բերնով հաւանութեան խօսք տուաւ նրան։

Այս դէպքին վերաբերեալ բանակցութիւնը շատ համառօտ է պատմուած։ «Մահմեդ, ինչո՞ւ չես ամուսնանում», հարցրեց նրան Մայսարան։—«Որովհետև միջոց չունիմ», պատասխանեց Մահմեդը։—«Հապա ի՞նչ կ'ասես, եթէ մի հարուստ տիկին, այն էլ սիրուն ու տոհմիկ, քեզ հաւանած լինի»։—«Եւ ո՞վ է այդ տիկինը»։—«Քադիջան»։—«Միթէ այդ կարելի՞ բան է»։—«Միամիտ կաց»։

Մայսարան վերադարձաւ տիկնոջ մօտ և յայտնեց նրան եղելութիւնը։ Այնուհետև տեսակցութեան ժամ որոշեցին, և գործն իսկոյն երկու կողմի ցանկութեան համեմատ վերջացաւ։ Քադիջայի հայրը, Մահմեդի չքաւորութիւնը պատճառ բերելով, փոքր ինչ հակառակ էր այդ զուգութեան, որովհետև կարծիք ունէր, թէ հարկաւոր է հարստութիւնը հարստութեան հետ միացնել. սակայն իմաստուն այրիի աչքում հարստութիւնը միայն սրտի թելադրութեան հետևելու միջոց էր։ Նա տուաւ մի մեծ կոչունք, ուր հրաւիրուած էին թէ իւր հայրն ու միւս ազգականները, և թէ Մահմեդի Աբու Թալէբ ու Համզա հօրեղբայրները միւս Կորէյշների հետ միասին։ Խնջոյքի ժամանակ առատ գինի մատուցեցին, և շատ չանցած՝ հիւրերի սիրտը բացուեցաւ։ Մահմեդի

աղքատութեան դէմ յառաջ բերուած առարկութիւն-
ները մոռացուեցան. Աբու Թալէբը մի կողմից, Քա-
դիջայի Վարակա անունով ազգականը՝ միւս կողմից
ճառեր ասացին առաջիկայ հարսանիքը գովելով. օժ-
տի պայմաններն որոշուեցան և ամուսնութիւնը հան-
դիսաբար հաստատուեցաւ։

Մահմեդն այնուհետև հրամայեց մի ուղտ մոր-
թել իւր տան առջև և միսն աղքատներին բաժա-
նել։ Տան դռները ամենքի առջև բացուեցան. Քա-
դիջայի նաժիշտները սկսան պարել թմբկի ձայնով և
հիւրերը բերկրեցան։ Այս անգամ Աբու Թալէբն էլ
իւր հասակի տխրութիւնը մոռանալով զուարթացաւ.
նա տասներկու օկա ոսկի ընծայեց իւր քսակից իբ-
րև օժիտ, որ քսան ուղտի արժէք էր։ Մահմեդի
չալէմա դայեակն էլ, որ հրաւիրուած էր մասնակցե-
լու հարսանիքին, նուէր ստացաւ քառասուն ոչխար
և գոհ սրտով վերադարձաւ իւր Սաադեան անապա-
տի հովիտը։

## Զ.

*Մահմեդի ընթացքը կարգուելուց յետոյ։ — Սկսում է մտածել կրօնական ռէֆօրմի մասին։ — Մենութեան մէջ խոկալու սովորութիւնը։ — Քարայրում ունեցած տեսիլքը։ — Մարգարէ հռչակուիլը։*

Քադիջայի հետ ամուսնանալով՝ Մահմեդն իւր
քաղաքի ամենահարուստ անձերից մէկը դարձաւ. իւր
բարոյական վարկովն էլ ժողովրդի մէջ շատ ազդեցիկ
դիրք բռնեց։ «Ալլահ,» ասում է Աբուլֆէդա պատմա-

բանը,» օժտել էր նրան այն ամեն ձիրքերով, որոնք անհրաժեշտ են մի ազնիւ և կատարեալ մարդ դառնալու համար. Նա այն աստիճան անկեղծ էր և մաքուր, այնպէս ազատ չար մտքերից, որ ամենքը նրան անուանում էին Ալ Էմին կամ Հաւատարիմ»։

Քաղաքացիք նրա ազնուութեան և առողջ մըտքին վստահութիւն ընծայելով՝ ստէպ հաշտարար էին ընտրում նրան իրենց վէճերի մէջ։ Որպէս ապացոյց այդ պարագաներում նրա ցոյց տուած կորովամտութեան՝ յառաջ են բերում հետևեալ մասնադէպը։ Մի հրդեհից յետոյ, որով Քեաբէն վնասուել էր, պէտք եղաւ նորոգութիւն անել և սրբազան սև քարը վերըստին իւր տեղը դնել։ Զանազան տոհմերի աւագներն սկսան վիճել, թէ ում աւելի վայել է այդ վսեմ գործը գլուխ բերել, և միաբան որոշեցին այն մարդու վճռին հետևել, ով որ առաջինը ներս կըմտնի Ալ Հարամ կոչուած դռնով։ Եւ դա եղաւ Մահմեդը։ Վիճողների բոլոր փաստերը լսելուց յետոյ՝ նա հրամայեց սփռել մի լայն պաստառ և սև քարը վրան դնել։ Ապա թէ ասաց, որ ամեն տոհմից մի մի մարդ պաստառի ծայրերից բռնէ։ Այսպէս ահա սուրբ քարը հաւասար և միասին վերցուեցաւ մինչև որոշեալ տեղը, ուր Մահմեդն արդէն իւր ձեռքով հաստատեց նրան։

Մահմեդի և Քադիջայի ամուսնութեան պտուղներն էին չորս աղջիկ և մի որդի։ Որդու անունն էր Կասիմ, ուստի Մահմեդն էլ արաբական սովորութեամբ ստէպ կոչվում էր Աբու Կասիմ, այսինքն Կասիմի հայր։ Բայց այդ որդին շուտով մեռաւ։

Կարգուելուց յետոյ էլ Մահմեդը շարունակեց մի քանի տարի առևտուր անել, Արաբիայի մեծ շու-

կաները գնալով և կարաւանին ուղեկցելով։ Սակայն այս Նոր գործերն առաջինների պէս շահաւէտ չէին և Նրա կնոջ բերած հարստութիւնը փոխանակ աճելու նուազում էր առևտրական գործողութիւնների ընթացքում։ Բայց և այնպէս Նա դեռ այնքան ունևոր էր, որ կարող էր աղքատի հոգսերից ազատ մնալ և լիովին անձնատուր լինել իւր հոգու Նախկին հակմանը, այսինքն Թարթափիլ մտքով կրօնական խընդիրների մէջ և երազել, որ 'ի մանկութենէ սիրում էր անել։

Այդ հակումը Եւս աւելի զօրացել էր Նրա պտոյտների ժամանակ, սնունդ առնելով հրէաների և քրիստոնեաների հետ շփուելուց, որոնք իբրև հալածական Արաբիա փախչելուց յետոյ՝ այլ և այլ խմբեր էին կազմել և կամ Թէ քաղաքաբնակ ժողովուրդների կարգը մտել։ Արաբիայի անապատներն էլ, որ ինչպէս տեսանք ցնորական առասպելներով լի էին, սնունդ տուին Նրա եռանդուն ոգուն։ Բացի այդ՝ Մահմեդի ամուսնանալուց յետոյ Նրա կրօնական կարծիքների վրայ ազդում էր և մի առտնին մարգարէ, որ էր Վարական։ Դա Քադիջայի ազգականն էր վերացական մտքերի և դիւրագայթ հաւատի տէր մի անձն, որ առաջ հրէայ էր, յետոյ քրիստոնեայ և միևնոյն ժամանակ, իւր ասելով, աստղագէտ։ Յիշատակելու արժանի է որ այդ մարդն էր, որ հին և Նոր Կտակարանի մի քանի մասերն առաջին անգամ արաբերէն Թարգմանեց։ Ասում են Թէ Մահմեդը Նրանից ստացաւ իւր գիտելիքները Սուրբ Գրքի և Միշնուի ու Թալմուդի մասին, որ այնպէս առատ մտցրել է Կուրանի մէջ։

Այս բազմադիմի աղբիւրներից քաղուած և շատ սուր յիշողութեան մէջ ամբարուած գիտելիք-ները բացարձակ հակառակ էին այն ժամանակ Արա-բիայում տիրող և Քեաբէում թագաւորող վայրենի կռապաշտութեան։ Սուրբ տաճարը հետզհետէ լցուել ու շրջապատուել էր 360 կուռքերով, այնպէս որ արա-բական տարուայ իւրաքանչիւր օրը մի կուռք ունէր։ Այն տեղ դրուած էին և ուրիշ ազգերի չաստուած-ներ, որոնց գլխաւորն էր Ասորիքից բերուած Հոբալը, որ իբր թէ անձրև իջեցնելու զօրութիւն ունէր։ Կուռքերի շարքումն էին և Աբրահամն ու Իսմայէլը, որոնք երբեմն պաշտուած էին որպէս մարգարէ և նահապետ, իսկ այժմ հմայութեան նետեր ունէին ձեռներին բռնած. ասել է թէ մոգ էին դարձել։

Որքան աւելի էր ծանօթանում Մահմեդն այն հոգևոր կրօնների հետ, որոնք զբաղեցնում էին իւր միտքը, այնքան աւելի զզւում էր կոպիտ ու կոյր կռապաշտութիւնից։ Կուրանի շատ էջերից պարզ երևում է այն գլխաւոր գաղափարը, որ աստիճանա-բար Նրա ոգու մէջ զօրանալով, վերջապէս Նրա մըտ-քերի տիրապետն և բոլոր գործերի շարժիչը դարձաւ։ Այդ գաղափարն էր հաւատի վերանորոգութիւնը։ Մինչև այժմ ուսած ու քննած բաներից Մահմեդը հասել էր մի հաստատուն համոզման, թէ միակ ճշ-մարիտ հաւատն այն է, որ յայտնուած էր Ադամին արարչութեան ժամանակ և քարոզուած ու պաշտուած անմեղութեան օրերում։ Այդ հաւատի պատուէրն էր՝ անմիջական և հոգևոր երկրպագութիւն մէկ և միակ ճշմարիտ Աստուծուն՝ տիեզերքի Արարչին։

Նա համոզուած էր նմանապէս, թէ այդ վսեմ

ու պարզ հաւատը շատ անգամ խանգարուել և անարգուել է մարդկանց ձեռքով ու վերջապէս իսպառ եղծուել կռապաշտութեան մէջ. Թէ այս պատճառով ժամանակ առ ժամանակ Աստուածային ոգով ներշնչուած մարգարէներ են առաքուել նրա նախկին մաքրութիւնը վերականգնելու։ Այդպիսիներից մէկն էր Նոյը. այդպիսիք էին Աբրահամը, Մովսէսն և նոյն ինքն Յիսուս Քրիստոսը։ Իւրաքանչիւրը վերանորոգել է երկրի վրայ ճշմարիտ կրօնը, բայց յաջորդները դարձեալ ապականել են։ Նայելով Մահմեդի այն խորին ակնածութեան, որ ընծայում էր Աբրահամին, իբրև Իսմայէլի հօրն և արաբական ազգի նախահօրը, պէտք է կարծել թէ յատկապէս այդ նահապետի դաւանած կրօնն էր բուն հաւատի տիպար դարձել նրա ոգու մէջ։

Մահմեդը կարծում էր, թէ հաւատը վերստին նորոգելու ժամանակը հասել է։ Աշխարհը նորից այլանդակ կռապաշտութեան մէջ է ընկղմել։ Անհրաժեշտ է, որ մարդկութեան մոլորուած զաւակներին ուղիղ ճանապարհ ցոյց տալու համար ’ի վերուստ կոչուած մի նոր մարգարէ յայտնուի և Աբրահամի ու նահապետների օրով Քեաբէում պաշտուած սուրբ կրօնը վերականգնէ։ Այսպիսի պաշտօնով յայտնուելիք մարգարէի կարևորութեան գաղափարը կարծես թէ լիովին տիրել էր Մահմեդին և համակել նրան երազելու ու խոկալու սովորութեամբ, որ անմեկնաբանելի էր առօրեայ հոգսերի և աղմկի հետ։ Պատմում են թէ նա սկսել էր հեռանալ բարեկամներից և առանձնանալ Հարա սարի քարայրում, Մեկկայից երեք ժամ դէպի հիւսիս, ուր քրիստոնեայ ճգնաւորների

օրինակին հետևելով գիշեր ցերեկ աղօթում ու հըսկում էր։ Եւ այդ անում էր մանաւանդ Ռամադանի ժամանակ, արաբացոց սուրբ ամսին։ Այս մտայոյզ զբաղմունքը միայն մէկ նիւթով, բուռն ոգևորութեան հետ միասին, անշուշտ պիտի սաստիկ ազդէր նրա մարմնի վրայ. նա սկսաւ երազներ տեսնել, յափշտակուիլ, ցնորուիլ։ Մի պատմաբանի ասելով՝ նա շաբունակ վեց ամիս երազում էր այն բոլորը, ինչով իւր միտքը պաշարուած էր արթնութեան ժամանակ։ Յաճախ խսպառ կորցնում էր շրջապատող առարկաների գիտակցութիւնն և ուշաթափ պառկած մընում գետնի վրայ։

Հաւատարիմ Քադիջան, որ երբեմն ընկերակցում էր նրա մենութեան, տագնապ էր զգում այդ հոգեկան պառանցանքը տեսնելիս և աղաչում յայտնել իրեն դրա պատճառը. սակայն Մահմեդը կամ խորշում էր նրա հարցմունքներից և կամ թէ մութ մութ պատասխան տալիս։ Նրա թշնամիներից ոմանք այդ զառանցանքը վերնոտութեան էին վերագրում. բայց բարեպաշտ իսլամականք հաւատացած են, թէ պատճառը մարգարէական ոգու ազդմունք՚էր. որովհետև, ասում են նրանք, Աստուծու շնորհքն արդէն սկսել էր, թէև տակաւին անորոշ կերպով, լուսաւորել նրա միտքը և նա տանջվում էր աղամորդու հասողութեան անմատչելի խորհուրդների երկունքով։ Վերջապէս այն բոլորը, ասում են, ինչոր առաջ երազի մէջ էր երևցել նրան, այժմ լիովին տեսանելի ու բացայայտ դարձաւ հրեշտակի երևմամբ և աստուածային յայտնութեամբ։

Այդ հռչակաւոր յայտնութեան ժամանակ Մահ-

մեդը քառասնամեայ հասակի մէջ էր։ Իսլամականք պատմում են այդ դէպքը իբրև նոյն ինքն մարգարէից լսուած բան, որի մասին Կուրանի մէջ էլ մի քանի ակնարկութիւններ կան։ Մահմեդն իւր սովորութեան համեմատ անցկացնում Ռամազան ամիսը Հարա լերան քարայրում, որպէսզի կարողանայ ճգնելով, պաս պահելով և աղօթելով ամբառնալ միտքը դէպի ըմբռնումն աստուածային ճշմարտութեան։ Վրայ հասաւ Ալ Կադէր կամ Աստուծու պատուէր կոչուած գիշերը, երբ, Կուրանի ասելով, հրեշտակները վայր են իջնում երկնքից և Գաբրիէլն աստուածային պատգամներ բերում։ Այդ գիշերն երկրի վրայ խաղաղութիւն է տիրում և բովանդակ տիեզերքը մինչև առաւօտ հանգստութիւն վայելում։

Գիշերային պահուն, մինչ Մահմեդն իւր վերարկուով փաթաթուած լռիկ պառկած էր գետնի վրայ, յանկարծ նա մի ձայն լսեց։ Նա բաց արաւ գլուխը, և նոյն վայրկենին մի այնպիսի շլացուցիչ լուսոյ հոսանք շողաց վրան, որ նա իսկոյն ուշաթափ եղաւ։ Սթափուելուց յետոյ մի մարդակերպ հրեշտակ տեսաւ, որ հեռուից մօտենալով, մի գրուած մետաքսեայ ծրար պարզեց։ «Կարդա՛», ասաց հրեշտակը։

«Կարդալ չգիտեմ», պատասխանեց Մահմեդը։

«Կարդա՛», կրկնեց հրեշտակը, «յանուն Աստուծոյ, որ ստեղծել է ամեն բան. որ ստեղծել է մարդուն մի կաթիլ արիւնից. Կարդա՛ յանուն Բարձրելոյն, որ ուսուցել է մարդուն գրիչ գործածել. որ գիտութեան լոյս է տալիս նրա հոգուն և այնպիսի բաների ծանօթութիւն, որ նա առաջ չգիտէր։»

Մահմեդը նոյն րոպէին իւր միտքն երկնային

լուսով լուսաւորուած զգաց և կարդաց, ինչ որ գրուած էր մետաքսի վրայ, այսինքն Աստուծու այն օրէնքները, որոնք յետոյ Կուրանի մէջ քարոզուեցան։ Երբ որ ընթերցումն աւարտեց, երկնային պատգամաբերն ասաց. «Ո՛վ Մահմեդ, դու արդարև Աստուծու մարգարէն ես, և ես Նրա Գաբրիէլ հրեշտակն եմ։»

Առաւօտեան, ինչպէս որ պատմում են, Մահմեդը շտապեց գնալ Քադիջայի մօտ խուճապած ու տագնապած. չէր իմանում, թէ լսածն ու տեսածն արդեօք իրաւ ճշմարիտ է, և ինքն իրօք այն մարգարէն, որ կոչուած է իրագործել իւր փափագած ռէֆօրմը, թէ այդ բոլորը միայն տեսիլք էր, զգայարանների լոկ պատրանք, և կամ որ ամենավատն է՝ մի չար ոգու երևումն։

Քադիջան սակայն հաւատացող ու սիրող կնոջ աչքով նայեց այդ բոլորի վրայ։ Այդ բանի մէջ նա նըշմարեց իւր ամուսնու փափագների լրումը, Նրա հիւանդութեան զայրոյցքների ու տանջանքի վախճանը։ «Դու ուրախալի լուրեր ես բերում,» գոչեց նա։ «Երդվում եմ Նրա անունով, որի ձեռին է Քադիջայի հոգին, այս օրուանից դու մեր ազգի մարգարէն ես։» «Բերկրի՛ր,» շարունակեց նա, տեսնելով որ Մահմեդը դեռ վարանելով ցած էր նայում, «Ալլահ թոյլ չի տալ, որ դու ամօթով մնաս։ Ո՞վ էր այն մարդը, եթէ ոչ դու՛, որ սիրում էր ազգականներին, մարդասէր էր դէպի դրացիները, կարեկից էր աղքատներին, ասպնջական էր պանդուխտներին, հաւատարիմ տուած խօսքին և միշտ ջատագով ճշմարտութեան։»

Քադիջան փութաց պատմել իւր լսածները Վա-

րակային, Սուրբ Գրքի թարգմանչին, որ ինչպէս ասացինք, Մահմեդի տնային վարժապետն էր կրօնական խնդիրներում և Քադիջայի ազգականը։ Նա խոկոյն եռանդով ընդունեց հրաշալի աւետիքը։ «Երդվում եմ Նրա անունով, որի ձեռին է Վարակայի հոգին,» գոչեց նա, «ասածներդ ճշմարիտ են, Քադիջա՜։ Ամուսնուդ երևցած հրեշտակը մի և նոյնն է, որ երբեմն առաքուած էր Աբրահամի որդի Մովսէսին։ Նրա աւետիքն անսուտ է և ամուսինդ՛ մարգարէ։»

Ասում են թէ գիտնական Վարակայի ջերմեռանդ հաւանութիւնը մեծապէս նպաստեց Մահմեդի տարակուսանքը փարատելու։

Ծանօթութիւն։ Դօկտոր Գուստաւ Վայլն իւր „Մահմեդ մարգարէն“ կոչուած գրքում քննութեան է առնում այս խնդիրը, թէ արդեօք Մահմեդն իրօք ենթակա՞յ էր վերնոտութեան ցաւին, որ ընդհանրապէս Նրա թշնամիների և քրիստոնեայ հեղինակների հնարած բան էր համարվում։ Սակայն Մահմեդի նոյն իսկ ամենահին իսլամական կենսագիրները, Նրա մերձաւորների վկայութեան վրայ հիմնուելով, կարծես թէ հաստատում են, թէ Նա ենթակայ էր մի այդպիսի հիւանդութեան։ Նրանք ասում են, թէ Մահմեդն երբեմն սաստիկ դող և դրա հետ միասին թալուկ և կամ մկանց կծկութիւն էր ունենում, որ ժամանակ ճակատից առատ քրտինք էր հոսում, մինչև անգամ ամենացուրտ եղանակին, և Նա աչքերը փակ պառկած էր մնում գետնի վրայ, բերնից փրփուր արձակելով և կոզռան պէս բառաչելով։ Այս եղելութիւնը հաստատող վկաների թւում յիշուած են Այէշան՝ Նրա կիներից մէկը, և Սէիդ աշակերտը։ Դրանց ասելով՝ մարգարէն այդպիսի միջոցներին երկնային յայտնութիւն էր ունենում։ Սակայն այդ հիւանդութեան հարուածները տեսնուել են Նրա վրայ դեռ Կուրանի յայտնուելուց էլ առաջ։ Քադիջան կարծելով թէ Մահմեդն ըմբռնվում է չար դե-

ւերից, ուզում էր մի դիւթ կանչել, որ հալածէ նրանց, բայց ամուսինն արգելեց։ Նա չէր սիրում հիւանդութեան զայրուցքի ժամանակ օտար մարդկանց երևնալ։ Նրա տեսիլները սակայն պատահում էին և առանց այդ ցաւագար զայրոյցքների։ Մի օր Հարէս Իբն Հաշէմը հարցրեց նրան, թէ ինչպէս են լինում նրա յայտնութիւնները։ „Շատ անգամ", ասաց Մահմեդը, „մի հրեշտակ է երևում ինձ մարդկային կերպով և հետս խօսում։ Երբեմն զանգակի հնչման նմանող ձայներ եմ լսում, բայց ոչինչ չեմ տեսնում։ (Զանգակի հնչիւնն ականջների մէջ վերնոտութեան (épilepsie) նշաններից մէկն է։) Երբոր անիրևոյթ հրեշտակը հեռանում է, ես յափշտակուած եմ մնում նրա յայտնած բաներով"։ Մահմեդը համոզուած էր, թէ իւր յայտնութիւններից մի քանիսն անմիջապէս Աստուծուց է ստանում, մի քանիսն էլ երազի մէջ. որովհետև, ասում էր նա, մարգարէների երազները նմանապէս յայտնութիւն են։

Ընթերցողն աւելորդ չի գտնիլ մեր ծանօթութիւնը, որովհետև դա փոքր 'ի շատէ լոյս է սփռում այդ ինքնուրոյն մարդու խորհրդաւոր ասպարէզի վրայ։

## Է.

Մահմեդը ծածուկ ու յամր կերպով տարածում է իւր ուսմունքը։—Ստանում է նոր տեսիլք ու պատուիրանք։—Յայտնում է իւր կոչումն ազգականներին։—Ի՞նչպէս է ընդունվում այդ բանը։—Ալիի եռանդալից անձնուիրութիւնը։—Քրիստոնէական նշաններ։

Մ՚ի քանի ժամանակ Մահմեդն իւր յայտնութիւնների մասին ոչոքի բան չէր ասում, բացի ընտանիքից։ Առաջին հաւատացողներից մէկն էր իւր Զէիդ սպասաւորը, որ մի արաբացի էր Կալբեան ցեղից։ Այդ երիտասարդը դեռ մանկութեան ժամա նա

գերի էր ընկել Կորէյշեան հրոսակների ձեռքն և փողի գնով կամ վիճակով Մահմեդի ստացուածքը դարձել։ Մի քանի տարի անցնելուց յետոյ Սէիդի հայրը, լսելով որ նա Մէկկայումն է, այն տեղ գընաց և մի նշանաւոր փրկանք առաջարկեց որդու համար։ «Եթէ նա կամենայ քեզ հետ վերադառնալ», ասաց Մահմեդը, «կարող է գնալ և առանց փրկանքի. իսկ եթէ լաւ համարէ ինձ մօտ մնալ, ինչու նըրան չպահեմ»։ Սէիդը նախապատիւ համարեց մնալ, մանաւանդ որ, իւր ասելով, հետը վարվում էին ոչ թէ իբրև ծառայի, այլ իբրև մի որդու հետ։ Այն ժամանակ Մահմեդը հանդիսաբար որդեգրեց նրան, և այն օրից Սէիդն ու նա և'ս աւելի մտերմացան։ Սէիդը նոր հաւատն ընդունելով կատարեալ ազատութիւն ստացաւ. բայց և այնպէս կըտեսնենք, որ նա մինչև կեանքի վերջը կապուած մնաց Մահմեդի հետ այն անձնուէր հաւատարմութեամբ, որ դա գիտէր ներշնչել իւր հետևողներին ու հպատակներին։

Մահմեդի առաջին քայլերը մարգարէական ասպարէզի վրայ վտանգաւոր, կասկածելի ու ծածուկ էին։ Նա հիմք ունէր երկնչելու, թէ ամեն րոպէ թըշնամութեան կը հանդիպի իւր անմիջական ազգական՝ Հաշէմեան տոհմի Կորէյշների կողմից, որոնց իշխանութիւնն ու բարօրութիւնը սերտ կապուած էր կռապաշտութեան հետ, և'ս աւելի Աբդ Շէմսի հակառակորդ շառաւղից, որ վաղուց արդէն չարանախանձ աչքով էր նայում Հաշէմեանների վրայ և պատրաստ էր հերետիկոս ու ամբարիշտ համբաւել նրանց՝ Քեաբէի պահպանութիւնը ձեռքերից խլելու համար։ Այս ընդդիմադիր շառաւղի պետն էր Հարբի որդի, Օմէյի թոռն

և Աբդ Շէմսի Թոռնորդի Աբու Սոֆիանը,—մի ընդունակ ու փառամոլ, շատ ազդեցիկ ու հարուստ մարդ, որ, ինչպէս տեսնելու ենք, Մահմեդի ամենայամառ ու զօրաւոր ոսոխներից մէկը դարձաւ։

Այս անախորժ հանգամանքների մէջ Նոր հաւատը Թաքուն ու տարտամ էր քարոզվում, այնպէս որ առաջին երեք տարուայ ընթացքում նորադարձների Թիւը չէր անցնում քառասնից. դրանք էլ մեծ մասով պատանիներ, օտարականներ ու ստրուկներ էին։ Աղօթելու համար ծածկաբար հաւաքվում էին կամ Նուիրուածներից մէկի տանը և կամ Մէկկայի մօտերքում գտնուող մի քարայրում։ Սակայն գաղտնութիւնը չպաշտպանեց նրանց Թշնամանքից։ Նրանց ժողովները բացուեցան. ամբոխը ներս խուժեց, և կռիւ բրդաւ։ Յարձակուողներից մէկը վէրք ստացաւ գլխին զինագործ Սաադի ձեռից, որև այդ պատճառով հռչակուած է հաւատացեալների մէջ իբրև առաջինը, որ արիւն Թափեց Իսլամի համար։

Մահմեդի ամենաչար Թշնամիներից մէկն էր և նրա Աբու Լահաբ հօրեղբայրը, որ մի մեծատուն, գոռոզ ու ցասկոտ մարդ էր։ Նրա Օթա որդին ամուսնացած էր Մահմեդի Րոկայա աղջկայ հետ, այնպէս որ նրանք կրկնակի ազգակից էին։ Սակայն Աբու Լահաբը, կին առած լինելով Աբու Սոֆիանի քրոջ Օմմ Ջէմիլին, ազգակից էր նա և Կորէյշների հակառակ ճիւղի հետ և սաստիկ ենթարկուած իւր կնոջ և աներձագի ազդեցութեան։ Նա դատապարտում էր իւր հօրեղբօրորդու ուսմունքը, իբրև մի հերետիկոսութիւն, որ միայն նախատինք պիտի բերէ իրենց տոհմին և միւս Կորէյշների Թշնամութիւնն իրենց

դէմ գրգռէ։ Մահմեդը շատ վշտանում էր այդ հօրեղբօր ժանտ հակառակութիւնից, որ վերագրում էր Օմմ Ջէմիլ կնոջ դրդմունքներին։ Նրա վիշտն և՛ս աւելի դառնացաւ, երբ նա տեսաւ, որ այդ հակառակութիւնը սաստիկ վնասում է իւր Քօկայշ աղջրկան, որ հօրը կրօնին համակրելուն համար վիրաւորիչ կշտամբանք էր լսում թէ իւր մարդուց և թէ բոլոր գերդաստանից։

Այս և ուրիշ հոգսերը Մահմեդի սիրտը մաշելով՝ հոգու վրդովմունքը սաստկացրին։ Նա սկսաւ նիհարիլ, աչքերը վայրենացան, ցնորմունքները բազմացան։ Սրտակից ազգականներից ոմանք նրա խանգարուած դէմքը տեսնելիս ասում էին, թէ հիւանդ է. միւսները հեգնօրէն խելագար էին անուանում, և այդ չար հեգնիչներից առաջինը Օմմ Ջէմիլն էր, նրա հօրեղբօր ամուսինն և Աբու Սուֆիանի աղջիկը։

Հոգու և մարմնի այս շփոթուած դրութեան հետևանքը մի նոր տեսիլ կամ յայտնութիւն եղաւ, որ հրամայում էր նրան «վերկենալ, քարոզել և փառաբանել Աստուծուն»։ Այժմ նա հրապարակաւ և համարձակ պիտի յայտնէր իւր ուսմունքը, սկսելով նախ իւր ազգականներից ու տոհմից։ Ուստի իւր առաքելութեան չորրորդ թուականին, ինչպէս ասում են, նա հրաւիրեց Հաշէմեան շառաւղի բոլոր Կորէյշներին դէպի Սաֆա բլուրը, Մէկկայի մօտերքում, ծանուցանելով թէ կամենում է նրանից բարօրութեան վերաբերեալ կարևոր բաներ հաղորդել։ Նրանք գնացին այն տեղ, գնաց և Մահմեդի չարակամ Աբու Լահաբ հօրեղբայրն իւր այպանող Օմմ Ջէմիլ կնոջ հետ։ Մարգարէն նոր էր սկսել իւր առաքելութեան

վրայ խօսել և յայտնութիւնը հաղորդել, երբ Աբու Լահաբը մոլեգնաբար տեղից թռաւ, չարաչար հայհոյեց նրան, որ այդպիսի յիմար բանի համար ժողով է կանչել, և մի քար վերցնելով ուզեց խփել Մահմեդին։ Մահմեդը շանթահարիչ հայեացք նետեց նրա վրայ, անիծեց իւր դէմ վերցուած բազուկն և գոչեց. «Թո՛ղ գեհենի հրոյն զոհ դառնաս դու և թող Օմմ Ջէմիլ կինդ անձամբ այդ հուրն արծածէ, տատասկի խուրձ բերելո՛վ.»

Ժողովը խառնիխուռն ցրուեցաւ։ Աբու Լահաբն և իւր կինը, այդ նզովքից զայրացած, ստիպեցին իրենց որդի Օթային բաժանուել իւր Ռոկայա ամուսնուց և յետ դարձնել նրան Մահմեդին։ Սակայն Ռոկայան երկար սուգ չքաշեց. նրան ուրախութեամբ կին առաւ իւր հօր եռանդուն աշակերտ Օսման իբն Աֆանը։

Առանց վհատելու առաջին փորձի դերև ելնելուց, Մահմեդն երկրորդ անգամ ժողովի կանչեց հաշէմեաններին, և այս անգամ իւր տանը, ուր նրանց կաթնով ու գառան մսով հարկելուց յետոյ՝ ոտքի ելաւ և մանրամասնօրէն յայտարարեց 'ի վերուստ ընդունած յայտնութիւնները, ասելով թէ Աստուած հրամայել է իրեն նախ և առաջ իւր մերձաւոր ազգատոհմին քարոզելու այդ բոլորը։

«Ո՛վ որդիք Աբդ ալ Մօթալլէբի», աղաղակեց նա յափշտակուելով, «ամենից առաջ ձեզ հաճեցաւ շնորհել Աստուած այս երկնածիր պարգևները։ Նրա անուամբ եմ աւետում ձեզ իւր շնորհաբեր օրհնութիւնն և անտի կեանքի յաւիտենական բերկրանքը Ո՛վ է ուզում ձեր միջից բաժանել ինձ հետ պար-

գեխս բեռը. ո՞վ է ուզում եղբայրս լինել, իմ փոխանորդը, իմ վիզիրը»։

Բոլորն էլ լուռ մնացին, ոմանք հիացած, ոմանք կասկածանօք ու այպանօք ժպտալով։ Վերջապէս պատանեկան եռանդով յառաջ ելաւ Ալին և մարգարէին ծառայելու կամք յայտնեց, թէև իւր համեստ խոստովանութեամբ դեռ ջահել էր և անզօր։ Մահմեդը գրկեց այդ վեհանձն պատանուն և կուրծքին սեղմելով, աղաղակեց.

«Տեսէ՛ք, ահա սա է իմ եղբայրը, իմ փոխանորդը, իմ վիզիրը. ամենքդ էլ սրա սասծին ականջ դրէք և սրա կամքին հնազանդ եղէք։»

Սակայն Ալիի նման համբակի արարքը Կորէյշների ծիծաղը շարժեց և նրանք ծաղրեցին նորահաւատ պատանու հօրը՝ Աբու Թալէբին, հեգնելով թէ նա այժմ պարտաւոր է գլուխ ծռել որդու առջև և հնազանդութիւն ուխտել նրան։

Թէպէտ Մահմեդի քարոզն այսպիսի կոպիտ ընդունելութիւն գտաւ ազգականների ու մերձաւորների կողմից, բայց ժողովուրդը ջերմ հաւանութիւն ընծայեց նրան, և այդպէս արին մանաւանդ կանայք, որոնք միշտ պատրաստ են ձեռնտու լինել մերժուած դատին։ Բազմաթիւ հրէաներ էլ առ ժամանակ հետեւեցին նրան, բայց երբոր տեսան, որ նա թոյլ է տալիս աշակերտներին ուղտի և ուրիշ՝ իրենց օրէնքով արգելուած կենդանիների միսն ուտել, երեսները շուռ տուին և հրաժարուեցան նրա կրօնից, իբրև մի անմաքուր բանից։

Մահմեդն այժմ ամեն զգուշութիւն դէն ձգեց, կամ լաւ է ասել՝ և՛ս աւելի եռանդ զգաց. նա բաց-

արձակ սկսաւ քարոզել իւր վարդապետութիւնն և մարգարէ հռչակել իւր անձը, ասելով թէ առաքուած է կռապաշտութեան վերջ տալու և մովսիսական ու քրիստոնէական օրէնքների խստութիւնն ամոքելու։ Նրա քարոզութեան սիրելի տեղերն էին Հագարի և Իսմայէլի յիշատակներով սրբագործուած Սաֆա և Կուբէիս բլուրները. իսկ նրա Սինայն էր Հարա սարը, ուր սովոր էր առանձնանալ ոգևորութեան և աւիւնի միջոցներին՝ սարի լռիկ քարայրից Կուրանի նոր յայտնութիւններ դուրս բերելու համար։

Հին քրիստոնեայ մատենագիրները Մահմեդին, այդ եկեղեցու տրաքացի Թշնամուն յիշելիս՝ այլ և այլ հրաշքներ են պատմում սնապաշտօրէն, որոնք կատարուել են այդ միջոցին, իբրև աշխարհին սպառնացող չարիքների ահաւոր գուժկաններ։ Կ. Պօլսում, քրիստոնէական կայսրութեան այն ժամանակուայ ոստանում, շատ հրէշային ծնունդներ ու սոսկալի երևոյթներ են պատահել, որոնք սարսափ են ձգել ականատեսների սրտի մէջ։ Մի եկեղեցական թափօրի ժամանակ շրջակայքի զանգակներն իրենք իրենց տատանուել են, ապշութիւն ու զարհուրանք պատճառելով ամենքին։ Նեղոս գետն էլ, հրաշքների այդ պառաւ մայրը, երկու այլանդակ ճիւաղ է ծնել, ըստ երևութին մի տղամարդ և մի կին, որոնք յայտնուել են ջրի երեսին, մի քանի րոպէ ահռելի աչքով շուրջ են նայել և դարձեալ անհետացել ալիքների մէջ։ Մի ամբողջ օր արեգակն իւր սովորական մեծութիւնից երեք անգամ փոքր է երևցել և աղօտ ու վնասակար ճառագայթներ արձակել։ Մի անլուսին գիշեր երկնքի վրայ ասես թէ հնոցի կրակ է բորբոքուել

և մթնոլորտում արիւնաթաթաւ տէգեր են փայլել։

Այդ և ուրիշ դրանց նման հրաշքները մօտալուտ աղէտների կարապետ էին համարուած։ Նստուծու ալևոր պաշտօնեաները տրտմութեամբ շարժում էին գլուխներն և սուտ Քրիստոսի գալուստը, քրիստոնէութեան հալածանքը, եկեղեցիների աւերմունքը գուշակում։ «Իսկ հաւատի համար նեղութիւն ու վիշտ կրած առաքինի մարդիկ», աւելացնում է պատկառելի հայր Եայժէ Բլէդան, «շնորհք ունէին հասկանալու և մեկնելու եկեղեցուն չարիք գուժող այդ խորհրդաւոր նշանները՝ նման այն փորձուած նաւորդների, որոնք օդի, երկնքի ու ծովի նշաններին նայելով, գիտեն առաջուց տեսնել իրենց նաւին ջախջախումն սպառնացող փոթորկի մօտենալը»։

Վատերն այդ բարեպաշտներից, դեռ իրենց մարգարէութիւնը չկատարուած, արքայութիւն փոխւեցան։ Այն տեղից՝ իրենց անդորրաւէտ կայանից, նրանք անշուշտ կարեկցութեամբ կըդիտէին քրիստոնէական աշխարհի տառապանքը, նման այն մարդկանց, որոնք լեռների պայծառ գագաթից վայր նայելով, մտիկ են տալիս երկիր ու ծով տատանող, ահագին նաւեր փշրատող և բարձր աշտարակներ տապալող ահեղագոչ փոթորկին,

## Ը.

### *Մահմեդական կրօնի ստուերագիրը։*

Թէև այստեղ մտադիր չենք ընդարձակօրէն յառաջ բերել Մահմեդի քարոզած վարդապետութիւնը,

սակայն թէ նրա բնաւորութիւնն ու ընթացքը և թէ հետևեալ պատմութեան մէջ յիշուելիք դէպքերն ու հանգամանքները ճիշդ գնահատելու համար կարևոր է նրա ուսման գէթ էական գծերը որոշել։

Անհրաժեշտ է միշտ յիշել, որ Մահմեդը մի նոր կրօնի քարոզիչ չէր համարում իւր անձը, այլ միայն Աստուծու կողմից առաքուած՝ հին հաւատի վերականգնիչ։ «Մենք հետևում ենք», ասում է Կուրանը, «ուղղափառ Աբրահամի հաւատին, որ կռապաշտ չէր։ Հաւատում ենք Աստուծուն և այն բանին, ինչոր առաքուած է մեզ 'ի վերուստ, և այն բանին, ինչոր առաքուած էր Աբրահամին և Իսմայէլին, Իսահակին և Յակոբին և նրանց սերնդներին, և այն բանին, ինչոր Աստուած աւանդել էր Մովսէսին և Յիսուսին, աւանդել էր մարգարէներին. մենք խտրութիւն չենք անում նրանց միջև և հպատակ ենք Տիրոջ կամքին»։ *)

Կուրանը **) կամ այդ կրօնի մեծ գիրքը, Մահմեդի զգացմունքների բորբոքման և ուրիշ պարագաների համեմատ՝ մաս մաս և մերթ ընդ մերթ է աւանդուել։ Նա չէ տրուել որպէս մի սեփական գործ, այլ տրուել է որպէս աստուածային յայտնութիւն և Աստուծու խօսք։ Ամեն առթիւ խօսողն Աստուած ինքն է։ «Մենք առաքեցինք քեզ ճշմարտութեան մատեանը, որ հաստատում է իրենից առաջ յայտնուած Գիրքն և պահպանում դրա մաքրութիւնը»։***)

---

*) Կուրան, Բ. գլուխ։

**) Ծագում է արաբական قرأ բառից, որ ասել է կարդալ կամ ուսուցանել։

***) Կուրան, Ե. գլ.

Մովսէսի օրէնքը, մահմեդականների ասելով, մի ժամանակ մարդկութեան առաջնորդն ու ղեկավարն էր։ Յիսուս Քրիստոսի գալովն Աւետարանը նրան յաջորդեց. սակայն երկուսն էլ պիտի տեղի տային Կուրանին, որ աւելի կատարեալ էր քան նախորդ մատեանները, և պիտի բառնար հետևողների անհաւատութեամբ կամ ապականութեամբ նրանց մէջ սպրդած զեղծումները։ Կուրանն օրէնքի կատարումն է. նրանից յետոյ ոչ մի աստուածային յայտնութիւն չպիտի լինի այլ ևս։ Մահմեդը վերջինն է և ամենամեծը Աստուծու կամքը յայտնելու կոչուած մարգարէների շարքում։

Այս նորոգուած կրօնի հիմնաքարն էր Աստուծու միութիւնը։ «Չկայ Աստուած բացի Աստուծուց», —այդ էր նրա առաջին դաւանանքը։ Դրա համար էլ նա Իսլամ *) է կոչվում, այսինքն հնազանդութիւն Աստուծու կամքին։ Այս գլխաւոր դօգմայի վըրայ աւելացուած է. «Մահմեդը Աստուծու մարգարէն է», —մի վերադիր, որ եղած է իբր թէ Աստուծու կամքով, որպէսզի Նրա յայտնութիւնները շուտ ընդունուին։

---

*) Ստուգաբաններից ոմանք արաբական իսլամ բառն ածանցում են „սալէմ“ կամ „ասլամա“ բառից, որ նշանակում է փրկութիւն։ Քրիստոնեայք այդ բառից կազմում են իսլամականութիւն խօսքը, իսկ հրէայք՝ իսմայէլականութիւն, կամենալով ակնարկել, թէ արաբացիք ծագում են Իսմայէլից։

Իսլամից արաբացիք հանում են անուններս մօսլէմ կամ մուսլէմ, և մուսուլման, որ ասել է իսլամի կրօնք դաւանող։ Այս բառերն եզակի են. դրանց երկուորականն է մուսլիման, իսկ յոգնակին՝ մուսլիմէն։

Բացի Աստուծու միութիւնից Կուրանը պատուիրում է հաւատալ հրեշտակներին կամ սպասաւոր ոգիներին, մարգարէներին, մարմնի յարութեանը, վերջին դատաստանին, հանդերձեալ կեանքի. հատուցումներին և ճակատագրին։ Կուրանի մեծ մասը, և մանաւանդ նրա օտարոտի, բայց գեղեցկահիւս աւանդութիւնները հրեշտակների, մարգարէների, նահապետների և չար ու բարի ոգիների մասին կարելի է Ս. Գրքից և հրէաների Միշնուից *) ու Թալմուդից քաղուած համարել։

Մահմեդն իւր մանկութիւնից սկսած սովոր էր յարգել հրէից հաւատը, որովհետև, ասում են, նրա մայրն այդ հաւատին հետևող էր։

Սակայն Կուրանի քարոզած կրօնն իսկապէս հիմնուած էր Նոր Կտակարանի ուսման վրայ, ինչպէս որ մեկնել էին Մահմեդին Արաբիայում բնակուող հերետիկոս քրիստոնեայք։ Մահմեդը պատուիրում էր ամենախորին յարգանք ընծայել մեր Փրկչին, ճանաչելով նրան հոգեշունչ մարգարէ, որ ամենամեծն է իւր ժամանակից առաջ օրէնքը վե-

*) Հրէաների Միշնուն, Իսլամականների Սուննայի պէս, անգիր օրէնք կազմող աւանդութիւնների հաւաքածու է։ Դրա խմբագիրն է հռոմայեցոց Անտոնինոս Բարեպաշտ կայսեր օրով երկրորդ դարում ապրող Յուդա Հակկոդէշ անունով գիտնական հրէայ ռաբբին։—Երուսաղէմի Թալմուդն և Բաբելոնի Թալմուդը երկուսն էլ Միշնուի մեկնութիւններ են։ Առաջինը յօրինուած է Երուսաղէմում, Քրիստոսից մօտաւորապէս երեք դար յետոյ, և երկրորդը Բաբելոնում՝ մօտաւորապէս երկու դար աւելի ուշ։ Միշնուն, բացի Ս. Գրքից, հրէաների ամենահին յիշատակարանն է։



րականգնելու առաքուած մարգարէների թւում. սակայն խստիւ մերժում էր նրա աստուածայնութեան գաղափարը, իբրեւ մի ամբարիշտ բան, եւ Աստուծու միութեան նախատինք համարում Երրորդութեան սկզբունքը։ Կուրանի ասելով՝ այդ երկուսն էլ մոլար կարծիքներ են եւ մեկնիչների յաւելուածներ։ Պէտք է նկատել, որ այդպէս էին մտածում եւ Արաբիայում բնակուող քրիստոնեայ աղանդաւորներից շատերը։

Սուրբերին մատուցուած պաշտօնն եւ նրանց պատկերների ու անդրիների մեծարանքը դատապարտվում էր, իբրեւ կռապաշտական խոտորմունք Քրիստոսի մաքուր վարդապետութիւնից, որ ինչպէս արդէն ասել ենք, Նեստորեանների ուսմունքն էր, որոնք սերտ յարաբերութիւն են ունեցել Մահմեդի հետ։

Արգելվում էին նաեւ որ եւ է կենդանի էակ ներկայացնող պատկերները։ Մահմեդը սովոր էր ասել, թէ հրեշտակներն այն տունը չեն մտնիլ, ուր որ այդպիսի պատկերներ կան, եւ նկարողները դատապարտուած կըլինին անտի կեանքում հոգիներ գտնելու նրանց համար եւ կամ պատիժ կրելու։

Մեր Փրկչի մարդասիրական պատուէրներից շատերն ընդունուած են Կուրանի մէջ։ Յաճախ ողորմութիւն տալը մի անհրաժեշտ պարտք է համարուած, իսկ արդարութեան եւ անիրաւութեան անյեղլի օրէնքը, թէ «Զամենայն որ մի անգամ կամիջիք թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս եւ դուք արարէք նոցա»,—բարոյական կանոն հաւատացեալների համար։

«Անիրաւութիւն մի՛ անիր ուրիշին», ասում է Կուրանը, «որ քեզ էլ նոյնը չանեն։ Եթէ պարտապանը դժուարանայ պարտքը վճարել, թող պարտատէրն սպասէ, մինչև որ առաջինը դիւրութիւն ունենայ վճարելու. բայց աւելի լաւ կլինի, եթէ բոլորովին բաշխէ, որպէս ողորմութիւն»։

Մահմեդը սաէպ պատուիրում էր անխարդախ և ազնիւ վարուել առևտրական գործերի մէջ։ «Ո՜վ վաճառականներ», ասում էր նա, «խաբէութիւնն ու նենգութիւնը շատ են տիրում առևտրի մէջ. ուրեմն մաքրեցէք դրան ողորմութիւն տալով և բարերար եղէք, որ քաւութիւն ստանաք. վասն զի խաբէութիւնը բարկացնում է Աստուծուն, իսկ բարերարութիւնը հաշտեցնում է նրան։ Ով որ վաճառում է մի պակասաւոր բան, այդ պակասութիւնը ծածկելով, նա գրգռում է Աստուծու ցասումն և հրեշտակների անէծքը»։

«Օգուտ մի՛ քաղիր ուրիշի նեղ դրութիւնից՝ նրանից շահով բան գնելու համար. լաւ է թեթևացուր նրա վիճակը»։

· «Կերակրիր սովածին, այցելութիւն արա հիւանդին և ազատիր կալանաւորին, եթէ անպարտ է»։

«Արհամարհանքով մի՛ նայիր ընկերիդ, մի՛ էլ քայլիր գետնի վրայ գոռոզաբար. որովհետև Աստուած չէ սիրում յանդուգներին և մեծամիտներին։ Թող ընթացքդ համեստ լինի, ձայնդ հանդարտ, որ զուացող էշի չընմանիս»։ *)

---

*) Մահմեդի հետևեալ խօսքերը, որոնք հաւաքուած

Ամեն տեսակ կռապաշտութիւն խստիւ արգելուած էր, և Մահմեդն իրաւ ոչ մի բանից այնքան չէր գարշում, որքան դրանից։ Սակայն ’ի հնուց արաբների մէջ ընդունուած կրօնական ծէսերից շատերը, որոնց նա ’ի մանկութենէ ընտելացած էր և որոնք չէին հակասում Աստուծու միութեան գաղափարին, պահպանուեցան։ Այդ կարգից էր, օրինակի համար, ուխտ գնալու սովորութիւնը՝ Քեաբէի, Զէմ Զէմ աղբիւրի և միւս շրջակայ սուրբ տեղերին վերաբերեալ ծէսերով հանդերձ։

Պահպանուեցաւ նմանապէս և աղօթելու այն եղանակը, որ արաբական հին սովորութեամբ լուաց-

---

են նրա աշակերտներից մէկի ձեռքով, երևի թէ հետևողութիւն են Մատթէոս Աւետարանչին, ԻԵ, 35—45.

„Եւ կ’ասէ Աստուած յարութեան օրը. Ո՛վ ադամորդիք, ես հիւանդ էի, և դուք չեկաք ինձ տեսնելու։ Եւ նրանք կըպատասխանեն. Ի՞նչպէս գայինք քեզ մօտ, որ տիեզերքի տէրն ես և հիւանդութեան ոչ ենթակայ։ Եւ Աստուած կ’ասէ. Միթէ չգիտէ՞ք, որ այս ինչ ծառաս հիւանդ էր. ինչո՞ւ նրան չայցելեցիք։ Եթէ այցելէիք ծառայիս, այդ ձեզ յառաջինութիւն կը գրուէր, Եւ կ’ասէ Աստուած. Ո՛վ ադամորդիք, ես հաց խնդրեցի ձեզնից, և դուք ինձ չըտուիք։ Եւ ադամորդիք կըպատասխանեն. Ի՞նչպէս քեզ հաց տայինք, որ Ամենակալ ես և սովից ազատ։ Եւ Աստուած կ’ասէ. Այս ինչ ծառաս հաց խնդրեց ձեզնից, և դուք չտուիք։ Եթէ տայիք, ինձնից վարձք կընդունէիք։ Եւ կ’ասէ Աստուած. Ո՛վ ադամորդիք, ես ջուր խնդրեցի ձեզնից, և դուք չտուիք։ Նրանք կը պատասխանեն. Ով Հաստիչ, ի՞նչպէս քեզ ջուր տայինք, որ տիեզերքի հաստարանն ես, և ծարաւի ոչ ենթակայ։ Եւ կ’ասէ Աստուած. Այս ինչ ծառաս ջուր խնդրեց ձեզնից, և դուք մերժեցիք։ Եթէ տայիք, ինձնից վարձք կըստանայիք“։

մեան հետ կամ ճիշդ ասել՝ լուացումից յետոյ էր կատարւում։ Աղօթքները պիտի ասուէին ցերեկուայ ու գիշերուայ որոշ ժամերին. դրանք պարզ և անպաճոյճ բաներ էին և անմիջապէս Աստուածութեան վերաառաքուող հայցուածներ, որոնք ասւում էին ծունր դնելով, երբեմն էլ գետնատարած, դէպի կէբլան, այսինքն երկրպագութեան կէտն ուղղուած երեսով։

Իւրաքանչիւր աղօթքից յետոյ կրկնւում էր Կուրանի հետևեալ տունը, երկրորդ գլխից, որ ասածներին նայելով շատ գեղեցիկ է արաբական բնագրում և ստէպ փորագրւում է ոսկէ ու արծաթէ զարդերի և թլսիմի տեղ գործածուող պատուական ակների վրայ։

«Աստուա՜ծ։ Չկայ Աստուած, բացի նրանից՝ կենդանի և յաւիտենական Աստուծուց. նա ոչ նիրհում է, ոչ էլ քնում։ Նրան է պատկանում երկինքն և ամեն բան, ինչ որ կայ դրանց մէջ։ Ո՞վ կըյանդըգնի մերձենալ նրան՝ առանց նրա թոյլտւութեան։ Նա գիտէ անցեալն և ապառնին, սակայն նրա գիտութիւնից ոչ ոք չէ կարող բան իմանալ, եթէ նա ինքն չյայտնէ։ Նրա իշխանութիւնը տարածուած է երկնքի ու երկրի վրայ, և դրանց կանգուն պահելն ամենևին ծանրութիւն չէ նրա համար։ Նա է Բարձրեալը, Ամենազօրը՜»։

Մահմեդը շեշտելով շեշտում էր աղօթքի կարևորութիւնն և ազդեցութիւնը։ «Հրեշտակները», ասում էր նա, «գիշեր ցերեկ գալիս են ձեզ մօտ, և երբոր գիշերուայ հրեշտակները նորից երկինք են բարձրանում, Աստուած հարցնում է, թէ

ինչ դրութեան մէջ թողին իւր արարածներին։— Մենք գտանք նրանց աղօթելիս, կ'ասեն հրեշտակները, և թողինք նրանց աղօթելիս»։

Կուրանի վարդապետութիւնը յարութեան և վերջին դատաստանի մասին մասամբ նման է քրիստոնէականին, միայն թէ խառն ուրիշ աղբիւրներից առնուած տարօրինակ մտքերի հետ. իսկ նրա արքայութեան մասամբ հոգևոր վայելքները ապականուած են երկրային կոպիտ հեշտասիրութեամբ, և անչափ ստոր են մեր Փրկչի աւետած երկնքի անպատում մաքրութիւնից և հոգևոր երանութիւնից։

Բայց և այնպէս վերջին դատաստանի նկարագիրը Կուրանի ութսունմէկերորդ գլխում, որ Մահմեդը տուած պիտի լինի Մէկկայի մէջ իւր առաքելութեան սկզբում, որպէս իւր տեսիլքներից առաջինը, բաւական վսեմ է։

«Յանուն Աստուծոյ ողորմածի՛։ Կըգայ մի օր, երբ արեգակը կը խաւարի և աստղերն երկնքից կը թօթափուին։

«Երբ ծնելու պատրաստ մատակ ուղտերն անտես կըթողուին և վայրենի գազաններն ահից միասին կըխմբուին։

«Երբ ովկիանոսի ալիքները կըսկսեն եռալ, և մեռելների հոգիները վերստին կըմիանան մարմինների հետ։

«Երբ կենդանի թաղուած էգ մանուկը կը հարցնէ, թէ ինչ յանցանքի համար է զոհուած, և յաւիտենական գրքերը կըբացուին։

«Երբ երկինքը մի ծրարի պէս կ'անհետանայ,

և դժոխքը կըբորբոքուի, և արքայութեան վայելքները կըյայտնուին։

«Այն օրը ամեն մի հոգի պարտաւոր կըլինի իւր արած գործերը ցոյց տալ։

«Արդարև, երդվում եմ ձեզ արագընթաց և արեգակի շողքերի մէջ անհետացող աստղերով և գիշերուայ խաւարով և առաւօտեան արշալուսով—ասածներս չար ոգու խօսքեր չեն, այլ Ալլահի հաւատարմութիւնը վայելող սուրբ և զօրաւոր հրեշտակի, որ մեծարուած է իրեն հպատակ հրեշտակներից։ Ձեր բարեկամ Մահմեդն էլ խելագար չէ։ Նա տեսել է երկնառաք պատգամաբերին արփիական լուսի մէջ, և իրեն յայտնուած ճշմարտութեան նպատակն է խրատել ամեն արարածներին»։

Ծանօթութիւն։ Ցոյց տալու համար այն խառնաշփոթ և իրար հակաճառող վարդապետութիւնները, որոնցից Մահմեդը պիտի ստանար իւր գիտելիքը քրիստոնէական հաւատի մասին, յառաջ բերենք նախորդ գլխում յիշատակուած արևելեան քրիստոնեաների աղմկարար աղանդները, որոնք բոլորն էլ հերետիկոսական կամ հերձուածող են հրատարակուած։

Սաբելեան՝ երրորդ դարում ապրող Լիբիացի Սաբելիոս քահանայի անուամբ, հաւատում էին, թէ Աստուած մի է, և թէ Երրորդութիւնը նշանակում է միայն Հօր, Որդու և Սուրբ Հոգու զանազան վիճակները կամ յարաբերութիւնները, քանի որ նրանք գոյացութեամբ մի են, ինչպէս որ մի է մարդս մարմնով ու հոգւով։

Արիոսեան՝ չորրորդ դարում ապրող Աղէքսանդրիացի Արիոս երէցի անուամբ, քարոզում էին, թէ Քրիստոսն Աստուծու որդի է, բայց նրանից տարբեր և նրանից ստոր էութիւն, և հերքում էին Սուրբ Հոգու աստուածայնութիւնը։

Նեստորեան՝ հինգերորդ դարու Նեստորիոս Բիւզան-

դացի եպիսկոպոսի անուամբ, պնդում էին, թէ Քրիստոսն երկու որոշ բնութիւն ունի՝ մարդկային և աստուածային. թէ Յիսուսը մարդ էր, իսկ Մարիամը՝ միայն մարդու մայր, և թէ ամբարշտութիւն է Աստուածամայր կոչել Նրան, ինչպէս որ անում է Եկեղեցին։

Մոնոֆիզիտք (միաբնակք) դաւանում էին Քրիստոսի մէջ միայն մէկ բնութիւն, ասելով թէ Նրա մէջ Աստուած այնպէս սերտ և անբաժան միացած է մարդու հետ, որ մի բնութիւն է գոյացել։

Եւտիքեանք՝ հինգերորդ դարու Բիւզանդացի Եւտիքէս վանահօր անուամբ, մօնօֆիզիտների մէկ ճիւղն էին՝ Նեստորեաններին իսպառ հակառակ։ Նրանք մերժում էին Քրիստոսի բնութեան երկուութիւնը, առելով թէ Նա մարմնառութիւնից առաջ կատարեալ Աստուած էր, իսկ մարմնառութիւնից յետոյ կատարեալ մարդ։

Յակոբեանք՝ Ասորիքի Եդեսիա քաղաքի Յակոբ եպիսկոպոսի անուամբ, վեցերորդ դարում, մօնօֆիզետների բազմաթիւ ճիւղն էին՝ եւտիքեաններից փոքր ինչ տարբեր։ Արաբիայի քրիստոնեայ ցեղերից շատերը Յակոբի հետեւողներ էին։

Մարիամեանք՝ աստուածարողք Մարիամի, որոնք դաւանում էին թէ Երրորդութեան անդամներն են Հայրն Աստուած, Որդին Աստուած և սուրբ կոյսն Մարիամ։

Կոլլիրիդեանք արաբական քրիստոնեաների մի մասն էին կազմում, գլխաւորապէս կանանցից բաղկացած։ Նրանք երկրպագում էին սուրբ կոյս Մարիամին, իբրև Աստուածութեան պարունակչի, և նուիրում էին Նրան կոլլիրիա կոչուած մի տեսակ բլիթ, որից և ստացել են իրենց անունը։

Նազարեանք հրէական քրիստոնեաների մի աղանդ էին, որոնք համարում էին Քրիստոսին Մէսիա՝ Սուրբ Հոգւով մի կոյսից ծնուած և աստուածային բնութեան տէր. սակայն միւս ամեն բաներում հետևում էին Մովսիսական օրէնքին ու ծէսերին։

Եբիոնեանք՝ առաջին դարում ապրող Եբիոն անունով նորադարձ հրէայի հետևողներ. դրանք նոյնպէս հրէամիտ

քրիստոնեաների աղանդ էին՝ փոքր ինչ տարբեր Նազարեաններից։ Նրանք համարում էին Քրիստոսին սուրբ մարդ և մարգարէների ամենամեծը. սակայն մերժում էին Նրա գոյութիւնը նախ քան ծնունդը սուրբ Կուսից։ Այս հերձուածն էլ Նազարեանների պէս շատ հետևողներ ունեցաւ Արաբիայում։

Վերոյիշեալներից զատ կային և ուրիշ մի քանի աղանդներ, ինչպէս էին Կորնթացիք, Մարոնիտք և Մարկիոնիտք, որոնք ստացել էին այդ անուններն իրենց գլխնական և եռանդուն վարդապետներից. նաև Դոկէտեանք և Գնոստիկեանք՝ դարձեալ տրոհուած մի քանի մոլեռանդ ու նուրբ հերձուածների։ Սրանցից շատերն ընդունում էին սուրբ Կուսի անարատութիւնը, պնդելով թէ Նրա յղութիւնն ու տղաբերութիւնը կատարուել է նման լուսի ճառագայթների փոխանցութեան ապակու միջից, առանց Նրա կուսութիւնն եղծանելու,— մի կարծիք, որ այս օր էլ խիստ տարածուած է սպանիական կաթոլիկների մէջ։

Դոկէտեանք քարոզում էին, թէ Քրիստոսի բնութիւնը կատարելապէս աստուածային է, և թէ միայն Նրա ստուերը, անմարմին երևոյթն է խաչուել խաբուած հրէաներից, և դարձեալ, թէ խաչելութիւնն ու չարչարութիւնը խորհրդաւոր ցոյցեր էին և պատրանք յօդուտ մարդկութեան։

Կարպոկրատեանք, Բազիլիդեանք և Վալենտինեանք՝ երեք եգիպտացի պայքարախօսների անուամբ այդպէս կոչուած, վարդապետում էին, թէ Յիսուս Քրիստոսը միայն մի իմաստուն և առաքինի մահկանացու էր՝ Յովսեփի և Մարիամի որդին, որին Աստուած ընտրել էր մարդկային ազգը վերանորոգելու և կրթելու համար. և թէ աստուածային բնութիւնը հաղորդուած էր նրան արդէն հասուն հասակում, ս. Յովհաննէսից մկրտուելու միջոցին։ Այս վարդապետութեան առաջին մասը, որ եբիոնեանների քարոզածն է, մեր դարումն էլ բազմաթիւ աշակերտներ գտաւ՝ մանաւանդ միանձնական քրիստոնեաների մէջ, որոնք բողոքականների մի մասն են։

Բաւական է միայն մի ակնարկ ձգել այս տարածայն

ուսմունքների վրայ, որոնք յուզում ու պառակտում էին նախկին քրիստոնէական Եկեղեցին և դեռ Մահմեդի օրով ազդեցիկ էին, որպէս զի հասկանանք, թէ ինչպէս էին գոյացել նրա պղտոր կարծիքները մեր Փրկչի բնութեան և առաքելութեան մասին։

## Թ.

*Մահմեդի անձն եւ ուսմունքը ծաղրում են։—Հրաշք են պահանջում։—Աբու Թալէբի ընթացքը։—Կորէյշների բռնութիւնը։—Մահմեդի Րոկայա դստեր եւ դրա ամուսնի Հաբեշստան փախչելը։—Աբու Ջահլի թշնամութիւնն եւ նրա պատժուելը։*

Ամենադժուար բանը Մահմեդի համար իւր մարգարէութեան սկզբում թշնամիների այպանութեան դէմ մաքառելն էր։ Դեռ մանկութիւնից նրան ճանաչող մարդիկ, որոնք տեսած էին նրան ուրիշ երեխաների պէս Մէկկայի փողոցներում վազվզելիս և յետոյ կեանքի ամեն սովորական պէտքերը հոգալիս, ծաղրում էին նրա մարգարէ հանդիսանալու յաւակնութիւնը։ Նրա անցկենալու ժամանակ հեգնութեամբ մատնացոյց էին լինում վրան և գոչում. «Տեսէք Աբդ ալ Մօթալլէբի թոռին, որ ասում է, թէ երկնքում կատարուող բաները գիտէ»։ Նրա հոգեկան յուզմունքներն ու զառանցանքը տեսնողներից ոմանք խելագար էին համարում նրան, ոմանք՝ դիւահար, ոմանք էլ՝ կախարդ ու մոգ։

Ամբոխը, որ միշտ հակամէտ է հալածել հոգու հանգստութիւնը կորցրած արտակարգ անձերին, այպանում, ծաղրում և հալածում էր նրան, երբ նա

ման էր գալիս փողոցներում։ Խառնագոչ գոռումնե-
րով ու լկտի երգերով խափանում էին նրա ձայնը,
երբ նա փորձ էր անում քարոզելու, և մինչև ան-
գամ ցեխ ձգում վրան, մինչ աղօթում էր Քեաբէի
մէջ։

Եւ նրան այդպէս անարգողները միայն ռամիկ-
ներն ու տգէտները չէին։ Նրա ամենավտանգաւոր
հալածիչներից մէկն Ամրու անունով երիտասարդն էր.
և որովհետև այս Ամրուն յետոյ նշանաւոր է հան-
դիսանում մահմեդական պատմութեան մէջ, կըցան-
կայինք նրա առաջին անգամ յերևան գալու հան-
գամանքներն ընթերցողի մտքին տպաւորել։ Նրա
մայրը մի մէկկացի պոռնիկ էր, թերևս ընդունակ
նոյն իսկ յունաց Փրինաների և Ասպազիաների *)
հետ մրցելու, և նրա տարփածուների թւումն էին
Արաբիայի մինչև անգամ ամենաղնիւ զաւակներից շա-
տերը։ Այդ որդուն ծնելուց յետոյ նա յիշեց Կորէյշ-
ներից շատերին, որոնք հաւասար հայրութեան իրա-

---

*) Ասպազիան մի ազատասէր, կրթուած ու սիրուն կին
էր, որի հետ բարեկամ էին Սոկրատէսի, Պերիկլէսի և Ալ-
կիբիադէսի նման երևելի անձինք։ Նա Պերիկլէսի միջ-
նորդութեամբ ահագին ազդեցութիւն ունեցաւ ամբողջ
Յունաստանի գործերի վրայ։—Փրինան էլ անուանի կին
էր։ Պրակսիթէլը՝ Անահտի, այսինքն գեղեցկութեան դի-
ցուհու արձանը քանդակելիս՝ օրինակը Փրինայից հանեց։
Այդ կինն այնքան հարուստ էր, որ կամենում էր միայն
իւր փողով Թեբէ քաղաքը նորոգել և գրել տալ. „Ալէք-
սանդր Մեծը քանդեց, Փրինան վերաշինեց“։—Ասպա-
զիայի և Փրինայի նման անամուսին և ազատութիւն սի-
րող կանայք հէթէր էին կոչվում, այսինքն ընկերուհի։ Ծան.
Թարգմ.

ւունք ունէին։ Սակայն ծանօթները տեսնելով, որ Ամրու մանուկն աւելի մօր երիցագոյն սիրահար Աասին է նմանում, Իբն ալ Աաս կոչեցին նրան, որ ասել է Աասի որդի։

Բնութիւնը կարծես թէ այդ ապօրինի զաւակի ծննդեան արատը մաքրելու համար՝ իւր ամենաշքեղ ձիրքերով էր օժտել նրան։ Ամրուն դեռ պատանեկութեան ժամանակ Արաբիայի ամենասիրուած երգիչներից մէկն էր՝ հաւասար նշանաւոր թէ իւր երգիծական տաղերի խայթիչ սրութեամբ և թէ լուրջ նուագների սրտառուչ քաղցրութեամբ։

Երբոր Մահմեդն իւր առաքելութիւնն աւետեց, այդ երիտասարդն սկսաւ ծաղրական ոտանաւորներ ու կատակներ շանթել նրա դէմ, որոնք արաբացոց բանաստեղծական ճաշակին յարմարուելով, արագ արագ տարածուեցան և մոլեգին հալածանքից աւելի արգելքներ դրին Իսլամի առջև։

Մահմեդի աւելի լուրջ հակառակորդները պահանջում էին նրանից, որ իւր ասածի ճշմարտութիւնը գերբնական փաստերով հաստատէ։ «Մովսէսն և Յիսուսն և միւս մարգարէները», ասում էին նրանք, «հրաշքներ գործեցին իրենց երկնային առաքելութիւնն ապացուցանելու համար։ Եթէ դու իրաւ մարգարէ ես, և նրանցից մեծ, եկ դու էլ հրաշք գործիր։»

Մահմեդի պատասխանը Կուրանի հետևեալ խօսքերն էին. «Էլ ինչ հրաշք են ուզում նրանք։ Ո՞ր հրաշքն է աւելի մեծ, քան նոյն ինքն Կուրանը,—մի գիրք, որ յայտնուած է անգրագէտ մարդու ձեռքով. որ այնպիսի վսեմ լեզու ունի, որի փաստերն այն աստիճան զօրեղ են, որ մարդկանց ու

դևերի միացած հանճարն անգամ չէր կարող նմանը ստեղծել։ Միթէ կարելի՞ է յառաջ բերել մի աւելի մեծ ապացոյց, թէ սա ուրիշ ոչոքից չէ եկած, բայց միայն Աստուծուց։ Ինքն Կուրանը մի հրաշք է։»

Սակայն անհաւատներն և՛ս աւելի շօշափելի ապացոյց էին պահանջում. ուզում էին, որ հրամայէ համրին խօսել, խուլին լսել, կոյրին տեսնել, մեռածին յառնել, և կամ որ և է փոփոխութիւն անէ բնութեան մէջ,—օրինակի համար, աղբիւրներ հոսեցնէ, անբեր դաշտն այգի դարձնէ և արմաւներով, որթատունկով, վտակներով լցնէ, մէջն էլ մի ոսկեղէն ականակուռ պալատ շինէ, կամ թէ ամենքի առջև երկինք բարձրանայ և կամ—եթէ իրաւ Կուրանն իւր ասածի պէս երկնառաք բան է—ցոյց տայ, թէ ինչպէս է իջել երկնքից և կամ թէ երևեցնէ նրան բերող հրեշտակին. ապա թէ կը հաւատան։

Մահմեդն երբեմն փաստերով էր պատասխանում, երբեմն էլ սպառնալիքով։ «Ես ոչ այլ ինչ եմ» ասում էր նա, «բայց միայն Աստուծուց առաքուած մի հասարակ մարդ։ Եթէ հրեշտակներն երկրի վրայ շրջէին, անշուշտ այս առաքելութեան համար մի հրեշտակ կընտրուէր, այլ ոչ թէ մարդ, և այն ժամանակ վա՜յ կըլինէր այն մարդկանց, որոնք կըյանդըգնէին չհաւատալ նրա խօսքին, ինչպէս որ այժմս են անում։ Նրանք չէին յանդգնիլ փաստաբանել ու վիճել և համոզուելու համար ժամանակ պահանջել, ինչպէս որ անում են ինձ հետ. Նրանց պատուհասն անմիջապէս վրայ կըհասնէր»։

«Աստուած», աւելացնում էր նա, «ոչ մի հրեշտակի կարօտ չէ իմ առաքելութիւնը հաստատելու

համար։ Նա ինքն անսուտ վկայ է ձեր և իմ մէջ։ Այն մարդիկ, որոնց Նա կըյորդորէ հաւատալ ինձ, ճշմարտութեամբ կըհաւատան. իսկ որոնց թոյլ կըտայ մոլորութեան մէջ մնալ, նրանք ոչ ոք չեն գտնիլ, որ իրենց անհաւատութիւնը փարատէր։ Յարութեան օրը նրանք կոյր, խուլ, համր և գետնի վրայ սողալով յառաջ կըգան. Նրանց բնակարանը գեհենի անշէջ հուրը կըլինի։ Այդ կըլինի նրանց անհաւատութեան հատուցումը»։

«Հրաշքնե՞ր էք պահանջում։ Աստուած տուել էր Մովսէսին հրաշք գործելու զօրութիւն։ Բայց ի՞նչ եղաւ հետևանքը։ Փարաւոնը նրա հրաշքներն արհամարհեց, նրան կախարդ համբաւեց և կամեցաւ նրան էլ, նրա ազգն էլ իւր աշխարհից արտաքսել. բայց Փարաւոնը ջրասոյզ եղաւ, նրա հետ էլ ամբողջ զօրքը։ Դո՞ւք էլ ուզում էք Աստուծուն փորձել, հրաշքներ պահանջելով, և Փարաւոնի պատիժն ստանալ»։

Ալ Մաալէմ արաբացի գրագէտը պատմում է, թէ մի օր Մահմեդի աշակերտներից ոմանք հրաշք պահանջող բազմութեան հետ միանալով, սկսան խընդրել վարժապետին, որ իւր առաքելութիւնը մի անգամ ընդ միշտ հաստատելու համար ոսկի դարձնէ Սաֆա բլուրը։ Այսպէս պաշարուած Մահմեդը սկսաւ աղօթել և աղօթքից յետոյ հաւատացրեց աշակերտներին, թէ նրան երևցաւ Գաբրիէլ հրեշտակն և յայտնեց, որ եթէ Աստուած նրա աղօթքը լսէ և խընդրած հրաշքը կատարէ, նոյն րոպէին բոլոր անհաւատները սատակման կըլինին։ Ուստի նա գթալով ամբոխին, որ մի յամառ սերունդ է թւում, չէ ուզում մատնել նրան սատակման, և թոյլ է տալիս

Սաֆա բլրին կանգնած՝ մնալ իւր տեղում։

Միւս իսլամական գրագէտները հաւաստում են, թէ մի մի ժամանակ Մահմեդն իւր սահմանած կանոններից շեղվում էր և տեսնելով, որ ունկնդիրները չափից դուրս թերահաւատ են, մերթ ընդ մերթ հրաշք կատարում։ Այսպէս մի օր ամբոխի ներկայութեամբ մի զուարակ կանչեց իւր մօտ և եղջիւրի վրայից մի երկնառաք նոր ծրար հանեց, որ Կուրանի մէկ գլուխն էր ամփոփում։ Մի ուրիշ անգամ, մինչ քարոզում էր ժողովրդին, մի սպիտակ աղաւնի ըսկսաւ սաւառնել նրա վրայ, յետոյ նրա ուսին նըստաւ և կարծես թէ մի բան շշնջեց ականջին։ Մահմեդն ասաց, թէ այդ աղաւնին Աստուծու առաքած հրեշտակ էր։ Մի օր էլ հրամայեց գետինը փորել, և փորուած տեղից երկու պուտուկ հանեցին՝ մէկը լի մեղրով, միւսը կաթնով, և Մահմեդն ասաց, թէ այդ անօթներն իւր ուսման հետևողներին աւետուած լիութեան նշաններ են։

Քրիստոնեայ մատենագիրները ծաղրում էին այդ հրաշքները, ասելով թէ աղաւնին առաջուց վարժուած էր իւր դերին և ցորենի յատիկներ էր որոնում, որ սովոր էր գտնել Մահմեդի ականջում. թէ ծրարը կանխաւ կապուած էր զուարակի եղջիւրներից, և թէ կաթն ու մեղրի կճուճները գիտութեամբ թաղուած էին գետնի մէջ։

Աւելի ճիշդ կըլինէր իսպառ մերժել այդ հրաշազարդ առասպելները, իբրև մոլորամիտ հաւատացողների հնարած բաներ, ինչպէս որ անում են և նոյն իսկ մահմեդական լաւագոյն մեկնիչներից շատերը։ Հիմնական փաստեր չկան, որոնք ցոյց տային,

թէ Մահմեդն իրօք այդպիսի նենգ միջոցների դի-
մած լինէր իւր ուսմունքն և առաքելական ձգտում-
ները հաստատելու համար։ Մեզ թւում է, թէ նա
իւր ասպարէզի այս առաջին և երկբայական քայլերն
անելիս՝ լոկ իւր խելքին, ճարտար լեզուին և կրօ-
նական եռանդին էր ապաւինած։

Նրա սաստիկ յարձակումները Քեաբէի հին հա-
ւատը պղծող կռապաշտութեան դէմ սկսան ազդել
և վրդովեցին Կորէյշներին։ Նրանք պահանջեցին
Աբու Թալէբից լռեցնել եղբօրորդուն և կամ բոլորո-
վին արտաքսել. բայց տեսնելով որ այդ պահանջը
նպատակին չէ հասնում, իմաց տուին ծերունուն, որ
եթէ ինքնակոչ մարգարէն և նրա հետևողները մո-
լորութեան մէջ յամառեն, նրանց յանցանքը մահով
կըտուժուի։

Աբու Թալէբը փութաց յայտնել Մահմեդին
այդ սպառնալիքն ու խնդրեց, որ այդքան հզօր ու
բազմաթիւ թշնամիներ չյարուցանէ իւր անձի ու
տոհմի դէմ։

Մահմեդի կրակոտ ոգին բորբոքուեցաւ այդ
խօսքերից։ «Ո՛վ հօրեղբայր», գոչեց նա, «եթէ նը-
րանք մինչև անգամ արեգակն և լուսինն աջ ու ձախ
կողմից իմ դէմ կռուի դուրս բերեն, ես դարձեալ
չեմ հրաժարուիլ իմ մտքից, մինչև որ Աստուած չը-
հրամայէ և կամ միւս աշխարհը չկանչէ ինձ»։

Ասաց, և թախծալի դէմքով հեռանալու վրայ
էր, երբոր Աբու Թալեբը յետ կանչեց նրան։ Ծերու-
նին դեռ հեթանոս էր, սակայն եղբօրորդու անվե-
հեր արիութեամբ հրապուրուած՝ խօսք տուաւ նրան,
որ ինչ բան էլ քարոզելու լինի, երբէք նրան թըշ-

Նամիների ձեռքը չի մատնիլ։ Եւ զգալով որ մենակ ինքը չի կարողանալ պաշտպանել նրան, հրաւիրեց Հաշէմի և Աբդ ալ Մօթալլէբի միւս շառաւիղներին՝ պատսպարել իրենց ազգակցին Կորէյշների հալածանքից. և տոհմային կապերն այնքան սերտ են արաբացոց մէջ, որ բոլորն էլ, բացի Աբու Լահաբից, համաձայնութիւն յայտնեցին, թէև գիտէին, որ այդպէս անելով իրենց վտանգաւոր երևցող հերետիկոսութեան ոյժ տուած կլինեին։

Կորէյշների թշնամութիւնը հետզհետէ սաստկացաւ և վերջապէս անձնական բռնութեան հասաւ։ Նրանք յարձակուեցան Մահմեդի վրայ Քեաբէում և քիչ մնաց որ խեղդէին, եթէ հազիւ հազ չազատէր նրան Աբու Բեկրը, որ ինքն էլ նախատինք ստացաւ այդ կռւում։ Մահմեդի ընտանիքը, և մանաւանդ Րոկայա աղջիկն և սրա Օսման Իբն Աֆան ամուսինը ատելութեան նշաւակ դարձան։ Զօրաւոր պաշտպան չունեցող աշակերտներից շատերի կեանքը վտանգուեցաւ։ Նրանց ապահովութեան հոգսերով պաշարուած Մահմեդը խորհուրդ տուաւ նրանց, որ գոնէ առ ժամանակ իւր վտանգաւոր ընկերութիւնից հրաժարուին և Հաբեշստանում ապաստան որոնեն։ Կարմիր ծովի նեղ լայնքն անցնելով, դժուար չէր Աֆրիկայի ափին հասնել։ Հաբեշստանցիք, որպէս նեստորական քրիստոնեաներ, կրօնով բարձր էին իրենց բարբարոս հարևաններից։ Նրանց նաջաշը կամ թագաւորը ներողամիտ և արդար մարդ էր համարուած, և Մահմեդը յուսով էր, թէ իւր աղջիկն ու փախստական աշակերտներն անապաւէն չեն մընալ նրա մօտ։

Տասնումէկ տղամարդուց և չորս կանանցից կազմուած մուսլէմների այս խմբակի առաջնորդն էր Օսման Իբն Աֆանը։ Նրանք ճանապարհ ընկան արևելեան ծովեզերքով դէպի Ջուդդա, որ Մէկկայից երկու օրուայ հեռաւորութիւն ունեցող նաւահանգիստ է. այն տեղ գտան երկու հատ հաբեշեան նաւ, նստան և դիմեցին իրենց ապաստանի երկիրը։

Այս՝ Մահմեդի առաքելութեան հինգերորդ թուականին պատահած դէպքը կոչվում է առաջին հէջրա կամ փախուստ, զանազանուելով երկրորդ հէջրայից, որ արդէն նոյն իսկ մարգարէի փախուստն էր Մէկկայից Մէդինա։

Փախչողների գտած ապնջականութիւնը միւս աշակերտներին էլ սիրտ տուաւ նրանց օրինակին հետևելու, և այսպէս Հաբեշստան ապաւինած մուսլէմների թիւն եղաւ 101 (83 տղամարդ և 18 կին), բացի մանուկներից։

Կորէյշները տեսնելով որ չեն կարող Մահմեդի բերանը փակել և աշակերտներ վաստակելուն վերջ դնել, մի օրէնք հրատարակեցին, որ աքսորման պատիժ էր սպառնում նորադարձներին։ Մահմեդը յետ քաշուեցաւ փոթորկից և հովանի գտաւ իւր Օրքհամ աշակերտի մօտ, որ Արաֆատ կամ Սաֆա լերան վըրայ էր բնակվում։ Սա, ինչպէս որ արդէն ասած ենք, հռչակուած էր արաբական աւանդութիւնների մէջ իբրև այն լեառը, ուր Թոյլ էր տրուած դրախտակորոյս Ադամին և Եւային վերստին միանալ երկար ու ձիգ Թափառմունքից յետոյ։ Այդ լերան հետ կապուած էր նաև Հագարի և Իսմայէլի յիշատակը։

Մահմեդը մնաց Օրքհամի մօտ մէկ ամսի չափ,

շարունակելով նոր տեսիլներ քարոզել և նոր հետեւողներ գրաւել Արաբիայի ամեն կողմերից։ Սակայն Թաքստեան տեղն էլ չապահովեց նրան Կորէյշների ատելութիւնից։ Նրան գտաւ այս տոհմին պատկանող Աբու Ջահլ անունով մի արաբացի և ոչ միայն հայհոյեց նրան, այլ և ծեծեց։ Այս բռնութեան լուրը հասաւ Մահմեդի Համզա հօրեղբօրը, որ նոր էր որսից տուն գալիս։ Համզան աղեղը ձեռքին բռնած մըտաւ Կորէյշների ժողովը, ուր Աբու Ջահլը պարծենում էր իւր նոր տարած յաղթանակով, խփեց գլխին և չարաչար վիրաւորեց։ Աբու Ջահլի ազգականներն ոտքի ելան նրան օգնելու. բայց սնապարծը, Համզայի հուժկու բազկից ու խրոխտ ոգուց զարհուրած՝ շտապեց հանգստացնել բարեկամներին և ասաց. «Թողէք դրան. ես իրաւ խիստ վարուեցայ դրա եղբօրորդու հետ»։ Նա իւր անձն արդարացնելու համար Մահմեդի ուրացութիւնը յառաջ բերաւ. սակայն ա՛յլ ևս չէր կարելի Համզայի զայրոյթը զսպել։ «Դէ ուրեմն», գոչեց նա արհամարոտ հպարտութեամբ, «իմացէք որ ես էլ չեմ հաւատում ձեր քարեղէն աստուածներին. հապա տեսնեմ, ո՞վ կըստիպէ որ հաւատամ»։ Ցասումից դրդուած՝ նա ընդունեց մի կրօն, որ թերևս չէր ընդունիլ համոզական յորդորանքով։ Նոյն րոպէին նա դարձի եկաւ, ուխտեց հետևել մարգարէին և նոր հաւատի ամենաջերմ ու քաջասիրտ ախոյեաններից մէկը դարձաւ։

## Ժ.

*Աբու Ջահլի եղբօրորդին՝ Օմար Իբն Քաթաբը կամենում է սպանել Մահմեդին՝ հօրեղբօր վրէժը հանելու համար։—Նրա հրաշալի դարձը։—Մահմեդը թաքնվում է Աբու Թալէբի դղեակում։—Թշնամի Կորէյշների պարագլուխ Աբու Սոֆիանը հալածում է Մահմեդին եւ նրա հետեւողներին։—Նրա հետ հաղորդակցութիւն չունենալու վճիռ է դնում։—Մահմեդը թողնում է իւր ապաստանն եւ քարոզում է ուխտագնացութեան սուրբ ամսին։—Հաբիբ իմաստնի դարձը։*

Աբու Ջահլի ատելութիւնը մարգարէի դէմ և՛ս աւելի սաստկացաւ Համզայի տուած խիստ պատժից յետոյ։ Նա ունէր Օմար Իբն Քաթաբ անունով մի եղբօրորդի,—քսանուվեց տարեկան վիթխարի, հըսկայազօր և անվեհեր տղամարդ։ Քաջերն անգամ սարսափում էին Նրա վայրագ աչքերից, և Նրա գաւազանն աւելի ահաւոր էր, քան թէ ուրիշի սուսերը։ Այդպէս է ասում Աբու Աբդալլահ Մուհամեդ Իբն Օմալ Ալուաքէդի արաբացի պատմաբանը, և գինուորի հետագայ գործերը կարծել են տալիս, թէ այդ խօսքերը ծայրայեղ չեն։

Այդ ամեհի արաբացին, Աբու Ջահլից դրդուելով, վճռեց գտնել Մահմեդին, որ դեռ Օրքհամի տանն էր մնում, և սուր մխել Նրա սրտի մէջ։ Կորէյշներին մեղադրում են, թէ այդ եղեռնական գործի համար հարիւր ուղտ և հազար ունց ոսկի էին խոստացել Օմարին. սակայն դժուար է հաւատալ այդ բանին, քանի որ աւելորդ էր կաշառել Աբու Ջահլի վրէժխնդիր եղբօրորդուն։

Օրքհամի տունը գնալիս նա պատահեցաւ մի Կորէյշացու, որին և յայտնեց իւր դիտաւորութիւնը։ Կորէյշացին Իսլամի ծածուկ աշակերտը լինելով, ուզեց շրջել նրա չար միտքն և ասաց. «Փոխանակ Մահմեդին սպանելու և նրա բարեկամների վրէժխնդրութեան ենթարկուելու՝ լաւ չէ՞ր լինիլ, որ առաջ քո տան մարդկանց ազատ պահէիր աղանդից»։ —«Ով կարող է մերոնցից իւր հաւատը փոխած լինել», հարցրեց Օմարն ապշութեամբ.—«Ամինա քոյրդ և նրա Սէիդ ամուսինը», պատասխանեց Կորէյշացին։

Օմարը փութաց քրոջ տունը հասնել և յանկարծակի ներս մտնելով, Կուրանի ընթերցանութեամբ զբաղուած գտաւ նրան և մարդուն։ Սէիդը փորձեց թաքցնել գիրքը, բայց նրա շփոթուիլը մեղադրանքի ճշմարտութիւնը հաստատեց և Օմարի զայրոյթը շարժեց։ Օմարը կատաղաբար գետին տապալեց Սէիդին, ոտը նրա լանջքին դրաւ և սուրը կրծքին կրմխէր, եթէ քոյրը վրայ չհասնէր։ Ապտակի հարուածն արիւնլուայ արաւ քրոջ երեսը. «Ո՜վ թշնամիդ Ալլահի», գոչեց Ամինան, «նրա՞ համար ես խփում ինձ որ ես միակ ճշմարիտ Աստուծուն եմ հաւատում։ Որքան կ'ուզես բռնացիր, ես հաւատիս հաւատարիմ կըմնամ»։ «Այո», յարեց նա եռանդով, «Աստուծուց զատ Աստուած չկայ, և Մահմեդը նրա մարգարէն է։ Այժմ, Օմար, անելիքդ վերջացո՛ւր»։

Օմարը կանգ առաւ, զղջաց և ոտը Սէիդի լանջքից վերցրեց.

«Ցո՛յց տեսնեմ այդ գրուածքը», ասաց նա։

Սակայն Ամինան թոյլ չտուաւ նրան սրբազան ծրարին դիպչել, մինչև որ նա ձեռքը չլուանար։ Ա-

սում են թէ Օմարը կարդաց Կուրանի ԺԲ. գլուխը, որ այսպէս է սկսվում.

«Ամենողորմ Աստուծու անուամբ՝։ Մենք առաքել ենք Կուրանը ոչ թէ մարդկային ազգին վնասելու համար, այլ ուսուցանելու ճշմարիտ Աստուծու հաւատը, Աստուծու, որ երկրի և երկնքի Արարիչն է։

«Ամենողորմը բազմած է բարձունքի վրայ. Նրան է պատկանում ամեն բան, ինչ որ կայ երկընքում ու երկրի վրայ և ստորերկրեայ սահմաններում։

«Դու բարձրաձայն աղօթք ես կարդում։ Իմացիր որ այդ աւելորդ է։ Աստուծուն յայտնի է սըրտիդ ամեն գաղտնիքը, նոյն իսկ ամենածածուկը։

«Արդարև Ես եմ Աստուած. ինձնից ջոկ Աստուած չկայ։ Ի՛նձ պաշտիր և մի՛ պաշտիր ուրիշին։ Ուրիշ ոչոքի մի՛ վերուղղիր աղօթքդ, բայց միայն ինձ։»

Կուրանի խօսքերն Օմարի սիրտը յուզեցին։ Նա շարունակեց կարդալ և՛ս աւելի զգածուելով, և երբոր հասաւ յարութեան ու դատաստանի նկարագրին, իւր դարձն արդէն կատարեալ էր։

Նա վերկացաւ Օրքհամի մօտ գնալու, բայց արդէն փոխուած սրտով։ Հեզութեամբ դուռը բախեց և թոյլտուութիւն խնդրեց ներս մտնելու։ «Մըտիր, ո՛վ որդիդ Ալ Քաթաբի», գոչեց Մահմեդը։ «Ինչո՞ւ ես եկել»։

«Եկել եմ Աստուծուն և նրա մարգարէին հաւատացողների ընկերութեան մէջ մտնելու»։ Այս ասելուն պէս՝ նա իսլամական հաւատի դաւանանքը կարդաց։ Եւ չուզեց հանգստանալ, մինչև որ իւր դարձը հրապարակաւ չյայտնուի։

Մահմեդը զիջաւ նրա խնդրին և իսկոյն նրա հետ միասին Քեաբէ գնաց Իսլամի ծէսերը հանդիսաբար կատարելու։ Մարգարէին գրկանքից ու թըշնամանքից պաշտպանելու համար Օմարը գնում էր նրա ձախ կողմից, Համզան՝ աջից, և նրանց հետևում էին քառասնից աւելի աշակերտներ։ 'Ի զարմանս բոլոր քաղաքի նրանք լոյս ցերեկով անցկացան Մէկկայի միջով. եօթն անգամ պտոյտ արին Քեաբէի շուրջը, եօթն անգամ շօշափելով սուրբ սև քարն, և ամեն միւս ծէսերը կատարեցին։ Կորէյշացիք շուարած նայում էին այդ թափօրին, սակայն չէին յանդգնում ոչ մօտենալ մարգարէին, ոչ էլ նեղել, որովհետև սարսափած էին այն երկու ահեղ զինուորներից՝ Օմարից և Համզայից, որոնց աչքերը, ինչպէս պատմում են, կորիւններին կորցրած երկու առիւծի աչքերի պէս բոց էին շանթում։

Խիզախ և անվեհեր Օմարը, յայտնապէս գըրգռելով Կորէյշներին, հետևեալ «օրը մէն մենակ գընաց Քեաբէ՝ որպէս մուսլէմ աղօթելու։ Նոյն նպատակով տաճար մտնող մի ուրիշ մուսլէմ արգելքի հանդիպեցաւ, և նրա հետ բիրտ վարուեցան. բայց Օմարին ոչ.ք չդիպաւ, որովհետև նա Աբու Ջահլի եղբօրորդին էր։ Այնուհետև Օմարը գնաց հօրեղբօր մօտ։ «Հրաժարվում եմ քո թևարկութիւնից», ասաց նա. «ես չեմ ուզում աւելի լաւ վիճակ ունենալ, քան թէ իմ հաւատակից եղբայրները»։

Այդ օրից սկսած նա շաղկապեց իւր վիճակը Մահմեդի հետ և նրա ամենաջերմ պաշտպաններից մէկը դարձաւ։

Այսպէս կատարուեցաւ Օմարի դարձը, որ վեր-

ջերն Իսլամի ամենափառաւոր ախոյեանը պիտի հանդիսանար։ Կորէյշացիք ա՛յնպէս էին կատաղած Մահմեդի այս նոր յաղթութեան վրայ, որ Աբու Թալէբը վախեցաւ, թէ մի՛ գուցէ սպանեն եղբօրորդուն մատնութեամբ և կամ յայտնի բռնութեամբ։ Մահմեդը, նրա աղաչանքին տեղի տալով, իւր մի քանի աշակերտների հետ առանձնացաւ նրան պատկանող մի դղեակի կամ բերդի մէջ, որ քաղաքի մօտերքն էր։

Հաշէմեան Աբու Թալէբ ազգապետից և նրա տան միւս անդամներից Մահմեդին և սրա հետևողներին վիճակուած հովանաւորութիւնը, չնայելով որ նրանք համակրօն չէին, գրգռեց Կորէյշեան հակառակ ճիւղի բարկութիւնն և պառակտումն ձգեց ցեղի մէջ։ Այդ ճիւղի պարագլուխ Աբու Սոֆիանը, մարգարէի աղանդը պատճառ բռնելով, անուանարկ արաւ ոչ միայն նրա քարոզն ընդունող ազգականներին, հապա և ամբողջ Հաշէմեան սերունդը, որ թէպէտ և կրօնակից չէր Մահմեդին, բայց և այնպէս պաշտպանում էր նրան խնամութեան ոգով։ Պարզ է որ Աբու Սոֆիանի թշնամութիւնը ծագել էր ոչ միայն անձնական ոխից կամ թէ կրօնական տագնապից, այլ և տոհմային ատելութիւնից։ Նա ձգտում էր իւր տոհմի ձեռքը ձգել քաղաքի պատիւները, որ այնքան ժամանակ Հաշէմեանք էին վայելում։ Բարեսիրտ Աբու Թալէբի վերջին վարմունքը, որով հալածանքից պատսպարում և ապաւինելու բերդ էր տալիս Մահմեդին, առիթ եղաւ Աբու Սոֆիանի և նրա ընկերների համար մի ընդհանուր բանադրանք արձակելու հակառակորդ ճիւղի դէմ։ Ուստի նրանք մի հրովարտակ հրատարակեցին, որ արգելում էր միւս

Կորէյշներին ամուսնանալ և կամ որ և է առևտրական գործ ունենալ Հաշէմեաններւ հետ, մինչև որ դրանք իրենց ազգական Մահմեդին նրանց ձեռքը չմատնեն պատժելու համար։

Այդ հրովարտակը, որ լոյս տեսաւ մարգարէի առաքելութեան եօթներորդ թուականին, գրուած էր մագաղաթի վրայ և Քեաբէում կախուած։ Դա շատ նեղ դրութեան մէջ ձգեց Մահմեդին և նրա աշակերտներին, որոնք երբեմն սովամահ լինելու չափ տանջվում էին իրենց բերդում. մանաւանդ որ Կորէյշեանք բանադրանքը սաստկացնելու և պարէնի մուտքը խափանելու համար մերթ ընդ մերթ պաշարում էին այդ բերդը։

Սակայն տարեկան ուխտագնացութեան ամիսը, երբոր Արաբիայի ամեն կողմերից ուխտաւորներ էին հաւաքվում Մէկկայի մէջ, մի ժամանակաւոր թեթևութիւն բերաւ հալածուած մուսլէմներին։ Այդ սրբազան ամսին, արաբացոց անյիշատակ ժամանակների սովորութեան և օրէնքի համեմատ, ամեն տեսակ թշնամութիւն դադարում էր, և պատերազմող ազգերը հաշտ հաշտ հանդիպում էին իրար՝ աղօթելու համար Քեաբէում։ Այդ միջոցին Մահմեդը սիրտ արաւ դուրս գալու ապաստանից և գնաց Մէկկա։ Սրբազան ամսի ազատութեամբ պաշտպանուած՝ նա մտաւ ուխտաւորների բազմութեան մէջ և սկսաւ քարոզել, աղօթել, իւր ուսմունքը բացատրել և յայտնութիւններ հրատարակել։

Այս կերպով նա շատ աշակերտներ վաստակեց, որոնք հայրենիք վերադառնալով, հեռաւոր տեղեր տարան նոր կրօնի սերմերը։ Նորադարձների թւում

կային և զանազան իշխաններ կամ ցեղապետներ, որոնց օրինակը վարակում էր տոհմակիցներին։ Արաբացիք մի ուռուցիկ ու սեթևեթեալ պատմութիւն են անում մի իշխանի դարձի մասին, և որովհետև դրա մէջ յիշուած են Մահմեդին վերագրուած ամենաերևելի հրաշքներից մի քանիսը, աւելորդ չի լինիլ գէթ համառօտ կերպով յառաջ բերել այդ դարձի հանգամանքները։

Իշխանն էր իւր անհուն գիտնականութեան համար Իմաստուն յորջորջուած Հաբիբ Իբն Մալէքը. նա, ասում են, քաջ հմուտ էր մոգութեան ու գիտութեան և հիմնովին տեղեակ աշխարհիս ամեն կրօններին, որոնց վերաբերեալ բոլոր գրքերը կարդացել էր, և բացի այդ՝ բոլորի հետ էլ գործնական կերպով ծանօթացել, որովհետև հետզհետէ եղած էր և հրէայ և քրիստոնեայ և մոգ։ Իրաւ է որ այդքան ուսում և փորձառութիւն ստանալու համար սովորականից աւելի ժամանակ էր ունեցել, պատճառ որ, նոյն աւանդութեան ասելով, հարիւր ու քառասուն ամեայ ծերունի էր։ Այժմ եկել էր Մէկկա 20,000 զինուորով իւր նորատի Սաթիհա դըստեր հետ, որ ծնուել էր նրա ալևոր հասակում և որի համար ուխտ էր արել աղօթելու Քեաբէում, որովհետև Սաթիհան համր էր, խուլ էր, կոյր էր և իսպառ անդամալոյծ։

Աբու Սոֆիանն և Աբու Ջահլը, վէպի ասութեամբ, կամեցան օգուտ քաղել այդ շատ զօրեղ, սաստիկ կռապաշտ և շատ իմաստուն և այդպիսի ահեղ բանակով եկած իշխանի ներկայութիւնից Մահմեդին կործանելու համար։ Այս պատճառով նրանք յայտնե-

ցին Հաբիբ Իմաստնին սուտ մարգարէի հերետիկոսութիւնն և յորդորեցին պատկառելի իշխանին՝ կանչել նրան իւր՝ Կոպճուտ հովտում նստած բանակն և հրամայել, որ իւր վարդապետութիւնը պաշտպանէ, որովհետև վստահ էին, թէ Մահմեդի յամառութիւնը սուտ ու մոլար ուսման մէջ նրա աքսորման և կամ մահուան առիթ կըտայ։

Աւանդութիւնը պայծառ գոյներով նկարագրում է, թէ ինչպէս կռապաշտ Կորէյշացիք, հոյակապ ու շքեղ զարդարուած, ձիաւոր ու հետի, հպարտ հպարտ գնացին Աբու Սոֆիանի և Աբու Ջահլի առաջնորդութեամբ ներկայ լինել Կոպճուտ հովտում կայանալու մեծահանդէս քննութեանը, և ցոյց է տալիս, թէ որպիսի շքեղ ընդունելութիւն գտան Հաբիբ Իմաստնից, որ բազմած էր ծիրանի վրանում՝ փղոսկրով ու սանդալով զրուագած և ոսկով պատած եբենեայ գահի վրայ։

Մահմեդը նստած էր Քադիջայի բնակարանում, երբ որ այդ ահեղ ատենին ներկայանալու հրաւէր ստացաւ։ Քադիջան տագնապ յայտնեց բարձրաձայն և Մահմեդի աղջիկները վայ ու լացով նրա վզին փաթուեցան, որովհետև կարծում էին, թէ 'ի մահ պիտի գնայ. սակայն Մահմեդը մեղմութեամբ յանդիմանեց նրանց երկիւղն և յորդորեց պպաւինիլ Ալլահին։

Մահմեդը, Աբու Սոֆիան և Աբու Լահաբ Թըշնամիների ցուցամոլութեան հակառակ՝ հասարակ ըզգեստով ժողեցաւ քննութեան վայրին. Նա հագած էր սպիտակ պատմուճան, սև չալմա և Ադէնի բրդից շինած մի թիկնոց, որ երբեմն պատկանել էր իւր Աբդ ալ Մօթալլէբ պապին։ Նրա գանգուրները ծածանվում էին

ուսերի վրայ. մարմնից շողում էր մարգարէութեան խորհրդաւոր լոյսը, և թէպէտ մօրուքը չէր օծել և բացի մուշկից ու քափուրից ուրիշ նիւթ չէր գործածել, այնու ամենայնիւ նրա անցկենալու ժամանակ ամէն ուրեք մի անոյշ բուրմունք փռուեցաւ, որ արաբական գրագէտների ասելով՝ անմիջապէս նրա մարմնից էր դուրս գալիս։

Առջևից գնում էր ջերմեռանդ Աբու Բեկրը՝ ծիրանափայլ բաճկոնով, սպիտակ չալմայով և կարմիր մուճակները ցոյց տալու համար՝ վերարկուի փեշերը թևի վրայ ձգած։

Անհամբերելի լռութիւն տիրեց բազմութեան, երբոր մարգարէն մտեցաւ, շարունակում է աւանդութիւնը։ Ոչ մի ձայն, ոչ մի շշունջ չէր լսվում։ Նոյն իսկ անբան անասունները լռեցին և նժոյգների վրնջելը, ուղտերի կառաչելն և էշերի զռալը միանգամից դադարեցաւ։

Պատկառելի Հաբիբը մարդասիրութեամբ ընդունեց նրան և հենց առաջին հարցումով բուն խնդիրը շօշափեց։

«Լսած եմ թէ դու Աստուծու առաքեալ ես անուանում քեզ։ Այդպէս է թէ ոչ։»

«Այդպէս է», պատասխանեց Մահմեդը։ «Ալլահ առաքել է ինձ, որ ճշմարիտ հաւատը քարոզեմ»։

«Բարի է», նկատեց իմաստունը. «բայց իւրաքանչիւր մարգարէ իւր առաքելութիւնը հաստատելու համար նշաններ ու հրաշքներ է գործել։ Նոյն ունէր մի ծիածան, Սողոմոնը՝ մի խորհրդաւոր մատանի, Աբրահամը՝ հնոցի հուր, որ սառչում էր իւր հրամանով, Իսահակը՝ մի խոյ, որ իւր փոխարէն զո-

հուեցաւ, Մովսէսը՝ մի հրաշագործ գաւազան, իսկ Յիսուսն իւր մի խօսքով կեանք էր տալիս մեռելներին և սաստում ալիքներին։ Արդ, եթէ իրաւ մարգարէ ես, դու էլ մեզ մի հրաշալի ապացոյց տուր»։

Մահմեդի աշակերտների վրայ սարսուռ եկաւ այդ պահանջից, իսկ Աբու Ջահլը ծափ տալով Հաբիբ իշխանի իմաստութիւնը գովաբանեց։ Սակայն մարգարէն արհամարհութեամբ յանդիմանեց նրան։ «Լռիր դու, շուն, որ ազգատոհմիդ նախատինքն ես», գոչեց նա. ապա թէ սկսաւ Հաբիբի կամքը կատարել։

Մահմեդից պահանջուած առաջին հրաշքն էր իմանալ, թէ ինչ ունի Հաբիբն իւր վրանում և ինչու է իւր հետ Մէկկա բերել։

Այդ լսելիս Մահմեդը կռացաւ մինչև գետին և նշաններ գծեց աւազի վրայ. յետոյ ուղիղ կանգնեց և ասաց. «Ո՜վ Հաբիբ, դու բերել ես Սաթիհա աղջըկանդ, որ խուլ է, մունջ է, անդամալոյծ է և կոյր է, նրա համար երկնքից բժշկութիւն ստանալու յուսով։ Գնա՛ մտիր վրանդ, խօսիր հետը, լսիր նրա պատասխանն և իմացիր, որ Աստուած ամենազօր է»։

Ալևոր իշխանն իւր վրանը փութաց։ Աղջիկը նրա դէմ վազեց բազկատարած՝ բոլորովին առողջ մարմնով, զուարթ աչքով, ժպտուն դէմքով և անամպ գիշերուայ լուսնից էլ պայծառ գեղեցկութեամբ։

Հաբիբի պահանջած երկրորդ հրաշքը և՛ս աւելի դժուար էր։ Այդ էր՝ գերբնական խաւարով ծածկել միջօրէի երկինքն և հրամայել լուսնին, որ վայր իջնէ և Քեաբէի կտրի վրայ դադարէ։

Մարգարէն այդ հրաշքն էլ առաջնի պէս հեշտ

կատարեց։ Նրա հրամանով տուընջեան լոյսն խաւա-շիջաւ խաւարի մէջ. լուսինը շեղուեց իւր ընթաց-քից և սկսաւ մոլորուիլ երկնքում։ Բայց մարգարէի անդիմադրելի զօրութիւնը վայր քաշեց նրան երկ-նակամարից և ուղիղ Քեաբէի կտրին կանգնեցրեց։ Այնուհետև լուսինն եօթն անգամ տաճարի շուրջը պտոյտ եկաւ և երերուն ու թեթև շարժմամբ մի հրեղէն սրի պէս Մահմեդի առջև կանգնելուց յետոյ՝ խաղաղութեան ողջոյն տուաւ և մարգարէ հռչակեց նրան։

Այդ հրաշքով էլ անբաւական, շարունակում է աւանդութիւնը, Մահմեդը ստիպեց հնազանդ լուս-նին՝ իւր վերարկուի աջ թևը մտնել և ձախից դուրս գալ. յետոյ երկու մասն բաժանուելով գնալ դէպի արևելք և արևմուտք, ապա թէ կրկին միանալ երկ-նակամարի մէջ տեղն և մի փայլուն գունտ կազմել։

Աւելորդ է ասել, որ Հաբիբ Իմաստունը համո-զուեցաւ՛ այդ հրաշքներով ու դարձի եկաւ. դարձի եկան և չորս հարիւր եօթանասուն մէկկացիք։ Սա-կայն Աբու Ջահլը և՛ս աւելի խստացաւ իւր անհա-ւատութեան մէջ ու գոչեց, թէ այդ բոլորը Մահմե-դի կախարդական հնարներով յառաջ բերուած առ աչօք տեսիլներ են և պատրանք։

Ծանօթութիւն։ Վերոյիշեալ հրաշքները չեն գտնվում ճշգրտասէր Աբուլֆէդա պատմաբանի գրուածքում, և իս-լամական ընտիր հեղինակներից ոչօք բան չէ ասում դը-րանց մասին. այլ դրանք մնացած են աւանդութեան մէջ և երկարօրէն յիշատակուած անվաւեր մատեաններում Պէտք է նկատել, որ ինքն Մահմեդը միայն մի հրաշք էր ճանաչում, այն է՝ Կուրանը։

## ԺԱ.

*Բանադրանքի Թուղթը խորհրդաւոր կերպով ջնջվում է։— Մահմեդը վերադառնում է Մէկկա։—Աբու Թալէբի եւ Քադիջայի մահը։—Մահմեդի նշանուիլն Այէշայի հետ։—Ամուսնանալը Սաւդայի հետ։—Կորէյշացիք նորոգում են հալածանքը։—Մահմեդն ապաստան է որոնում Թայէֆում։—Նրա արտաքսուիլն այն տեղից։—Ջինների այցելութիւնը Նակլահի հովտում։*

Արդէն երեք տարի է որ Մահմեդն և իւր աշակերտներն առանձնացած էին Աբու Թալէբի դղըղեակում։ Բանադրանքը դեռ գտնվում էր Քեաբէի մէջ, արգելելով նրանց հաղորդակցել իրենց տոհմի միւս անդամների հետ։ Նոր աղանդը, ինչպէս որ միշտ լինում է, հալածանքից աճում էր։ Մէկկայում շատերը նրա կողմն անցան. Կորէյշների մէջ ծագած անբնական թշնամութեան դէմ տրտունջներ բարձրացան, և Աբու Սոֆիանն սկսաւ ամաչել, որ այն աստիճան սաստկացրել էր իւր ատելութիւնն ազգականներից մի քանիսի դէմ։

Յանկարծ լուր ելաւ, թէ Քեաբէում պահուած բանադրանքի մագաղաթն այն աստիճան ջնջուել է, որ բացի առաջին խօսքերից—«Յանուն Քո, ով ամենակարող Աստուած»—էլ ոչ մի գիր չէ մնացել վրան։ Հետևաբար հրովարտակը ոչնչացած համարուեցաւ, և Մահմեդն ու իւր աշակերտներն անխափան Մէկկա վերադառնալու իրաւունք ստացան։

Այդ օրինական արգելքի խորհրդաւոր բարձման մէջ բարեպաշտ մուսլէմները գերբնական զօրութեամբ յօգուտ մարգարէի կատարուած մի նոր

հրաշք նշմարեցին. թէ և անհաւատները կասկած ունէին, թէ այդ արգելագիրը, որի հետևանքներն արդէն նոյն իսկ Աբու Սոֆիանի համար նեղիչ էին, մի անյայտ մարդու ձեռքով էր եղծուել։

Մահմեդի և իւր աշակերտների Մէկկա վերադառնալուն անմիջական հետևանքն այն եղաւ, որ բազմաթիւ մարդիկ թէ քաղաքի բնակիչներից և թէ նորեկ ուխտաւորներից նրա հաւատն ընդունեցին։ Այս նոր աղանդի զօրանալուց կորէյշների զգացած դառնութիւնը մեղմացաւ, երբոր նրանք լուր առին, թէ պարսիկները յաղթել են յոյներին և տիրել են Ասորիքին ու Եգիպտոսի մէկ մասին։ Կռապաշտ կորէյշացիք հրճվում էին յոյն քրիստոնեաների պարտութեան վրայ, կարծելով թէ նրանց կրօնը, որ կռապաշտութեան հակառակ էր, և Մահմեդի քարոզածը միևնոյն են։ Վերջինս նրանց բերկանքի ու հեգնութեան դէմ պատասխանեց Կուրանի երեսներորդ գլուխը շարադրելով, որ այսպէս է սկսվում. «Յոյները պարտուեցան պարսիկներից. բայց հինգ տարուց յետոյ նրանք կընկճեն պարսիկներին։»

Ջերմեռանդ Աբու Բեկրը տասն ուղտի գրաւ բռնեց, թէ այդ գուշակութիւնն երեք տարուց յետոյ կըկատարուի։ «Աւելցրո՛ւր գրաւդ, բայց ժամանակն երկարցուր», շշնջեց նրան մարգարէն։ Աբու Բեկրը հարիւր ուղտ գրաւ դրաւ և ինն տարուայ միջոց որոշեց։ Մարգարէութիւնը գլուխ եկաւ և Աբու Բեկրը գրաւը տարաւ։

Իսլամական գիտունններն ամենայն վստահութեամբ յիշատակում են այդ միջադէպքը իբրև մի ստոյգ ապացոյց, թէ Կուրանն երկնքից էր իջած և

Մահմեդը մարգարէութեան շնորհ ունէր։ Բայց եթէ իրօք էլ այդ բոլորը կատարուած լինի, դա ցոյց կըտայ միայն մի նուրբ նախատեսութիւն, որ ծագած էր պատերազմող ուժերի իսկական վիճակը ճանաչելուց։

Մէկկա վերադառնալուց փոքր ինչ յետոյ Մահմեդը հրաւէր ստացաւ իւր հօրեղբօր Աբու Թալէբի աչքերը փակելու, որ այժմ թէ բարքով և թէ ալիքով պատկառելի ութսունամեայ ծերունի էր։ Մահուան ժամը մօտենալուն պէս Մահմեդը յորդորեց նրան արտասանել հաւատի հանգանակը, որ Իսլամի ասելով, անհրաժեշտ է անել երջանիկ յարութեան արժանանալու համար։

Երկրային հպարտութեան կայծը դեռ չէր մարած հոգեվար ծերունու սրտում։ «Ով եղբօրորդիս,» պատասխանեց նա, «եթէ ես այդ հանգանակը կրկնեմ, Կորէյշացիք կ՚ասեն, թէ մահուան երկիւղից այդպէս արի»։

Աբուլֆէդա պատմաբանը պնդում է թէ Աբու Թալէբն իրօք որպէս հաւատացող աւանդեց հոգին։ «Ալ Աբբասը», ասում է նա, «կանգնած էր մեռնող եղբօր մահճի մօտ և նրա շրթունքի շարժումը տեսնելով, ականջը մօտեցրեց նրա վերջին խօսքերը լսելու համար։ Այդ մրմունջը ցանկալի դաւանութիւնն էր»։ Ուրիշների ասելով՝ նրա յետին խօսքերն էին. «Ես մեռնում եմ Աբդ Ալ Մօթալլէբի հաւատի մէջ»։ Մեկնիչներն աշխատեցան նրանով հաշտեցնել այդ երկու զրոյցները, որ հաստատեցին, թէ Աբդ ալ Մօթալլէբն իւր կեանքի վերջին օրե-

րում հրաժարուել էր կռապաշտութիւնից և հաւատացել միայն Աստուծուն։

Մեծարգոյ Աբու Թալէբի մահուանից երեք օր չանցած՝ Մահմեդի հաւատարիմ Քադիջա ամուսինն էլ գերեզման իջաւ։ Նա վաթսունհինգ տարեկան էր։ Մահմեդը դառնապէս ողբաց նրա մահն և սուգ բռնեց նրա և Աբու Թալէբի համար, ուստի և այդ տարին սգոյ տարի կոչուեցաւ։ Տրտմած մարգարէին սփոփելու համար, ասում է Աբու Հօրայրա պատմաբանը, Գաբրիէլ հրեշտակապետն աւետեց նրան, թէ Քադիջային մի արծաթեղէն պալատ է շնորհուած երկնային դրախտում 'ի հատուցումն իւր ջերմեռանդ հաւատի և Իսլամին մատուցած արագահաս ծառայութեան։

Թէպէտ և Քադիջան Մահմեդի հետ ամուսնանալիս նրանից մեծ էր տարիքով և արդէն բոլորել այն հասակը, ուր արևելեան կանայք դեռ գրաւիչ են, և թէպէտ մարգարէն ցանկասէր մարդ էր, բայց և այնպէս, ասում են, մինչև վերջը հաւատարիմ մնաց Քադիջային և բնաւ օգուտ չքաղեց բազմակնութիւն թոյլ տուող արաբական օրէնքից՝ իւր տունը մի ուրիշ կին մտցնելու համար։ Սակայն երբ Քադիջան հող մտաւ և մարգարէի թախծութեան առաջին կսկիծը շիջաւ, նա ուզեց մի նոր ամուսնութեամբ մխիթարել իւր սիրտը, և այդ ժամանակից սկսած շատ կանայք ունեցաւ։ Նրա օրէնքը թոյլ էր տալիս հետևողներին չորս կին առնել. սակայն ինքը չկամեցաւ այդ թուով շատանալ, և ասում էր, թէ մարգարէն, իբրև առանձին շնորհք և արտօնութիւն վայելող անձն, պարտաւոր չէ կապել իրեն

հասարակ մահկանացուներին վերաբերեալ օրէնքով։

Իւր առաջին ընտրութիւնը նա արաւ Քադի-ջայի մեռնելուց մի ամիս յետոյ և ընտրեց Այէշա կո-չուած չքնաղ մանկան, որ իւր հաւատարիմ Աբու Բեկր աշակերտի աղջիկն էր։ Այս կապով մտա-դիր էր գուցէ և՛ս աւելի միացնել իւր հետ այդ քաջ մարդուն, որ այնքան անուանի էր իւր տոհմի մէջ։ Սակայն Այէշան դեռ վեցամեայ էր, և թէպէտ ա-րևելեան երկնքի տակ կանայք շուտ են բողբոջում, նա շատ տհաս էր ամուսնական կեանքի համար։ Ուստի Մահմեդը միմիայն նշան տուաւ նրան և երկու տարով յետաձգեց հարսանիքը, որպէս զի այդ միջոցին իւր հարսն ազնուական օրիորդներին ան-հրաժեշտ արուեստների մէջ հրահանգուի։

Այս դեռափթիթ հասակում ընտրած ամուսնուն մարգարէն աւելի կաթոգին սիրով սիրեց, քան թէ իւր ամեն հետագայ կանանց։ Դրանք բոլորն էլ ամուս-նական կեանքի ճաշակն արդէն առաջուց առած էին. միայն Այէշան է, ասում էր նա, որ իբրև մի անա-րատ կոյս իւր գիրկը մտաւ։

Սակայն մինչև Այէշայի հասունանալը պատշա-ճաւոր սփոփանքից զուրկ չմնալու համար Մահմեդը կին առաւ Սաւդային, որ Սոկրան աշակերտի այրին էր։ Այս Սաւդան մարգարէի Ֆաթիմէ դստեր դա-յեակն էր եղած և մէկն այն առաջին հաւատացող-ներից, որոնք Մէկկայում հալածուելով, փախած էին Հաբէշստան։ Ասում են, թէ նա դեռ աքսորում գըտ-նուելիս խորհրդաւոր կերպով իմացել էր իրեն վի-ճակուելու պատիւը, որովհետև մարգարէն երևցել էր նրան երազի մէջ և գլուխը նրա կուրծքին դրել։ Նա

պատմած է եղել Սոկրան ամուսնուն այդ երազը, և Սոկրանն ասել, թէ ինքը շուտով կըմեռնի և նա մարգարէի կինը կըդառնայ։

Մահմեդը շուտով զգաց, թէ ինչ կորուստ ունեցաւ զրկուելով Աբու Թալէբից, որ ոչ միայն իւր գորովալից ազգականն էր, այլ և հաստատուն ու հզօր պաշտպանը Մէկկայում։ Այդ ծերունու մահից յետոյ՝ էլ մարդ չմնաց, որ կարողանար սանձ դնել ու դիմադրել Աբու Սոֆիանի և Աբու Ջահլի թշնամութեան։ Շատ չանցած՝ դրանք մի այնպիսի հալածման ոգի արծարծեցին կորէյշների մէջ, որ այլ ևս Մէկկայում մնալը վտանգաւոր դարձաւ Մահմեդի համար։ Այս պատճառով նա իւր ազատագրած Սէիդի ուղեկցութեամբ գնաց ապաստան որոնելու Թայէֆում, Մէկկայից մօտ եօթանասուն մղոն հեռու կեցած մի փոքրիկ, բայց ամուր քաղաք, որի բնակիչները Թաքէֆացիք, կամ Թաքէֆեան ցեղի արաբներ էին։ Թայէֆն Արաբիայի ամենասիրուն վայրերից մէկն էր՝ այգիներով, սեխաստաններով և պարտէզներով շրջապատուած, ուր առատ աճում էին դեղձիք ու սալորիք, նռնենիք, կապոյտ ու կանաչ թզենիք, լուտասենիք և կանաչ ու ոսկեփայլ պտուղներով ուռճացած արմաւենիք։ Նրա արտերը, համեմատութեամբ շրջակայ անապատների ամլութեան, այն աստիճան արգաւանդ էին և դաշտերն այնպէս դալար, որ արաբացիք առասպել էին հնարել, թէ նա առաջ Ասորիքի մէկ մասն էր, որ ջրհեղեղի ժամանակ կտրուելով ու հօսանքից մղուելով դէպի իրենց երկիրն է բերուել։

Մահմեդը վստահութեամբ մտաւ Թայէֆ, որով-

հետև յուսով էր պաշտպանութիւն գտնել իւր ազգեցիկ Ալ Աբբաս Հօրեղբօր շնորհիւ, որ այնտեղ կալուածքներ ունէր։ Սակայն այդ տեղից էլ վատ ապաստան չէր կարող ընտրել։ Թայէֆը կռապաշտութեան նեցուկն էր. գլխաւորապէս այն տեղ էին պաշտում Էլ Լաթ կոչուած դիցուհուն, որի մասին արդէն յիշատակել ենք։ Նրա քարեղէն կուռքը զարդարուած էր պաշտողների նուիրած ակներով ու գոհարներով։ Ժողովուրդը կենդանի էակ և Աստուծու դուստր էր համարում նրան, և այդպիսի հաւատով աղաչում բարեխօս լինել Աստուծու առջև։

Մահմեդը մէկ ամսի չափ մնաց Թայէֆում, բայց բնակիչներից աշակերտ որսալու ջանքը զուր անցաւ։ Երբ սկսում էր քարոզել, ձայնը գոռում գոչումով խեղդում էին։ Մի անգամ չէ, այլ շատ անգամ վէրք ընդունեց իւր վրայ նետուած քարերից, որոնց դէմ զուր էր աշխատում պաշտպանել հաւատարիմ Սէիդը։ Վերջապէս ժողովրդի մոլեգնութիւնն այն տեղ հասաւ, որ նրան քաղաքից վռնտեցին, իսկ ստրուկներն ու երեխաները մինչև անգամ պարսպից հեռու հալածեցին հայհոյանքով։

Իւր անքոյթ համարած ապաստանից այսպիսի խայտառակութեամբ վռնտուած և հայրենիք վերադառնալու անվստահ Մահմեդը մի քանի ժամանակ անապատում մնաց, մինչև որ Սէիդը մէկկացի բարեկամներից մէկի մօտ ապաւէն գտնէր նրա համար։ Այս նեղ դրութեան մէջ նա ունեցաւ մի գերբնական այցելութիւն կամ տեսիլ, որ միշտ ունենում էր առանձնութեան ու տագնապի ժամանակ, երբ նա, մեր կարծիքով, գրգռուած էր լինում հոգեպէս։

Իւր ասելով՝ այդ դէպքը պատահեցաւ «երեկոյեան աղօթքից յետոյ, Նաքլահի հովտի լռիկ անկիւնում, Մէկկայի ու Թայէֆի մէջ տեղը»։ Մինչ նա Կուրան էր կարդում, այն տեղով անցնող ջիները կանգառին նրան լսելու։ Դրանք հոգևոր էակներ են՝ ոմանք բարի, ոմանք չար, և մարդկանց պէս հանդերձեալ վարձատրութեան ու պատժի ենթակայ։ «Լսեցէ՛ք, լսեցէ՛ք», ասացին ջիները մէկը միւսին։ Յետոյ լռեցին և սուսիկ ականջ էին դնում, մինչ Մահմեդը շարունակում էր գիրքը կարդալ։ Վերջապէս նրանք ասացին. «Արդարև մի հրաշալի ճառ լսեցինք, որ ուղղակի դէպի ճշմարիտ օրէնքն է տանում. ուստի և հաւատում ենք դրան»։

Այս ոգիների այցելութիւնն սփոփեց Մահմեդին Թայէֆից արտաքսուելուն փոխարէն, ցոյց տալով, որ թէնչքան էլ իւր անձն և ուսմունքը մերժուած լինէին մարդկանցից, բայց դարձեալ յարգելի են հոգևոր էակների աչքում։ Գոնէ այդպէս կարելի է հետևցնել Կուրանի ԽԶ. և ՀԲ. գլուխներից, ուր նա յիշատակութիւն է անում այդ մասին։ Այդ անցքից յետոյ մարգարէն սկսաւ քարոզել, թէ ինքն առաքուած է ոչ միայն մարդկային ազգի, այլ և ջիների փրկութեան համար։

*Ծանօթութիւն։* Ջիների հաւատը դեռ Մահմեդից շատ առաջ Արևելքում տարածուած բան էր։ Արևելցիների կարծիքով այդ ոգիները սիրում են շրջել ամայի տեղերում, մանաւանդ գիշերուայ դէմ,—մի սնապաշտութիւն, որ յատուկ է անապատում բնակուող ազգերին։ Արաբացիք ենթադրում են, թէ իւրաքանչիւր հովիտ կամ ամուլ դաշտ իւր առանձին ջիներն ունի, որոնք հպատակ են մէկ իշխանի և թափառում են գիշերով՝

ուխտաւորներին և ճամբորդներին հալածելու համար, Այս պատճառով նրանք՝ երեկոյեան մութն իջնելուց յետոյ մի անմարդաբնակ տեղ մտնելիս՝ սովոր են պաշտպանութիւն խնդրել ջիների մեծից իրեն ենթակայ չար ոգիների որոգայթի դէմ։

Անապատում բարձրացող և մրրիկի պէս ընթացող աւազի սիւները, նրանց ասելով, որ և է չար ջինի և հսկայազօր դևի գործ են։

Մի մի ժամանակ բակ ու տուն ապականող օձերն էլ մերթ բարի և մերթ չար ջիներ են։ Մահմեդը զգուշացնում էր, որ չփութան սպանել տան օձին։ „Նախ հրամայիր որ հեռանայ. եթէ չանսայ, այն ժամանակ սպանիր, որովհետև այդ նշան է, թէ նա մի հասարակ զեռուն է և կամ թէ չար ոգի“։

Արևելցոց առասպելն ասում է, թէ հին ժամանակները ջիներն երկինք մտնելու իրաւունք ունէին, բայց թէ իրենց լրտեսող բնաւորութեան համար արտաքսուել են այն տեղից։ Մինչև այժմս էլ նրանք սովոր են ամեն բան թաքուն դիտել, հետազօտել, ամեն բանի միջամուխ լինել, և երբեմն աշխատում են աստղերի վրայ բարձրանալ՝ լսելու և տեսնելու, թէ ինչ է պատահում այն տեղ։ Սակայն պահապան հրեշտակները հրեղէն սրով հալածում են նրանց։ Վայր ընկնող աստղերն և կամ մետէօրները, մուսլէմների ասելով, հենց այն աստղերն են, որ պահապան հրեշտակները նետում են այդ ձանձրալի ջիների ետևից։

Աւանդութիւն էլ կայ, թէ երկիրն առաջ ջիներով էր բնակուած, բայց թէ նրանք ըմբոստացան Տիրոջ դէմ, տիրեցին երկրին և երկու հազար տարի վրան բռնացան։ Վերջապէս նրանց դէմ առաքուեցաւ Ազազիլն կամ Արուսեակը. սա ջարդեց ջիներին և գահավէժ արաւ նրանց Ջիան բէն Ջիան թագաւորին, որ եգիպտական բուրգերի հիմնողն էր։ Այնուհետև Ջիանի կախարդական վահանը Սողոմոն իմաստնի ձեռքն անցաւ, և դրանով էր, որ նա դիմադրեց մոգերի բժժանքին ու չար դևերի հրապոյրներին։ Պարտուելուց և ընկճուելուց յետոյ ապստամբ ոգի-

ներն աքսորուեցան երկրի ամենամութ անկիւնը, և միայն այն ժամանակ Աստուած ստեղծեց Ադամին, սակայն առանց օժտելու նրան վտանգաւոր ձիրքերով, և տրւաւ նրան երկիրը բնակութեան համար։

Հրեշտակները, մուսլէմների կարծիքով, ստեղծուած են լուսափայլ ակներից, ջինները՝ անծուխ կրակից, իսկ Ադամը՝ հողից։

Կուրանի ՀԲ. գլխի մէջ, ուր Մահմեդը յիշում է ջիների երևիլը Նաքլահի հովտում, ջիներից մէկը հետևեալ միամիտ բանն է պատմում իրենց մասին.

„Մի ժամանակ մենք ուզեցինք լրտեսել, թէ ինչ է լինում երկնքի վրայ, բայց տեսանք որ հրեշտակները պահպանում են նրան հրեղէն սրերով։ Այնուհետև նստանք աստղերի վրայ՝ իմանալու, թէ ինչ են խօսում նրանց բնակիչները· բայց ո՛վ որ ականջ էր դնում, նրան իսկոյն հալածում էին երկնային հրով։ Մեր մէջ կան և բարեպաշտ մուսլէմներ և ճշմարտութիւնից խոտորուածներ։ Իսլամի հետևողն արդար շաւղով է յառաջ գնում· իսկ ճշմարտութիւնից շեղուողը՝ գեհենի հրոյն բաժին լինում։“

## ԺԲ.

*Մահմեդի գիշերային ուղեւորութիւնը Մէկկայից Երուսաղէմ եւ այն տեղից՝ եօթներորդ երկինքը։*

Երբոր Մահմեդին իմաց տուին, թէ ապաստանն արդէն պատրաստ է իւր Մութէմ իբն Ադի աշակերտի տանը, նա սիրտ արաւ Մէկկա վերադառնալու։ Նաքլահեան հովտի գերբնական այցելութեանը շուտով յաջորդեց մի և՛ս աւելի հրաշալի տեսիլք կամ յայտնութիւն, որ անթիւ մեկնութիւնների ու կարծիքների նիւթ է տուել բարեպաշտ մուսլէմներին։ Մեր խօսքը մեծահռչակ գիշերային ուղևորութեան վրայ է Մէկկայից դէպի Երուսաղէմ և այն տեղից՝

եօթներորդ երկինքը։ Այս դէպքի մասնաւոր պարագաները հիմնուած են լոկ աւանդութեան վրայ, թէ և հաղորդվում են որպէս Մահմեդից լսուած բաներ. ոմանք սակայն մի քանի ցիր ու ցան վկայութիւններ են բերում Կուրանից դրանց ճշդութիւնը հաստատելու համար։

Մտադիր չենք լրիւ պատմելու այդ տեսիլքի կամ յայտնութեան անհեթեթ ու ցնորական հանգամանքները. այլ կըփորձենք միայն էական մասերն ուրուագծել։

Նկարագրութեան նայելով՝ այդ դէպքի գիշեռուայ պէս խաւար և իւր լռութեամբ սոսկալի գիշեր ոչ մի ժամանակ չէր եղել։ Ոչ աքաղաղի երգ է լսուել այդ գիշերը, ոչ շան հաչիւն, ոչ վայրենի գազանների մռնչիւն, ոչ էլ բուի վայվայիւն։ Ջրերն անգամ դադարել են կարկաչել, հողմերը հնչել. ամբողջ բնութիւնն ասես թէ անշարժ և մեռած է եղել։

Կէս գիշերին Մահմեդը յանկարծ մի ձայն լըսեց, որ գոչում էր. «Զարթի՛ր, ո՛վ դու քնասէր»։

Առջևը կանգնած էր Գաբրիէլ հրեշտակը։ Հրեշտակի ճակատը զուարթ ու պարզ էր, երեսի գոյնը ձիւնափայլ, հերքը ուսերին ծփին։ Թևերը պսպլում էին շլացուցիչ գոյներով, հանդերձն էր ոսկեճամուկ և մարգարիտներով զարդարուած։

Նա մօտեցրեց Մահմեդին մի սպիտակ նժոյգ՝ հրաշալի կերպարանքով ու ձիրքերով, որի նմանը մարգարէն իւր օրումը չէր տեսած, և արդարև այդ նժոյգը տարբեր էր երբ և է ապրած անասուններից։ Նրա դէմքը մարդկային էր, իսկ այտերը ձիու. աչքերը նման էին յակնթի և աստղերի պէս շողշո-

դուն։ Նա ունէր լուսաճաճանչ արծուի թեւեր, եւ ամբողջ մարմինը գոհարների ու ակների կայծակունք էր արձակում։ Այդ ձին մատակ էր եւ Ալ Բորակ կամ Փայլակն էր կոչւում իւր ակնախտիղ պայծառութեան եւ հրաշալի արագութեան համար։

Մահմեդն ուզում էր նստել այդ գերահրաշ մատակի վրայ, բայց հենց որ աջը դէպի նա մեկնեց, ձին ծառացաւ ու վրնջեց։

«Հանդարտ, Բորակ», ասաց Գաբրիէլը. «յարգիր Աստուծու մարգարէին։ Ոչ մի ժամանակ չէ նստել վրադ մի մահկանացու ադամորդի, որ սրանից աւելի սիրուած լինէր Ալլահից»։

«Ո՜վ Գաբրիէլ», պատասխանեց Ալ Բորակը, խօսելու շնորհ ստանալով, «միթէ մի ժամանակ չէ՞ր հեծել վրաս Աստուծու սիրելի Աբրահամը՝ իւր Իսմայէլ որդու մօտ գնալու համար։ Ո՜վ Գաբրիէլ, արդեօք սա չէ՞ միջնորդը, բարեխօսը, նոր հաւատի հիմնադիրը։»

«Դա՛ է, դա՛, ո՛վ Բորակ, դա է Մահմեդ իբն Աբդալլահը, Երջանիկ Արաբիայի մէկ ցեղից սերուած ճշմարիտ հաւատացողը։ Դա է ադամորդոց գլուխը, Աստուծու առաքեալների ամենամեծը, մարգարէների կնիքը։ Ոչ մի արարած արքայութիւն չի մտնիլ առանց դրա միջնորդութեան։ Երկինքը դրա աջ կողմն է՝ վարձատրելու իւր ուսման հետեւողներին, եւ գեհենի հուրը՝ ձախ կողմը, ուր գլորուելու են այդ ուսման բոլոր հակառակորդները։»

«Ո՜վ Գաբրիէլ,» աղաչեց Ալ Բորակը, «յանուն այն հաւատի, որ կայ սրա ու քո միջեւ, համոզիր սրան բարեխօս լինել ինձ համար յարութեան օրը։»

«Վստահ եղիր, ո՛վ Բորակ», գոչեց Մահմեդը. «իմ միջնորդութեամբ դու անպատճառ արքայութիւն կըմտնես»։

Մարգարէն այդ խօսքերն ասաց թէ չէ՝ կենդանին մօտեցաւ նրան, թոյլ տուաւ իւր վրայ հեծնել և նրա հետ միասին Մէկկայի լեռներից վեր սլացաւ։

Մինչդեռ նրանք փայլակի պէս թռչում էին երկնքի ու երկրի միջև, Գաբրիէլը բարձրաձայն գոչեց. «Կանգնի՛ր, Մահմեդ. գետին իջիր և աղօթք արա, երկու անգամ ծունր դնելով։»

Երկիր իջան, և աղօթքն աւարտելուց յետոյ Մահմեդն ասաց.

«Ո՜վ սիրելի բարեկամ, ինչո՞ւ համար հրամայեցիր, որ այս տեղ աղօթք անեմ։»

«Որովհետև սա Սինա լեռն է, որի վրայ Աստուած խօսել է Մովսէսի հետ։»

Վերստին ճախր առնելով դէպի վեր, սկսան նորից օդը ճեղքել, մինչև որ Գաբրիէլն երկրորդ անգամ ձայն արձակեց. «Կանգնի՛ր, Մահմեդ, վայր իջիր և աղօթի՛ր՝ հանդերձ երկու ծնրադրութեամբ։»

Իջան, Մահմեդն աղօթք արաւ և դարձեալ հարցրեց.

«Ինչո՞ւ հրամայեցիր, որ ճիշդ այս տեղ աղօթք անեմ»։

«Որովհետև սա Բեդղեհէմն է, ուր որ ծնաւ Յիսուսը, Մարիամի որդին։»

Նրանք շարունակեցին իրենց թռիչքն օդի միջով, մինչև որ մի ձայն հնչեց աջ կողմից, որ գոչում էր.

«Դադարի՛ր գէթ մի վայրկեան, որպէս զի կարողանամ խօսել քեզ հետ։ Ես եմ աշխարհիս վրայ ամենից աւելի քեզ անձնուէր էակը։»

Բայց Բորակը յառաջ փութաց, և Մահմեդը կանգ չառաւ. նա զգում էր, որ ոչ թէ ինքը, այլ միայն ամենօրհնեալ և ամենազօր Ալլահն է կարող Բորակի ընթացքը զսպել։

Այժմ ձախ կողմից հնչեց մի ուրիշ ձայն, որ միևնոյն խօսքերով դադարելու հրաւէր էր կարդում Մահմեդին. սակայն Բորակը դարձեալ ճեպեց դէպի յառաջ, և Մահմեդը կանգ չառաւ։

Այժմ նա տեսաւ իւր առջև երկրիս ամեն զանձերով ու պերճութեամբ զարդարուած մի հրաշագեղ օրիորդ, որ հրապուրիչ ժպիտն երեսին՝ նշան էր անում նրան աչքով։

«Գէթ մի վայրկեան դադարիր, ո՛վ Մահմեդ, որ կարողանամ խօսել քեզ հետ։ Ես եմ աշխարհիս վրայ ամենից աւելի քեզ անձնուէր էակը։»

Բայց Բորակը շտապում էր, և Մահմեդը չէր կանգնում. Նա տեսնում էր, որ ոչ թէ ինքը, այլ միայն փառաւորեալ և ամենազօր Ալլահն է կարող ձիի ընթացքը նահանջել

Սակայն դառնալով Գաբրիէլին նա հարցրեց.

«Այդ ի՞նչ ձայներ էին, որ լսեցի, և ո՞վ էր այն կոյսը, որ ինձ աչքով նշան էր անում։»

«Առաջին ձայնը, ո՛վ Մահմեդ, մի հրէի ձայն էր։ Եթէ նրան ականջ դնէիր, բոլոր ազգդ հրէութիւն կ՚ընդունէր։

«Երկրորդը քրիստոնէի ձայն էր, և եթէ նը-

րան ականջ դնէիր, ամբողջ ազգդ քրիստոնէութեան կրդիմէր։

«Նոյսն էր աշխարհը՝ իւր ամեն գանձերով, ունայնութեամբ ու պատրանքով զարդարուած։ Եթէ նրան ականջ դնէիր, քո ժողովուրդն այս աշխարհի հրապոյրների ետևից կընկնէր և կորստեան կըմատնուէր՝ փոխանակ յաւիտենական երջանկութեան դիմելու։»

Օդային արշաւը շարունակելով, նրանք հասան Երուսաղէմի տաճարի դրան, ուր Մահմեդը Բորակից իջաւ և սանձը կապեց այն օղակին, որին կապել էին և առաջ եկած մարգարէները։ Տաճարում նա գտաւ Աբրահամին, Մովսէսին, Յիսուսին և ուրիշ շատ մարգարէներ։ Դրանց հետ միասին մի քանի ժամանակ աղօթելուց յետոյ՝ երկնքից իջնող մի լուսեղէն սանդուղք տեսաւ, որի ստորին ծայրը Ձաքրայի վրայ, այսինքն սրբութեան հիմնաքարի՝ Յակոբեան քարի վրայ կանգուն մնաց։

Մահմեդը Գաբրիէլին յենուելով, կայծակի արագութեամբ վեր բարձրացաւ այդ սանդուղքով։

Երբոր առաջին երկինքը հասան, Գաբրիէլը դուռը բախեց։

«Այդ ով է», հարցրին ներսից։

«Գաբրիէլը։»

«Իսկ ուղեկիցդ ով է։»

«Մահմեդը։»

«Արդեօք ընդունուած է իւր առաքելութիւնը։»

«Այո։»

«Ուրեմն բարի լինի գալուստը», և դռները բացուեցան։

Այդ առաջին երկինքը զուտ արծաթից էր, և

ոսկեձոյլ շղթաներով աստղեր էին կախուած նրա փայլուն կամարից։ Իւրաքանչիւր աստղի մէջ մի մի պահապան հրեշտակ կար, որպէս զի դևերը չհամարձակուէին սուրբ օթեվանները մտնել։ Երբոր Մահմեդը ներս մտաւ, մի ծերունի մօտեցաւ նրան, և Գաբրիէլն ասաց. «Ահա քո հայր Ադամը. ողջոյն տուր սրան»։ Մահմեդը ողջունեց, և Ադամը համբուրեց նրան, իւր զաւակների ամենամեծն և մարգարէների առաջինն անուանելով նրան։

Այդ երկնքում կային անթիւ և ամեն տեսակ անասուններ, և Գաբրիէլն ասաց, թէ դրանք երկրաքնակ բազմացեղ կենդանիների համար Ալլահին աղօթք մատուցող հրեշտակներ են։ Դրանց թւում գտնվում էր մի ճիւնափայլ աքաղաղ, բայց այնպէս բարձր, որ կատարը հասնում էր երկրորդ երկնքին, թէև դա հինգ հարիւր տարուայ ճանապարհով առաջինից հեռու էր։ Այդ հրաշալի թռչունն ամեն առաւօտ ողջոյն է տալիս Ալլահին իւր քաղցրանուագ հնչիւնով։ Նրա ձայնից երկրիս ամեն արարածները զարթնում են, բացի մարդուց, և իւր ցեղի ամեն թևաւորները, նրա եղանակին դաշնակցելով, երգում են Ալէլուիա։ *)

*) Իսլամական գիտունների ասելով՝ Ալլահ միշտ սիրում է երեք բան լսել՝ Կուրան կարդացողի ձայնը, քաւութիւն հայցողինն և այդ աքաղաղի օրհներգը, որ հընչում է 'ի փառաբանութիւն Բարձրելոյն։ Երբոր վերջին օրը մօտենայ, Ալլահ կըհրամայէ այդ թռչնին ամփոփել թևերն և այլևս չերգել։ Այն ժամանակ երկրիս ամեն աքաղաղներն էլ կըդադարեն երգել, և նրանց լռութիւնից կ'իմացուի, թէ ահեղ դատաստանի օրն արդէն հասել է։

Յետոյ բարձրացան երկրորդ երկինքը։ Գաբրիէլն առաջուայ պէս դուռը բախեց. միեւնոյն հարցումներն ու պատասխանները փոխանակուեցան, դռները բացուեցան և նրանք ներս մտան։

Այդ երկինքն էր ողորկ ու փայլուն պողպատից։ Այն տեղ տեսան Նոյին, որ համբուրելով Մահմեդին, մարգարէների ամենամեծն անուանեց նրան։

Երրորդ երկինքը հասնելուց յետոյ՝ նոյն հանդէսով ներս մտան։ Այդ երկինքը զարդարուած էր ազնիւ ակներով, որոնց ճաճանչն անտանելի է մահկանացու աչքերին։ Մէջը նստած էր մի անասելի բարձր հրեշտակ, որի աչքերն եօթանասուն հազար օրուայ ճանապարհով հեռու էին իրարուց։ Նա ունէր իւր ձեռքի տակ հարիւր հազար սպառազէն գնդեր։ Առջևը դրուած էր մի ահագին բաց մատեան, որի մէջ շարունակ բան էր գրում ու ջնջում։

«Սա, ո՛վ Մահմեդ», ասաց Գաբրիէլը, «մա-

---

Նօրվիչի երէց՝ արժ. Հումֆրի Պրիդօն իւր „Մահմեդի կեանքը“ կոչուած գրքում մեղադրում է Մահմեդին, ասելով թէ նա վերցրել է այդ աքաղաղն բաբիլոնեան Թալմուդի Բաւա Բարթա հատուածից։ „Այն տեղ“, ասում է նա, „յիշուած է Զիզ անունով մի զարմանալի թռչուն, որ ոտքերով գետնի վրայ կանգնելիս՝ գլխով դիպչում է երկնքին և թևերն արձակելիս՝ արեգակի ամբողջ գունտը ծածկում է, որով կատարեալ խաւար է պատում աշխարհին։ Սաղմոսի քաղդէական մեկնիչներն աքաղաղ են անուանում այդ թռչնին, որ իբր թէ միշտ երգում է Աստուծու առջև. և Յոբայ գրքի քաղդէական մեկնիչները պընդում են, թէ նա ամէն առաւօտ փառաբանում է Աստուծուն, որի համար և Աստուած իմաստութիւն է շնորհել նրան“։

հուան հրեշտակ Ազրայիլն է, Ալլահի մտերիմը։ Իւր ծունկը գրուած գրքում նա անդադար գրում է ծընուելու մարդկանց անունը և ջնջում կեանքի վերջակէտին հասածների անունը, որոնք և իսկոյն մեռնում են»։

Այնուհետև չորրորդ երկինքը բարձրացան, որ ամենազուտ արծաթից էր։ Այն տեղ բնակուող հրեշտակների դասում կար մէկը, որ հինգ հարիւր օրուայ ճանապարհի բարձրութիւն ունէր։ Նրա երեսը տըրտում էր և աչքերից հեղեղի պէս արտասուք էր հոսում։

«Սա, ով Մահմեդ, արտասուքի հրեշտակն է», ասաց Գաբրիէլը. «պաշտօնն է ողբալ ադամորդոց մեղքերն և գուշակել նրանց սպասող չարիքը»։

Հինգերորդ երկինքը զուտ ոսկուց էր։ Այն տեղ Մահմեդին ընդունեց և շնորհաւորելով համբուրեց Ահարոնը։ Այդ երկինքը բնակարան է հրանիւթ տարերքին տիրող վրէժխնդրութեան հրեշտակի։ Դա Մահմեդի տեսած բոլոր հրեշտակներից ամենաժանտն ու սոսկալին էր։ Երեսը կարծես թէ պղնձից լինէր և ծածկուած էր կոծիծներով ու պուտերով. աչքերը կայծակներ էին թօթափում և ձեռին ունէր մի հրեղէն նիզակ։ Նստած էր հրով պատած գահի վրայ, և իւր առջև դիզուած էին ատրաշէկ շղթաներ։ Եթէ այդ հրեշտակն իւր իսկական պատկերով երկիր իջնէր, լեռները կ'այրուէին, ծովերը կըցամաքէին և բոլոր բնակիչները կըմեռնէին սարսափից։ Նրա և նրա արբանեակ հրեշտակներին է վերապահուած վրէժխնդիր լինել անհաւատներից և մեղաւորներից։

Այդ զարհուրելի բնակարանը թողնելով, նրանք

բարձրացան վեցերորդ երկինքը, որ հազալայից, կամ թափանցիկ կարկեհանից էր բաղկացած։ Այն տեղ կար մի ահագին հրեշտակ՝ կիսով ձիւնից, կիսով կրակից ստեղծուած. սակայն ոչ ձիւնն էր հալվում, ոչ էլ կրակը շիջանում։ Նրա շուրջը կանգնած էին ստորին դասի հրեշտակներ, որոնք շարունակ երգում էին. «Ո՜վ Ալլահ, որ միացրել ես ձիւնը կրակի հետ, միացուր բոլոր հաւատացող ծառաներիդ քո օրէնքի հնազանդութեան մէջ։»

«Դա երկնքի և երկրիջպահապան հրեշտակն է», ասաց Գաբրիէլը. «դա է, որ քո ազգի մարդկանց մօտ հրեշտակներ է արձակում՝ յորդորելու նրանց, որ առաքելութիւնդ ընդունեն և Ալլահին ծառայելու պատրաստ լինին։ Եւ նա պիտի շարունակէ այդպէս անել մինչև յարութեան օրը»։

Այն տեղ էր Մուսա (Մովսէս) մարգարէն, որ սակայն փոխանակ ուրախութեամբ դիմաւորելու Մահմեդին, ինչպէս որ արին միւս մարգարէները, նրան տեսնելուն պէս լաց եղաւ։

«Ինչո՞ւ ես լաց լինում», հարցրեց Մահմեդը։— «Որովհետև տեսնում եմ մի յաջորդ, որ աւելի բազմաթիւ մարդիկ արքայութիւն պիտի բերէ իւր ազգից, քան որ ես կարողացայ մտցնել Իսրայէլի ուրացող զաւակներից»։

Եօթներորդ երկնքում Մահմեդն ընդունուեցաւ Աբրահամ նահապետից։ Այդ երանաւէտ բնակարանը կազմուած էր աստուածային լուսից և այն աստիճան փառաւոր էր, որ ոչ մի լեզու չէ կարող պատմել։ Նրա երկնային բնակիչներից միայն մէկը բաւական է գաղափար տալու միւսների մասին։

Նա ամբողջ երկրագնտից մեծ էր մարմնով և ունէր 70,000 գլուխ, ամեն մի գլուխ 70,000 բերան, ամեն մի բերան խօսում էր 70,000 տարբեր լեզու, և այդ բոլոր լեզուներն անդադար երգով փառաբանում էին Բարձրեալին։

Այդ զարմանահրաշ արարածին դիտելիս՝ Մահմեդը յանկարծ փոխադրուեցաւ դէպի վեր՝ Սէդրատ կոչուած լուսաստենու մօտ, որ բողբոջում է Ալլահի անտեսանելի գահի աջ կողմը։ Այդ ծառի ճիւղերն աւելի հեռու են ձգվում, քան թէ արեգակի ու երկրի միջև եղած ամբողջ տարածութիւնը։ Տօվափի և կամ աշխարհիս բոլոր գետերի ու գետակների աւազից շատ հրեշտակներ են ապրում նրա ստուերի տակ, երջանկութիւն վայելելով։ Տերևները նման են փղականջի. բիւրաւոր անմահ թռչուններ ոստոստում են նրա ճիւղերի վրայ և Կուրանի վսեմ տուները կրկնում։ Նրա պտուղները կաթնից էլ համեղ են, մեղրից էլ քաղցր։ Աստուծու բոլոր արարածներն էլ միասին որ հաւաքուին, այդ պտուղներից մէկն անգամ բաւական կը լինի նրանց կերակրելու։ Իւրաքանչիւր սերմի մէջ մի հուրի կամ երկնային կոյս է նստած հաւատացեալներին երջանկութիւն տալու համար։ Այդ ծառի արմատից չորս գետ է բղխում. երկուսը հոսում են դրախտի մէջ, երկուսն էլ՝ դրախտից դուրս, Նեղոսն ու Եփրատը կազմելով։

Մահմեդն և իւր երկնային առաջնորդը մօտեցան այժմ Ալ Մամուրին՝ երկրպագութեան տանը, որ շինուած է կարմիր յակինթից կամ սուտակնից և անթիւ մշտավառ լապտերներով շրջապատուած։ Երբ որ Մահմեդը ներս մտաւ, երեք անօթ մատուցին

նրան՝ մէկը գինով, միւսը կաթնով և երրորդը մեղրով լի։ Նա առաւ ու խմեց կաթ պարունակող անօթից։

«Լաւ արիր, ընտրութիւնդ յաջող է», գոչեց Գաբրիէլը։ «Եթէ դու գինու անօթից խմէիր, բոլոր ազգդ ուղիղ ճանապարհից կըշեղուէր»։

Սուրբ տունը նման է ձեւով Մէկկայի Քեաբէին և ուղիղ կանգնած է դրա վրայ եօթներորդ երկընքում։ Ամեն օր նրա մէջ մտնում են 70,000 գերագոյն դասի հրեշտակներ։ Այդ իսկ միջոցին նրանք սրբազան թափօր անելու վրայ էին։ Մահմեդն էլ միացաւ նրանց և եօթն անգամ տան շուրջը պտտեց։

Գաբրիէլը չէր կարող և՛ս աւելի հեռու գնալ։ Մահմեդը մտքից արագ կտրեց անցաւ մի անհուն տարածութիւն, սահելով երկու պայծառ և մի խաւար գաւառի միջով։ Այդ ծայրագոյն խաւարի շրջանից դուրս գալուն պէս՝ նա տագնապիչ սարսափ ըզգաց, որովհետև արդէն կանգնած էր Ալլահի հանդէպ—նրա գահից միայն երկու նետընկէց հեռու։ Աստուծու դէմքը ծածկուած է 200,000 քօղով. եթէ այդպէս չլինէր, նրա փառքին նայող մարդը 'ի չիք կը դառնար։ Նա մեկնեց իւր ձեռքերն և մէկը դըրաւ Մահմեդի կուրծքին, միւսը ուսին, և մարգարէն մինչև իւր սրտի խորքն և ոսկորների ուղն ու ծուծը սարսուռ զգաց։ Դրան յաջորդեց մի զմայլական երջանկութեան զգացմունք, մինչդեռ շուրջանակի մի այնպիսի անոյշ բուրմունք փռուեցաւ, որ միայն Ալլահի առջև գէթ մի անգամ կանգնելու շնորհ գտնողներն ընդունակ են ըմբռնել։

Այդ միջոցին Մահմեդն ընդունեց նոյն ինքն Աստուծուց մի քանի պատգամներ, որոնք յիշուած են

կուրանում, և ամեն օր չիսուն անգամ աղօթք անելու պատուէրը, որ պարտաւորիչ պիտի լինէր ամեն մի ճշմարիտ հաւատացողի համար։

Երբ որ նա Ալլահի գահից հեռանալով վերստին տեսաւ Մովսէսին, սա հարցրեց. «Ի՞նչ պատուիրեց քեզ Ալլահ»։—«Որ օրը չիսուն անգամ աղօթք անեմ»։

«Եւ կարծում ես թէ կարող կը լինիս մի այդպիսի պարտաւորութիւն կատարել։ Ես քեզնից առաջ այդ փորձն արի Իսրայէլի որդոց հետ, բայց ջանքերս զուր անցան. վերադարձիր ուրեմն և խնդրիր, որ սահմանուած պարտքը փոքրացուի»։

Մահմեդը յետ գնաց և աղօթքների թիւը տասնով պակասացնելու իրաւունք ստացաւ. սակայն երբոր այդ յաջողութիւնը Մովսէսին յայտնեց, վերջինս օրական քառասուն աղօթքն էլ շատ գտաւ։ Նրա խորհրդով Մահմեդը նորից մի քանի անգամ վերև գնաց, մինչև որ աղօթքների թիւը հնգի յանգաւ։

Բայց Մովսէսը դարձեալ առարկում էր. «Միթէ վստահ ես ամեն օր հինգ աղօթք պահանջելու քո ազգից։ Ալլահը վկայ, ես արդէն փորձել եմ Իսրայէլի որդոց վրայ և գիտեմ, որ այդ պահանջը զուր կըլինի. յետ գնա ուրեմն և աղաչիր, որ վերստին մի զիջումն արուի։»

«Ոչ», պատասխանեց Մահմեդը. «ես այնքան զիջողութիւն խնդրեցի, որ արդէն ամաչում եմ։» Այս ասաց և հրաժեշտ առնելով Մովսէսից, հեռացաւ։

Նոյն լուսեղէն սանդուղքով Երուսաղէմի տաճարը վայր իջնելուց յետոյ՝ նա գտաւ Բորակին իւր տեղում կապուած, հեծաւ վրան և մի վայրկենում

այն իսկ տեղը տարուեցաւ, ուստի վերցուած էր դէ-
պի երկինք։

Այս տեսիլքի կամ գիշերային ուղևորութեան նկարագիրը, որ աւելի հանգամանօրէն յառաջ է բերուած Գանիյէի «Մահմեդի կեանքում,» մենք արինք Աբուլֆէդա, Ալ Բօքհարի և Աբու Հօրէյրա պատմաբաններին հետևելով։ Բուն ուղևորութիւնն անվերջ մեկնութիւնների ու վէճերի նիւթ է տուել գիտնականներին։ Ոմանք պնդում են, թէ դա միայն մի երազ էր և կամ տեսիլ, և այս կարծիքը հիմնում են Մահմեդի կնոջ՝ Այէշայի վկայութեան վրայ, թէ մարգարէի մարմինը այն գիշեր բոլորովին հանգիստ էր և նա միայն մտքով էր արել գիշերային ուղևորութիւնը։ Այդ աւանդական վկայութեան դիմողները մոռանում են սակայն, որ ուղևորութեան միջոցին Այէշան մի մանուկ էր, և թէպէտ նշանուած Մահմեդի հետ, բայց դեռ ոչ նրա ամուսինը։

Միւսներն ասում են, թէ Մահմեդը մարմնով արաւ երկնային ուղևորութիւնը և թէ բոլոր դէպքը հրաշալի կերպով մի այնպիսի կարճ միջոցում վերջացաւ, որ նա վայր իջնելիս դեռ հնար գտաւ արգելելու ջրով լի անօթի անկումը, որին Գաբրիէլը թևով դիպել էր երկինք մեկնելու վայրկենին։

Ասողներ էլ կան, թէ Մահմեդը, իւր իսկ վըկայութեամբ, միայն մինչև Երուսաղէմ է ուղևորուել գիշերով, իսկ հետագայ վերաթևումը դէպի երկինք լոկ երազ էր։ Ահմէդ բէն Յուսէփի ասելով՝ գիշերային այցելութիւնը սուրբ տաճարին ստուգուած է նոյն ինքն Երուսաղէմի պատրիարքի վկայութեամբ։ «Երբոր Մահմեդը», պատմում է նա,

«դեսպան ուղարկեց Կ. Պօլիս Հերակլ կայսրին, հրաւիրելով դրան Իսլամն ընդունել, պատրիարքը կայսրի մօտ էր։ Երբ որ դեսպանը խօսք բաց արաւ մարգարէի գիշերային ուղևորութեան մասին, պատրիարքն ապշած մնաց և հարկ համարեց հաղորդել թագաւորին մի հանգամանք, որ պատահել էր դեսպանի պատմած դէպքի միջոցին»։

«Ես սովորութիւն ունիմ», ասաց նա, «գիշերն անկողին չմտնել, մինչև որ տաճարի ամեն մի դուռն անձամբ չփակեմ։ Դեսպանի ասած գիշերը ես սովորութեանս համեմատ բոլոր դռները փակեցի, բացի մէկից, որ ամենևին չէր շարժվում։ Այս պատճառով հիւսներ կանչել տուի, որոնք դուռը զննելուց յետոյ յայտնեցին, թէ դրան բարաւորն և նոյն իսկ տաճարի շէնքը շատ վայր իջած լինելով, բնաւ չեն կարող դուռը գոցել։ Հետևաբար ստիպուած եղայ բաց թողնել դուռը։ Միւս առաւօտ, արշալուսին եկեղեցի որ գնացի, տեսայ որ շինութեան անկիւնի վէմը ծակուած է և Ալ Բորակի կապուած տեղում որոշ հետքեր են երևում։ Այն ժամանակ ես ասացի ներկայ գտնուող վկաներին, թէ դուռն անշարժ չէր մնալ, եթէ այս տեղ մի մարգարէ եկած չլինէր աղօթելու։»

Աւանդութիւնն աւելացնում է, թէ երբոր Մահմեդն իւր գիշերային ճանապարհորդութիւնը Մէկկայի ամբոխին պատմեց, շատերը թէև զարմացան, բայց հաւատացին. ոմանք էլ տարակուսանքի մէջ ընկան, իսկ Կորէյշեանք բացարձակ ծաղրեցին նրան։ «Դու ասում ես, թէ եղել ես Երուսաղէմի տաճարում,» ասաց Աբու Ջահլը. «ուրեմն նկարագրիր տա-

ճարը՝ խօսքերի ճշմարտութիւնը ստուգելու համար․»

Մահմեդը մի վայրկեան շփոթուեցաւ այդ պահանջից, որովհետև գիշերով էր տաճարը մտել, երբ դժուար էր նրա ձևը լաւ դիտել․ սակայն յանկարծ Գաբրիէլ հրեշտակը նրա մօտ կանգնեց և ցոյց տուաւ նրան շինութեան ճիշդ պատկերը․ մարգարէն էլ իսկոյն և եթ պատասխանեց ամենամանր հարցումներին։

Բայց և այնպէս նոյն իսկ աշակերտներից ոմանք դեռ չէին հաւատալ Մահմեդին, եթէ Աբու Բեկրը, նրանց երկմտութիւնն ու կրօնից հրաժարուելու վտանգը տեսնելով, բացարձակ երաշխաւոր չլինէր, թէ պատմութիւնը ճշմարիտ է։ Այս օգնութեան փոխարէն Մահմեդն Ալ Սեդդէք, այսինքն ճշմարտութեան վկայ անուանեց նրան,— մականուն, որ այնուհետև յատուկ մնաց Աբու Բեկրին։

Այս գիշերային ուղևորութիւնը, ինչպէս որ արդէն ասել ենք, գրեթէ լիովին աւանդութեան արդիւնք է, թէպէտ դրա մի քանի պարագաներն աղօտ կերպով յիշատակուած են և՛ Կուրանում։ Կարելի է ասել, թէ ամբողջ պատմութիւնը մի առասպելական հիւսուածք է, որով մոլեռանդ մուսլէմները սիրում էին պաճուճել Մահմեդի ամեն մի երազը կամ հասարակ զառանցաքը, որի համար և Կորէյշացիք խելագար էին անուանում նրան։

## ԺԳ.

*Մահմեդը դարձի է բերում Մէդինայի ուխտաւորներին։—Որոշում է փախչել այդ քաղաքը։—Նրան սպանելու խորհուրդը։—Հրաշալի ազատութիւնը։—Նրա Հէջրան կամ փախուստը։—Ընդունուիլը Մէդինայում։*

Մահմեդի բախտն իւր ծննդեան քաղաքում օր ըստ օրէ նսեմանում էր։ Նրա առաջին բարերարը, նրա միայնութեան և առանձնութեան հաւատարիմ ընկերը, ուսման ջերմեռանդ հետևողը՝ Քադիջան գերեզման էր իջած. մեռած էր նաև նրա մտերիմ ու հզօր ապաւէն Աբու Թալէբը։ Դրա ազդու պաշտպանութիւնից զրկուելով, Մահմեդը մի տեսակ տարագիր դարձաւ Մէկկայում, ուր ստիպուած էր թաքչել, բեռն լինելով այն իսկ անձանց, որոնք հալածանք էին կրում նրա վարդապետութեան պատճառով։ Եթէ աշխարհային շահն էր նրա նպատակը, արդեօք ի՞նչ էր վաստակել։ Արդէն տասն տարուց աւելի ժամանակ էր անցել այն օրից, որ նա առաջին անգամ իւր մարգարէական առաքելութիւնը յայտարարեց,—հալածանքի, տագնապի ու թշուառութեան տասն երկար տարիներ. բայց և այնպէս նա տակաւին համբերում էր, և այժմ՝ կեանքի այն հասակում, երբ մարդիկ աւելի հակամէտ են անցեալի պտուղները հանգստութեամբ վայելել, քան թէ ամեն բան վտանգել՝ ապագայի համար նոր խորհուրդներ որոճալով,—մենք տեսնում ենք որ նա, իւր հանգիստը, ստացուածքն ու բարեկամներին զոհելուց յետոյ, պատրաստ է նաև իւր տուն ու տեղը

կորցնել, քան թէ կրօնական համոզմունքն ուրանալ։

Ուխտագնացութեան սուրբ ամիսը հասնելուն պէս՝ նա վերստին թողաւ իւր թաքստոցն և մտաւ Արաբիայի ամեն կողմերից Մէկկա հաւաքուող բազմութեան մէջ։ Նրա փափագն էր գտնել մի այնպիսի զորաւոր ցեղ կամ յայտնի քաղաքի բնակիչներ, որոնք ձեռնահաս և յօժար լինէին հիւրընկալել նրան և օգնել իւր հաւատի տարածման։

Նրա ջանքերը մի քանի ժամանակ ապարդիւն անցան. երկրպագութեան համար Քեաբէ եկած հեթանոսները խորշում էին բանադրուած ուրացողից. իսկ աշխարհասէր մարդիկ չէին ուզում բարեկամանալ մի անձի հետ, որ հալածուած էր իւր հայրենիքի մեծերից։

Վերջապէս մի օր Մէկկայի հիւսիսային կողմում Ալ Աքաբա բլրի վրայ քարոզելիս՝ նա Եաթրէբից եկած ուխտաւորների ուշադրութիւնը գրաւեց։ Այդ քաղաքը, որ յետոյ Մէդինա կոչուեցաւ, հարիւր և եօթանասուն մղոն հեռու է Մէկկայից դէպ 'ի հիւսիս։ Բնակիչներից շատերը հրէաներ էին և հերետիկոս քրիստոնեայք։ Վերոյիշեալ ուխտաւորները բուն արաբացիք էին Կազրադեան հին ու հզօր ցեղից և բարեկամ Մէդինայում բնակուող Քէնիդեան ու Նադէրեան հրէաների հետ, որոնք պարծենում էին թէ Ահարոնի քահանայական տոհմից են։ Ուխտաւորներն ստէպ լսած էին իրենց հրէայ բարեկամներից հրէից հաւատի խորհուրդներն և Մէսսիայի գալստեան յոյսերը։ Մահմեդի ճարտար լեզուն շարժեց նրանց, իսկ Իսլամի ուսման նմանութիւնը հրէական օրէնքին այն աստիճան զարմացրեց, որ երբ

լսեցին, թէ նա մարգարէ է կոչում իրեն՝ հին հաւատը վերականգնելու առաքուած, ասացին մէկը միւսին. «Երևի թէ սա է ակնկալուած Մեսիան, որի մասին պատմել էին մեզ»։ Եւ որքան շատ էին ականջ դնում Մահմեդին, այնքան էլ ամրանում էր այդ կարծիքը, որ վերջ 'ի վերջոյ համոզման հասաւ. այն ժամանակ նրանք յայտնեցին իրենց համոզմունքը Մահմեդին և նրա կրօնն ընդունեցին։

Որովհետև Կազրադեան տոհմը Եաթրէբում շատ զօրեղ էր, Մահմեդն ուզեց նրանց հովանաւորութիւնը վաստակել և նրանց հետ միասին Եեաթրէբ գնալ. սակայն նրանք յայտնեցին, թէ իրենք այժմ մահու չափ թշնամութիւն ունենալով Աւսիթների հետ, որոնք քաղաքի ուրիշ զօրաւոր տոհմից էին, խորհուրդ կըտային մարգարէին յետաձգել իւր գալուստը, մինչև որ նրանք հաշտուին։ Նա համաձայնեցաւ, սակայն ուխտաւորների մեկնելու ժամանակ մի գիտուն և ընդունակ աշակերտ ուղարկեց նրանց հետ, պատուիրելով ամրապնդել նրանց հաւատն և քարոզել այդ հաւատը նաև միւս քաղաքակիցներին։ Այդ աշակերտն էր Մուսաբ իմն Օմէրը, որ և Իսլամի առաջին քարոզիչը հանդիսացաւ Մէդինայում։

Նրա ցանած սերմերը դժուար էին աճում ըսկզբում։ Կռապաշտները դիմադրեցին նրան և մինչև անգամ ուզում էին սպանել. սակայն նա յարատևեց իւր ջանքերի մէջ և հետզհետէ հետևողներ գտաւ քաղաքի մեծատուն բնակիչներից։ Դրանց թւումն էին Աւսիթների Սաադ իբն Մոադս տոհմապետն և Օսայդ իբն Հոդէյր ազդեցիկ քաղաքացին։ Նոր հա-

ւատի տարածուելուն օգնեցին նաև Մէկկայից Մէդի-
նա փախած մուսլէմները, այնպէս որ Իսլամի ուս-
մունքը վերջ 'ի վերջոյ՝ գրեթէ ամեն մի տուն
մուտք գտաւ։

Այն ժամանակ Մէդինայի նորադարձներից մօ-
տաւորապէս եօթանասուն հոգի, վստահ լինելով, թէ
արդէն կարելի է ապաստան տալ Մահմեդին, Մու-
սաբ իբն Օմէրի առաջնորդութեամբ, «առաքելու-
թեան» տասներեքերորդ թուականի սրբազան ամ-
սին, ճանապարհ ընկան ուխտաւորների հետ դէ-
պի Մէկկա՝ հրաւիրելու նրան գալ և բնակուիլ իրենց
քաղաքում։

Մահմեդը ժամադիր եղաւ հանդիպելու նրանց
Ալ Աքաբա բլրի վրայ կէս գիշերին։

Մարգարէի Ալ Աբբաս հօրեղբայրը, որ հանդու-
ցեալ Աբու Թալէբի նման կարեկից էր նրան, թէև ոչ
կրօնակից, կարծելով թէ այդ ծածուկ ժողովը վտան-
գաւոր կըլինի նրա համար, ինքն էլ նրա հետ այն
տեղ գնաց։ Նա խնդրեց մէդինացի եկաւորներին՝
միայն այն ժամանակ իրենց քաղաքը տանել Մահ-
մեդին, երբոր աւելի ձեռնհաս լինին պաշտպանելու
նրան, և ապա թէ զգուշացրեց, թէ նրանք նոր կը-
րօնը բացարձակ ընդունելով կարող էին ամբողջ Ա-
րաբիան իրենց դէմ գրգռել ու զինել։ Նրա ազդա-
րար յորդորները զուր անցան. երկու կողմն էլ հան-
դիսաւոր դաշինք հաստատեցին։ Մահմեդը պահան-
ջեց, որ նրանք ուրանան կռապաշտութիւնն և յայտ-
նապէս ու բացարձակ երկրպագեն միակ ճշմարիտ
Աստուծուն։ Իւր համար նա պահանջում էր հնազան-
դութիւն կեանքի յաջող և անյաջող դիպուածներում.

իսկ աշակերտների համար՝ այնպիսի պաշտպանութիւն, որպիսին մարդս սովոր է տալ իւր յատուկ ամուսնուն և հարազատ զաւակին։ Միայն այս պայմաններով էր յանձն առնում նրանց մօտ մնալ, նրանց բարեկամների բարեկամը լինել և թշնամիների թըշնամին։

«Սակայն եթէ դատիդ համար կոտորելու լինինք, ինչ կըլինի մեր վարձքը», հարցրին նրանք։

«Արքայութիւն», պատասխանեց մարգարէն։

Պայմաններն ընդունուեցան. մէդինացի պատուիրակներն աջերը Մահմեդի աջի մէջ դրին և ուխտեցին հաւատարիմ մնալ դաշինքին։ Այն ժամանակ, Մահմեդը հետևելով, ինչպէս ասում են, մեր Փրկչի օրինակին, տասներկու մարդ ընտրեց նրանց միջից և իւր առաքեալներն անուանեց։

Այդ իսկ րոպէին բլրի գագաթից ձայն լսուեցաւ, որ ուրացող հայհոյեց նրանց և պատիժ սպառնաց նրանց բոլորին։ Գիշերային խաւարում հնչած ձայնի թնդիւնը րոպէական սարսափ ազդեց։ «Դա չար Իբլիսն է», ասաց Մահմեդն արհամարհանքով. «նա Ալլահի թշնամին է. մի վախենաք նրանից»։ Հաւանական է, որ այդ ձայնը մի Կորէյշեան լրտեսի կամ պահանորդի ձայնը լինէր. որովհետև հենց հետևեալ առաւօտեան նրանք ցոյց տուին, որ գիշերուայ դէպքն իրենց յայտնի է, և շատ խիստ վարուեցան դաշնակիցների հետ, երբոր դրանք մեկնում էին քաղաքից։

Հաւատի այս փոք ընդունելութեան և Մահմեդին ու նրա աշակերտներին 'ի դէպ ժամու առաջարկած և ապա թէ իրօք մատուցած օգնութեան

համար Մէդինացի մուսլէմներն Անսարեանք, այսինքն օգնականներ կոչուեցան, որով և անուանի եղան վերջերը։

Անսարեանների հեռանալուց և սրբազան ամսի լրանալուց յետոյ մուսլէմների հալածանքը և՛ս աւելի սաստկացաւ ու դառնացաւ։ Մահմեդը տեսնելով որ ճգնաժամը մօտենում է, խորհուրդ տուաւ իւր ամեն կուսակիցներին, որ իրենց ապահովութեան համար փոյթ տանեն. իսկ ինքը դեռ մնում էր Մէկկայում մի քանի հաւատարիմ աշակերտների հետ։

Աբու Սօֆիանը՝ Նրա ոխերիմ թշնամին, այդ միջոցին քաղաքապետ էր։ Նոր հաւատի արագ տարածման վրայ զայրացած, նա ժողով գումարեց Կորէյշեան ազգներից՝ խորհելու, թէ արդեօք ինչո՞վ կարելի էր դրա առաջն առնել։ Ոմանք խորհուրդ տուին արտաքսել քաղաքից Մահմեդին. սակայն առարկութիւն եղաւ, թէ նա կարող էր ուրիշ տոհմեր իւր կողմը քաշել, գուցէ և Մէդինայի բնակիչներին, և ապա թէ Նրանց գլուխն անցած վերադառնալ վրէժ խնդրելու։ Ոմանք առաջարկեցին բանտ ձգել Նրան և կերակրել, մինչև որ մեռնի. բայց դրա դէմ նկատեցին, թէ բարեկամները կարող էին ազատել Նրան։ Այս բոլոր առարկութիւնները մէջ բերողն էր մի ցասկոտ ու խառնակիչ ծերունի, Նէջ գաւառից, որ իսլամական գրագէտների ասելով ոչ այլ ոք էր, բայց եթէ ծպտեալ սատանան, որ եկել էր իւր չար ոգին ժողովականներին ներշնչելու։ Վերջապէս Աբու Ջահլը յայտարարեց, թէ օր ըստ օրէ սաստկացող չարիքը խափանելու միակ ազդու միջոցը Մահմեդին սպանելն է։

Բոլորն էլ նրան ձայնակից եղան, և որպէս զի սպանութեան գործի նախատինքը բաժանուի և ամենքն էլ հաւասար դիմադրեն զոհի ազգականների կողմից յարուցուելիք վրէժխնդրութեան, որոշեցին, որ իւրաքանչիւր գերդաստանից մի մի անդամ սրի հարուած տայ Մահմեդին։

Այս դաւակցութեան է ակնարկում Կուրանի Ը. գլխի հետևեալ տունը. «Եւ յիշիր, թէ ինչ չարիք էին նիւթում քո դէմ անհաւատները, որպէս զի կարողանան կամ բռնել քեզ, կամ թէ սպանել և կամ արտաքսել քաղաքից. սակայն ինքն Աստուած որոգայթ դրաւ նրանց դէմ, և ամենալաւ որոգայթ դրնողն Աստուած է։»

Եւ իրաւ, երբոր սպանիչները մօտենում էին Մահմեդի բնակարանին, նա արդէն մօտալուտ վըտանգին իրազեկ էր։ Սովորաբար ասում են, թէ նըրան զգուշացնողը Գաբրիէլ հրեշտակն էր. սակայն աւելի հաւանական է կարծել, թէ լրաբերը դաւակիցների չափ արեան ծարաւ չզգացող կորէյշներից մէկը լինէր։ Ի՛նչ և իցէ՝ ազդարարութիւնը ժամանակին եղաւ Մահմեդին փրկելու համար։ Սպանիչներն արդէն մօտեցել էին նրա տան շեմքին, բայց չէին համարձակվում ներս մտնել։ Ճեղքի միջով ներս նայելիս նրանց այնպէս երևցաւ, թէ Մահմեդը պառկած է անկողնում՝ կանաչ վերարկուով փաթաթուած։ Մի քանի ժամանակ կանգ առին խորհելու, թէ արդեօք յարձակուե՞ն վրան, քանի որ քնած է, թէ սպասեն, մինչևոր դուրս գայ։ Վերջապէս դուռը կոտրելով ներս խուժեցին և ընկան անկողնի վրայ։ Քնացողն յանկարծ վեր թռաւ։ Բայց Մահմեդի փո-

խանակ՝ նրանց առջև Ալին էր կանգնած։ «Իսկ Մահմեդն ուր է,» հարցրին նրանք շուարած ու զարհուրած։—«Չգիտեմ,» պատասխանեց Ալին սաստկութեամբ և դուրս գնաց, և ոչոք սիրտ չարաւ նրան դիպչելու։ Սակայն զոհի ճողոպրելուն վրայ կատաղած Կորէյշացիք որոշեցին հարիւր ուղտ տալ այն մարդուն, որ կամ ողջ ողջ և կամ մեռած կըմատնէր Մահմեդին նրանց ձեռքը։

Թէ ինչպէս փախաւ Մահմեդը, մինչդեռ հաւատարիմ Ալին նրա վերարկուով փաթաթուած պառկել էր նրա մահճի վրայ, այդ մասին զանազան զըրոյցներ կան։ Ամենից զարմանալին այն զրոյցն է, թէ նա հանգիստ բաց արաւ դուռը, որի առջև կանգնած էին Կորէյշացիք, և մի բուռն աւազ ցանելով օդի մէջ, այնպէս կուրացրեց նրանց աչքը, որ ոչոք նրա անցկենալը չտեսաւ։ Եւ այս եղելութիւնը, աւելացնում է զրոյցը, հաստատվում է Կուրանի Լ. գլխի տունով, թէ «Մենք կուրացրինք նրանց աչքը, որպէս զի մեզ չտեսնեն։»

Աւելի ճշմարտանման է այն զրոյցը, թէ Մահմեդը սպասաւորի ուսին կանգնելով, ցատկել էր տան ետևի պատի միւս կողմը։

Անմիջապէս նա փութաց գնալ Աբու Բեկրի մօտ, և նրանք փախչելու խորհուրդ տեսան։ Որոշեցին թաքնուիլ Թոր լերան քարայրում՝ Մէկկայից մի ժամ հեռու, և սպասել, մինչև որ հնար լինի աներկիւղ յառաջ գնալ մինչև Մէդինա. իսկ այդ միջոցին Աբու Բեկրի որդիքը ծածկաբար սնունդ պիտի բերէին նրանց համար։

Դեռ գիշեր էր, երբոր նրանք Մէկկայից ելան։

Աստղերի լուսով մի քանի ժամ հետի ճանապարհ կտրելուց յետոյ՝ արշալուսին հասան Թոր սարի ստորոտը։ Քարայրի մէջ մտան թէ չէ՝ սմբակների դոփիւն լսուեցաւ։ Աբու Բեկրը քաջ մարդ էր, բայց և այնպէս ահից դողաց։ «Մեր հալածիչները շատուոր են,» ասաց նա, «իսկ մենք միայն երկու հոգի։»— «Ոչ,» պատասխանեց Մահմեդը, «երրորդն էլ կայ՝ Աստուած մեզ հետ է։»

Եւ այս տեղ իսլամական գրագէտները մի հրաշք են պատմում, որ շատ սիրելի է բոլոր ճշմարիտ մուսլէմներին։ Նրանց ասելով՝ «Երբոր Կորէյշացիք քարայրի մուտքին մօտեցան, «նրանց առջև մի ակակիայի ծառ բուսաւ, որի ստուերաւոր ոստերի մէջ տատրակը բունիկ էր հիւսել, ձու դրել, և սարդը ոստայնով պատել այդ բոլորը։ Կորէյշացիք այդ անվրդով հանգստութեան նշաններից հետևցրին, թէ ոչոք նորերս քարայրը մտած չէր լինի, և հեռացան ուրիշ ուղղութեամբ։

Փախստականները, հրաշքով թէ առանց հրաշքի, երեք օր և երեք գիշեր անյայտ մնացին քարայրում, և Աբու Բեկրի Ասմա աղջիկը գիշերով կերակուր էր բերում նրանց համար։

Չորրորդ օրը, երբ փախստականների կարծիքով հետախոյզների եռանդն արդէն զիջած կըլինէր, նըրանք վստահացան ուղտեր հեծած ճանապարհ ընկնել դէպի Մէդինա։ Այդ ուղտերին բերել էր երեկոյեան մթնշաղին Աբու Բեկրի սպասաւորը։

Կարաւանի սովորական ճանապարհից խոյս տալով, նրանք աւելի Կարմիր ծովի երկարութեամբ ընթացան։ Սակայն նոր էին հեռացել, որ ետևներից

մի ձիաւոր վաշտ հասաւ Սորակ իբն Մալէքի առաջնորդութեամբ։ Դարձեալ Աբու Բեկրն ահաբեկ եղաւ հալածիչների բազմութիւնից, բայց Մահմեդը նորից քաջալերեց նրան։ «Մի՛ վհատիր,» ասաց նա, «Ալլահ մեզ հետ է։» Սորակը մի ժանտ զինուոր էր՝ երկաթագոյն կոշտ մազերով, ջլուտ ու բրդոտ բազուկներով։ Երբոր նա Մահմեդի վրայ արշաւեց, իւր ձին ծառացաւ, և երկուսն էլ միասին վայր ընկան։ Անապաշտ զինուորը զարհուրեցաւ այդ նշանից։ Մահմեդը նկատեց նրա տագնապն և իւր ճարտար լեզուովն այնպէս ազդեց նրա վրայ, որ Սորակը փութաց ներողութիւն խնդրել և յետ դարձաւ, թոյլ տալով որ մարգարէն ապատ շարունակէ իւր ուղին։

Փախստականները շարունակեցին իրենց ճանապարհն առանց նոր խոչնդոտի հանդիպելու և վերջապէս հասան Կոբա, որ մի բլուր է Մէդինայից երկու մղոն հեռու։ Դա քաղաքացոց սիրած զբօսավայրն էր, ուր սովոր էին տանել հիւանդներին ու տկարներին նրա առողջարար օդի պատճառով։ Կոբան տալիս էր քաղաքին բազմատեսակ պտուղներ. բլուրն և իւր շրջակայքը ծածկուած էին այգիներով, արմաւի ու մրտենու ծառերով, կիտրոն, նարինջ, ծիրան, դեղձ, նուռն ու թուզ տուող պարտէզներով,—և այս բոլորը սառնորակ վտակներով ոռոգուած։

Այդ բարեբեր բլրին հասնելուն պէս Մահմեդի Ալ Կասվա ուղտը չոքեց և էլ չուզեց առաջ գնալ։ Մարգարէն լաւ նշան համարեց այդ և որոշեց մնալ Կոբայում և ապա թէ քաղաք մտնել։ Բարեպաշտ մուսլէմները մինչև այս օր ցոյց են տալիս մարգարէի

ուղտի չոքած տեղը, ուր 'ի յիշատակ այդ դէպքի մի մզկիթ է կառուցուած Ալ Թաքվա անունով։ Ոմանք ասում են, թէ մզկիթի հիմնարկողը նոյն ինքն մարգարէն էր։ Դրանից հեռու չէ և այն ջրհորը, որի մօտ Մահմեդը քնեց ծառերի ստուերում և որի մէջ ձգեց իւր մատանին։ Կարծում են, թէ մատանին մինչև այս օր էլ հորումն է, սուրբ անելով նրա ջուրը, որ ստորերկրեայ խողովակներով տարվում է մինչև Մէդինա։ Մահմեդը չորս օր մնաց Կոբայում կոլթում իբն հադէմ Աւսիթացու տանը։ Մինչդեռ նա այդ գիւղումն էր, նրա մօտ եկաւ եօթանասուն հետևորդով Բորէյդա իբն Հոսէյբ մեծ իշխանը Սահամեան ցեղից և նրա հաւատն ընդունեց։

Կոբայում մարգարէին ներկայացող միւս նշանաւոր նորադարձն էր Սալման ալ Պարսին։ Ասում են թէ նա Իսպահանի մօտակայ գիւղերից մէկումն էր ծնուել և մի օր քրիստոնէական եկեղեցու մօտովն անցնելիս այնպէս յափշտակուել էր ժողովրդի բարեպաշտութեամբ ու փառահեղ ժամերգութեամբ, որ իսկոյն պզուանք էր զգացել իւր մայրենի մոգութիւնից։ Այնուհետև թափառելով Արևելքում, գնացել էր քաղաքից քաղաք, վանքից վանք մի ճշմարիտ հաւատ գտնելու համար. և վերջապէս մի ծերունի վարդապետ յայտնել էր նրան, թէ Արաբիայում երևցել է մի մարգարէ, որ կոչուած է վերականգնել Աբրահամի սուրբ հաւատը։

Այդ Սալմանը վերջերը շատ ազդեցիկ մարդ դարձաւ, և մէկկացի անհաւատներն ասում էին թէ օգնում էր Մահմեդին իւր ուսմունքը շարադրելու։ Այդ բանին է ակնարկում Կորանի ԺԶ. գլխի

հետեւեալ տունը. «Որդարև կռապաշտներն ասում են, թէ մի յայտնի անձն օգնած է եղել յօրինելու Կուրանը. բայց այն մարդու լեզուն աջամի է (Իրանի)՝ մինչդեռ Կուրանը շարադրուած է զուտ արաբական բարբառով։*)»

Փոքր ինչ առաջ Մէդինայում ապաստանած մէկկացի մուսլէմները Մահմեդի մօտենալը լսելով, շտապեցին միանալ նրան Կոբայում. նրանց թւումն էր մարգարէի նախկին աշակերտ Թալհանն և Քադիջայի եղբօրորդի Զոբէյրը։ Դրանք Մահմեդի և Աբու Բեկրի փոշոտ հագուստները որ տեսան, իսկոյն սպիտակ վերարկուներ տուին նրանց, որպէս զի վայելուչ կերպով Մէդինա մտնեն։ Իսկ մի տարի առաջ Մահմեդի հետ դաշնադիր եղած բազմաթիւ Անսարեանք կամ օգնականք իրենց հաւատարմութեան ուխտը նորոգեցին։

Մահմեդը լսելով, որ նորահաւատների թիւն օր ըստ օրէ աճում է քաղաքում և բոլորն էլ պատրաստ են սիրալիր ընդունելութիւն ցոյց տալ իրեն, որոշեց հանդիսաւոր մուտք գործել Րէբի ամսի 16-ին, մի ուրբաթ օր, որ մուսլէմների շաբաթն է։

Այդ որոշման համեմատ ուրբաթ առաւօտ նա աղօթքի կանչեց իւր ամեն հետեւողներին և մի քարոզի մէջ իւր դաւանութեան էական մասերը մեկ-

---

*) Նօրվիչի երէց և գիտնական աստուածաբան Հումֆրի Փրիդօն իւր „Մահմեդի կեանքում“ շփոթում է այդ պարսիկ ՍալմանինԱբդալլահ իբն Սալամ գիտնական հրէայի հետ (եբրայերէն՝ Աբդիաս բէն Սալոն կամ Աբդալլահ Սալէն), որ քրիստոնեայ մատենագիրների ասելով օգնելիս է եղել Մահմեդին զանազան յայտնութիւններ հնարելու։

նելուց յետոյ՝ Նստաւ Ալ Կասվա ուղտի վրայ և գնաց դէպի Մէդինա, որ հռչակուելու էր յաջորդ դարերում իբրև նրա ապաստանը։

Խորէյդա իբն Հոսէյբն և իւր եօթանասուն ձիաւորները Սահամեան տոհմից ուղեկցում էին նրան իբրև պատուադիր թիկնապահ։ Աշակերտներից ոմանք հերթով բռնում էին նրա գլխին արմաւի տերևներից շինած ամպհովանին, և կողքից գնում էր ձիաւոր Աբու Բեկրը։ «Ո՛վ Աստուծու առաքեալ» գոչեց Խորէյդան, «միթէ վայելչ է քեզ առանց դրօշակի Մէդինա մտնել»,—և այս ասելով նա բաց արաւ իւր չալման և նիզակի ծայրին կապելով բարձր բռնած առաջ տարաւ։

Գեղեցիկ էր Մէդինան իւր հաճելի դիրքով, առողջարար օդով, արգաւանդ հողով, իւր շքեղ արմաւներով ու բուրաւէտ ծաղիկներով։ Քաղաքից դէսը, առանց նայելու ցերեկուայ տօթին ու փոշուն, եկել էին բազմաթիւ նորահաւատներ՝ հանդիսաւոր չուն դիմաւորելու։ Նրանցից շատերը դեռ չէին տեսած Մահմեդին և սխալմամբ Աբու Բեկրին էին յարգանք տալիս. բայց սա յետ քաշեց արմաւի հովանին և ցոյց տուաւ մեծարման բուն առարկան, որին և ցնծութեան աղաղակներով ողջունեցին։

Եւ այսպէս Մահմեդը, որ տակաւին փոքր ինչ առաջ իւր մայրենի քաղաքից փախուստ տուած և գլուխը գնահատուած աքսորական էր, Մէդինա մըտաւ ոչ թէ իբրև ապաստան որոնող մի տարագիր, այլ որպէս մի յաղթական աշխարհակալ՝ ամենայն փառքով ու շքով։ Նա իջաւ Աբու Այուբ Կազրաջացի մուսլէմի մօտ, որ իւր հեռաւոր ազգականն էր, և

լաւ հիւրասիրութիւն գտնելուց յետոյ՝ Նրա տան ըստորին յարկում բնակուեցաւ։

Նրա Մէդինա մտնելուց շատ չանցած՝ այնտեղ հասաւ և հաւատարիմ Ալին, որ փախել էր Մէկկայից և Կորէյշների ձեռքը չընկնելու համար ցերեկները թաքչելով ու միայն գիշերները մտն գալով էր ճանապարհ կտրել, այն էլ հետի։ Ալին իսպառ երկու յոգնած և տաժանելի ճանապարհից արիւնոտած ոտքերով։

Մի քանի օրից յետոյ Այէշան էլ ժամանեց Աբու Բեկրի և Մահմեդի գերդաստանի հետ, որոնց բերողներն էին Նրա հաւատարիմ Սէիդն և Աբու Բեկրի Աբդալլահ սպասաւորը։

Այսպէս կատարուեցաւ մարգարէի մեծահամբաւ Հէճրան կամ հիճրէթը, այսինքն փախուստը,—արաբական տումարի դարագլուխը, որից և սկսում են համարել իրենց թուականն ամեն հարազատ իսլամականք. դա համապատասխան է Փրկչի 622 թուականին։

## ԺԴ.

*Մէդինայի մուսլէմները՝ Մոհաջերեանք եւ Անսարեանք։—Աբդալլահ իբն Օբբայի կուսակցութիւնն եւ կեղծաւորները։—Մահմեդը մզկիթ է շինում, քարոզում է, հետեւողներ է գտնում քրիստոնեաներից։—Հրէաների դանդաղութիւնը հաւատալու։—Փախստականների ու դաշնակիցների միջեւ հաստատուած եղբայրութիւնը։*

Մահմեդն այժմ մի մարդաշատ ու զօրաւոր աղանդի գլուխ դարձաւ, աղանդի, որ կազմուած էր մասամբ Մէկկայից եկած և այս պատճառով Մոհա

ջերի կամ փախստական կոչուած աշակերտներից, մասամբ էլ Մէդինայի բնակիչներից, որոնք հաւատն ընդունելիս Անսարի կամ օգնական անունն ստացան։ Սրանց մեծ մասը պատկանում էր Աւսիթեան և Կազրաջեան հզօր տոհմերին, որոնք թէև Ալ Աւս և Ալ Կազրաջ անունով երկու հարազատ եղբօր շառաւիղներ էին, բայց և այնպէս իրենց արմատացած և մահաշունչ թշնամութեամբ հարիւր ու քսան տարուց 'ի վեր կեղեքում էին Մէդինան. այժմ նրանք նոր էին միացել հաւատի կապերով։ Այս տոհմերից անմիջապէս դարձի չեկող անդամների հետ Մահմեդը դաշինք դրաւ։

Կազրաջեանները գտնվում էին Աբդալլահ իբն Օբբա կոչուած մի զօրեղ իշխանի ազդեցութեան տակ, որին, ինչպէս ասում են, մտադիր էին թագաւոր հռչակել, եթէ Մահմեդի գալն և դրա վարդապետութեան պատճառած յուզմունքը ուրիշ ուղղութիւն տուած չլինէր ժողովրդի մտքերին։ Աբդալլահը մի վայելչակազմ տղամարդ էր՝ շնորհալի ձևերով, ճարտար և ազդու լեզուով։ Նա մեծ բարեկամութիւն ցոյց տուաւ Մահմեդին, և բարք ու վարքով իրեն նմանող ընկերների հետ միասին ստէպ գնում էր ներկայ լինելու մուսլէմների ժողովներին։ Սկզբում Մահմեդը հրապուրուած էր նրանց սիրուն երևոյթով՝ հաճոյական խօսակցութեամբ և արտաքին ակնածութեամբ. բայց երբոր տեսաւ, որ Աբդալլահը նրա ժողովրդականութեան նախանձում է և նրա դէմ ծածուկ թշնամութիւն է արծարծում, այդ իշխանի ընկերներն էլ իրեն պէս խարդախ բարեկամներ են, —«կեղծաւոր» անուանեց բոլորին։

Աբդալլահ իբն Օբբան երկար ժամանակ Մահմեդի քաղաքական հակառակորդը մնաց Մէդինայում։

Այժմ Մահմեդն իւր հաւատը բացարձակ քարոզելու ազատութիւն ունենալով, մի մզկիթ ուզեց շինել և շինութեան տեղը մի ծառաշատ գերեզմանոցի մէջ ընտրեց։ Ասում են թէ այդ ընտրութիւնն անելու պատճառը այն բարեգուշակ հանգամանքն էր, որ իւր ուղտը յատկապէս յիշեալ գերեզմանոցի դիմացն էր չոքել հանդիսաւոր կերպով քաղաք մտնելու ժամանակ։ Շինուելիք մզկիթի համար տեղ բանալիս՝ մեռելները հեռացրին և ծառերը կտրեցին։ Այս առաջին աղօթարանն իւր ձևով ու կազմութեամբ մի հասարակ ու պարզ տուն էր՝ լիովին յարմար Մահմեդի քարոզած անշուք կրօնին և նիւթական նուազ միջոցներին։ Որմերը հողից և աղիւսից էին. սիւները նոր կտրած արմաւների բներից, իսկ յարկը հիւսուած ու ծածկուած ճիւղերով ու տերևներով։ Յատակի շրջագիծն էր մօտ հարիւր քառակուսի կանգուն. ունէր երեք դուռ—մէկը դէպի հարաւ, ուր յետոյ Կէբլան հաստատուեցաւ, միւսներն էին Գաբրիէլեան և Ողորմութեան կոչուած դռները։ Մի մասը, որ Սոֆատ էր կոչվում, յատկացրած էր անտուն անտէր հաւատացողներին։

Մահմեդն անձամբ մասնակցում էր այս մզկիթի կառուցման։ Չնայելով սակայն իւր մարգարէական ձիրքերին, նա չկարողացաւ գուշակել, որ ինքն իւր համար մի գերեզման էր պատրաստում, որովհետև հենց այդ շինութեան մէջ պիտի ամփոփուէր իւր աճիւնը։ Հետևեալ դարերում այդ տունը շատ անգամ ընդլայնացաւ ու զարդարուեցաւ, բայց անունը միշտ

մնաց Մեջէդ ալ Նէբի (մարգարէի մզկիթ), որովհետև նրա ձեռքով էր հիմնուած։ Մի քանի ժամանակ մարգարէն վարանում էր, թէ ինչ եղանակով աղօթքի կանչէ հաւատացեալներին—արդեօք հրէաների պէս փող հնչեցնելով, թէ բարձր տեղերում կրակ վառելով։ Մինչ նա տարակուսանքի մէջ էր, Աբդալլահի որդի Սէիդը առաջարկեց մի բարձր ձայնով արտասանելու բանաձև, որ իբր թէ յայտնուած էր իրեն երազում։ Մահմեդն իսկոյն ընդունեց դրան և այնօրից, ասում են, ծագումն առաւ հետևեալ կոչը, որ մինչև այժմ հնչում է Արևելքի մինարէներից, աղօթք հրաւիրելով մուսլէմներին. «Աստուած մեծ է, Աստուած մեծ է։ Չկայ Աստուած, բացի Աստուծուց։ Մահմեդն Աստուծու մարգարէն է։ Աղօթքի եկէք, աղօթքի եկէք։ Աստուած մեծ է, Աստուած մեծ է։ Չկայ Աստուած բացի աստուծուց.» որի վրայ արշալուսին աւելացնում են. «Աղօթքը քնից լաւ է։»

Սկզբում ամեն բան մեծ պարզութեամբ էր կատարվում այդ խոնարհ մզկիթի մէջ։ Գիշերները նա լուսաւորվում էր արմաւենու տաշեղներով. լապտեր ու ճէթ գործածելու սովորութիւն դեռ չկար։ Մարգարէն կանգնում էր գետնի վրայ և քարոզելիս յենվում էր արմաւենու բնին, որ սիւնի տեղ էր ծառայում։ Յետոյ նա մի բեմ շինել տուաւ երեք աստիճանով, որի վրայ ելնում էր ժողովրդից բարձր կանգնելու համար։ Աւանդութիւնն ասում է, որ երբ նա առաջին անգամ այդ բեմը բարձրացաւ, թողուած արմաւենին յոգւոց հանեց, և մարգարէն նրան մխիթարելու համար առաջարկեց՝ կամ տեղափոխուել դէպի պարտէզն և նորից ծաղկել, կամ թէ արքայու-

թիւն բարձրանալ՝ ճշմարիտ մուսլէմներին պտուղ տալու համար հանդերձեալ կեանքում։ Իմաստուն արմատեներին արքայութիւնն ընտրեց, և թաղուեցաւ բեմի տակ, որպէս զի սպասէ իւր յարութեան երջանիկ օրին։

Մահմեդը քարոզում էր բեմից՝ մերթ նստած և մերթ կանգնած ու գաւազանին յենուած։ Նրա պատուէրները մինչև այժմ հաշտ ու բարեմիտ էին. քարոզում էր սէր առ Աստուած և գթութիւն առ մարդիկ։ Մի քանի ժամանակ կարծես թէ կամենում էր հետևող լինել քրիստոնէական հաւատի մարդասէր հոգուն։ «Ով որ չէ սիրում Աստուծու արարածներին և իւր յատուկ զաւակներին», ասում էր նա, «Աստուած էլ նրան չի սիրիլ։ Իւրաքանչիւր մուսլէմ, որ կըծածկէ իւր կրօնակցի մերկութիւնը, կանաչ հանդերձ կըստանայ դրախտում Ալլահից։»

Նրա քարոզներից մէկում, որ հաղորդել են աշակերտները, հետևեալ խրատական առակն է առաջ բերուած ողորմածութեան մասին. «Երբ որ Աստուած երկիրն ստեղծեց, երկիրը դողում ու տատանվում էր, մինչև որ Աստուած վրան լեռներ հաստատեց, որ ամուր կենայ։ Այն ժամանակ հրեշտակները հարցրին. —Տէր, արարչութեանդ մէջ արդեօք այդ լեռներից էլ ամուր բան կա՞յ։ Եւ Աստուած պատասխանեց.— Երկաթը լեռներից էլ ամուր է, որովհետև խորտակում է նրանց։—Արդեօք երկաթից էլ ամուր բան կա՞յ արարչութեանդ մէջ։—Այո, կրակը երկաթից էլ զօրեղ է, որովհետև հալեցնում է նրան։—Բայց կրակից էլ զօրեղ բան կա՞յ արդեօք։—Կայ, և ջուրն է, որ հանգցնում է կրակը։—Ո՛վ Տէր, ինչ կա՞յ արդեօք

արարչութեանդ մէջ, որ ջրից էլ զօրեղ լինէր։—Հողը ջրից էլ զօրեղ է, որովհետև յաղթում է նրան և շարժ ում։—Ո՞վ Ամենակալ, հողից էլ զօրեղ բան կա՞յ արդեօք արարչութեանդ մէջ։—Կա՛յ, և դա է ողորմութիւն տուող բարի մարդը. եթէ աջ ձեռով տալիս՝ ձախը չիմանայ, նա ամեն բանի կըյաղթէ։»

Մահմեդը բարութեան լայն առմամբ էր որոշում սէրը, «Իւրաքանչիւր բարի գործ սէր է», ասում էր նա. «ընկերիդ ժպիտ որ շնորհես՝ սէր է. մերձաւորիդ բարի գործելու խորհուրդ որ տաս՝ ողորմութեան հաւասար է. ուղևորին ուղիղ ճանապարհ որ ցոյց տաս՝ սէր է. կուրին որ օգնես սէր է. ճանապարհը քարերից, փշերից ու խոչերից որ մաքրես՝ սէր է. Ծարաւիին ջուր որ տաս՝ սէր է։»

«Մարդու իսկական հարստութիւնն անտի կեանքում այն բարի գործերն են, որ արել է մերձաւորին այս աշխարհում։ Երբ նա մեռնի, մարդիկ կը հարցնեն, թէ ի՞նչ գոյք թողաւ։ Սակայն գերեզմանում նրան հարց ու փորձ անող հրեշտակները կը հարցնեն. «Ի՞նչ տեսակ բարի գործեր առաջեցիր դէպի վեր։»

«Ով մարգարէ», ասաց նրան մի աշակերտ, «մայրս մեռել է. արդեօք ի՞նչ ողորմութիւն տամ նրա հոգու համար»։—«Ջո՛ւր», գոչեց Մահմեդը, անապատի կիզիչ տօթը յիշելով. «ջրհոր փորիր և ջուր տուր ծարաւիներին»։ Մարդը իւր մօր անուամբ ջրհոր փորեց և ասաց. «Այս ջրհորը մօրս համար է, և թո՛ղ վարձքը հոգուն հասնի։»

Մահմեդն ուսուցանում էր սէր ցոյց տալ նաև խօսքերի մէջ, որ մարդասիրութեան շատ էական, բայց և շատ մոռացուած տեսակներից մէկն է։ Արու

Ջարայա բասրացին, որ Մէդինա գալով հաւատացել էր Մահմեդի առաջելական կոչմանը, մի կենցաղավարութեան կանոն խնդրեց նրանից։ «Ոչոքի վրայ վատ չխօսես,» պատասխանեց մարգարէն։ «Այդ օրից 'ի վեր ես ոչ մի մարդ չեմ վշտացրել՝ լինէր նա ազատորդի կամ գերի,» ասում էր Աբու Ջարայան։

Իսլամն առաջարկում էր նաև քաղաքավարութեան կանոններ. «Սալամ (ողջոյն) տուր որ և է տուն մտնելիս և դուրս գալիս։ Պատասխանիր բարեկամներիդ, ծանօթներիդ և ճանապարհի վրայ քեզ հանդիպող ուղևորների ողջունին։ Ձիաւորը թող առաջինը ողջունէ հետևակին. հետևակը՝ նստածին, փոքր խումբը՝ մեծին, երիտասարդը՝ ծերին։»

Մահմեդի Մէդինա մտնելուց փոքր ինչ յետոյ մի քանի քրիստոնեայք էլ նրա ուսմունքն ընդունեցին։ Հաւանական է որ դրանք այն աղանդաւորներից լինէին, որոնք Քրիստոսի միայն մարդկային բնութիւնը ճանաչելով, ոչ մի հակառակ բան չէին տեսնում Իսլամի մէջ, որ Քրիստոսին ամենամեծ մարգարէ էր դաւանում։ Միւս մէդինացի քրիստոնեայք մի առանձին թշնամութիւն չէին ցոյց տալիս Նոր կրօնին, որ նրանց համար աւելի գերազանց էր, քան թէ հին կռապաշտութիւնը։ Արևելքի քրիստոնեաների մէջ ուղղափառութեան զգացմունքն և եռանդը թուլացել էր հերձուածների ու ոխերիմ գժտութիւնների պատճառով, և նրանք հակամէտ էին հետևելու ամեն մի նոր վարդապետութեան։

Իսկ հրէաները, որոնք շատ հարուստ ու մեծատուն ընտանիքներ ունէին Մէդինայում, այդ պատճառով հաշտ չէին Իսլամի հետ։ Նրանցից մի քանի-

սի հետ Մահմեդը բարեկամութեան դաշինք դրաւ, յուսալով թէ մի օր կըյորդորուին աւետեալ Մէսսիա և կամ մարգարէ ճանաչել իրեն։ Թերևս անգիտակցաբար այդպիսի յոյսեր տածելով, նա իւր ուսման շատ մասերը նրանց կրօնին յարմարացրեց և հրէական պահքերից ու կարգերից մի քանիսն ընդունեց։ Նա թոյլ տուաւ Իսլամ ընդունող հրէաներին պահել իրենց շաբաթն և Մովսէսի ուրիշ մի քանի ծէսերն ու կանոնները։ Արևելքի բազմատեսակ կրօններից ամեն մէկն իւր կեբլան կամ սուրբ կէտն ունէր, որին և դիմում էին աղօթք անելիս։ Սաբէականք դիմում էին դէպի բևեռային աստղը, պարսիկ հրապաշտները՝ դէպի արևելք, հրէաները՝ դէպի սուրբ քաղաքն Երուսաղէմ։ Մինչև այժմ Մահմեդը ոչ մի կանոն չէր սահմանել այդ մասին. բայց այժմ հրէաներին գրաւելու մտքով որոշեց, թէ մուսլէմների կեբլան էլ այսուհետև Երուսաղէմը կըլինի։

Մինչդեռ մէդինացի նորադարձների թիւն օր ըստ օրէ բազմանում էր, մէկկացի տարագիրների շրջանում սկսել էին հիւանդութիւններ երևնալ և տրտունջի ձայներ լսուել։ Նրանք անսովոր էին Մէդինայի օդին. շատերը ջերմից տանջվում էին և հիւանդ ու տկար վիճակի մէջ՝ հայրենեաց կարօտով մաշվում, որտեղից որ արտաքսուած էին։

Դրանց մի նոր հայրենիք տալու և նոր բարեկամների ու դաշնակիցների հետ աւելի սերտ կապելու համար Մահմեդը մի եղբայրութիւն հաստատեց, որի մէջ մտան յիսունչորս մէկկացիք և նոյնքան մէդինացիք։ Եղբայրութեան կապով միացած անդամների պարտքն էր՝ օգնել իրար բարի ու չար օրե-

րում. դա մի այնպիսի դաշինք էր, որ ազգակցութեան կապից էլ սերտ միաւորեց նրանց շահերը, որովհետև նրանք իրաւունք էին ստանում ազգականներից առաջ միմեանց ժառանգը լինելու։

Կուրանի Ը. գլխում հետևեալ ակնարկը կայ այդ մասին. «Նրանք, որոնք հաւատացին և հայրենիքից փախան և իրենց գոյքն ու կեանքը կրօնի դատին նուիրեցին, և նրանք, որոնք ապաստան տուին, մարգարէին, պէտք է հարազատ եղբայրներից աւելի մօտիկ լինին իրար հետ։»

Այսպիսի վարպետ, բայց հասարակ հնարներով հիմք դրուեցաւ այն զօրութեան, որ շուտով մի սոսկալի ոյժ պիտի ստանար և աշխարհիս ամենահզօր պետութիւնները դղրդէր։

## ԺԵ.

*Մահմեդի ամուսնանալը Այէշայի հետ։—Նրա Ֆաթմա դուստեր մարդու գնալն Ալիին։—Տնտեսութիւնը։*

Մահմեդի ընտանեկան հանգամանքները շատ վնասուած էին իւր կրօնական եռանդի յարուցած թշնամութեան պատճառով։ Նրա Ռոկայա դուստրը դեռ Հաբէշստանի աքսորումն էր իւր Օսման իբն Աֆան ամուսնու հետ, իսկ միւս Զէյնաբ աղջիկը Մէկկա էր մնում իւր Ալ Աբբաս մարդու հետ, որ նոր հաւատի ամենայամառ թշնամին էր։ Մահմեդի հետ Մէդինայում գտնուող գերդաստանի անդամներն էին՝ իւր նոր առած Սաւդա կինը և Քադիջայի Ֆաթիմա և Ում Կոլթում դստերքը։ Մահմեդը դի-

բագորով և կանանց ազդեցութեան շատ մատչելի սիրտ ունէր. բայց առանձին սէր չէր ընծայում Սաւ-դային, և թէպէտ միշտ քաղցրութեամբ էր վար-վում հետը, սակայն դարձեալ կարօտ էր մնում մի էակի, որ կարող լինէր հանգուցեալ Քադիջայի տեղը բռնել։

«Ո՜հ Օմար,» ասաց նա մի օր, «մարդու ամե-նալաւ գանձը առաքինի կինն է, որ գիտէ ընթա-նալ Աստուծու օրէնքով և հնազանդ ու հաճելի լի-նել իւր ամուսնուն։ Մարդը զմայլում է նրա հոգե-կան ու մարմնաւոր գեղեցկութեան նայելիս. երբոր մի բան է հրամայում, կինն իսկոյն կատարում է, և երբ ինքն բացակայ է, կինը նրա ստացուածքի ու պատուի իրաւունքը պահպանում է։»

Այժմ նա սկսաւ մտածել Աբու Բեկրի չքնաղ դստեր՝ իւր նշանած Այէշայի վրայ։ Արդէն երկու տարի էր անցել նշանտուքից 'ի վեր, և այժմ աղ-ջիկը ինն տարեկան էր—կարծեօք դարձեալ շատ դեռահաս, չնայելով որ Արևելքի կենդանարար կլի-մայի մէջ կանանց մարմինը սաստիկ շուտ է բողբո-ջում։ Հարսանիքը տեղի գտաւ Այէշայի Մէդինա գալուց փոքր ինչ յետոյ և վերին աստիճանի պարզ տօնուեցաւ։ Հարսանիքի ընթրիքն էր կաթ, իսկ հարսի օժիտը՝ տասներկու օխա արծաթ։

Այդ դէպքին յաջորդեց Մահմեդի կրտսեր աղջ-կայ՝ Ֆաթմայի նշանուիլը նրա հաւատարիմ աշա-կերտ Ալիի հետ, և շատ չանցած՝ հարսանիքը։ Ֆաթ-ման չնաշխարհիկ աղջիկ էր՝ տասնհինգ կամ կամ տասնվեց տարեկան, և արաբացի գրագէտների գո-վասանքին նայելով՝ այն չորս կատարեալ կանանցից

մէկը, որոնցով Ալլահ կամեցել էր օրհնել երկիրը։ Ալին մօտ քսաներկու տարեկան էր։

Երկինք և երկիր միացան, ասում են իսլամական գրագէտները, այդ երջանիկ ամուսնութեան յարգ ու պատիւ ընծայելու համար։ Տօնական հանդէսների ձայներ թնդացին Մեդինայում, շլացուցիչ ջահեր վառուեցան և օդն անուշահոտ բուրմունքներով լցուեցաւ։ Երբոր Մահմեդը փեսայի մօտ էր տանում աղջկան, երկինքն անգամ ուղեկից եղաւ Նորահարսին. Նրա աջ կողմից գնում էր Գաբրիէլ հրեշտակապետը, ձախից՝ Միքայէլը, իսկ ետևից գալիս էին եօթանասուն հազար սերովբէներ, որոնք մինչև առաւօտ հսկողութիւն արին նորատի զոյգի տան շուրջը։

Արևելցիք սիրում են այդպիսի անչափ ու սնապարծ գովեստներով պաճուճել Մահմեդի կեանքի ամեն մի դէպքը, աղարտելով նրա ասպարէզի իսկական վսեմութիւնը, որ յատկապէս պարզութեան մէջ էր կայանում. Մի ուրիշ աւելի վստահելի տեղեկատու հաստատում է, թէ հարսանիքի ընթրիքն էր արմաւ ու ձիթապտուղ, անկողինն էր ոչխարի մորթի, իսկ հարսի օժիտը՝ երկու շապիկ, մի գլխանոց, երկու արծաթի ապարանջան, մի մաշկի բարձ՝ արմաւի տերևներով լցուած, մի ջրի բաժակ, մի առձեռն աղօրի, երկու հատ կուժ և մի կաթսայ։

Այս բոլորը յարմար էր գալիս արաբական տան պարզութեան և նոր զոյգի հանգամանքներին. և Ալին, ասում են, իւր օժիտը վճարելու համար ստիպուած էր ծախել մի քանի ուղտ և մի քանի վերտ զրահք։

Մարգարէի ապրուստն էլ ոչ մի բանով գերազանց չէր իւր աշակերտների ապրուստից։ Այդ մասին վերջին տարիները խօսելիս Այէշան նկատեց. «Պատահում էր, որ ամբողջ ամիսներով կրակ չէր վառվում մեր տանը կերակուր եփելու համար. մեր սնունդն էր արմաւ ու ջուր, երբեմն էլ միս, եթէ բարեկամներն ուղարկէին։ Հազիւ էր պատահում, որ մարգարէի սպասաւորներն երկու օր վրայ վրայ ցորենի հաց ստանային։»

Նրա սովորական սնունդն էր արմաւ, գարեհաց, մեղր ու կաթ. նա ինքն էր աւլում իւր սենեակը, կրակ վառում, հագուստները կարկատում, և իրօք ինքն էր իւր սպասաւորը։ Նա շինել էր մզկիթի մօտ երկու ջոկ տուն իւր երկու կանանց համար, և իւրաքանչիւրի հետ հերթով էր ապրում, չնայելով որ իւր սիրելին Այէշան էր։

Իսլամական գրագէտները գովելով գովում են Մահմեդի նախկին ողջախոհութիւնը, և արդարև յիշատակութեան արժանի է, որ նա, չնայելով արաբների մէջ թոյլ տրուած բազմակնութեան, որին ինքն էլ յետոյ հետևեց, և հակառակ իւր կնասէր բնաւորութեան, հաւատարիմ մնաց Քադիջային մինչև դրա վերջին օրը, և ուրիշ կնոջ տեղ չտուաւ ոչ իւր սրտում, ոչ էլ տանը։ Նոյն իսկ Այէշայի նորափթիթ ու գրաւիչ գեղեցկութիւնը, որ այնպէս տիրել էր նրա հոգուն, չկարողացաւ ջնջել նրա սրտից երախտագիտութեան ու սիրոյ ջերմ զգացմունքը դէպի նախկին բարերարուհին։ Մի օր դեռահաս Այէշան տեսնելով որ նա անձնատուր է եղած այդ քընքուշ յիշատակներին, նեղացաւ վրան և հարցրեց.

«Ո՞վ Ալլահի մարգարէ, միթէ Քաթիջան տարեց չէ՞ր և միթէ Ալլահ նրա փոխարէն մի աւելի լաւ կին չտուած քեզ։»

«Ո՜չ երբէք,» բացագանչեց մարգարէն ազնիւ եռանդով. «Ալլահ երբէք նրանից լաւ կին չէ տուել ինձ։ Երբ որ ես աղքատ էի, նա ինձ հարստացրեց. երբ որ խաբեբայ էի հռչակուած, նա ինձ հաւատաց. երբ բոլոր աշխարհն իմ դէմ էր, նա միայն անձնուէր մնաց։»

## ԺԶ.

*Սուրը հրապարակվում է հաւատի գործիք։—Առաջին կռիւը Կորէյշների դէմ։—Ցարձակումը կարաւանի վրայ։*

Այժմ մտնում ենք Մահմեդի ասպարէզի նըշանաւոր կէտին։ Մինչև այժմ նա փաստերի ու համոզման էր դիմում հետևողներ վաստակելու համար, նոյնը քարոզելով և՛ աշակերտներին։ Նրա յորդորները՝ երկայնամիտ համբերութեամբ դիմանալու հալածանքին, յիշեցնում էին մեր Փրկչի հեզութեան պատուիրանը. «Եթէ ոք ածիցէ ապտակ յաջ ծնօտ քո, դարձո նմա և զմիւսն։» Հիմա նա հասաւ այն կէտին, որտեղից սկսած բոլորովին պիտի շեղուէր Քրիստոսի վարդապետութեան երկնային ոգուց և մարդկային սխալականութեան կնիք դրոշմէր իւր ուսման։ Նրա մահկանացու բնութիւնը ձեռնահաս չեղաւ հաւատարիմ մնալու այն վսեմ ու ներողամիտ գթութեան, որ քարոզում էր մինչև այժմ։ Տասներեք տարուայ հեզամիտ չարքաշութիւնն ուրիշ ոչինչ չէր

բերել նրան, բայց միայն աճող ատելութիւն ու թըշնամանք։ Եւ նրա անհաշտ հալածիչները նոյն իսկ իւր արենակից Կորէյշեան տոհմից էին, և յատկապէս Աբդ Շէմսի հակառակորդ շառաւղից, որի ոխակալ Աբու Սոֆիան պարագլուխն այժմ Մէկկայի կառավարիչ էր։ Այդ ոխերիմ թշնամութեան պատճառով նրա ստացուածքը ոչնչացել էր, ընտանիքն անարգուել, սնանկացել ու ցրուել, ինքն էլ աքսորանքի մատնուել։ Թերևս նա կամայ և ակամայ շարունակէր համբերել այդ բոլորին, եթէ յանկարծ վրէժխնդրութեան միջոցների տէր չդառնար։ Նա եկել էր Մէդինա որպէս մի փախստական, որ ապաւէն էր որոնում և միայն մի հանգիստ տուն։ Կարճ միջոցում նա տեսաւ, որ իւր ձեռքի տակ ամբողջ զօրք է հաւաքուած, որովհետև օր ըստ օրէ Մէդինայում աւելացող աշակերտների, Մէկկայից եկող տարագիրների և անապատի ազգերից հաւատ ընդունող նորադարձների մէջ կային բազմաթիւ խիզախ մարդիկ, որոնք 'ի բնէ զէնքի վարժ էին և ասպատակութեան սիրահար։ Այս անակնկալ զօրութիւնը նրա մարդկային կրքերն ու քաշած զրկանքների յիշատակը բորբոքեց, քէնը շարժեց։ Դրանք միացան հաւատը վերանորոգելու եռանդի հետ, որ միշտ նրա սրտին տիրող զգացմունքն էր։ Իւր դիւրավառ ոգու յափշտակութիւնից մղուելով, նա աշխատեց համոզել իրեն, թերևս իրօք էլ համոզուած էր, թէ այս կերպով իւր ձեռքի տակ կենդրոնացած զօրութիւնը իւր գլխաւոր նպատակն իրագործելու միջոց է և ինքն էլ այդ միջոցը գործադրելու համար 'ի վերուստ կոչուած մարգարէ։ Գոնէ այդ էր այն հռչա-

կաւոր հրովարտակի իմաստը, որ հրատարակեց այդ միջոցին և որ իսպառ յեղաշրջեց նրա հաւատի բնութիւնն ու ճակատագիրը։

«Զանազան մարգարէներ,» ասում է նա, «առաքուեցան Աստուծուց՝ նրա պէսպէս յատկութիւնները քարոզելու համար։ Մովսէսը նրա գթութիւնն ու վերնախնամ տեսչութիւնը փառաբանեց. Սողոմոնը՝ նրա իմաստութիւնը, մեծութիւնն ու փառքը. Յիսուս Քրիստոսը՝ նրա արդարութիւնը, ամենագիտութիւնն ու զօրութիւնը,—արդարութիւնը իւր սուրբ վարքով, ամենագիտութիւնը՝ մարդկային սրտի ամեն գաղտնիքը ճանաչելով, զօրութիւնը՝ իւր գործած հրաշքներով։ Սակայն այդ յատկութիւններից և ոչ մէկը բաւական չեղաւ համոզելու մարդկանց, և նոյն իսկ Մովսէսի ու Յիսուսի հրաշքներն անհաւատ մեկնութիւնների տակ ընկան։ Ուստի ես, որ մարգարէների վերջինն եմ, սուսերով եմ առաքուած։ Իմ հաւատի քարոզիչները ոչ փաստերի թող դիմեն, ոչ էլ համոզման, այլ սրով կոտորեն ամենքին, որոնք չեն փութայ հնազանդուելու օրէնքին։ Ճշմարիտ հաւատի համար մարտնչողը, թէ յաղթէ և թէ պարտուի, անպատճառ փառաւոր վարձք կըստանայ։»

«Սուրը,» աւելացնում է նա, «երկնքի և դըժոխքի բանալին է։ Ամենեքեան, որոնք յանուն հաւատի կըմերկացնեն նրան, ժամանակաւոր բարիքներով կը վարձատրուին. Նրանց արեան ամեն մի կաթիլը, նրանց ամեն մի չարչարանքն ու վտանգը աւելի ընդունելի կըհամարուի երկնքում, քան թէ պահքն ու աղօթքը։ Եթէ նրանք ընկնին պատե-

բազմում, նրանց մեղքերն անմիջապէս կըջնջուէին և իրենք արքայութիւն կըտարուէին՝ անվրաւ երջանկութիւն վայելելու սևաչեայ հուրիների գրկում»։

Այս պատերազմական քարոզին ոյժ տուաւ և ճակատագրի ուսմունքը։ Կուրանի ասելով՝ ամեն մի դէպք 'ի յաւիտենից սահմանուած է և չէ կարելի խուսափել նրանից։ Ոչ մի մարդ չի մեռնիլ սահմանուած ժամից առաջ և կամ ուշ, և երբոր ժամը հասնի, բոլորը մին է, թէ մահուան հրեշտակը որ տեղ կըգտնէ մարդուն—արդեօք հանգիստ անկողնում, թէ պատերազմի դաշտում։

Այդ յայտնութիւններն ու քարոզներն էին, որոնք Իսլամի հեզութեան ու մարդասիրութեան կրօնը յանկարծ բռնութեան ու սրի կրօն դարձրին։ Այսպիսի մի կրօն առանձնապէս սիրելի էր արաբներին, որովհետև նրանց բարքին յարմար էր և աւազակային հակումներին ձեռնտու։ Զարմանալի չէ ուրեմն, որ անապատի արդէն 'ի բնէ հուղկահար զաւակները սուր քարոզող կրօնի հրաւէրը լսելներուն պէս՝ գունդագունդ հաւաքուէին մարգարէի դրօշի տակ։

Սակայն Մահմեդը դեռ չէր հրամայում անհաւատների դէմ բռնութիւն գործ դնել, միայն թէ նրանք հնազանդուէին իւր ժամանակաւոր իշխանութեան և յանձն առնէին հարկ վճարել. և այս տեղ նշմարում ենք աշխարհային փառասիրութեան և անցաւոր տիրապետութեան առաջին տենչը, որ արդէն վառուել էր նրա սրտում։ Ընթերցողները կըտեսնեն սակայն, որ այս կերպով պահանջուած հարկը դեռ Մահմեդի գլխաւոր կրքին պիտի ծա-

ռայէր և առաւելապէս հաւատի տարածման յատկացուէր։

Մահմեդի առաջին իսկ պատերազմական գործերից երևում է վերը յիշուած թաքուն վրէժխնդրութեան ոգին։ Նրանք ուղղուած էին իւր անհաշտ թշնամի Կորէյշներին պատկանող մէկկացի կարաւանների դէմ։ Առաջին երեք արշաւանքի առաջնորդը Մահմեդն ինքն էր, բայց դրանք ապարդիւն անցան։ Չորրորդը յանձնեց Աբդալլահ իբն Ջաշ մուսլէմին, որ և ութ կամ տասն անվեհեր ընկերներով դէպի հարաւային Արաբիա դիմեց։ Որովհետև այդ դէպքը սրբազան Րաջէբ ամսին տեղի գտաւ, երբ որ չէր կարելի հարստահարել ու կողոպտել, ուստի Մահմեդը մի կնքուած պատուէր տուաւ Աբդալլահին, որ միայն երրորդ օրը պիտի բացուէր։ Այդ պատուէրը թէև անորոշ, բայց նշանաւոր բառերով էր արտայայտուած։ Աբդալլահին հրաման էր տրվում չուել դէպի Նակլահի հովիտը—Թայէֆի ու Մէկկայի մէջ տեղում, ուր դևեր էին երևցել Մահմեդին, և սպասել այն տեղ Կորէյշեան կարաւանին։ «Գուցէ դու հնար գտնես լուր բերելու մեզ նրա մասին,» աւելացնում էր պատուէրը։

Աբդալլահը թղթի բուն իմաստն ըմբռնեց և ըստ այնմ գործ տեսաւ։ Նակլահի հովիտը հասնելուն պէս նա նշմարեց ապրանքով բեռնաւորուած մի կարաւան և չորս առաջնորդ։ Հեռուից հետևելով կարաւանին, նա ուխտաւորի շորեր հագած մի զինուոր ուղարկեց նրա ետևից։ Զինուորը միացաւ կարաւանին։ Նորեկի խօսքերին նայելով Կորէյշացիք կարծեցին, թէ նրա ընկերներն էլ իւր նման Մէկկա գնացող

ուխտաւորներ կըլինին. մանաւանդ որ ամիսն էլ Րաջէբ ամիսն էր, երբ կարելի էր աներկիւղ անցնել անապատի միջով։ Սակայն հենց որ նրանք դադար առին, Աբդալլահը և իւր վաշտը կարաւանի վրայ ընկան, պահապաններից մէկին սպանեցին և երկուսին գերի բռնեցին. չորրորդը փախաւ։

Այնուհետև յաղթողներն իրենց գերիներին և աւարը տանելով վերադարձան Մէդինա։

Ամբողջ Մէդինան զայրացաւ սրբազան ամսի այդ տեսակ եղծման վրայ։ Մահմեդը տեսնելով որ շատ յանդուգն բան է արել, առ երեսս բարկութիւն ցոյց տուաւ Աբդալլահին և մերժեց իրեն առաջարկած աւարի մասը։ Իւր հրահանգի անորոշ իմաստին յենուելով նա պնդում էր, թէ չէր հրամայել Աբդալլահին արիւն թափել սրբազան ամսին և կամ որ և է բռնութիւն գործել։

Բայց որովհետև ժողովրդի տրտունջը սաստկանում էր, արձագանք գտնելով մէկկացի Կորէյշների մէջ, Մահմեդը Կուրանի հետևեալ տունը յօրինեց։

«Նրանք կը հարցնեն քեզ, թէ արդեօք կարելի՞ է պատերազմել սրբազան ամսին։ Պատասխան տուր. Այդ ամսին պատերազմելը արդարև մեղք է, բայց Աստուծուն ուրանալը, Նրա ճանապարհը ժողովրդի առջև փակելը, Նրա սուրբ տաճարից ճշմարիտ հաւատացողներին արտաքսելն և կուռքեր պաշտելը և՛ս աւելի ծանր մեղքեր են, քան թէ մարդ սպանելը սրբազան ամսին։

Իւր արարքին այդպիսի երկնային վաւերացումն տալուց յետոյ՝ Մահմեդը ա՛յլ ևս չը գլացաւ իւր մա-

սրն առնել աւարից։ Գերիներից մէկին նա ազատեց փրկանքով, միւսն Իսլամ ընդունեց։

Ո՛րքան էլ Կուրանի վերոյիշեալ տունը հաւանելի թուէր ջերմեռանդ մուսլէմներին, բայց և այնպէս դժուար թէ նա կարողանար արդարացնել մարգարէին ուրիշների աչքում։ Աբդալլահ իբն Ջաշի արշաւանքը սուր քարոզող նոր կրօնի մի տխուր և գործնական լուսաբանութիւնն էր։ Դա ոչ միայն չելուզակութիւն ու վրէժխնդրութիւն էր—դրանք դատարկ բաներ էին արաբների համար, մանաւանդ երբոր ուղղուած էին հաւատի թշնամիների դէմ,— այլ և անարգումն դարերէ 'ի վեր արինւհեղութեան ու բռնութեան դէմ սրբագործուած նուիրական ամսի, որին կարծես թէ Մահմեդն ինքն էլ մեծարանք էր ընծայում։ Նաև այն նենգութիւնն ու գաղտնիքը, որով հնարուած ու կարգադրուած էր բոլոր գործը,—Աբդալլահին տրուած կնքեալ հրահանգը, որ միայն երրորդ օրը պիտի բացուէր, այն էլ դիտուած ոճրի տեղում, և հրահանգի անորոշ, երկդիմի, բայց գործադրողի համար բաւական նշանաւոր լեզուն,— այդ բոլորը բացէ 'ի բաց հակառակ էր Մահմեդի առաջուայ վարմունքին, երբ նա քաջութիւն ունէր արդարութեան ճանապարհով ընթանալու, «եթէ անգամ նոյն իսկ արևն աջ կողմից և լուսինը ձախ կողմից իւր դէմ գալու լինէին». այդ ամենը ցոյց է տալիս, որ նա իւր թոյլ տուած գործի գարշութեան լաւ գիտակ էր։ Նրա հրաժարուիլն Աբդալլահի արած ոճրից և դրա արդարացումն Կուրանով՝ բռնութեան պտուղներից անպատիժ օգտուելու համար, և՛ս աւելի մութ ստուեր է ձգում նրա արար-

քի վրայ, ապացուցանելով, թէ ինչպէս շուտ և ինչպէս սաստիկ մոլորուեցաւ նա, հենց որ հրաժարուեց քրիստոնէութեան մարդասէր ոգուց, որին սկզբում աշխատում էր հետևել։ Աշխարհային կրքերն ու շահերն աւելի զօրեղ հանդիսացան նրա սրտում, քան թէ կրօնական եռանդը, որով առաջ ոգևորուած էր։ Ճշմարիտ է նկատել մէկը, թէ «նրա անուամբ սրբագան ամսին թափուած արեան առաջին կաթիլը լիովին հաստատեց, թէ նա մարդ էր, որի մէջ երկրային ցեխը հանգցրել էր մարգարէութեան սուրբ հուրը։»

## ԺԷ.

### Բեդէրի ճակատամարտը։

Հիջրէթի երկրորդ թուականին Մահմեդը լուր առաւ, թէ իւր մահացու թշնամի Աբու Սոֆիանն երեսուն ձիաւորի գլուխ անցած՝ Ասորիքից Մէկկա է տանում մի ապրանք կրող կարաւան, որ կազմուած էր հազար ուղտից։ Նրանք պիտի անցնէին Մէդինայի նահանգով, լեռների ու ծովափի միջով։ Մահմեդը որոշեց բռնել նրանց։ Ռամազան ամսի կէսին նա չուեց ընկաւ, առնելով հետը երեք հարիւր տասնչորս մարդ, որոնցից ութսունեւերեքը Մոհաջերիք էին կամ մէկկացի փախստականներ, վաթսունմէկն՝ Աւսիթեանք և հարիւրեօթանասունը՝ Կազրաջեանք։ Իւրաքանչիւր վաշտ իւր առանձին դրօշակն ունէր։ Ամբողջ գնդում միայն երկու ձի կար *) և եօթանասուն սըր-

*) „Անապատի արաբացիք,“ ասում է Բուրքհարդը, „նժոյգներով հարուստ չեն։ Կարմիր ծովի եզերքին՝ Ակա-

ընթաց ուղտ, որոնց վրայ զինուորները հերթով էին նստում՝ առանց մեծ յոգնութեան դէպի առաջ գընալու համար։

Մահմեդի փեսան՝ Օսման իբն Աֆանը նոր էր վերադարձել իւր Ռոկայայ կնոջ հետ Հաբէշստանի աքսորից և ուզում էր մասնակցել արշաւանքին, բայց կնոջ մահամերձ հիւանդութիւնը ստիպեց նրան Մէդինա մնալ։

Մահմեդը նախ Մէկկայի մեծ ճանապարհով յառաջ գնաց, յետոյ իւր ձախ կողմը թողնելով դրան, դէպի Կարմիր ծովը շեղուեց և Բեդէր գետակի արգաւանդ հովիտը մտաւ։ Այստեղ դարանամուտ եղաւ մի հունի մօտ, որ կարաւանների սովորական անցքն էր, և հրամայեց իւր մարդկանց մի փոս փորել ու ջրով լցնել, որպէս զի կարողանան ծարաւը հանգցնել՝ առանց նեղուելու թշնամուց։

Միևնոյն ժամանակ Աբու Սոֆիանը լուր առաւ, թէ Մահմեդը գերազանց ուժով իւր վերայ է գալիս, և մի սրընթաց սուրհանդակ արձակեց Մէկկա, պատուիրելով որ արագ օգնութիւն հասցնեն իրեն։ Սուրհանդակը խուճապած ու շնչասպառ հասաւ կանգնեց Քեաբէի մօտ։ Աբու Ջահլը տանիքի վրայ բարձրա-

---

բայի և Մէկկայի միջև բնակուող բազմաթիւ ցեղերի մօտ, և Մէկկայից դէպի հարաւ և հարաւ-արևելք՝ մինչև Եմէն, այդ կենդանիները շատ հազուագիւտ են, մանաւանդ լեռնային գաւառներում։ Հէջազի և Եմէնի նստական բնակիչները գրեթէ սովոր չեն ձի պահելու։ Ձիերով հարուստ են միայն այն ցեղերը, որոնք բնակվում են Միջագետքի համեմատաբար աւելի արգաւանդ դաշտերի վրայ, Եփրատի եզերքի վրայ և Ասորիքի տափարակներում։“—*Burckhardt, II, 50.*

ցաւ և փող հնչեցրեց։ Ամբողջ Մէկկան ահ ու շփոթով ոտքի ելաւ։ Չէնդան՝ Աբու Սոֆեանի անվեհեր ու մոլեգին կինը խսկոյն կանչեց իւր Օթա հօրը, Ալ Վէլիդ եղբօրը, Շայբ հօրեղբօրն և իւր տոհմի բոլոր զինուորներին և պահանջեց սպառազինուել ու փութալ օգնել իւր մարդուն։ Նախկահի հովտում Աբդալլահ իբն Ջաշի ձեռքով սպանուած Կորէյշացու եղբայրներն էլ զէնք վերցրին նրա մահուան վրէժը լուծելու։ Վրէժխնդրութեան փափագից զատ նրանց դրդողն էր և նիւթական շահերի հաշիւը, որովհետև գրեթէ ամեն մի Կորէյշացի ապրանք ունէր կարաւանում։ Կարճ միջոցում հարիւր ձիաւոր և եօթն հարիւր ուղտ հեծած կտրիճներ դուրս ելան ասորական ճանապարհով, և դրանց զօրաւարն էր եօթանասուն տարեկան Աբու Ջահլ ծերունին՝ անապատների հինաւուրց զինուորը, որ դեռ պահպանել էր երիտասարդութեան բոլոր եռանդն ու կորովը, սաստ կացնելով դրան ծեր հասակի ոխապահութեամբ։

Մինչդեռ Աբու Ջահլն իւր գնդի հետ մէկ ուղղութեամբ էր արշաւում, Աբու Սոֆիանը մօտենում էր միւս կողմից։ Վտանգաւոր վայրին հասնելուն պէս՝ նա յետ թողաւ իւր կարաւանն և ինքն առաջ անցնելով, ուշադրութեամբ զննեց ամեն մի հետք ու շաւիղ։ Վերջապէս գտաւ Մահմեդի փոքրիկ գնդի թողած հետքը։ Նա ճանաչեց այդ հետքն արմաւի խոշոր կորիզներից, որ ձգել էր գունդը ճանապարհով անցնելիս,—Մէդինայի արմաւների կորիզը սովորաբար շատ մանր է։ Այսպիսի չնչին բաներն անգամ կարևոր են արաբների համար, երբ որ լրտեսում են անապատում թշնամուն։

Մահմեդի բռնած ուղղութիւնը գտնելուց յետոյ Աբու Սոֆիանը փոխեց իւր ճանապարհն և գնաց Կարմիր Ծովի եզերքով մինչև մի որոշ տեղ, որ արդէն վտանգից դուրս էր համարում։ Այն տեղից նա մի ուրիշ սուրհանդակ արձակեց՝ իւր կարծիքով արդէն յուղի ընկած Կորէյշներին յայտնելու, թէ կարաւանն ապահոված է և նրանք կարող են Մէկկա վերադառնալ։

Սուրհանդակը պատահեցաւ Կորէյշներին, երբ որ նրանք արագավազ գալիս էին։ Լսելով որ կարաւանը ազատուած է, նրանք կանգ առին խորհելու։ Ոմանք փափագում էին յառաջ դիմել և մի լաւ պատժել Մահմեդին և նրա հետևողներին. մինչդեռ միւսները խորհուրդ էին տալիս յետ գնալ։ Այդ անորոշ վիճակի մէջ նրանք մի լրտես ուղարկեցին Թըշնամու զօրքը դիտելու։ Լրտեսը լուր բերաւ, թէ նրանց թիւը մօտ երեք հարիւր է. այս հանգամանքը և՛ս աւելի բորբոքեց կռուասէրների եռանդը։ Միւսները դարձեալ բողոքեցին.

«Լաւ կշռեցէք,» ասացին նրանք, «որ այդ մարդիկ ոչ մի կորցնելու բան չունին։ Նրանց ունեցածը միայն սուրն է, և նրանցից ոչ ոք իւր թշնամուն չսպանած չի ընկնիլ։ Թողնենք այս. նրանց մէջ կան և մեր ազգականները. եթէ մենք յաղթենք ազգականներին սպանելով, այնուհետև ինչպէս պիտի նայենք միմեանց երեսին։»

Այդ խօսքերն ազդեցին, սակայն Նակլահի հովտում սպանուած Կորէյշի եղբայրները, Աբու Ջահլից դրդուելով, վրէժխնդրութիւն էին պահանջում։ Կռակոտ արաբը գրգռում էր նրանց.

«Ցառաջ,» գոչեց նա «գնանք Բեդէրի վտակից

ջուր բերենք այն խնջոյքի համար, որով տօնելու ենք կարաւանի փրկութիւնը։»

Զօրքի մեծ մասը դրօշակները պարզեց և շարունակեց առաջ ընթանալ, մէկ մասն էլ Մէկկա վերադարձաւ։

Մահմեդն իմացաւ իւր լրտեսներից այդ զօրքի մօտենալը։ Նրա զինուորներից ոմանք, որոնք եկել էին թեթև կռուի ու մեծ աւարի յոյսերով, սրտաբեկ եղան այդ գերազանց զօրքի մօտենալուց· սակայն Մահմեդը քաջալերեց նրանց, ասելով թէ Ալլահ մի թեթև յաղթութիւն է խոստացել նրան։

Մուսլէմները կանգնեցան մի բլրի վրայ, որի ստորոտում ջուր էր հոսում։ Բլրի գագաթին մի տաղաւար էին շինել շտապով Մահմեդի համար, մօտն էլ մի ուղտ կապել, որպէս զի կարողանար Մէդինա փախչել պարտուելու դէպքում։

Թշնամու առաջապահ գունդը հովիտ մտաւ և ծարաւից մեռնելով իսկոյն ճեպեց դէպի վտակը՝ ջուր խմելու։ Այդ միջոցին Մահմեդի հօրեղբայր Համզան իւր զինուորներով նրանց վրայ ընկաւ և անձամբ սպանեց նրանց առաջնորդին։ Առաջապահներից միայն մէկ մարդ կենդանի մնաց· այդ մէկն էլ յետոյ Իսլամ ընդունեց։

Այն ժամանակ փողեր հնչեցնելով վրայ հասաւ թշնամու գլխաւոր բանակը։ Կորէյշներից երեք ձիաւոր յառաջ ելան և մենամարտի հրաւէր կարդացին ամենաքաջ մուսլէմներին։ Երեք ախոյեաններից երկուսն էին Աբու Սոֆիանի աներ Օթան ու նրա փեսայ Ալ Վէլիդը· երրորդն էր Օթայի Շայբ եղբայրը։ Դրանք, ինչպէս որ ասել ենք, Աբու Սոֆիանի կնոջ

Հէնդայի դրդմամբ էին Մէկկայից եկած, և բոլորն էլ անուանի էին իրենց տոհմի մէջ։

Երեք մէդինացի զինուորներ դուրս եկան և հրաւէրն ընդունեցին. սակայն «Ո՛չ,» գոչեցին Կորէյշացիք. «մեր մէկկացի ուրացողները թող յառաջ գան, եթէ միայն համարձակուին»։

Այն ժամանակ մարտի եկան Համզան և Ալին (Մահմեդի հօրեղբայրն ու փեսան) և Օբէյդա իբն ալ Հարէսը։ Յամառ ու արիւնահեղ կռուից յետոյ Համզան և Ալին սպանեցին իրենց հակառակորդներին. ապա թէ հասան Օբէյդային օգնելու, որ կարեվէր խոց էր ստացել և գրեթէ պարտուած էր Օթայից։ Այդ Կորէյշին էլ սպանելով, նրանք փրկեցին իրենց ընկերին. բայց դա իսկոյն մեռաւ վէրքերից։

Այժմ կռիւն ընդհանրացաւ։ Մուսլէմները, իրենց թուի նուազութիւնը գիտենալով, սկզբում աշխատում էին միայն պաշտպանուիլ և բլրի գլխին կանգնած՝ նետեր տեղալ թշնամիների վրայ, հենց որ դրանք մօտենում էին վտակին անտանելի ծարաւը կտրելու համար։ Մահմեդը մնում էր Աբու Բեկրի հետ իւր վրանում, բլրի վրայ, և ջերմ ջերմ աղօթում։ Պատերազմի միջոցին նա յանկարծ ուշաթափ եղաւ կամ թէ զառանցութեան մէջ ընկաւ։ Ուշքի գալուն պէս յայտարարեց, թէ Աստուած յաղթութիւն է աւետել նրան տեսիլքի մէջ։ Ապա թէ վրանից դուրս վազեց, մի բուռն փոշի վերցրեց և Կորէյշների դէմ հովին տուաւ, գոչելով. «Թող խռովութիւն իջնի ձեր դէմքի վրայ։» Յետոյ սկսաւ յառաջ նետուելու խրախոյս կարդալ իւր գնդին. «Կռուեցէ՛ք և մի՛ վախենաք,» գոռաց նա, «արքայութեան դռները ձեր

սուրերի ստուերի տակ են։ Ո՛վ որ հաւատի համար ընկնի, անմիջապէս մուտք կ'ունենայ։»

Դրան յաջորդող ընդհարման ժամանակ Աբու Ջահլը, որ կռուի մէջ էր սլացել ձիով, սրի հարուած ստացաւ ազդրին և ընկաւ։ Աբդալլահ իբն Մասուդը նրա լանջքին դրաւ իւր ծունկը, և մինչդեռ ամեհի զինուորը թաւալվում էր գետնի վրայ, նզովելով Մահմեդին, նրա գլուխը թռցրեց։

Կորէյշացիք տեղի տուին ու փախան։ Նրանք թողին դաշտի վրայ եօթանասուն դիակ. նոյնքան մարդ էլ գերի ընկաւ։ Մուսլէմները կորցրին տասնչորս մարդ, որոնք մինչև այս օր էլ յիշատակվում են, որպէս հաւատի նահատակներ։

Այս նշանաւոր յաղթութիւնը բնական պատճառների արդիւնք էր։ Մուսլէմները առոյգ էին և արդէն հանգիստ առած, լաւ դիրք ունէին, առատ էլ ջուր. մինչդեռ Կորէյշացիք հապճեպ արշաւից յոգնած էին, ծարաւից նուաղած և շատերի Մէկկա վերադառնալուն պատճառով՝ սակաւաթիւ։ Բայց իսլամական պատմիչները գերբնական միջամտութեան են վերագրում հաւատի այդ առաջին յաղթանակը։ «Երբոր Մահմեդը փոշի ցանեց օդի մէջ», ասում են նրանք, «երեք հազար հրեշտակային զինուորներ՝ սպիտակ ու դեղին չալմաներով, շողշողուն զգեստներով, սև ու ճերմակ նժոյգներ հեծած՝ մրրիկի պէս հորդան տուին Կորէյշների վրայ և տակն ու վրայ արին նրանց։»

Եւ այդ բանը հաստատվում է ոչ միայն մուսլէմ վկաների ասութեամբ, այլ և մի կռապաշտ հովուի խօսքերով, որ այն միջոցին իւր հօտի հետ

կանգնած է եղել մի մերձաւոր բլրի վրայ։ «Ես և ընկերս,» ասել է նա, «կանգնած էինք փարախի մօտ՝ բլրի վրայ, պատերազմին նայելով, և սպասում էինք դրա ելքին, որ յաղթողների կողմն անցնենք և աւարից բաժին ստանանք։ Յանկարծ տեսանք, որ մեր դէմ մի ահագին ամպ է գալիս, և միջից ձիերի վրնջիւն ու փողերի որոտ լսեցինք։ Երբոր ամպը մօտեցաւ, հրեշտակների գումարտակներ դուրս թռան միջից, և մենք լսեցինք նրանց առաջնորդի ահարկու ձայնը, որ ճեպում էր իւր հայզում մատակին. —Ճտապի՛ր, շտապի՛ր, ո՛վ հայզում։ Ընկերիս սիրտը պայթեց այդ սոսկալի գոռումից, և նա մեռաւ նոյն րոպէին. քիչ էր մնացել՝ ես էլ իսկոյն մեռնէի։» *)

Կռուից յետոյ Աբդալլահ իբն Մասուդը Մահմեդի մօտ տարաւ Աբու Ջահլի գլուխը։ Մահմեդը՝ յաղթութեան այդ քստմնելի նշանի վրայ ցնծութեամբ նայելիս՝ բացագանչեց. «Այդ մարդը մեր ազգի փարաւոնն էր»։ Ակեոր զօրականի բուն անունն

---

*) Այդ հրաշալի օգնութիւնը մի քանի անգամ յիշատակուած է Կուրանի Գ. գլխում. „Ալլահ արդէն շնորհեց ձեզ Բեդէրի յաղթանակը, երբոր դուք նուազ էիք թուով, երբոր դու ասացիր բարեպաշտներին. Մի՞թէ քի՞չ է, որ Տէրը երեք հազար հրեշտակ առաքեց ձեզ օգնելու։ Ճշմարիտ եմ ասում. Եթէ դուք հաստատ մնաք ձեր հաւատին և երկնչէք Ալլահից, և յանկարծ թշնամին ձեր վրայ յարձակուի, Ալլահ ոչ թէ երեք, այլ հինգ հազար սպառազէն և ձիաւոր հրեշտակներով կ'օգնէ ձեզ...։“ „Ո՛վ հաւատացեալք, դուք չէիք, որ սպանեցիք Բեդէրի դաշտում յաղթուածներին, այլ Ալլահ կոտորեց նրանց։ Ոչ էլ դու էիր, ո՛վ Մահմեդ, որ աւազ ցանեցիր նրանց աչքին, այլ Ալլահ ցանեց այն աւազը։“

էր Ամրու իբն Հաշամ։ Կորէյշացիք նրա խելքը յարգելու համար անուանել էին Աբու՛ Լհեօմ, այսինքն Հայր իմաստութեան։ Մուսլէմները փոխեցին այդ մականունն Աբու Ջահլի, որ ասել է Հայր յիմարութեան։ Վերջին վերադիրը մնաց պատմութեան մէջ, և ճշմարիտ հաւատացեալներն երբէք չեն յիշատակում նրան առանց գոչելու. «Տիրոջ անէծքը նրա գլխին։»

Պատերազմում ընկած մուսլէմները մեծ շքով թաղուեցան. իսկ Կորէյշացոց դիակները մի փոսի մէջ գլորուեցան անարգաբար։ Այնուհետև խնդիր ծագեցաւ, թէ ինչ պէտք էր անել գերիների հետ։ Օմարի կարծիքով անհրաժեշտ էր բոլորին էլ գլխատել, Աբու Բեկրը խորհուրդ էր տալիս արձակել նրանց փրկանքով։ Մահմեդը նկատեց, թէ Օմարը նման է Նոյին, որ աղօթում էր մեղաւորների ջրահեղձ սատակման համար, իսկ Աբու Բեկրը՝ փրկութեան համար բարեխօսող Աբրահամին, և ապա թէ յօգուտ գըթութեան վճռեց գործը։

Գերիներից երկու մարդ սակայն մահուան պատիժ ընդունեցին. մէկն էր Նադհարը, որ ծաղրել էր Կուրանը, պարսկական առասպելների հաւաքածու անուանելով դրան. միւսն էր Օքբանը, որ փորձել էր սպանել Մահմեդին, երբ դա առաջին անգամ քարոզ էր ասել Քեաբէում և փրկուել Աբու Բեկրի պաշտպանութեամբ։

Մի քանի գերիներ ազատութիւն ստացան, երդում անելով, թէ այլ ևս զէնք չեն վերցնիլ Մահմեդի և նրա հետևողների դէմ. միւսներին բանա-

կում պահեցին, մինչև որ նրանց ազգականները փըրկանք բերեն։

Ամենից նշանաւոր գերին էր Մահմեդի հօրեղբայր Ալ Աբբասը։ Նրան բռնել էր Աբու Եասեր անունով մի կարճլիկ մարդ։ Եւ որովհետև ամենքը ծիծաղում էին դրանց հասակի տարբերութեան վրայ, Ալ Աբբասը ճգնում էր հաւատացնել, թէ իրեն բըռնողն Աբու Եասերը չէր, հապա մի ուրիշ վիթխարի ասպետ, որի երիվարի նման կենդանի նա իւր օրում չէր տեսած։ Իսկ Աբու Եասերը պնդում էր, թէ ինքն է բռնել։ Մահմեդը՝ հօրեղբօրն ամօթով չթողնելու համար բանն այնպէս բացատրեց, թէ Գաբրիէլ հրեշտակն օգնած կըլինէր նրան բռնողին։

Ալ Աբբասը ջանում էր փրկանք վճարել, ասելով թէ սրտանց մուսլիմ է և միայն ստիպմամբ էր մասնակից եղել պատերազմին. բայց այդ պատճառանքը չազատեց նրան։ Շատերն ասում են, թէ նա իրօք ծածուկ բանակցութիւն էր ունեցել Մահմեդի հետ և նրա համար լրտեսութիւն արել Մէկկայում Բեդէրեան պատերազմից թէ առաջ և թէ յետոյ։

Միւս շատ նշանաւոր գերին էր Մահմեդի Զէյնաբ դստեր Աբուլ Աաս ամուսինը։ Մարգարէն շատ էր ուզում գրաւել փեսայի սիրտն և իւր աշակերտն անել նրան, բայց Աբուլ Աասը յամառում էր անհաւատութեան մէջ։ Այն ժամանակ Մահմեդը որոշեց այն պայմանով ազատել նրան, որ նա վերադարձնէ իւր աղջկան։ Անհաւատը յօժարութիւն տուաւ, և մարգարէի հաւատարիմ որդեգիր Ծէիդը Մէկկա գընաց՝ Զէյնաբին Մէդինա բերելու. իսկ Աբուլ Աասն

իւր աների մօտ պատանդ մնաց, մինչև որ պայմանը կատարուէր։

Դեռ բանակը Մէդինա չվերադարձած՝ սկսան բաժանել աւարը, որովհետև Աբու Սոֆիանի կարաւանը թէև ճողոպրել էր, բայց պատերազմում շատ ուղտեր ու զէնքեր էին յափշտակուել, և գերիների փրկանքի գինը մի խոշոր գումար պիտի կազմէր։ Այս առթիւ Մահմեդը կարգադրեց՝ բոլոր աւարը հաւասար բաժանել մարտին մասնակցած մուսլէմների միջև, և թէպէտ հին արաբական օրէնքը պատուիրում էր չորրորդ մասը զօրավարին տալ, նա միւս զինուորների հաւասարակ բաժնով շատացաւ։ Նրան վիճակուած իրերից մէկն էր Դուլ Ֆակար կամ հատու կոչուած քաջամուխ թուրը։ Այնուհետև պատերազմ գնալիս նա միշտ կրում էր այդ թուրը, որ նրա մահից յետոյ իւր Ալի փեսան ժառանգեց։

Աւարի այդ հաւասար բաշխումը մեծ տրտունջ պատճառեց զօրքին։ Պատերազմի բուն գուպարում շահատակող և իսկապէս աւարն առնող քաջերը դժգոհ էին, որ կռուից մեկուսի մնացող զինուորներն էլ, կամ թէ բանակապահ ծերերն էլ իրենց հաւասար բաժին ստացան։ Այս վէճը Սաւլի ասելով, նման էր Ամալէքացոց բանակից խլած աւարի առթիւ Դաւթի զօրքում ծագած վէճին, ուր կռուի վտանգին դիմագրաւած կտրիճները պնդում էին, թէ բանակի կահ-քի մօտ մնացողները մաս չպիտի ստանան աւարից։ Վճիռը նոյն էր—բոլորին էլ տալ հաւասար բաժին։*)

Մահմեդը, որ բաւական տեղեակ էր Սրբազան

*) Առաջին գիրք Թագաւորաց, գլուխ Լ, 21—25։

Պատմութեան, Թերևս այդ իսկ վճռից օրինակ առաւ։ Աւարի բաժանման մասին որոշ կանոն սահմանելը շատ կարևոր էր մի զօրավարի համար, որ պատբաստվում էր ոտք դնել աւազակային պատերազմների ասպարէզը։ Եւ Մէդինա վերադառնալուն պէս նա մի բարեպատեհ տեսիլք ունեցաւ, որ ընդ միշտ կարգադրում էր ապագայ կրօնական պատերազմներում ձեռք բերուելիք աւարի բաժանման խնդիրը։

Այսպէս վերջացաւ Բեդէրի մեծահռչակ պատերազմը՝ հագարացոց առաջին յաղթութիւնը Մահմեդի դրօշակի տակ,—մի դէպք, որ թերևս ինքն ըստ ինքեան չնչին էր, բայց սակայն զարհուրելի հետևանքներ ունեցաւ, որովհետև դա սկիզբն էր այն բազմաթիւ յաղթանակների, որոնք տիեզերքի վիճակը փոխեցին։

## ԺԸ.

*Մահմեդի Ռոկայա դստեր մահը։—Զէյնաբ դստեր վերադարձը։—Մահմեդի նզովքի ազդեցութիւնը Աբու Լահաբի եւ սրա գերդաստանի վրայ։—Աբու Սոֆիանի կնոջ՝ Հէնդայի կատաղութիւնը։—Մահմեդի ազատուիլը սպանուելու վտանգից։—Կորէյշացոց դեսպանութիւնը։—Հաբէշստանի Թագաւորը։*

Մահմեդը՝ իւր առաջին պատերազմում ձեռք բերած աւարն ու գերիներին հետն առնելով, ցնծութեամբ վերադարձաւ Մէդինա։ Սակայն իւր խնդութիւնը մի ընտանեկան վշտով պղտորուեցաւ. մեռել էր նորա սիրելի Ռոկայա դուստրը, որ նոր էր ազատուած աքսորից։ Մահմեդի առջևից յաղթութեան

ուխտիքով ընթացող սուրհանդակը քաղաքի դուռն հասնելուն պէս՝ մի սգաւոր հանդէսի հանդիպեցաւ. այդ էր Բոկայի դին, որ տանում էին գերեզման։

Փոքր ինչ յետոյ Մահմեդի վիշտը մեղմացաւ իւր միւս դստեր՝ Զէյնաբի և հաւատարիմ Սէիդի վերադարձովը Մէկկայից։ Սէիդը մեծ դժուարութեամբ գլուխ բերաւ այդ գործը։ Մէկկայի բնակիչները վերին աստիճանի զայրացած էին իրենց կրած պարտութիւնից և գերիներին դրամով փրկելու հարկից։ Ուստի Սէիդը չէր վստահացել քաղաք մտնել, այլ մի մարդու ձեռքով իմաց էր տուել Աբուլ Աբասի եղբօր Քէնանին վերոյիշեալ դաշինքն և աղաչել, որ նա մի որոշ տեղ դուրս բերէ Զէյնաբին և իրեն յանձնէ։

Քէնանը փորձեց պատկարով դուրս տանել քաղաքից Զէյնաբին. Ճանապարհին կորէյշացիք արգելք դրին Մահմեդի աղջկայ փախչելուն և յարձակուեցան վրան։ Հաբբար իբն Ասուադ արաբացին կռուի ժամանակ նիզակ մխեց պատկարակի մէջ, և Զէյնաբը չէր ազատուիլ մահուանից, եթէ Քէնանն իւր աղեղով յետ չվանէր այն հարուածը։ Աբու Սոֆիանը վրայ հասաւ այդ կռուին և չարաչար պարսաւեց Քէնանին, որ նա այդպէս յայտնի կերպով էր վերադարձնում Մահմեդի աղջկան և առիթ տալիս երկչոտ զիջողութեան վերագրելու այդ բանը։ Այնուհետև Զէյնաբը տուն տարուեցաւ, և միայն հետևեալ գիշերը Քէնանը ծածկաբար տարաւ յանձնեց նրան Սէիդին։

Մահմեդն այն աստիճան կատաղեցաւ իւր դըստեր կրած վտանգի պատմութիւնը լսելիս, որ հրամայեց ողջ ողջ այրել Հաբբարին, ով էլ նրան բըռ-

նէր։ Սակայն պայրուցքն իջնելուց յետոյ՝ փոքր ինչ մեղմացրեց իւր վճիռը։ «Միայն Աստուած կարող է կրակով պատժել աղամորդուն,» ասաց նա։ «Եթէ Հաբբարը բռնուի, սրով սպանեցէք նրա՛ն»։

Մուսլէմների նոր յաղթութիւնը Բեդէրի մօտ խոպառ շփոթեց Մէկկայի Կորէյշներին և ամօթ ու կորանք պատճառեց։ Այն մարդը, որ դեռ նոր վըռնդուած էր քաղաքից, իբրև տարագիր, յանկարծ մի զօրեղ թշնամի էր դարձել։ Նրանց ամենաքաջ և անուանի ընկերները զոհ էին եղել նրա սրին, շատերն էլ դեռ նրա ձեռքի տակ գերի էին, անարգ փրկանքի սպասելով։ Մահմեդի չար թշնամին՝ նրա հօրեղբայր Աբու Լահաբը հիւանդութեան պատճառով չէր մասնակցել պատերազմին։ Պարտութեան գոյժն առնելուն պէս՝ նա մեռաւ սրտի դառն մորմոքից։ Սակայն բարեպաշտ մուսլէմներն այդ մահը մարգարէի անէծքին վերագրեցին, որ նա կարդացել էր Աբու Լահաբի դէմ, երբ որ սա ուզեցել էր քարկոծել նրան Սաֆա բլրի վրայ։ Այդ անէծքը, նրանց ասելով, հասաւ և Աբու Լահաբի Օթա որդուն, որ արձակել էր մարգարէի Ռոկայա աղջկան. երբոր նա Ասորիք էր գնում, մի առիւծ ամբողջ կարաւանի առջև գիշատեց նրան։

Սակայն ոչ ոք այնպիսի մորմոքիչ կսկիծ չզգաց Բեդէրեան պարտութիւնից, ինչպէս որ Աբու Սոֆիանը։ Ճշմարիտ է, որ նա անվնաս հասաւ Մէկկա իւր կարաւանի հետ, բայց հասաւ կարծես թէ իւր ատած թշնամու յաղթութեան լուրը լսելու և իւր տունն ամայացած գտնելու համար։ Նրան դիմաւորեց Հէնդա-կինն՝ իւր հօր, հօրեղբօր և եղբօր մահուան բօթը

գուժելով։ Այդ կինը գրեթէ մոլեգնել էր և աղէկէզ ճչով վրէժ էր կարդում Համզայի և Ալիի դէմ, որոնց սրից նրանք ընկել էին։*)

Աբու Սոֆիանն երկու հարիւր ընտիր ձիաւոր հրաւիրեց, որոնցից իւրաքանչիւրը մի մի պարկ ալիւր կապեց իւր թամբին—այդ էր արաբացու պարզ պաշարը պատերազմի ժամանակ, և ճանապարհ ընկնելիս երդւում արաւ՝ չօծել իւր գլուխը, անուշահոտ իւղ չքսել իւր մօրուքին և ոչ մի կնոջ չմօտենալ, մինչև որ•երես առ երես չհանդիպէր Մահմեդին։ Անպատակելով Մէդինայի շրջակայքն երկու մղոն տարածութեան վրայ, Աբու Սոֆիանն երկու մուսլէմ սպանեց, արտերն աւերեց և արմաւներն այրեց։

Մահմեդը գերազանց զօրքով նրա դէմ ելաւ։ Աբու Սոֆիանը, հակառակ իւր երդման, չսպասեց թշնամու մօտենալուն, այլ շուռ եկաւ ու փախաւ։ Իւր գունդն էլ նոյնն արաւ, հապճեպ փախուստի

*) Արաբական հին օրէնքով՝ ով որ արիւն է թափում, արիւն է պարտական սպանուածի տոհմին։ Հին օրէնքը վաւերացուած է և Կուրանում։ „Ո՛վ հաւատացեալք, ըսպանուածի վրէժխնդրութեան պատուէրն այս է. ազատականի փոխարէն մեռնելու է ազատականը“։ Արեան հատուցումն կամ թար պահանջելու իրաւունքը պատկանում է սպանուածի ամեն ազգականներին և գործ է դրվում բացարձակ պատերազմով՝ ոչ միայն բուն սպանչի, այլ և նրա բոլոր տոհմի դէմ։ Երկու ցեղի կռւում պատահած սպանութեան վրէժը հանվում է յատկապէս այն մարդուց, որի մասին հաստատ գիտեն, թէ սպանողն է։—Արաբացու համար արեան վրէժ հանելու պարտքն ամենասուրբ պարտքերից մէկն է։ „Թէև դժոխքի հրով այրուելու լինիմ“, ասում է նա „ես թարից չեմ հրաժարուիլ“։ — *Burckhardt. I, 314.*

ժամանակ ալիւրի պարկերը դէս ու դէն շպրտելով, որի համար էլ այդ վաղանցուկ գործը «Ալիւրի տոպրակների պատերազմ» է կոչվում հեգնաբար։

Մուսլէմ գրագէտները պատմում են, թէ մարգարէն մեծ վտանգի էր հանդիպել այդ արշաւանքի միջոցին։ Մի օր նա քնելիս է եղել մի ծառի տակ իւր բանակից փոքր ինչ հեռու և յանկարծ մի ձայն լսելով զարթել ու տեսել է թշնամի Դուրթուր զինուորին, որ սուրը ձեռին կանգնած է եղել նրա առջև։ «Մահմեդ, այժմ քեզ ո՞վ կը փրկէ», գոչել է նա։ «Ալլա՜հ», պատասխանել է մարգարէն։ Ահաբեկուած Դուրթուրի ձեռից սուրն ընկել է. նոյն րոպէին Մահմեդը վերցրել է սուրն և գոչել իւր կողմից. «Ո՞վ կը փրկէ քեզ այժմ, ա՜յ Դուրթուր։» — «Աւա՜ղ, ոչ ոք», պատասխանել է զինուորը։ — «Ուրեմն սովորիր ինձնից ողորմած լինել,» և այս ասելով մարգարէն յետ է տուել նրան սուրը։ Զինուորի սիրտը գրաւվել է. նա ճանաչել է, որ Մահմեդն Աստուծու մարգարէն է, և իսկոյն դարձի է եկել։

Միւս ջերմեռանդ մուսլէմներն այդ հրաշքը հերիք չհամարելով, հաւաստում են, թէ Մահմեդի փրկութիւնը կատարուել է Գաբրիէլ հրեշտակի միջնորդութեամբ, որ այն իսկ րոպէին, երբ Դուրթուրն ուզեցել է խփել, մի այնպիսի աներևոյթ հարուած է տուել նրա լանջին, որ սուրը ձեռից ընկել է։

Այդ միջոցին Մէկկայի Կորէյշացիք յիշեցին Մահմեդի այն ազգականներին և աշակերտներին, որոնք երբեմն հալածանքից փախչելով ապաւէն էին գտել Հաբէշստանում. նրանցից շատերը դեռ մնում էին Նաջաշի կամ հաբէշեան թագաւորի հովանաւորու-

թեան տակ։ Կորէյշացիք դեսպանութիւն առաքեցին այդ Թագաւորի մօտ, խնդրելով որ նա իրենց յանձնէ տարագիրներին։ Դեսպաններից մէկն էր Աբդալլահ իբն Րէբիան, միւսն էր Ամրու իբն Ալ Ասսը՝ այն խիկ շնորհալի բանաստեղծը, որ Մահմեդի ասպարէզի սկզբում եպերական տաղեր էր շանթել նրա դէմ։ Այժմ նա աւելի հասունացած էր և անուանի թէ իւր նուրբ իմաստութեամբ և թէ բանաստեղծական քանքարով։ Նա դեռ Իսլամի վտանգաւոր հակառակորդն էր, բայց յետոյ նոր հաւատի ամենաքաջ և յայտնի զօրաւիգներից մէկը դարձաւ։

Ամրուն և Աբդալլահը, բռն արևելեան սովորութեամբ, նախ շքեղ ընծաներ նուիրեցին Թագաւորին և ապա թէ խնդրեցին, Մէկկայի Կորէյշացոց աւագների անունով, որ փախստականներն իրենց ձեռքը մատնուին։ Թագաւորն արդար մարդ էր. նա կանչեց մուսլէմներին իւր առջև և պատուիրեց բացատրել, թէ ինչ է այն նոր ու վտանգաւոր աղանդը, որի համար մեղադրում են նրանց։ Մուսլէմներից մէկն էր Աբու Թալէբի որդի և Ալիի եղբայր, ուրեմն և Մահմեդի հօրեղբօրորդի Ջաֆարը—մի ճարտասան ու վայելչադէմ տղամարդ։ Դա յառաջ ելաւ և համոզիչ եռանդով Իսլամի ուսմունքը մեկնեց։ Նեստորական Թագաւորը ա՛յն աստիճան իւր կրօնին նման գտաւ այդ ուսմունքը և ա՛յնքան Կորէյշների կոպիտ կռապաշտութեան հակառակ, որ ոչ միայն չմատնեց փախստականներին, այլ ընդհակառակն՝ իւր առանձին պաշտպանութեան տակ առաւ. իսկ Աբդալլահին ու Ամրուին իւր պալատից արձակեց, ընծաները յետ տալով։

## ԺԲ.

*Մահմեդի իշխանութեան զօրանալը։—Նրա թշնամանալը հրէաների հետ։—Կայնոկեան հրէաների ձեռքով մի արաբացի աղջկայ հասած անարգանքը։—Խռովութիւն։—Բէնի Կայնոկի տոհմը պատսպարվում է բերդի մէջ։—Նրա նուաճուիլն եւ տուգանքի ու աքսորանքի մատնուիլը։—Օսմանի ամուսնանալը Մահմեդի Օմմ Կոլթում դստեր հետ, եւ մարգարէի ամուսնանալը Հաւֆզայի հետ։*

Բեդէրեան պատերազմով Մահմեդի դրութիւնը բոլորովին փոխուեցաւ. այժմ նա մի անճող զօրութեան քաջայաղթ առաջնորդ էր։ Արաբիայի կռապաշտ ցեղերը դիւրաւ ընդունեցին մի կրօն, որ առատ աւարի յոյսերով գրգռում էր նրանց յափշտակօղ կրքերն և միանգամայն խոստանում վերականգնել նրանց պապերի նախկին հաւատը։ Ուստի պարտուած բանակի կողոպուտով Մէդինա մտնող հեծելազօրի առաջին գունդը գրեթէ բոլոր հեթանոս բնակիչներին դարձի բերաւ և քաղաքի իշխանութիւնը Մահմեդին տուաւ։ Այժմ նա փոխեց իւր վարմունքն և սկսաւ արդէն մի օրէնսգրի ու վեհապետի պէս խօսել։ Այս փոփոխութեան առաջին ապացոյցն էր նրա ընթացքը հրէաների հետ, որոնցից երեք մեծատուն ու զօրեղ տոհմեր կային Մէդինայում։

Մահմեդի բոլոր ջանքերն այդ կամակոր սերնդի համակրանքը վաստակելու զուր էին անցել. հրէաները ոչ միայն շարունակում էին անհաւատութեան մէջ յամառիլ, այլ և ծաղրում էին նրա անձն և ուս-

ունքը։ Ասմա անունով բանաստեղծ հրէուհին, որ մՄերուանի աղջիկն էր, եպերիչ երգեր էր շարադրում նրա դէմ։ Մարգարէի մոլեռանդ աշակերտներից մէկը Ասմային սպանեց։ Աբու Աֆակ անունով հարիւրքսանամեայ եբրայեցի ծերունին էլ նոյն պատիժը կրեց մարգարէի դէմ երգիծական երգեր գրելուն համար։ Մի ուրիշ հրէայ բանաստեղծ, և յատկապէս Քաաբ իբն Աշրէֆը, Բեդէրեան մարտից յետոյ Մէկկա էր գնացել և գրգռել Կորէյշների վրէժխնդրութիւնը, փառաբանելով նրանց քաջերին և ողբալով պատերազմում ընկածներին։ Նրա մոլութիւնն այնքան սաստիկ էր, որ Մէդինա վերադառնալուց յետոյ էլ հրապարակաւ կարդաց իւր երգերը մարգարէի հետեւողներից մի քանիսի առջև, որոնք սպանուածների ազգականներն էին։ Մահմեդն այդ ատելի թշնամութեամբ վիրաւորուած՝ մի օր գոչեց. «Ո՞վ կ՚ազատէ ինձ այդ Աշրէֆեան զաւակից»։ Մի քանի օրից յետոյ Քաաբը մահով տուժեց իւր բանաստեղծական քանքարը. Նրան մորթեց մի մոլեռանդ Աւսիթացի։

Վերջապէս վրայ հասաւ մի դէպք, որից յետոյ Մահմեդի բարկութիւնը հրէաների դէմ բացարձակ թշնամութեան տեղի տուաւ։

Չոլուական արաբներից մի աղջիկ, որ միշտ կաթն էր բերում Մէդինա, մի օր գնաց այն թաղը, ուր որ բնակվում էին Բէնի Կայնոկա կամ Կայնոկի որդիք ասուած հրէաները, որոնք երեք անուանի տոհմերից մէկն էին։ Այն տեղ նրան շրջապատեցին երիտասարդ հրէաներն և իւր գեղեցկութեան զովասանքը լսած լինելով, խնդրեցին որ երեսը բանայ։ Աղջիկը չուզեց այդ խնդիրը կատարել, որ հակառակ

էր պարկեշտութեան օրէնքին։ Այն ժամանակ մի ե-րիտասարդ ոսկերիչ կամացուկ կապեց աղջկայ քողի ծայրը նրա բազմած նստարանին, այնպէս որ երբ աղջիկը վեր կացաւ, քողն ընկաւ և երեսը բաց մը-նաց։ Պատանի խրայչէլացիք սկսան քրքջել ու ծաղ-րել, իսկ հովուուհին՝ ամօթահար ու շուարած, չէր ի-մանում թէ ինչ անէ։

Այն տեղ գտնուող մի մուսլէմ, աղջկան հասած վիրաւորանքից զայրանալով, սուրը հանեց և թափ ընդ թափ խոցեց ոսկերչին. սակայն ինքն էլ նոյն րոպէին հրէաների ձեռքով սպանուեցաւ։ Չարեան մուսլէմները զէնք վերցրին. նոյնը արին և՛ Կայնո-կեանք, բայց փոքրաթիւ լինելով, ստիպուած եղան մի ամուր շինութեան մէջ պատսպարուել։

Մահմեդը փութաց վերջ դնել աղմկին, բայց որովհետև հրէաների դէմ դառնացած էր, պահանջեց որ յանցաւոր տոհմն անմիջապէս կրօնափոխ լինի։ Հրէաները յառաջ բերին նրա Մէդինա գնալու միջո-ցին դրուած դաշինքը, որ կրօնի ազատութեան իրա-ւունք էր տալիս նրանց. սակայն չէր կարելի այլ ևս նրա գութը շարժել։ Մի քանի ժամանակ Կայնո-կեանք զլացան նրան տեղի տալ և ամրոցին ապա-ւինած՝ յամառութեամբ դիմադրեցին. վերջապէս սո-վը ստիպեց անձնատուր լինել։ Կազրադեան տոհմի պարագլուխ Աբդալլահ իբն Օբբա Սոլուլը, որ խրա-յէլեան ցեղի հովանաւորն էր, բարեխօսեց նրանց համար և նրանց սրի մատնուելուն առաջն առաւ. սակայն նրանց գանձերն ու գոյքերը յափշտակուեցան, և ամբողջ տոհմը, թւով մօտ եօթն հարիւր մարդ, դէպի Ասորիք աքսորուեցաւ։

Այսպիսի յափշտակութեամբ մարգարէի և Նրա աշակերտների ձեռքն ընկած զէնքերն ու գանձերը մեծապէս օգտակար եղան կրօնի հետևեալ պատերազմում։ Մահմեդին վիճակուած զէնքերի մէջ յիշատակվում են երեք հատ սրեր. մէկի անունն էր Մեդհէմ, այսինքն սայրասուր, միւսինը՝ Ալ Բաթթար կամ հատու, երրորդինը՝ Հաթէֆ կամ մահաբեր։ Երկու նիզակ՝ Ալ Մոնթարի կամ փարատիչ և Ալ Մոթաւի կամ կործանիչ։ Մէկ արծաթէ վերտ շապիկ, որի անունն էր Ալ Ֆադհա, և Ալ Սաադիա կոչուած մի ուրիշ զրահ,—մուսլէմների ասելով նոյն իսկ Դաւթի զրահը, որ Նա ստացել էր Սաւուղից՝ Գողիաթի դէմ գնալիս։ Կար նաև Ալ Կաթում կամ ամրապինդ կոչուած մի աղեղ. բայց դա իւր անունը չարդարացրեց, որովհետև հենց առաջին պատերազմում կտոր կտոր եղաւ մարգարէի ձեռքով ամուր լարուելուց։ Մահմեդը սովորաբար արաբական աղեղ էր բանեցընում՝ դրան յարմարացրած նետերով ու սլաքներով, և արգելում էր հետևողներին պարսկականները գործածել։

Այնուհետև Մահմեդը ոչ թէ չաշխատեց հրէաների սիրտը շահել, այլ ընդհակառակն՝ կրօնամոլ թշնամութեամբ ատեց նրանց․ Նա յետ առաւ իւր առաջին կարգադրութիւնը, որով Երուսաղէմն էր քէբլա կամ երկրպագութեան կէտ սահմանուած, և դրա փոխարէն Մէկկային շնորհեց քէբլայի պատիւը, և այն օրից սկսած մուսլէմները Մէկկայի կողմը սկսան դառնալ աղօթք անելիս։

Մահմեդի Րոկայա դստեր մահն արժանապէս ողբաց Նրա Օսման ամուսինը։ Օսմանի սուգը փարա-

տելու համար նրա զինակից Օմարն ուզեց իւր Հաֆզա աղջկայ հետ նշանել նրան։ Հաֆզան մի հրապուրիչ այրի կին էր՝ տասնութ տարեկան. բայց և այնպէս Օսմանը մերժեց նրա աջը։ Այդ մերժումն իւր աղջկայ և իւր անձի պատուին դիպչող արհամարանք համարելով, Օմարը գանգատ արաւ Մահմեդին։ «Մի վշտանար, Օմար,» ասաց մարգարէն. «Օսմանը քո աղջկանից լաւ հարսն կ՚ունենայ, իսկ աղջիկդ՝ Օսմանից էլ լաւ փեսայ։» Եւ իրաւ՝ նա ամուսնացրեց Օսմանին իւր Օմմ Կոլթում դստեր հետ, իսկ չքնաղ Հաֆզային իրեն համար կին առաւ։ Այս շահադիտական կապերով նա և՛ս աւելի իւր կողմը քաշեց թէ Օսմանին, թէ Օմային, և միևնոյն ժամանակ իւր կնասէր հաճոյքը յագեցրեց։ Հաֆզան, Այէշայից յետոյ, մարգարէի ամենասիրած կինը դարձաւ և պահապան այն արկղի, որի մէջ դրվում էին Կուրանի նորայայտ տուները։

## Ի.

*Հէնդան դրդում է Աբու Սոֆիանին եւ Կորէյշներին վրէժխնդիր լինել իւր՝ Բեդէրեան մարտում սպանուած ազգականների համար։—Կորէյշացիք արշաւում են Հէնդայի եւ նրա ընկերուհիների ուղեկցութեամբ։—Օհոդի պատերազմը։—Հէնդայի մոլեգին խնդրութիւնը։—Մահմեդը սփոփվում է կին առնելով Օմէյի Հէնդ աղջկան։*

Որքան որ աճում էր Մահմեդի իշխանութիւնը Մեդինայում, այնքան էլ սաստկանում էր Կորէյշների թշնամութիւնը Մէկկայում Աբու Սոֆիանը սրբազան քաղաքի իշխանն էր, և նրան անդադար կը-

ռուխ էր դրդում Հէնդա կինը, որի չար սիրտը չէր կարող հանգստանալ, մինչև որ իւր հօր ու հօրեղբօր սպանիչներից արեան վրէժ չհանուէր։ Վրէժ էր պահանջում և՛ Աքրէման՝ Աբու Ջահլի որդիներից մէկը, որ ժառանգել էր հօր ատելութիւնը դէպի մարգարէն։ Եւ այսպէս հիջրէթի երրորդ թուականին, որ Բեդէրեան պատերազմի տարեդարձն էր, Աբու Սոֆիանը դաշտ հանեց երեք հազար զօրական՝ մեծ մասով Կորէյշներից, թէպէտ և Քանանեան ու Թէհամեան ցեղի մարդիկ էլ կային զօրքի մէջ։ Զօրքն ունէր եօթն հարիւր սպառազէն հետևակ, երկու հարիւր ձիաւոր։ Զօրավարներից մէկն էր Աքրէման, միւսն էր Խալէդ իբն ալ Վալէդ անունով անպարտելի սպարապետը, որ յետոյ մեծապէս հռչակուեցաւ։ Դրօշակները յանձնուած էին Աբդ ալ Դար տոհմի զինուորներին, որոնք ժառանգական իրաւունք ունէին նախաթոռ բազմելու խորհրդի մէջ, նախարշաւ լինելու պատերազմում և դրօշակ կրելու զօրքի առջևից։

Բանակի վերջապահքում գնում էր ոխակալ Հէնդան, հետն էլ տասնհինգ անուանի մէկկացի կանայք՝ Բեդէրեան մարտում սպանուածների ազգականները, որոնք մերթ ողբ ու կոծով հնչեցնում էին օդը և մերթ թմբուկների հարուածով ու ռազմական երգերով զինուորների սիրտը վառում։ Երբ որ նրանք անցնում էին Աբուա գիւղի մօտերքով, ուր թաղուած էր Մահմեդի մայր Ամինան, Հէնդան ուզեց գերեզմանից հանել նրա փտած ոսկորները, և հազիւ կարողացան յետ կանգնեցնել նրան այդ չար գործից։

Մահմեդի Ալ Աբբաս հօրեղբայրը, որ տակաւին Մէկկա էր մնում և նոր հաւատի թշնամի էր հա-

մարուած, տեսնելով որ եղբօրորդին չի խուսափիլ կորստից, եթէ զօրքը յանկարծակի վրան յարձակուի, մի գաղտնի սուրհանդակի ձեռքով լուր հասցրեց նրան սպառնացող վտանգի մասին։ Այդ լուրն առնելիս Մահմեդը Կոբա գիւղումն էր։ Նա իսկոյն վերադարձաւ Մէդինա և խորհրդի կանչեց իւր գլխաւոր կուսակիցներին։ Այն տեղ նա յառաջ բերաւ, թէ իրենց զօրութիւնը նուազ լինելով՝ հնար չեն ունենալ արձակ դաշտում դիմադրելու թշնամուն, և առաջարկեց Մէդինայում սպասել յարձակման, ուր նոյն իսկ կանայք և մանկունք կարող էին օգնել, քար նետելով կտուրներից։ Աւագները համամիտ եղան այդ խորհրդին. սակայն միշտ անժոյժ պատանիք, որոնք դեռ վառուած էին Բեդէրեան յաղթանակով, բարձրաձայն պահանջում էին ազատ դաշտում պատերազմ տալ։

Մահմեդը զիջաւ նրանց աղաղակին, բայց երբ որ սկսան զինուորներին համարել, հազիւ հազ մի հազար մարդ հաշուեցին. զրահաւորների թիւը միայն հարիւր էր, իսկ ձիաւորներինը՝ երկու հարիւր։ Դեռ նոր զոռում գոչումով դաշտ դուրս գալու պահանջ յայտնող քաջերի սիրտը յանկարծ լքաւ. այժմ նրանք կըցանկային պարիսպների ետև սպասել թշնամուն։ «Ո՛չ,» ասաց Մահմեդը. «մարգարէին վայել բան չէ՝ սուրը մի անգամ հանելուց յետոյ՝ վերստին պատեանը դնել, ոչ էլ մի անգամ զէնք վերցնելուց յետոյ՝ յետ կանգնել, մինչև որ նրա և թշնամու դատը ինքն Աստուած չվճռէ.» Ասաց, և դաշտ հանեց իւր զօրքը։

Զօրքի մի մասը բաղկացած էր հրէաներից և

Կազրադեաններից՝ Աբդալլահ իբն Օբբա Սալուլի առաջնորդութեամբ։ Մահմեդը չէր ուզում օգնութիւն ստանալ հրէաներից, մինչև որ նրանք Իսլամ չընդունեն. հրէաները յօժար չեղան, և Մահմեդը դէպի տուն արձակեց նրանց։ Այնուհետև նրանց պաշտպան Աբդալլահն էլ Կազրադեանների հետ միասին վերադարձաւ Մէդինա, որով զօրքի թիւն եօթն հարիւր մարդու իջաւ։

Այդ փոքրաթիւ զօրքով Մահմեդը դիրք բռնեց Օհոդեան բլրի վրայ՝ Մէդինայից մօտ վեց մղոն հեռու։ Բանակը մասամբ պաշտպանուած էր հեծելազօրի յարձակումից բլրի դարևանդով ու ժայռերով, իսկ թևերն ու թիկունքը՝ աղեղնաւոր պահակներով։ Մարգարէն մի սաղաւարտ և երկու վերտ շապիկ էր հագած։ Իւր սրի մակագիրն էր. «Երկիւղը ամօթ է բերում, քաջութիւնը՝ պարծանք. վախկոտութեամբ չես պրծնիլ ճակատագրից։» Անձամբ կռուին մասնակցելու դիտաւորութիւն չունենալով, նա տուաւ սուրն Աբու Դուջանա քաջ զինուորին, որ և երդուեց այնքան հարուած բաշխել դրանով, մինչև որ սայրը փշրուի։ Մահմեդն իւր սովորութեան համեմատ մի բարձրաւանդակ տեղ բռնեց՝ ռազմի դաշտը դիտելու համար։

Կորէյշացիք իրենց թուական առաւելութեան ապաւինած՝ համարձակ մօտենում էին բլրին, դրօշակները ծածանելով։ Աբու Սոֆիանը վարում էր բանակի բունը. երկու թևից իւրաքանչիւրը հարիւրական ձիաւոր ունէր. ձախի առաջնորդն էր Աբու Ջահլի որդի Աքրէման, աջինը՝ Կալէդ իբն ալ Վալէդը։ Հենց որ նրանք մօտեցան, Հէնդան և իւր ընկերու-

հիները թմբուկ զարկին և պատերազմական երգ հըն-
չեցրին, մերթ ընդ մերթ Բեդէրեան կռուի նահա-
տակներին յիշելով։

«Արութիւն, ով որդիք Աբդ ալ Դարի,» գոչում
էին նրանք։ «Յառաջ 'ի մարտ, դէմ յանդիման թըշ-
նամուն. յարաչար կոտորեցէք և մի խնայէք։ Թող
ձեր սրերը հատու լինին և սրտերն անողոք։»

Մահմեդը զսպեց իւր գնդերի անհամբերութիւնը
հրամայելով, որ նախայարձակ չլինին, այլ ամուր կե-
նան և իրենց բարձր կայանի առաւելութիւնը պահ-
պանեն. իսկ աղեղնաւորներին պատուիրեց չթողնել
իրենց դիրքը, եթէ այրուձին թիկունքից յարձա-
կուելու լինի։

Ձախ թևի հեծելազօրն Աքրէմայի վարչութեամբ
ուզեց կողքից յարձակում անել մուսլէմների վրայ, բայց
յետ մղուեցաւ նետաձիգներից և շփոթուած փա-
խուստ տուաւ։ Այդ րոպէին Համզան մուսլէմների
«էմիթ, էմիթ» (մահ, մահ) աղաղակն արձակեց
և կենդրոնի վրայ գրոյթ տուաւ իւր վաշտերով։
Նրա աջ կողմից ընթանում էր Աբու Դուջանը՝ ձե-
ռին Մահմեդի սուրը բռնած և գլխին կարմիր ժա-
պաւէն կապած, որի վերնագիրն էր. «Օգնութիւնն
Ալլահից է, յաղթանակը մեզանից։»

Թշնամին երերաց այս բախումից։ Աբու Դու-
ջանը նրանց շարքերի մէջ մխուեցաւ և աջ ու ձախ
մահաբեր հարուածներ տալով գոռում էր. «Ալլահի
և մարգարէի սուրը։» Հետզհետէ եօթն դրօշակիր
գլորուեցան Աբդ ալ Դարի ազգատոհմից, և կենդրոնը
սկսաւ տատանուիլ։ Մուսլէմ աղեղնաւորները, յաղ-
թանակը տարուած համարելով, Մահմեդի պատուէրը

մոռացան, թողին կայանն ու ցրուեցան, «Աւա՜ր, աւա՜ր» գոչելով։

Այդ որ նկատեց Կալէդը, իսկոյն իւր այրուձին հաւաքեց և աղեղնաւորների կայանը բռնելով, թիկունքից խփեց մուսլէմներին. նրանց մէկ մասը փախուստ դարձաւ, միւսը տակն ու վրայ խառնուեցաւ։ Ընդհանուր իրարանցման միջոցին Օբբիջ իբն Կաչաֆ ասպետը դէս ու դէն վազելով գոռում էր. «Ո՞ր տեղ է Մահմեդը. քանի որ նա կենդանի է՝ ապահովութիւն չկայ մեզ համա՜ր։» Իսկ Մահմեդը մի տէգ առաւ զինակրի ձեռից և կռապաշտի կոկորդը վարսեց, որ և դիտապաստ ընկաւ ձիուց։

«Այդպէս մեռաւ», ասում է բարեպաշտ Ալ Ջաննաբը, «Ալլահի թշնամին, որ մի քանի տարի առաջ սպառնացել էր մարգարէին, թէ—կը գայ մի օր, որ ես քեզ կը սպանեմ։—Զգուշացիր, պատասխանել էր մարգարէն,—եթէ Ալլահ կամենայ, դու ինքդ կը մեռնես իմ ձեռից։»

Կռուի ժամանակ մի պարսաքար դիպաւ Մահմեդի բերնին, շուրթը ճեղքեց և ատամներից մէկը փշրեց. մի նետ էլ երեսին դիպաւ, և սլաքի ծայրը վէրքի մէջ մնաց։ Համզան էլ, մինչդեռ մի Կորէյշացու սպանելու վրայ էր, մի կողմից մինչև միւսը խոցուեցաւ եթովպացի Վակսա ստրկի նիզակով, որին ազատութիւն էին խոստացել, եթէ հանէր Բեդէրեան մարտում Համզայից սպանուած տիրոջ վրէժը։ Սրամահ եղաւ և՛ մահմեդի Մոսաբ իբն Օմար դրօշակիրը, սակայն Ալին սուրբ նշանը վերցրեց և մինչև կռուի վերջը պարզուած բռնեց իւր աջում։

Որովհետև Մոսաբը դէմքով մարգարէին նման

էր, թշնամին աղաղակ հանեց, թէ Մահմեդը սպանուած է։ Կորէյշացիք այդ լսելով, և՛ս աւելի եռանդ ստացան, մինչդեռ մուսլէմները փախուստ տուին, վիրաւոր Աբու Բեկրին և Օմարին տանելով։ Սակայն Մալէքի որդի Քահաբը նկատեց Մահմեդին մի փոսի մէջ, ուր ընկել էր վիրաւորուած զինուորների հետ միասին, և ճանաչեց նրան զէնքերից։ «Ո՛վ հաւատացողք,» գոչեց նա, «Ալլահի մարգարէն դեռ կենդանի է։ Շուտով հասէք՝ օգնեցէք»։

Հանեցին փոսից Մահմեդին և տարան դէպի մի բարձր ժայռ, ուր մուսլէմները պատրաստվում էին կատաղի դիմադրութիւն ցոյց տալու։ Այն ինչ Կորէյշացիք, Մահմեդին սպանուած կարծելով, զանց արին հալածել նրանց և սկսան դիակները կողոպտել և յօշատել։ Այս վայրենի գործում ամենից աւելի եռանդուն հանդիսացան Հէնդան և իւր ընկերուհիք. կատաղի կինն ուզում էր մինչև անգամ հանել ու լափել Համզայի սիրտը։ Աբու Սոֆիանը մի կտրըտուած անդամ էր կրում նիզակի ծայրին և ցնծութեամբ գոռում դարևանդից իջնելիս. «Պատերազմի բախտն անհաստատ է։ Երէկ պարտուեցանք Բեդէրում, այս օր յաղթեցինք Օհոդում։»

Կորէյշների հեռանալուց յետոյ Մահմեդը ժայռից իջաւ և պատերազմի դաշտն աչքի անցրեց։ Իւր Համզա հօրեղբօր գազանօրէն յօշատուած դին տեսնելիս՝ երդում արաւ նոյն նախատինքը հասցնել իւր ձեռքի տակ գտնուող եօթանասուն գերիներին։ Նրան սփոփեց, ասում են, Գաբրիէլ հրեշտակը, հաւատալով, թէ այժմ Համզան եօթներորդ երկինքն է

տարուած, ուր նրան պատուել են «Աստուծու և նրա մարգարէի առիւծը» մականունով։

Մեռելների դին զոյգ զոյգ և երեք երեք թաղեցին իրենց սպանուած տեղերում։ Մահմեդն արգելեց աշակերտներին ողբալ նրանց վրայ իրենց մազերը փետելով, հագուստները պատռելով, երեսները ճանկռելով, ինչպէս որ սովոր էին անել արաբացիք. այլ թոյլ տուաւ միայն լաց լինել, որովհետև արտասուքը սփոփանք է տալիս վշտահար սրտին։

Կռուին յաջորդող գիշերը վերին աստիճանի տագնապիչ էր, որովհետև երկիւղ կար թէ Կորէյշացիք նորից կըյարձակուին և կամ Մէդինայի վրայ կ'արշաւեն։

Առաւօտեան Մահմեդը թշնամու մօտից անցնելով, ճանապարհ ընկաւ դէպի քաղաք, և գիշերուայ մութը կոխելուն պէս հրամայեց բազմաթիւ խարոյկներ վառել։

Մինչ այս, մինչ այն, Աբու Սոֆիանը լուր առաւ, թէ Մահմեդը դեռ կենդանի է։ Այս պատճառով նա վստահութիւն չունեցաւ քաղաքի վրայ արշաւելու. նա կարծում էր, թէ քանի որ Մահմեդը դաշտումն է՝ կարող է օգնութեան հասնել քաղաքին և կամ նեցուկ ստանալով բնակիչներից՝ հենց իւր վրայ յարձակուել։ Ուստի լաւ համարեց շատանալ նոր ձեռք բերած յաղթանակով և մուսլէմների հետ մի տարուայ զինադուլ կնքելուց յետոյ՝ առօք փառօք վերադարձաւ դէպի Մէկկա։

Այս վիրաւորիչ պարտութեան կսկիծն ամոքելու համար Մահմեդը փութաց մի նոր կին առնել. դա էր ազդեցիկ Օմէյա ազնուականի Հէնդ աղջիկը։

Հէնդն այրի էր և իւր հանգուցեալ մարդու հետ Հաբէշստան ապաստանած մուսլէմների թուիցն էր և ունէր Սալմա անունով մի որդի, որի համար էլ կոչվում էր Օմմ Սալմա կամ Սալմայի մայր։ Թէ Աբու Բեկրը և թէ Օմարն այդ կնոջ գեղեցկութեամբ ու շնորհքով հրապուրուած՝ ուզեցել էին կին առնել նրան, բայց ոչ մէկն էլ յաջողութիւն չէր գտել։ Սկզբում Մահմեդն անգամ դժուարութեան հանդիպեցաւ։ «Ո՛հ,» ասաց այրին, «ինչ բախտաւորութիւն կարող եմ տալ Աստուծու մարգարէին։ Ես արդէն ջահել չեմ, որդի էլ ունեմ և սաստիկ յաջաղկոտ եմ։» —«Հասակով ինձնից ջահել ես,» պատասխանեց Մահմեդը։ «Ինչ որ որդուդ է վերաբերում, ես նրան հոգս կըլինիմ. իսկ յաջախկոտ բնութեանդ պալով, կ'աղաչեմ Ալլահից, որ սրտիցդ հանէ այդ կիրքը»։

Մզկիթի մօտ մի ջոկ տուն շինուեցաւ հարսի համար։ Պատմագրի ասելով տան բոլոր գոյքերն էին՝ մի պարկ գարի, մի առ ձեռն աղօրի, մի տապակ և մի իւղի կամ ճարպի կճուճ։ Այժմ էլ դեռ այդ աստիճան չափաւոր էին մարգարէի միջոցները, կամ լաւ ասել՝ այդքան պարզ նրա սովորոյթներն և արաբական կեանքի պէտքերը։

## ԻԱ.

*Մի քանի հրէական տոհմերի դաւաճանութիւնը, նրանց պատիժը։—Աէիդի անձնուիրութիւնը Մահմեդին. նրա հրաժարուիլն իւր սիրուն Զէյնաբ ամուսնուց յօգուտ մարգարէի։*

Մահմեդի պարտուիլն Օհոդեան պատերազմում իւր դատին աննպաստ ազդեցութիւն արաւ մի քա-

նի արաբական և հրէական ցեղերի վրայ, ինչպէս որ այդ կարելի է տեսնել հետևեալ դաւաճանութեան դէպքերից։ Ադհալ և Կարա քաղաքների բնակիչները դեսպանութիւն ուղարկեցին Նրա մօտ՝ յայտնելով թէ համաձէտ են Իսլամն ընդունել, և քարոզիչներ խընդրեցին, որոնք կարող լինէին հրահանգել Նրանց Նոր հաւատի մէջ։ Մահմեդն էլ վեց աշակերտ առաքեց վերադարձող դեսպանների հետ. սակայն ճանապարհին, Ռաջի գետակի մօտ, Հոձէյների սահմանում, դադար առնելիս՝ յանկարծ դեսպանները միամիտ մուսլէմների վրայ ընկան, չորսին սպանեցին, իսկ միւս երկուսին Մէկկա տանելով Կորէյշների ձեռքը մատնեցին, որոնք և մեռցրին նրանց։

Մի այդպիսի դաւաճանութիւն արին և Նաջէդ նահանգի բնակիչները։ Նրանք մուսլէմ ձևանալով, օգնութիւն խնդրեցին Մահմեդից իրենց թշնամիների դէմ։ Նա իւր աշակերտներից մի խումբ առաքեց խնդրողներին օգնելու համար. բայց Մաննա վըտակի մօտ, Մէդինայից չորս օրուայ հեռաւորութեամբ, Բէնի Սուլէյմ ցեղի մարդիկ նրանց վրայ յարձակուեցան և գրեթէ բոլորին կոտորեցին։ Մուսլէմներից մէկը, և յատկապէս Ամրու իբն Օմէյան, հազիւ ճողոպրելով մահուանից, Մէդինա փախաւ։ Ճանապարհին նա տեսաւ երկու անզէն հրէաներ Բէնի Ամիրի տոհմից և թշնամի համարելով նրանց, կամ թէ իւր ընկերների մահուամբ մոլեգնած՝ վրաներն ընկաւ և սպանեց։ Ամբողջ տոհմը, որ հաշտ էր Մահմեդի հետ, սկսաւ հատուցումն պահանջել։ Մահմեդը յանձնեց քննել այդ գործը Բէնի Նադհէր կոչուած տոհմի հրէաներին, որոնք հարուստ կա-

յուածներ և Զոհրա անունով մի բերդ ունէին Մէդի-նայի մօտերքում․ Այդ տոհմը դեռ Մահմեդի Մէդի-նա փախած ժամանակ դաշնադիր էր եղած նրա հետ՝ չէզոք մնալու նրա և նրա թշնամիների միջև․ Տոհմի առաջնորդը միջնորդ կանչուելով, տեսակցութեան հրաւիրեց Մահմեդին․ Մահմեդը գնաց, հետն առնելով Աբու Բեկրին, Օմարին, Ալիին և մի քանի ուրիշ մարդիկ․ Տոհմապետի տան առջև մի բացօդեայ սե-ղան էր պատրաստուած․ Մահմեդին ծածուկ կերպով իմաց տուին, թէ նրան նենգութեամբ են այնտեղ կանչել, որպէս զի ճաշի ժամանակ տան կտրից մի երկանաքար գլորելով սպանեն նրան․ Մահմեդը ցոյց չտուաւ, թէ այդ դաւաճանութիւնն իրեն յայտ-նի է, և յանկարծ վերկենալով սեղանից, շտապ շտապ վերադարձաւ Մէդինա։

Այժմ նա բոլոր Նադհէրեան տոհմի դէմ ուղ-ղեց իւր բարկութիւնն և հրամայեց, որ տասն օրում հեռանան երկրից, եթէ չէին ուզում մահուան պա-տիժ ընդունել։ Հրէաները պատրաստ էին գաղթել, բայց Աբդալլահ Կազրադացին, օգնութիւն խոստանա-լով, թաքնաբար համոզեց նրանց որ մնան․ Այդ խոս-տումը նա չկատարեց։ Բէնի Նադհէրեանք, «կեղծա-ւորների առաջնորդից» յուսախաբուած, փակուեցան իրենց Զոհրա բերդում․ իսկ Մահմեդը պաշարեց բերդն և այրեց բոլոր արմաւենիքը, որոնք սնունդ էին տալիս հրէաներին․ Վեց օրից յետոյ նրանք անձնա-տուր եղան և իրաւունք ստացան մեկնելու՝ այն պայմանով, որ իւրաքանչիւրը մի ուղտի բեռ դուրս տանէ, բայց զէնքերը բերդում թողնէ․ Ոմանք Ասո-րիք աքսորուեցան, ոմանք Կայբար կոչուած եբրա-

յական բերդաքաղաքը, որ մի քանի օրուայ ճանապարհով Մէդինայից հեռու էր։

Այդ հարուստ տոհմի բոլոր ստացուածքը Մահմեդն ամբողջապէս իրեն սեփականեց։ Մուսլէմներն առարկեցին, թէ այդ հակառակ էր Կուրանի սահմանած բաժանման օրէնքին. սակայն նա պատասխանեց, թէ մի նորյայտ պատգամի զօրութեամբ՝ ամեն մի աւար, որ այժմեանի պէս առանց արիւնհեղութեան է ստացուած, մարդկային վաստակ չէ, այլ Աստուծու պարգև, և լիովին պիտի մարդաբէին պատկանի՝ նրա ձեռքով աղքատներին, որբերին պանդուխտներին բաժանելու և ուրիշ բարի գործեր անելու համար։ Եւ արդարև Մահմեդն իրեն չյատկացրեց այդ աւարը, այլ բաշխեց Մոհաջերներին կամ մէկկացի աքսորականներին, նաղհէրեան նորադարձ հրէաներին և այն երկու երեք Անսարներին կամ Մէդինայի դաշնակիցներին, որոնք աղքատ էին և օգնութեան արժանի։

Չենք պատմում Մահմեդի այդ միջոցին ձեռնարկած մանր արշաւանքները, որոնցից մէկն ուղղուած էր մինչև Թաբուկ՝ Ասորիքի սահմանը, Մէդինայի կարաւանները կողոպտող մի աւազակային հրոսակ պատժելու համար։ Այդ արշաւանքները թէև տարբեր հետևանք ունեցան, բայց բոլորն էլ հարուստ էին աւարով, որ այժմ նոյնքան սատրիկ էր ոգևորում մուսլէմներին, որքան և հաւատի տարածման եռանդը։

Այդպէս արագ ձեռք բերած հարստութիւնք կարծեօք սկսել էր անկարգութիւն ու շռայլութիւն յառաջ բերել, որովհետև Կուրանում գտնում ենք այդ

միջոցին յայտնուած մի նոր պատգամ, որ արգելում էր գինին և բախտի խաղերը, որոնք միշտ ըմբոստութեան ու կռիւների պատճառ են եղած ասպատակիչ բանակներում։

Մահմեդն իւր կեանքի այդ շրջանում մի քանի անգամ ազատուեցաւ սպանիչների սրին զոհ լինելու վտանգից։ Սակայն ասողներ կան, թէ նա ինքն էլ չէր գարշում նենգ միջոցներ գործ դնելուց, եթէ պէտք լինէր որ և է թշնամի կործանել։ Պատմում են, օրինակի համար, թէ մի անգամ նա թաքուն Մէկկա ուղարկեց Աբու իբն Օմէյին՝ Աբու Սոֆիանին մորթելու համար, բայց թէ դաւաճանութիւնը բացուեցաւ և մարդասպանը միայն փախչելով իւր կեանքը փրկեց։ Սակայն այս մեղադրանքն ապացուցի կարօտ է և հակառակ Մահմեդի ընդհանուր բնաւորութեան և ընթացքին։

Թէև Մահմեդն ունէր անագորոյն թշնամիներ, բայց ունէր և շատ անձնուէր ընկերներ, որոնց օրինակ կարող է լինել իւր ազատագրած ու որդեգրած Սէիդ իբն Հորէսը։ Դա հաւատի առաջին աշակերտներից և ամենաքաջ ախոյեաններից մէկն էր։ Մահմեդը միշտ խորհրդակցում էր նրա հետ և նրան յանձնում իւր տնային գործերը։ Մի օր նա մտաւ Սէիդի տունը, ուր սովոր էր մտնել, ինչպէս մի հայր որդու մօտ։ Սէիդը տանը չէր, բայց ներկայ էր նրա Զէյնաբ ամուսինը, որին նոր էր կին առել։ Դա Ջաւէհի աղջիկն էր՝ Կայբարի երկրից. և իւր տոհմի ամենասիրուն կինարմատը։ Տանը մենակ լինելով՝ Զէյնաբն անքող էր և գրեթէ կիսամերկ, այնպէս որ Մահմեդը յանկարծակի ներս մտնելիս՝ նրա բոլոր գե-

ղեցկութիւնը նկատեց։ Մարգարէն չկարողացաւ իւր հիացմունքն ու սքանչանքը զսպել. կինը նրան բան չասաց, բայց յետոյ մարդուն պատմեց այդ դէպքը։ Սէիդը տեսաւ, որ կնասէր մարգարէն հրապուրուած է Ջէյնաբով։ Նա իսկոյն գնաց Մահմեդի մօտ և յայտնեց, թէ հրաժարվում է կնոջից. այդ բանը օրէնքին ընդդէմ գտաւ մարգարէն։ Սակայն ա՛յլ ևս չէր կարելի փոխել Սէիդի վճիռը, որովհետև որքան էլ նրան սիրելի լինէր Ջէյնաբը, բայց նոյնքան էլ յարգելի էր մարգարէն. ուստի նա անյապաղ արձակեց իւր կնոջը։ Ապահարզանի սովորական պայմանաժամը լրանալուն պէս՝ Մահմեդը սիրով ընդունեց իւր ջերմեռանդ աշակերտի բերած զոհն և Ջէյնաբին կին առնելիս մի այնպիսի փառաւոր խնջոյք տուաւ, որի նմանը չէր տուած և ոչ մի նախորդ հարսանիքի ժամանակ։ Նրա դռներն ամենքի առջև բացուեցան. հիւրերը ոչխարի ու գառան մսով, գաթաներով, մեղրով, մրգով, օշարակով հարկուեցան։ Նրանք կուշտ կերան խմեցին և հեռացան ծաղրելով, թէ ամուսնութեան լուծումը խայտառակ բան էր, իսկ Ջէյնաբին կին առնելը՝ ամբարիշտ գործ։

Այդ տագնապիչ հանգամանքից յետոյ լոյս տեսաւ Կուրանի այն յայտնութիւնը (ԼԳ. գլուխ), որ խտրութիւն է դնում արենական և որդեգրական ազգակցութեան մէջ, ասելով թէ հոգեզաւակի արձակած ամուսնուն կին առնելը բնաւ մեղք չէ։ Այս դիպող յայտնութիւնը հանգստացրեց հաւատացեալներին. բայց մարգարէն գայթակղութեան նշոյլն անգամ ջնջելու համար յետս կոչեց որդեգրութիւնն և հրամայեց Սէիդին՝ առաջուայ պէս Իբն Հորէս անու-

նը կրել։ Իսկ սիրուն Զէյնաբն այն օրից 'ի վեր, յայտնութեան վրայ հիմնուելով, պարծենում էր առաւելութեամբ մարգարէի միւս կանանց առջև և ասում, թէ իւր ամուսնութիւնն երկնային հրամանով է կատարուած։ *)

## ԻԲ.

*Մահմեդի արշաւանքը Բէնի Մոստալէք տոհմի դէմ։—Նրա ամուսնութիւնը Բարրա գերուհու հետ։—Աբդալլահ իբն Օբբայի դաւաճանութիւնը։—Այէշայի զրպարտութիւնը։—Նրա արդարացումն։—Անմեղութեան ապացուցումը մի յայտնութեամբ։*

Օհոդեան պարտութիւնից յետոյ Մահմեդի դէմ զէնք վերցնելու չյանդգնող արաբական ցեղերից մէկն էր Բէնի Մոստալէքի հզօր ցեղը, որ ծագում էր Կորէյշեան արմատից։ Մահմեդը լուր առաւ, թէ նրանք գումարուել են իրենց Ալ Հարէս տոհմապետի առաջնորդութեամբ Մորայսի աղբիւրների մօտ, Քէդայիդի նահանգում, Կարմիր ծովից հինգ մղոնի չափ հեռու։ Այդ լուրն ստանալուն պէս Մահմեդը մի ընտիր զօրք կազմեց և դաշտ ելաւ, իւր հետ առնելով և բազմաթիւ Կազրաջացիք, որոնց պետն էր Աբդալլահ իբն Օբբան։ Արագընթաց արշաւով նա յանկարծակի ընկաւ թշնամու վրայ. Ալ Հարէսը յարձակման հենց սկզբում սպանուեցաւ թռուցիկ նետով.

*) Նա Մահմեդի երկրորդ կինն էր Զէյնաբ անունով. առաջինը, որ վախճանած էր փոքր ինչ առաջ, Զուզիմայի աղջիկն էր։

նրա գնդերը կարճատև դիմադրութիւնից յետոյ շը-փոթուած փախան, և փախչելիս մի քանի մարդ մի-այն թողին դաշտի վրայ։ Այս թեթև յաղթու-թեան արդիւնքն էին՝ երկու հարիւր գերի, հինգ հազար ոչխար և միՋհազար ուղտ։ Գերիների թւումն էր և Ալ Հարէսի Բարրա աղջիկը, որ մի տոհմակից երիտասարդ արաբի կինն էր։

Աւարի բաժանման ժամանակ այդ կինը վիճա-կուեցաւ Սաբէթ իբն Քէյսին, և դա մեծ փրկանքի գին պահանջեց։ Այդ պահանջի դէմ գերուհին գան-գատ արաւ Մահմեդին և խնդրեց, որ փրկանքի գի-նը փոքրացնէ։ Մարգարէն ցանկասէրի հայեացք նե-տեց գեղատեսիլ կնոջ վրայ և ասաց. «Ես քեզ աւե-լի մեծ լաւութիւն կ'անեմ, քան փրկանքիդ գինը փոքրացնելը—եկ կինս եղիր»։ Սիրուն Բարրան ան-միջապէս յօժարութիւն տուաւ, և Սաբէթի պահանջած գումարը մարգարէն վճարեց։ Բարրայի գերուած ազ-գականներն արձակուեցան. նրանցից շատերն Իսլամ ընդունեցին, և Բարրան՝ Մէդինա տարուելով Մահ-մեդի կինը դարձաւ։

Կռուից յետոյ գնդերն իրենց ծարաւը կոտրելու համար խառնուել էին Մորայսիի աղբիւրների մօտ։ Ամբոխման միջոցին Մոհաջէրների կամ մէկկացի աք-սորականների և Կազրադեանների միջև վէճ բրդաւ, որի ընթացքում վերջիններից մէկը հարուած ընդու-նեց։ Նրա ընկերները վրայ հասան վիրաւորանքի համար վրէժ խնդրելու, և բանն անշուշտ արիւնհե-ղութեամբ կըվերջանար, եթէ Մահմեդը չմիջամտէր։ Կազրադեանք դժգոհ մնացին և միւս մէդինացիք նրանց կողմն անցան։ Աբդալլահ իբն Օբբան, որ խս-

կոյն օգուտ էր քաղում Մահմեդի աճող զօրութեան վնասելու նպաստող ամեն մի դէպքից, մի կողմ տարաւ իւր կուսակիցներին և ասաց. «Տեսէք, թէ որքան ստորացել էք ասպնջական լինելով այդ տարագիր կորէյշներին։ Դուք ձեր տունը մտցրիք նրանց և ամեն բան տուիք նրանց. բայց այժմ նրանք ձեր դէմ են կանգնում և ձեզ անարգում։ Նրանք կըցանկային ձեր տանն իսկ վրաներդ իշխել. բայց, վըկայ է Ալլահ, դեռ կըտեսնենք, թէ ով է մեզնից աւելի զօրեղը, միայն թէ շուտով Մէդինա հասնէինք,»

Մահմեդը թաքուն իմացաւ այդ գրգռիչ ճառի բովանդակութիւնը։ Օմարը խորհուրդ տուաւ նըրան իսկոյն և եթ ազատուիլ այդ Աբդալլահից. սակայն մարգարէն զգուշանում էր զօրեղ Կազրադացու ազգականների և ընկերների վրէժխնդրութիւնը բորբոքելուց։ Ապստամբութեան առաջն առնելու համար նա հենց նոյն օրը, չնայելով ցերեկուայ տօթին, ճանապարհ ընկաւ դէպի տուն, ամբողջ գիշեր յառաջ գնաց և կանգ առաւ միայն հետևեալ կէսօրին, երբ յոգնած զինուորները էլ ոչինչ չէին ուզում, բայց միայն հանգստանալ.

Մէդինա հասնելուն պէս նա հաշիւ պահանջեց Աբդալլահից այն աղմկիչ ճառի համար։ Աբդալլահն իւր ասածները բացէ 'ի բաց ուրացաւ և խաբեբայ անուանեց մատնողին։ Սակայն նրա և նըրա ընկերների դէմ յարուցուած ամբաստանութիւնը ճշմարտուեցաւ մի նոր երկնային յայտնութեամբ։ «Դրանք այն մարդիկն են,» ասաց Կուրանը, «որոնք շշնջում են Մէդինայի բնակիչներին. Ոչինչ մի տաք

Աստուծու մարգարէի կողմը կանգնած փախստական-
ներին, որպէս զի ստիպուին բաժանուել Նրանից։
Նրանք ասում են. Արդարև, երբոր Մէդինա վերա-
դառնանք, լաւերը վատերին կ'արտաքսեն։ Աստու-
ծու անէծքը նրանց գլխի՜ն։ Ո՞րքան են խոտորուել
ճշմարտութեան ճանապարհից։»

Աբդալլահի բարեկամներից ոմանք, այդ յայտ-
նութեամբ համոզուելով, յորդորում էին նրան նե-
րողութիւն խնդրել մարգարէից. սակայն նա մերժեց
այդ խորհուրդը։ «Դուք արդէն դրդեցիք ինձ,» ա-
սաց նա, «որ օգնեմ և ընկեր լինիմ այդ մարդուն.
այժմ պահանջում էք, որ մինչև անգամ նրա ոտքե-
րի տակ թաւալուիմ։»

Ոչոք չկարողացաւ համոզել նրան, թէ Մահմե-
դը հոգւով կռապաշտ չէ և նրա յայտնութիւնները
խարդախ ու ստապատիր բաներ չեն։ Նա վտանգա-
ւոր թշնամի էր համարում Մահմեդին և ամեն կերպ
աշխատում էր վնասել նրան և նեղել։ Այդ անողոք
ատելութեան հետ կապ ունի հետևեալ գայթակղե-
ցուցիչ պատմութիւնը, որ նա տարածել էր Մահմե-
դի սիրական կնոջ՝ Այէշայի մասին։

Պատերազմի գնալիս Մահմեդը սովոր էր կա-
նանցից մէկին իւր հետն առնել՝ մօտը մի ընկերուհի
և սփոփիչ ունենալու համար։ Կինը տարվում էր վի-
ճակով, և վերջին արշաւանքի ժամանակ վիճակն ըն-
կել էր Այէշային։ Նա պնում էր մի վարագուրեալ
դեսպակ նստած, որ կապուած էր ուղտի մէջքին,
և դրան առաջնորդում էր մի սպասաւոր։ Վերադար-
ձի ժամանակ, երբոր զօրքը մի որոշ տեղ կանգ ա-

ռաւ, Այեշայի սպասաւորները յանկարծ տեսան, որ նրա դեսպակը դատարկ էր։ Եւ մինչդեռ վարանման մէջ էին, Այեշան հասաւ մի ուղտ հեծած, որին վարում էր Սաֆան իբն Մոաթել անունով մի պատանի արաբ։ Այս բանը լսելուն պէս Աբդալլահը սկսաւ լուր տարածել Մէդինայում, թէ Այեշան մեղքի մէջ է ընկել երիտասարդ Սաֆանի հետ։

Այդ պատմութեանը շուտափոյթ հաւատ ընծայեց և իւր կողմից տարածեց Մահմեդի գեղեցիկ Զէյնաբ կնոջ Համնա քոյրը, որ յոյս ունէր լաւութիւն անել իւր քրոջը, գլորելով նրա ախոյեան Այեշային. Նոյնը կրկնեց Աբու Բեկրի ազգական Միսթահն և նոյնը ծաղրական երգերով հրապարակ հանեց Հասան բանաստեղծը։

Արդէն բաւական ժամանակ էր անցել, երբոր Այեշան իւր մասին շրջող լուրերը լսեց։ Մէդինա վերադառնալուց յետոյ նա տկարութեան պատճառով տանն էր մնացել և ոչ ոք չէր ասել նրան, թէ ինչ բանի մէջ են մեղադրում իրեն։ Սակայն նա նկատել էր, որ մարգարէն տխուր ու լռիկ է և առաջուայ սիրով չէ փայփայում իրեն։ Առողջանալուց յետոյ նա սոսկալով իմացաւ իւր վրայ բարդուած յանցանքն և փութաց իւր անմեղութիւնն ապացուցանել։ Նրա ասելով՝ բանն այսպէս էր պատահել.

Վերադարձին զօրքը բանակել էր Մէդինայի մօտերքում. յանկարծ գիշերով յառաջ գնալու հրաման ելաւ։ Սպասաւորները, սովորականի պէս, մի ուղտ բերին Այեշայի վրանի առջև, դեսպակը ցած դրին և հեռացան, մինչև որ նա մէջը նստի։ Հենց նստելու միջոցին նա յիշեց, որ իւր մանեակը վրանի

մէջ է մնացել, և յետ գնաց որոնելու։ Մինչ այս, մինչ այն՝ սպասաւորներն ուղտի մէջքին կապեցին դեսպակն և չզգացին, որ նա դատարկ է, որովհետև Այշէշան նրբակազմ էր ու թեթև։ Երբ նա վրանից դուրս ելաւ, մանեակը բերելով, ուղտն արդէն հեռացել էր և զօրքը չուել։ Այն ժամանակ նա փաթթուեցաւ վերարկուի մէջ և նստաւ, յուսալով թէ իւր բացակայութիւնը հարկաւ կ'իմանան և ետեւից մարդ կ'ուղարկեն։

Մինչդեռ Այշէշան այդպէս նստած էր, նրան մօտեցաւ Սաֆւան իբն Մոաթել երիտասարդ արաբացին, որ վերջապահ գնդի զինուոր էր, և ճանաչելով նրան, արաբների սովորական ողջոյնը տուաւ. «Մենք Աստուծուն ենք պատկանում, Աստուծոյ մօտ էլ կըվերադառնանք։ Ո՜վ մարգարէի ամուսին, ինչո՞ւ ես յետ մնացել։»

Այշէշան չպատասխանեց, այլ միայն երեսի քողն և'ս աւելի պինդ քաշեց։ Սաֆանն ուղտից իջաւ, օգնեց Այշէշային նստելու և երասանակից բռնելով՝ փութաց հասնել բանակին։ Սակայն արևն արդէն բարձրացել էր, երբոր նրանք միացան զօրքին ճիշդ Մեդինայի դռների առջև։

Այշէշայի տուած և Սաֆանի հաստատած տեղեկութիւնը դէպքի մասին բաւարար երևցաւ նրա ազգականներին ու բարեկամներին. սակայն Աբդալլահն և նրա «կեղծաւոր» ընկերները ծաղրալի գըտան։ Եւ այսպէս երկու կուսակցութիւն յառաջ եկաւ դէպքի առթիւ և մեծ վէճեր ծագեցան։ Իսկ Այշէշան իւր սենեակի մէջ գոցուելով, էլ չէր ուզում ոչ բան

ուտել, ոչ խմել, և գիշեր ցերեկ լաց էր լինում Թախ-ծագին։

Մահմեդը սաստիկ անհանգիստ էր, և իւր տագ-նապը փարատելու համար խորհուրդ հարցրեց Ալիից։ Ալին թեթև նայեց բանի վրայ և ասաց, թէ այդ-պիսի փորձանք ամեն մարդու էլ պատահում է։ Սա-կայն մարգարէն չփոփոխուեցաւ այդ փաստով։ Նա մի ամիս բաժանուած մնաց Այէշայից. բայց սիրտը տո-չորվում էր նրա կարօտով, ոչ միայն նրա համար, որ Այէշան գեղեցիկ էր, այլ որովհետև սիրում էր նրա ընկերութիւնը։

Այս սրտմաշուկ անձկութեան միջոցին նրա վրայ մի տեսակ յափշտակութիւն եկաւ, որ անհաւատները վերնոտութեան են վերագրում, և նա ընդունեց մի ձեռնտու յայտնութիւն, որ ամփոփուած է Կուրանում։ Դրա իմաստը հետևեալն է։

«Եթէ մէկը շնութեան համար ամբաստանէ մի ազնիւ կնոջ և չորս վկայ յառաջ չբերէ այդ մեղա-դրանքը հաստատելու համար, տա՛լ նրան ութսուն մտրակ և վկայութիւնը մերժել։ Իսկ Աւէշայի ամ-բաստաններն արդեօք չորս վկայ յառաջ բերի՞ն։ Եթէ չեն բերել, ասել է թէ ստախօս բանսարկու են Աս-տուծու առջև, և թող ուրեմն իրենց յանցանքի պա-տիժը ստանան»։

Այդ հրաշալի եղանակով Այէշայի անմեղութիւնը պարզելուց յետոյ՝ մարգարէն և՛ս աւելի բուռն սիրով սեղմեց նրան իւր կրծքին և զանց չարաւ գործադրե-լու Կուրանի սահմանած պատիժը։ Արդարև դժուար էր ուտեցնել այդ պատիժն ազդեցիկ Աբդալլահին, բայց նրա փոխարէն աւելի սաստիկ ծեծ կերան նրա չա-

րախօս բարեկամները։ Հասան բանաստեղծն առ ժամանակ բժշկուեցաւ ծաղրական ոտանաւորներ հիւսելու տենդից. Համնան անգամ, չնայելով որ կին էր և տակաւին շատ գեղեցիկ, գանակոծ լինելու անարգանքից ազատ չմնաց, որովհետև Մահմեդի ասելով, այդպիսի գեղեցկութիւն ունեցողին վայել էր աւելի համեստ լինել։

Ցայտնութիւնից յետոյ Ալին հաւատաց Այէշայի անմեղութեան, բայց Այէշան երբէք չմոռացաւ ու չներեց, որ նա կասկածել էր. և այս ատելութիւնը արմատ բռնելով Այէշայի սրտում, վերջերն Ալիի համար շատ վնասակար հետևանքներ ունեցաւ։

ԻԳ.

*Պատերազմը փոսի մօտ։—Սաադ իբն Մոադի քաջագործութիւնը։—Կորէյշների պարտութիւնը։—Հրէաների Կորայդա բերդի առնուիլը։—Մահմեդի ամուսնանալը Րիհանա գերուհու հետ։—Նրա կեանքի կախարդութեամբ վտանգուիլն եւ Գաբրիէլի յայտնութեամբ փրկուիլը։*

Օհոդեան պատերազմին յաջորդող մի տարուայ զինադուլի ընթացքում Կորէյշացոց անխոնջ պարագլուխ Աբու Սոֆիանը նիզակակից եղաւ Գաթաֆացի արաբների և Նադհէրեան տոհմի հրէաների հետ, որոնց Մահմեդն արտաքսել էր, և զինադուլի պայմանաժամը լրանալուն պէս՝ որոշեց իւր դաշնակիցների միացած ուժով Մէդինայի վրայ արշաւել. այժմ նա մօտ տասն հազար զինուոր ունէր իւր ձեռքի տակ։

Մահմեդն արդէն լուր ունէր այդ մօտալուտ յարձակման մասին. բայց Օհոդեան պարտութիւնից յետոյ չէր վստահանում այդպիսի գերազանց զօրութեան դէմ դաշտ դուրս գալ. Նա վախենում էր մանաւանդ, թէ Մէդինայի մէջ էլ թշնամին ծածուկ դաշնակիցներ կ'ունենար, ուր կասկածելի հրէաներն և Աբդալլահ իբն Օբային անձնատուր «կեղծաւորները» բազմաթիւ և զօրեղ էին։

Ահագին ճիգ թափուեցաւ այժմ քաղաքը պաշտպանողական վիճակի վերածելու համար։ Նորադարձ Սալման պարսիկը խորհուրդ տուաւ մի փոս փորել պարսպից դուրս, և յատկապէս այն կողմից, ուստի սպասւում էր թշնամին։ Մահմեդը սիրով ընդունեց պաշտպանութեան այդ եղանակը, որ դեռ երբէք չէր գործադրուած Արաբիայում, և բազմաթիւ մարդիկ դրաւ փորելու համար, որոնց ինքն էլ անձամբ օգնում էր։ Ասածներին նայելով՝ աշխատութեան ժամանակ նա շատ հրաշքներ կատարեց։ Օրինակի համար՝ մի օր մի զամբիւղ արմաւով ահագին բազմութիւն կերակրեց, և չնայելով որ բոլորեքեան կշտացան, զամբիւղը դեռ լի մնաց։ Մի ուրիշ անգամ հազար մարդ յագեցրեց մի ոչխարի խորոված մսով ու մի հատ գարեհացով, և դեռ այնքան պաշար մնաց, որ փոսի վրայ բանող մշակներն էլ կշտացան։ Մի օր էլ այնպիսի հարուածներ տուաւ ապառաժին երկաթէ կռանով, որ թօթափած կայծերը մի կողմից ամբողջ Եմէնը կամ Երջանիկ Արաբիան լուսաւորեցին, միւս կողմից Բիւզանդիոնի կայսերական ապարանքը փայլեցրին և երրորդից՝ պարսից ոստանի աշտարակները ցոլացրին, — և այդ ամենն Իսլամի ապագայ աշ-

խարհակալութեան գուշակներ ու նշաններ համարուեցան։

Փոսը փորելուն պէս՝ Թշնամին էլ մեծ բազմութեամբ մօտակայ բլուրների վրայ երևցաւ։ Քաղաքի պահպանութիւնը Մահմեդը յանձնեց իբն Օմմ Մակթում հաւատարիմ սպային, հրամայելով նրան արթուն հսկել դժգոհների վրայ. իսկ ինքն երեք հազար զինուորով քաղաքից ելաւ և փոսի ետևը ճակատ կազմեց։ Աբու Սոֆիանը Կորէյշների ու Գաթաֆեանների համագումար զօրութեամբ վստահ վստահ յառաջ էր գալիս, սակայն յանկարծ փոսին հանդիպելով և դրա ետևից տեղացող նետերի սաստիկ տարափին, ստիպուեցաւ կանգ առնել։ Թշնամին բանակ դրաւ—Կորէշացիք հովտի ստորին մասում, Գաթաֆեանք՝ վերին, և զօրքերը մի քանի օր փոսի երկու կողմը կանգնած մնացին, հեռուից քար ու նետեր արձակելով իրար դէմ։

Այդ միջոցին Մահմեդը լսեց, թէ Բէնի Կորայդեան հրէից տոհմը, որ մի ամուր բերդ ունէր քաղաքի մօտերքում և իւր հետ հաշտ մնալու պայման էր դրած, գաղտաբար միացել էր թշնամուն։ Այժմ նա տեսաւ, որ չէ կարող իւր փոքրիկ զօրքով փոսի ամբողջ երկարութիւնը պաշտպանել, դաւաճան Կորայշացոց յարձակմանը դիմադրել և միանգամայն քաղաքի հանգստութեան վրայ հսկել,—ուր հրէաներն անշուշտ ծածուկ կուսակիցներ կ'ունենային,—ուստի մի զինուորական խորհուրդ կանչեց այս հարցը քննելու, թէ արդեօք լաւ չէ՞ր լինիլ հաշտութեան ջոկ դաշն կնքել Գաթաֆեան ցեղի հետ, տալով նրանց Մէդինայի արմաւակութ.քի երրորդ մասը։ Դրա դէմ

մէդինացի Աւսիթների արխասիրտ Սաադ իբն Մոաբ առաջնորդը հարցրեց. «Այդ բանը դու Ալլահի՞ հրամանով ես առաջարկում, թէ լոկ քեզնից»։—«Եթէ Ալլահի հրամանով լինէր, ես ձեզնից խորհուրդ չէի հարցնիլ», պատասխանեց մարգարէն. «ես տեսնում եմ, որ դուք ամեն կողմից թշնամիներով պաշարուած էք, և ուզում եմ քակտել նրանց միութիւնը։»—Ո՞վ Ալլահի մարգարէ», գոչեց Սաադը, «մեր կռապաշտ եղած միջոցին անգամ, ինչպէս որ են այդ Գաթաֆեանք, նրանք ոչին չէին ստանում մեր արմաւից՝ առանց գինը վճարելու. և մինթէ այժմ ձրիաբա՞ր տանք, —այժմ որ ճշմարիտ կրօն ենք դաւանում և քո առաջնորդութեան ներքոյ ենք։ Քաւ լիցի, վկա՛յ է Ալլահ։ Եթէ նրանք կարօտ են մեր արմաւին, թող գան սրով փաստակեն»։

Սաադը շուտով իւր քաջութիւնը ցոյց տուաւ։ Ասպատակող Կորէյշների հեծելազօր վաշտերից մէկը, որի մէջ էին Աբու Ջահլի Ակրէմա որդին և Մահմեդի առաջին ամուսնու՝ Քադիջայի Ամրու հօրեղբայրը, մի տեղ գտան, ուր փոսը շատ լայն չէր, և նժոյգներին խթան տալով՝ միւս կողմը թռան, հետերն էլ մի քանի ընկեր։ Այն տեղ նրանք մենամարտի կանչեցին ամենաքաջ մուսլէմներին։ Սաադ իբն Մոադը, Ալին և ուրիշ մի քանի կտրիճներ հրաւէրն ընդունեցին։ Ալին բռնուեցաւ Ամրուի հետ. նրանք կռուեցան թէ ձի հեծած և թէ հետի, յետոյ երկուսն էլ գրկախառն ոգորելով՝ փոշու մէջ ընկան։ Վերջ ՚ի վերջոյ Ալին ընկճեց ու սպանեց ոսոխին։ Գուպարն ընդհանրացաւ ու սաստկացաւ. երկու կողմից էլ շատ

մարդիկ սպանուեցան, և Սաադ իբն Մաադը մի ծանըր վէրք առաւ։

Վերջապէս Կորէյշացիք խոյս տուին և մտրակելով ձիերին փոսի վրայից յետ Թռան։ Սակայն մէկի երիվարը, և յատկապէս Նաուֆալ իբն Աբդալլահինը, կարճ ցատկեց և փոսն ընկաւ հեծեալի հետ։ Նաուֆալի վրայ քարեր տեղացին, և նա գոռաց․ «Թող աւելի ազնիւ զէնքով ինձ հետ կռուին մուսլէմները։» Միւնոյն րոպէին Ալին ցատկեց փոսի մէջ, և Նաուֆալը նրա սրի տակ շունչը փչեց։ Այնուհետև Ալին իւր ընկերների հետ հետամուտ եղաւ փախստական Թշնամուն և տէգով վիրաւորեց Ակրէմային։ Այս Թեթև կռիւը հռչակուած է մեծահնչիւն անունովս՝ «Փոսի մօտի պատերազմ։»

Մահմեդը դեռ վախենում էր բացարձակ պատերազմ տալ։ Նա մտածեց գաղտաբար դարձի եկած Նուիմ անունով մի Գաթաֆեան արաբ ուղարկել դաշնակիցների բանակն և նրա ձեռքով գժտուԹիւն ձըգել բանակի մէջ։ Նուիմը գնաց Կորայդացոց մօտ, որոնց հետ վաղուց բարեկամ էր, և ասաց․ «Ինչու էք այդքան յիմարացել, որ Թոյլ էք տալիս մէկկացի Կորէյշներին իրենց կռուի մէջ խառնել ձեզ։ Միթէ չէք տեսնում նրանց և ձեր դրուԹեան տարբերուԹիւնը։ ԵԹէ նրանք պարտուին էլ, բաւական է որ տուն վերադառնան, որպէս զի ապահով մնան։ Իսկ անապատից եկած դաշնակիցներն իրենց հեռաւոր հայրենիքը կըփախչեն, և այնուհետև զայրացած Մահմեդն ու մէդինացիք միայն ձեզնից վրէժ կըհանեն։ Ուրեմն լաւ չէր լինիլ, որ նրանց հետ գործ բռնելուց առաջ՝ պահանջէիք, որ նրանք պատանդ-

ներով երաշխաւոր լինին, թէ չեն հեռանալ, մինչև որ Մահմեդի զօրութիւնը չխորտակուի։»

Յետոյ գնաց Կորէյշների և Գաթաֆեանների մօտ և զգուշացրեց՝ չհաւատալ Կորայդացի հրէաներին, ասելով թէ դրանք մտադիր են պատանդներ առնել նրանցից և Մահմեդի ձեռքը մատնել։

Այսպիսի խորամանկութեամբ դաշնակիցների մէջ սերմանուած երկպառակութիւնն անհետևանք չմնաց։ Մի ուրբաթ երեկոյ Աբու Սոֆիանն իմաց տուաւ Կորայդացոց, որ նրանք մինչև առաւօտ պատրաստ լինին մի ընդհանուր յարձակումն անելու։ Հրէաները պատասխանեցին, թէ հետևեալ օրն իրենց շաբաթը լինելով՝ չեն կարող պատերազմին մասնակցել, և միևնոյն ժամանակ հրաժարուեցան որևէ թշնամական գործ սկսել, մինչև որ դաշնակիցները պատանդներով չապահովեն, թէ անբաժան կըմնան նրանցից։

Կորէյշացիք և Գաթաֆեանք այժմ տեսան Կորայդացոց նենգութիւնն և թողին դիտուած յարձակումը, վախենալով թէ նրանք ետևից կընկնեն իրենց վրայ։ Եւ մինչդեռ պարապ նստած էին բանակում, յանկարծ մի հեղեղասաստ անձրևով մրրիկ հասաւ անապատից. հողմակած վրանները տապալուեցան, խարոյկները հանգան և իրարանցման միջոցին բերնէ բերան լուր թռաւ, թէ մրրիկը Մահմեդի կախարդանքով է յարուցուել և ինքն էլ ահա բոլոր զօրքով գալիս է։ Սարսափ տիրեց ամենքին։ Յուսահատ Աբու Սոֆիանը, տեսնելով որ բանակի մէջ կարգ ձգելու հնար չկայ, ուղտ հեծաւ և հրամայեց նահանջել։ Դաշնակիցները փախան շփոթութեան և արհաւիրքի ասպարէզից, —

Կորէյշացիք՝ դէպի Մէկկա, միւսները դէպի մայրենի անապատը։

Զայրացած ու դառնացած Աբու Սոֆիանը մի նամակ գրեց Մահմեդին, վատարի երկչոտ անուանելով նրան՝ փոսի յետևը թաքնուելուն համար, որ չտեսնուած բան էր արաբացոց պատերազմում, և ըսպառնալով վրէժ հանել նրանից, եթէ դարձեալ ազատ դաշտում հանդիպին իրար, ինչպէս որ հանդիպել էին Օհոդի մօտ։ Մահմեդն էլ իւր կողմից պատերազմի սպառնալիք նետեց նրա դէմ, մարգարէանալով, թէ արդէն մօտ է այն օրը, երբ նա փշրելու է Կորէյշացոց կուռքերը

Թշնամու հրոսակների հեռանալուց յետոյ Մահմեդը գնաց վրէժ խնդրելու Կորայդեան տոհմից. իսկ դրանք իրենց բերդում փակուեցան և մի քանի օր դիմադրեցին պաշարողներին։ Վերջապէս սովից նեղուելով, իրենց նախկին բարեկամ և պաշտպան Աւսիթացոց միջնորդութեան դիմեցին։ Աւսիթացիք աղաչեցին մարգարէին՝ այդ հրէաներին էլ նոյն պայմանները շնորհել, ինչ որ երբեմն շնորհել էր Աբդալլահ Կազրադացու խնդրանօք Բէնի Կայնոկեան տոհմին։ Մահմեդը փոքր ինչ մտածեց և առաջարկեց, որ այդ գործը Աւսիթեան իշխան Սաադ իբն Մոադի որոշման յանձնեն։ Կորայդեանք սիրով ընդունեցին այդ խորհուրդը, որովհետև բարեկամ էին ճանաչում իշխանին. ուստի նրանք թուով եօթն հարիւր հոգի, անձնատուր եղան, և Մէդինա տարուեցան շղթայակապ։ Հրէաների չար բաղդից՝ Սաադը կարծում էր, թէ վերջին պատերազմի պատճառներից մէկը նրանց ուխտանենգ դաշնակցութիւնն էր թշնամու հետ։

Նա դեռ տանջվում էր փոսի մօտի պատերազմում ըն֊դունած վէրքից, և ցաւ զգալու րոպէներին սաստիկ աղօթք էր վերառաքում՝ գէթ այնքան ապրելու, որ կարողանայ պատժուած տեսնել Կորայդներին։ Նա այդ հոգեկան դրութեան մէջ էր, երբ հրաւէր ըս֊տացաւ հրէաների դատը վճռելու։

Նա մի շատարիւն ու գէր մարդ էր. հազիւ կա֊րողացան նստեցնել նրան մի բարձով թամբած էշի վրայ և կողքերից բռնած հասցնել մինչև դատաս֊տանի ատեանը։ Դեռ ատեան չմտած՝ նա պահան֊ջեց, որ ամեն մի հանդիսական իւր վճռին հնազան֊դուելու երդում տայ։ Հրէայք, բարեյաջող ելքի յոյ֊սով, յօժարութեամբ երդուեցան։ Սակայն հենց որ աթոռ նստեցրին Սաադին, նա աջը մեկնեց և վճիռ կարդաց։ Այդ վճիռը հրամայում էր, որ այր մարդիկ մահուան մատնուին, կանայք ու մանկունք՝ գերու֊թեան, իսկ նրանց գոյքերը յաղթողների մէջ բաժա֊նուին։

Ողորմելի հրէաները շանթահար եղան. բայց վճռի դէմ բողոքելու հնար չկար։ Նրանց տարան մի լայն հրապարակ—այն տեղ ահագին փոսեր էին փորուած —և ստիպեցին իրենց ջոյա իբն Աքդաբ իշխանի հետ մի առ մի իջնել փոսերի մէջ, ուր բոլորն էլ սպա֊նուեցան։ Այն օրից հրապարակը Կորայդեան շուկայ կոչուեցաւ։

Ուրեմն Սաադ իբն Մոադը լիովին յագեցրեց Կորայդներից վրէժ հանելու փափագը։ Նա ականա֊տես վկայ եղաւ իւր իսկ վճռով դատապարտուածնե֊րի պատուհասին, սակայն սաստիկ յուզմունքից իւր

վէրքը նորից բացուեցաւ, և ինքն էլ մի քանի օրից յետոյ շունչը փչեց։

Նորայգների բերդում շատ նիզակներ, աէգեր, զրահներ և ուրիշ զէնքեր գտնուեցան, իսկ նրանց դաշտերը հօտերով, նախրով և ուղտերամակներով լիքն էին։ Աւարը բաժանելիս ամեն մի հետևակ մի մասն ստացաւ, ամեն մի ձիաւոր՝ երեք մասն—մէկը ձիի, երկուսն էլ իւր համար. իսկ մարգարէն ամբողջ աւարի հինգերորդ մասն ընդունեց։

Ամենից ընտիր մասը Մահմեդի աչքում Րիհանան էր՝ հարուստ ու մեծատուն Սիմէօն հրէայի չքնաղ դուստրը։ Մարգարէն իրեն սեփականեց այդ աղջկան և նրա հաւատը փոխելով, իւր կանանց կարգը դասեց։

Սակայն որքան հեշտ էր բորբոքվում Մահմեդի սիրտն իսրայէլեան կանանց հրապոյրներից, այնքան էլ սաստկանում էր նրա ատելութիւնը տղամարդկանց դէմ. այլ և ս նա չէր հաւատում նրանց հաշտութեան դաշինքներին և անդադար իւր կեանքին սպառնացող չարիք էր սպասում նրանց կողմից։

Մուսլէմ պատմիչները հրէից կախարդների թովչութեան են վերագրում այն երկատարատև ու յամր հիւանդութիւնը, որ մարգարէն ստացել էր այդ միջոցին և որ ոչ մի կերպով չէր կարելի բժշկել։ Նրանք նկարագրում են մինչև անգամ և նոյն իսկ թովչութիւնը։ Դրա հեղինակն էր, ասում են, մի լեռնաբնակ հրէայ կախարդ և նրա աղջիկը, որ նրմանապէս հմուտ է եղել այդ դիւային արուեստին։

Հայրն ու աղջիկը շինեցին մոմից Մահմեդի փոքրիկ պատկերը, մազերով փաթաթեցին և ասեղով

տասնմէկ տեղ ծակոտեցին։ Այնուհետև մի աղեղնալարի վրայ տասնմէկ հանգոյց կապեցին, իւրաքանչիւր հանգոյցի վրայ փչեցին և այդ լարով պածուճակը պատելուց յետոյ՝ բոլորը միասին մի ջրհոր ձգեցին։

Այդ ազդու թովչութիւնից մարգարէն սկսաւ նիհարիլ։ Վերջապէս Գաբրիէլ հրեշտակն երևեցաւ նրան երազում և գաղտնիքը յայտնեց։ Զարթնելուն պէս նա ուղարկեց ջրհորի մօտ Ալիին, որ և գտաւ պածուճակը։ Երբոր այդ պածուճակը Մահմեդին ցոյց տուին, շարունակում է առասպելը, նա կարդաց վըրան Կուրանի վերջին երկու գլուխները, որոնք յայտնուած էին իրեն նոր երազով, և հետևեալ տասնմէկ տողից են բաղկացած.

«Յանուն ամենողորմ Աստուծոյ։ Դիմում եմ Աստուծուն՝ տուընջեան լուսին.

«Որ նա փրկէ ինձ իւր ստեղծած էակների և նիւթերի վտանգից.

«Սևաթոյր գիշերուայ և խաւարած լուսնի վտանգից.

«Հանգոյցներ կապող և վրան փչող վհուկների վտանգից.

«Մահաւիթ չարիք որոճացող նախանձոտների վտանգից։

«Ապաւինում եմ Ալլահին, որ մարդկանց Տէրն է.

«Ալլահին, որ մարդկանց Թագաւորն է.

«Ալլահին, որ մարդկանց Արարիչն է,—

«Որ նա փրկէ ինձ իւր սուրբ անունը լսելիս փախուստ տուող չար ոգուց,

«Աշխարհիս որդոց սրտին վատ վատ մտքեր ազդող ոգուց,

«Զարամիտ հրեշտակներից և կախարդող մարդկանցից։»

Ամեն մի տողի կրկնութիւնից յետոյ, ասում է աւանդութիւնը, հանգոյցներից մէկը բացվում էր, պաճուճակի ասեղներից մէկն ընկնում էր, և Մահմեդի զօրութիւնն աւելանում։

Տասնմէկերորդ տողից յետոյ նա վերկացաւ նորոգուած առողջութեամբ և ուժով, ասես թէ կաշկանդուած լինէր և ապա թէ ազատուած։

Այդ տողերն պարունակող Կուրանի վերջին երկու գլուխները «ամուլէթ» են կոչվում և սնապաշտ մուսլէմների կարծիքով շատ ազդու յուռութքներ են և կամ [illegible] կախարդութեան ու թովչութեան դէմ։

Շատերը վերոյիշեալ պատերազմում Մահմեդի բռնած ընթացքը քննելիս՝ դատապարտել են նրան իբրև թոյլ, վարանող և զօրավարի հաստատութիւն չունեցող մարդու, և ասել, թէ նրա կարգադրութիւնները զուրկ էին ոգու վսեմութիւնից. և որպէս ապացոյց՝ հետևեալ փաստերն են յառաջ բերել.

Երբ ներքուստ բռնութիւն, իսկ արտաքուստ դաւաճանութիւն էր սպառնում նրան, նա ուզեց կաշառքով հաշտութիւն որսալ միացած թշնամիների մէկ մասից և թէպէտ տեղի տալով Սաադ իբն Մոադին՝ հրաժարուեցաւ այդ նենգամիտ քաղաքականութիւնից, բայց յետոյ և՛ս աւելի խորամանկ ու նուրբ միջոց գործադրեց թշնամիների մէջ գժտութիւն ձըգելու համար։ Դատապարտուած է մանաւանդ նրա վարմունքը հրէաների հետ։ Գթութիւն խնդրող Բէնի Կորայդա տոհմի դատը մի այնպիսի մարդու վըճռին յանձնելը, որ, ինչպէս Մահմեդը գիտէր, փա-

փագում էր 'ի չիք դարձնել այդ տոհմը,—մի անգութ հեգնութիւն էր. իսկ Թշուառների սպանութիւնը Մէդինայի հրապարակում՝ Մահմեդի պատմութեան ամենասև էջերից մէկը։ Եւ արդարև նրա վարմունքը հրէաների հետ՝ այն օրից սկսած, որ իշխանութիւն ձեռք բերաւ, հակասում էր իւր բարքին, որ ընդհանրապէս ներողամիտ ու մարդասէր էր։ Գուցէ նա հրէաների դաւաճանութեան ու ոխակալութեան պատճառով առանձնապէս չարացած լինէր նրանց դէմ. սակայն նրա քաղաքականութեան թէ այս և թէ ուրիշ մասերից պարզ տեսնում ենք, որ նա սրի առաքեալ դառնալուց յետոյ սկսել էր երկրային գարշ կրքերով պղծել իւր ոգին։

## ԻԴ.

*Մահմեդը պատրաստվում է ուխտ գնալ Մէկկա։—Նա խուսափում է իւր դէմ առաքուած հալէդից։—Իջեւանում է Մէկկայի մօտերքում։—Բանակցում է կորէյշների հետ՝ քաղաք մտնելու եւ իւր ուխտը կատարելու թոյլտուութիւն ստանալու համար։—Տասնամեայ դաշնադրութիւնը, որով նրան ամեն տարի երեք օրով Մէկկա գնալու իրաւունք են տալիս։—Մէդինա վերադառնալը։*

Արդէն վեց տարի է որ Մահմեդը փախել էր Մէկկայից։ Որովհետև այդ քաղաքը սուրբ էր արաբների համար և նրանց առաջին ուխտատեղին, ուստի Մահմեդի երկար տարագրութիւնն այն տեղից և բացարձակ թշնամութիւնը Քեաբէի պահապան կորէյշների հետ վնասում էր իրեն զանազան ցեղերի

առջև և իւր ուսման ծաւալումը յապաղում։ Նաև նրա կուսակիցները, որոնք փախել էին իւր հետ միասին, մաշվում էին հայրենի տան կարօտով, և հիմք կար վախենալու, թէ նրանց հաւատը կըթուլանար այդ երկարատև աքսորանքում։

Մահմեդը օր ըստ օրէ զգում էր սրբազան քաղաքն իւր կրօնի հետ կապելու և իւր ազգի հնաւանդ կարգերն պահպանելու կարիքը։ Չէ՞ որ նա յոկ վերանորոգիչ էր անուանում իրեն և միայն նահապետական հաւատի պարզութեան ու մաքրութեան վերականգնիչ։ Արդէն մօտենում էր ուխտագնացութեան Դուլ Քաադա ամիսը, երբ ամեն պատերազմ պիտի դադարէր և թշնամիները հաշտ հաշտ հանդիպէին իրար սրբազան քաղաքի սահմանում։ Հենց այդ միջոցին Մահմեդը մի պատեհ տեսիլք ունեցաւ, որ հաստատեց, թէ ինքն էլ իւր հետևողների հետ կարող է շահուիլ այդ պաշտելի օրէնքից և երկրպագութիւն անել արաբական ազգի սրբավայրին։ Այդ տեսիլքը մեծ խնդութիւն պատճառեց մարգարէի աշակերտներին, և նա սրբազան ամիսը սկսուելուն պէս՝ Մէդինայից դուրս ելաւ դէպի Մէկկա գնալու, տանելով իւր հետ մի հազար և չորս հարիւր մարդ, որոնք մասամբ Մոհաջէրիք էին և մասամբ Անսարեանք։ Նա առաւ իւր հետ և եօթանասուն ուղտ, Քեաբէում զոհելու համար։ Եւ որպէս զի բոլոր աշխարհը գիտենայ, թէ նա գնում է հաշտութեամբ և ոչ թէ պատերազմով, նա կանգ առաւ Զու Հուլէյֆա աւանի մօտ, Մէդինայից մի օրուայ ճանապարհ հեռու, ուր ինքն և իւր ուղեկիցները բոլոր զէնքերը հանեցին, բացի պատեան դրած սրերից, և ապա թէ

ուխտաւորի հագուստ հագած յառաջ գնացին։

Միեւնոյն ժամանակ Մէկկայում խառնակ լուրեր տարածուեցան այդ շարժման մասին։ Կորէյշացիք, Թշնամու յարձակումից վախենալով, պատուէր տուին Կալէդ իբն Վալէդին առնել մի ստուար այրուձի և գնալ կանգնել մի ձորի մէջ, որ երկու օրուայ ճանապարհով Մէկկայից հեռու էր, և խափանել մուսլէմների ընթացքը։

Մահմեդը լսելով որ մեծ ճանապարհը փակուած է, մի դժուար լեռնային շաւիղ ընտրեց և Կալէդի զօրքը մի կողմ թողած՝ իջաւ Մէկկայի տափարակը, ուր և բանակ դրաւ Հոդէյբի մօտ՝ Նուիրական սահմանում։ Այն տեղից նա դեսպան ուղարկեց Կորէյշների մօտ, որով յայտնում էր իւր գալստեան հաշտ նպատակն և ուխտաւորներին վերապահուած իրաւունքների ազատ վայելումն պահանջում։

Կորէյշների կողմից Նուիրակներ եկան Նրա բանակը զննելու և երբոր տեսան աշակերտների երկիւղած վարմունքը Մահմեդի հետ, միանգամայն ապշած մնացին։ Նրա լուացման ջուրը սուրբ էր դառնում աշակերտների համար. գլխից ընկած մազն անգամ և կամ եղունգի նոյն իսկ կտորը՝ մասունքի պէս պահվում էր։ Խօսակցութեան ժամանակ Նուիրակներից մէկը պատահմամբ դիպաւ մարգարէի ալեծածան մօրուքին. աշակերտներն իսկոյն յետ հրեցին Նրան և Նրա արարքի ամբարշտութիւնը յանդիմանեցին։ Նուիրակը տուն վերադառնալով այդ բոլորը Կորէյշներին պատմեց և ասաց. «Ես տեսել եմ Պարսից Թագաւորին և Բիւզանդացոց կայսրին իրենց փառքի ու մեծութեան մէջ. բայց ոչ մի ժամանակ

չեմ տեսել մի վեհապետ, որ Մահմեդի չափ յարգուած լինէր հպատակներից։»

Ուրեմն և՛ս աւելի վտանգաւոր պիտի թուէր Կորէյշներին՝ ներս թողնել իրենց կրօնի այդ թշնամուն, որ այնքան մեծ ազդեցութիւն ունէր մտքերի ու սրտերի վրայ։ Մահմեդը մի քանի անգամ պատուիրակ ուղարկեց սուրբ տաճարը մտնելու թոյլտւութիւն խնդրելով, բայց 'ի զուր։ Վերջին դեսպանն էր իւր փեսան՝ Օսման իբն Աֆանը։ Օրեր անցան. նա չէր վերադառնում, և բանակի մէջ լուր ընկաւ, թէ նրան սպանել են։ Մահմեդը որոշեց լուծել նրա մահուան վրէժը։ Նա կանգնեց մի ծառի տակ և իւր շուրջը գումարելով հետևողներին, բոլորից էլ երդումն առաւ՝ մինչև վերջին շունչը պաշտպանել իրեն և չբաժանուել սուրբ դրօշից։

Այդ դէպքը յայտնի է մուսլէմների մէջ «Յօժարակամ ուխտադրութիւն» անունով։

Օսմանի վերադարձը վերջ դրաւ բանակի շփոթմունքին։ Նրան ուղեկից էր Սոլհայլ Կորէյշացին, որ եկել էր հաշտութեան դաշինք հաստատելու։ Կորէյշացիք վերջապէս հասկացել էին, թէ անմիտ բան էր պատերազմել մի մարդու հետ, որի զօրութիւնն օր ըստ օրէ աճում էր և այնպիսի կոյր հնազանդութեան հանդիպում։ Առաջարկուած դաշինքը տասնամեայ ժամանակով կնքուեցաւ. Մահմեդն և իւր աշակերտներն այդ միջոցին պիտի կարողանային ազատ ազատ մըտնել Մէկկա, որպէս ուխտաւոր, և երեք օր այնտեղ մնալ՝ կրօնական ծէսերը կատարելու համար։ Պայմանները յօժարութեամբ ընդունուեցան, և Ալին պատուէր ստացաւ դաշնագիրը գրելու։

Թելագրողը Մահմեդն էր։ «Գրի՛ր», ասաց նա, «այս են Աստուծու առաքեալ Մահմեդի հաստատած հաշտութեան պայմանները։»—«Կա՛ց,» գոչեց Սոհայլ դեսպանը. «Եթէ ես քեզ Աստուծու առաքեալ ճանաչէի, երբէք քո դէմ զէնք չէի վերցնիլ։ Ուրեմն գրիր միա՛յն անունդ և հօրդ անունը։»

Մահմեդը կամայ ակամայ զիջաւ, որովհետև դեռ այնքան զօրեղ չէր զգում իրեն, որ ձևերի համար վէճ բանար. ուստի պարզ Մահմեդ իբն Աբդալլահ գրել տուաւ իւր անունը դաշնագրում, թէև այդ զիջողութիւնից աշակերտները փոքր ինչ դժգոհ մնացին։ Դժգոհների թիւն և՛ս աւելի բազմացաւ, երբ նա հրամայեց, որ նրանք գլուխները սափրեն և Քեա՛բէի համար բերուած ուղտերն իսկոյն մորթեն. այդ նշան էր, թէ նա մտադիր չէ Մէկկա մտնել, որովհետև զոհաբերութիւնն իսկապէս բոլոր միւս ծէսերից յետոյ պիտի կատարուէր։ Նրանք յիշեցրին մարգարէին այն տեսիլքը, որ սուրբ քաղաքը մտնելու իրաւունք էր աւետել. Նա պատասխանեց, թէ ներկայ դաշնագրութիւնը տեսիլքի իրագործման մի հաւաստի գրաւական է, որ և անշուշտ մի տարուց յետոյ կըկատարուի։ Առ ժամանակ հարկ եղաւ այդ մեկնութեամբ շատանալ։ Ձոհերը զենուեցան, բանակը վերցուեցաւ, և ուխտաւորները վերադարձան Մէդինա՝ յուսախաբուած ու տրտում։

## ԻԵ.

*Կայբար քաղաքի պաշարումը։—Մահմեդի զօրավարների քաջութեան գործերը,—Ալիի մենամարտը Մարհաբի հետ։— Ցարժակումը բերդի վրայ։—Ալին վահանի տեղ՝ դուռն է վերցնում։—Բերդի նուաճումը։—Մահմեդի թունաւորուիլը։— Նրա ամուսնանալը Սաֆիա գերուհու, նմանապէս եւ Օմմ Հաբիբ այրիի հետ։*

Տեսնելով որ աշակերտների կրօնական փափագըն անկատար մնաց Մէկկայում, Մահմեդը որոշեց մի մեծ արշաւանքով սփոփել նրանց և յագուրդ տալ նրանց յափշտակասէր տենչերին, որոնք այժմ գրեթէ նոյնքան էին դրդում մարդկանց իւր դրօշի տակ մտնելու, որքան և ֆանատիկոսութիւնը։

Մէդինայից համարեա թէ հինգ օրուայ հեռաւորութեամբ դէպի հիւսիս-արևելք գտնվում էր Կայբար գաւառը նոյնանուն քաղաքով, որի բնակիչներն առևտրով և երկրի մշակութեամբ հարստացած հրէաներ էին։ Նրանց ճոխ գաւառի մէկ մասը ներկայացնում էր հացաւէտ արտեր և արմաւենու պարտէզներ. միւս մասը՝ հօտերով ու նախիրներով լի արօտներ, և բոլորը պաշտպանուած բազմաթիւ բերդերով։ Կայբար քաղաքն այնքան հին էր, որ արաբացոց պատմաբան Աբուլֆէդայի ասելով Մովսէսին անգամ յայտնի էր։

Այդ քաղաքն և իւր գաւառն ապաստան էին դարձել Մահմեդի ձեռքով Մէդինայից արտաքսուած հրէաների և այն ամեն մարդկանց համար, որոնք փախել էին նրա վրէժից։ Այս հանգամանքը, որպէս

և երկրի հարստութիւնը, շատ ցանկալի առիթ էր տալիս Մահմեդին՝ Կայբարի դէմ ուղղելու այն պատերազմը, որ նա յայտնել էր հաւատի ամեն թշնամիներին։

Հիջրէթի եօթներորդ թուականի սկզբին Մահմեդն արշաւանքի ելաւ Կայբարի դէմ, յառաջ վարելով մի հազար երկու հարիւր հետևակ և երկու հարիւր հեծեալ զինուոր, Աբու Բեկրի, Ալիի, Օմարի և ուրիշ գլխաւոր սպաների հետ միասին։ Նա ունէր երկու դրօշակ՝ մէկը ծագող արեգակի նշանով, միւսը՝ սև արծուի. այս վերջինը յետոյ հռչակուեցաւ, որպէս Կալէդի դրօշակը։

Կայբարի արգաւանդ երկիրը մտնելուն պէս՝ Մահմեդը սկսաւ իւր ասպատակն այն տեղի փոքրիկ բերդերը պաշարելով։ Այդ բերդերից մի քանիսն անձնատուր եղան՝ առանց որևէ դիմադրութեան, ուստի և աւարը, իբրև «Աստուծու պարգև,» մարգարէին վիճակուեցաւ՝ արդէն յիշուած եղանակով գործածելու համար։ Միւս բերդերը, որոնք աւելի ամուր էին և աւելի քաջ զինուորներով պաշտպանուած, յարձակմամբ առնուեցան։

Այդ փոքր բերդերը նուաճելուց յետոյ Մահմեդը Կայբար քաղաքի դէմ գնաց։ Դա իւր արտաքին ամրոցների և ժայռանիստ Ալ Կամուս միջնաբերդի պատճառով այնքան անառիկ էր համարուած, որ ժողովրդի Քէնանա իբն ալ Ռաբի իշխանը կամ թագաւորը բոլոր իւր գանձերն այնտեղ էր պահում։

Այդ քաղաքի պաշարումը մուսլէմների մինչև այժմ ձեռնարկած գործերից ամենանշանաւորն էր։ Նրա ամուր ու խրոխտ պարիսպներն և ապառաժա-

հիմն դրեակն առաջին անգամ տեսնելիս՝ Մահմեդը, ասում են, հետևեալ աղօթքը կարդաց.

«Ո՜վ Ալլահ, որ եօթն երկնքի և նրանց ներքևն եղած ամեն բաների տէրն ես. որ եօթն երկրի և նրանց մէջ եղած ամեն բաների տէրն ես. որ եօթն չար ոգիների և նրանց նենգութեամբ մոլորուողների տէրն ես։ Որ տէր ես հողմերի և ամեն բանի, ինչ որ նրանք ցիր ու ցան են անում և խորտակում,—աղաչում ենք քեզ՝ մեր ձեռքը մատնիր այդ քաղաքն և ամեն բան, ինչ որ դա պարունակում է, իւր գաւառի բոլոր գանձերով հանդերձ։ Քեզնից ենք օգնութիւն հայցում այս ազգի և մեզ պաշարող վտանգների դէմ»։

Եւ աւելի հանդիսաւորութիւն տալու համար այդ աղօթքին՝ նա սկսաւ երկրպագութիւն անել մի բարձր ժայռի վրայ՝ Մանսէլա կոչուած քարքարուտ վայրում, և մինչև Կայբարի պաշարման վերջը ամեն օր եօթն անգամ պտոյտ էր գալիս ժայռի շուրջը, ինչպէս որ անում են Քեաբէի շուրջը։ Յետագայ դարերում ՚ի յիշատակ նրա բարեպաշտական աղօթքի մի մզկիթ շինուեցաւ այդ ժայռի վրայ, որ մինչև այս օրս պաշտելի է բոլոր ջերմեռանդ մուսլէմների համար։

Միջնաբերդի պաշարումը բաւական երկար տևեց և դժուար փորձութեան ենթարկեց Մահմեդի և իւր գնդերի հնարագիտութիւնն ու համբերութիւնը. Նրանք դեռ հմուտ չէին ամրոցների վրայ յարձակուելու արուեստին։ Շատ էին նեղվում նմանապէս և պաշարի պակասութիւնից, որովհետև արաբացիք իրենց շուտափոյթ արշաւանքների ժամանակ սովոր չեն բեռնաւորուիլ առատ պարէնով, և հրէայք նր-

րանց մօտենալու միջոցին բոլոր դաշտերն աւերել էին և շրջակայ արմաւենիները կտրատել։

Յարձակման գործի ղեկավարը Մահմեդն էր. մուսլէմները պաշտպանվում էին պատնէշներով և պարսպին մօտեցրած քարընկէց բաբաններով. վերջապէս նրանք մի խրամ բացին, սակայն չէին կարողանում ներս խուժել, որովհետև ամեն անգամ յետ էին մղվում ընդդիմամարտ հրէաներից։

Մի անգամ Աբու Բեկրը, մարգարէի դրօշը բռնած, յարձակուելու փորձ արաւ. բայց մեծ արիութեամբ կռուելուց յետոյ՝ ստիպուած եղաւ յետ նահանջել։

Հետևեալ յարձակումը յառաջ տարաւ Օմար իբն Քաթաբը, որ թէպէտ մինչև երեկոյ պատերազմեց, բայց նոյնպէս անյաջող։

Երրորդ յարձակումը Ալին արաւ, որ զինուած էր նոյն իսկ Մահմեդի Դուլ Ֆակար կամ քաջահատ սրով։ Արբազան դրօշը նրան յանձնելիս մարգարէն անուանեց նրան «Ալլահին ու նրա մարգարէին սիրող և Ալլահից ու նրա մարգարէից սիրուած մարդ, —մարդ, որ երկիւղ ասուած բանը չգիտէ, և ոչ մի ժամանակ թիկունք չէ դարձրել թշնամուն»։

՚Ի դէպ է այս տեղ յառաջ բերել Ալիի տեսքին ու բնաւորութեան վերաբերեալ աւանդական նկարագիրը։ Նա միջահասակ էր, բայց ամրակազմ, թիկնաւէտ և սաստիկ ուժեղ։ Ջուարթերես էր, կարմրագոյն և թաւամօրուս։ Հեզահամբոյր բարք ունէր, սուր միտք, եռանդուն հաւատ, և Ալլահի առիւծ էր կոչվում իւր անզուսպ քաջութեան համար։

Արաբացի պատմիչները սովոր են անչափ ըս-

տուարացնել այդ իրենց սիրելի հերոսի քաջագործու-
թիւնները։ Հագած էր, ասում են, մի կարմիր բաճ-
կոն և վրայից մի պողովատէ վերտ շապիկ։ Նա մագ-
լելով բարձրացաւ իւր մարդկանց հետ խրամատի առ-
ջև կուտակուած փլատակների ու քարերի մեծ թումբի
վրայ և այն տեղ վարսելով իւր դրօշակը, երդում ա-
րաւ, որ չի իջնիլ, մինչև որ չառնէ միջնաբերդը։
Ֆրէաները դուրս վազեցին յարձակուողներին յետ վա-
նելու։ Տաք կռուի մէջ Ալին գիրկ ընդ գիրկն գու-
պարեց հրէաների Ալ Ֆարէս առաջնորդի հետ և ըս-
պանեց նրան։ Յառաջ եկաւ սպանուածի եղբայրը՝
նրա վրէժը հանելու։ Դա մի վիթխարի մարդ էր՝
կրկնավերտ զրահ հագած և ամրակուռ սաղաւարտի վրայ
երկու չալմայ փաթաթած, որի մէջ տեղը մի ահա-
գին ադամանդ էր շողշողում։ Երկու կշտին երկու
սուր ունէր, իսկ ձեռին ճօճում էր մի ահագին
եռասլաք տէգ։

Ֆակառակորդներն աչքով չափեցին մէկ մէկու
և արևելեան փքուած ոճով բարև տուին։

«Ես Մարհաբն եմ՝ ոտից ցգլուխ սպառազէն
և պատերազմում ահաւոր,» ասաց հրէան։

«Իսկ ես Ալին եմ, որ դեռ օրօրանում Ալ Հայ-
դարա (ամենհի առիւծ) անուն եմ ստացել իմ մօրից։»

Մուսլէմ գրագէտները կարճ են կտրում Խսրա-
յէլեան հերոսի գործը։ Նա իւր տէգով մի զարկ ուղ-
ղեց Ալիի դէմ, բայց Ալին արագ խոյս տուաւ նրանից,
և նոյն րոպէին Դուլ Ֆակար սրի հարուածը Մահրա-
բի վահանը ճեղքեց, ամրակուռ սաղաւարտի, չալմայի,
կարծր գանգի միջովն անցաւ և գլուխը մինչև ա-

տամները պատառեց։ Վիթխարին թաւալ գլոր վայր ընկաւ։

Այն ժամանակ հրէաները բերդ քաշուեցան, և ընդհանուր յարձակումն սկսուեցաւ։ Թունդ կռուի մէջ Ալիի ձեռից վահանը խլեցին, և նա մնաց անպատսպար. սակայն նա մի դուռն հանեց ծղնիներից և մինչև կռուի վերջը ասպարի տեղ բանեցրեց։ Այդ իրողութեան ականատես էր Մահմեդի Աբու Րաֆ սպասաւորը, որ ասում էր. «Ես և իմ ընկերներից եօթը մարդ այդ դուռն ուշադրութեամբ զննեցինք, բայց ութ հոգով էլ չկարողացանք տեղից վերցնել։»*)

Միջնաբերդն առնելուն պէս մուսլէմները փութացին բոլոր շտեմարաններն ու մառանները խուզարկել՝ Քէնանա իշխանի գանձերը որոնելով. բայց ոչինչ չըգտան, և Մահմեդը հարցրեց նրան, թէ ո՛ր տեղ է թաքցրել գանձերը։ Իշխանը պատասխանեց, թէ բոլորն էլ ծախսել է զօրքի սպառազինութեան և բերդի պաշտպանութեան համար։ Սակայն նրա դաւաճան ծառաներից մէկը ցոյց տուաւ մի տեղ, ուր բաւական հարստութիւն կար դիզուած։ Դա յաղթողների ակնկալութեան համեմատ չեկաւ, և Քէնանային լլկանքի ենթարկեցին, որպէս զի ասէ, թէ ո՛ր տեղ է իւր կարծուած գանձերի մնացորդը։ Նա չէր կա-

---

*) Այդ զարմանալի դէպքի վրայ խօսում է և Աբուլֆէդա պատմաբանը, գլ. 24։ „Աբու Րաֆն ականատես էր,“ նկատում է Գիբբօն անգլիացին. „բայց ո՞վ է երաշխաւոր Աբու Րաֆի մասին“։—Մենք էլ միանում ենք մեծանուն պատմաբանի կասկածին. սակայն եթէ ամեն մի ականատեսի վկայութիւն այդպէս խիստ քննելու լինինք, ի՞նչ կըդառնայ այն ժամանակ պատմութիւնը։

րող և կամ չէր ուզում ցուցմունքներ անել, և այս պատճառով նրան մատնեցին մի մուսլէմի վրիժառութեան, որի եղբօրը նա ջախջախել էր պարսպից գլորած երկանաքարով. մուսլէմը որի մէկ հարուածով նրա գլուխը թռցրեց։ *)

Փ՚իչ էր մնացել որ Մահմեդը հրէաների ոխակալութեան զոհ դառնար Կայբարում։ Նա ուտելու բան խնդրեց, և նրան տուին մի գառան թիակ։ Հենց առաջին պատառից նա մի անախորժ համ զգաց և դուրս թքեց. բայց նոյն րոպէին մի սուր խայթոց զգաց փորում։ Նրա Բաշար անունով սպասաւորը, որ կուշտ կերել էր, վայր ընկաւ և ստնգալով մեռաւ։

Բոլորն էլ զարհուրեցան և սրտաբեկ եղան։ Փութաջան հետազօտութիւնը պարզեց, որ գառան միսը Զէյնաբ գերուհին էր պատրաստել, որ Ալիի սպանած Մարհաբ հսկայի քրոջ աղջիկն էր։

Երբ նրան Մահմեդի առջև բերին և երեսին տուին, թէ թոյն է ածել կերակրի մէջ, նա համարձակ խոստովանուեց, ասելով թէ իւր արածը մի արդար հատուցումն էր Մահմեդի ձեռից իւր տոհմին հասած չարիքների փոխարէն։ «Ես կարծում էի,» ասաց նա, «որ եթէ դու իրօք մարգարէ ես, անշուշտ վտանգին վերահաս կըլինիս. իսկ եթէ լոկ զօրավար՝ կըմեռնես, և մենք կ՚ազատուինք բռնակալից։»

---

*) Կայբարեան նահանգի հրէաները մինչև այս օր էլ յայտնի են Արաբիայում Բէնի Կէյբար, անունով։ Նրանք կազմում են երեք տոհմ՝ Բէնի Մէսսիադ, Բէնի Շահան և Բէնի Անաէս. կառավարվում են անկախ շէյխերով. կասկածելի են որպէս կարաւանների կողոպտիչներ։— *Niebuhr*, *II*, *43*։

Արաբական հեղինակները տարբեր են պատմում այդ հերոս կնոջ ճակատագիրը։ Ոմանց ասելով՝ նա Թունաւորուած Բաշարի ազգականների վրիժուն մատնուեցաւ. ոմանք էլ ասում են, թէ իւր գեղեցկութեան համար ներումն ստանալով Մահմեդից, անպատիժ տուն գնաց։

Այդ հեղինակները գրեթէ ոչ մի դէպք չեն յիշատակում Մահմեդի կեանքից՝ առանց որ և է հրաշք պատմելու։ Ներկայ դիպուածում նրանք ասում են, թէ գառան թունաւորուած թիակը յանկարծ խօսելու շնորհ էր ստացել և զգուշացրել մարգարէին փտանգից։ Եթէ այդպէս է, ուրեմն թիակը փոքր ինչ ուշ խօսած կըլինէր, որովհետև մարգարէի կերած գեղն արդէն ցկեանս թունաւորել էր նրա կազմուածքը. այնուհետև նա ստէպ ցաւի զայրուցք էր ունենում և հոգեվարքի րոպէին անգամ գանգատվում, թէ իւր սրտի երակները Կայբարեան թոյնից թրնդում են։

Աւելի մեղմ վարուեցաւ Մահմեդի հետ միւս գերուհին, և յատկապէս Սաֆիան կամ Սոֆիան, թէև դա Զէյնաբից աւելի հիմք ունէր վրէժխնդիր լինելու նրանից, որովհետև գանձերի համար նոր սպանուած Քէնանա իշխանի նորատի կինն էր և դուստրը Բէնի Կորայդ տոհմի առաջնորդ Հոյա իբն Աքթաբի, որ ինչպէս արդէն պատմած ենք, եօթն հարիւր հրէաների հետ մահուան վճռի զոհ եղաւ Մէդինայի հրապարակում։

Այդ Սաֆիան հրաշագեղ կին էր, հետևաբար զարմանալի չէ, որ շնորհ գտաւ Մահմեդի առջև և սա իւր սովորութեան համեմատ իսկոյն նրան իւր

հարէմը մտցրեց. զարմանալին այն է միայն, որ կինն էլ սիրով այդ վիճակը յանձն առաւ։ Սակայն մուսլէմ գրագէտներն այդ դէպքը նրանով են բացատրում, որ կինը մի գերբնական եղանակով առաջուց պատրաստուած էր այդ բանի համար։

Մինչ Մահմեդը դեռ քաղաքը պաշարելու վըրայ էր, ասում են նրանք, Սաֆիան երազ էր տեսել մի գիշեր, իբր թէ արեգակը երկնքից վայր իջնելով եկել նստել է իւր գոգը։ Առաւօտեան Քէնանա իշխանը կնոջ երազի պատմութիւնը լսելիս՝ ապտակել էր նրան և գոչել. «Ա՛յ կին, չե՞ս հասկանում, որ երազիդ մէջ երևցողը մեզ պաշարող արաբական զօրավարն է։»

Սաֆիայի երազը կատարուեցաւ, որովհետև Մահմեդը դեռ Կայբարից չմեկնած շտապեց փոխել նրա հաւատն և իսկոյն նրան կին առաւ։ Հարսանիքը տօնեցին վերադարձի ժամանակ Ալ Սահբայում, ուր զօրքը բանակել էր երեք օրով։ Աբու Այուբը, որ մարգարէի շատ եռանդուն աշակերտն էր և նրա սենեակապետը, մինչև առաւօտ սուրը ձեռին պահապան եղաւ առագաստի վրանի մօտ։ Սաֆիան մարգարէի ամենասիրելի ամուսիններից մէկը դարձաւ և նրա մեռնելուց յետոյ քառասուն տարի այրութեան մէջ անցկացրեց։

Այդ սիրայօժար կամքով առած կիներից զատ՝ քաղաքագիտական հաշուով էլ մի կին առաւ մարգարէն։ Մէդինա վերադառնալուց փոքր ինչ յետոյ նա ուրախութիւն ունեցաւ լսելու, թէ Հաբէշստան փախած աշակերտների վերջին խումբն էլ յետ է եկել։ Նրանց թւում գտնվում էր մի գեղեցիկ երեսն-

ամեայ այրի կին, որի Աբդալլահ ամուսինը վախճանուել էր աքսորում։ Ամենքը նրան Օմմ Հաբիբ կամ Հաբիբի մայր էին անուանում, որովհետեւ այդ անունով մի դուստր ունէր։ Այրին Մահմեդի ամենաչար թշնամու՝ Աբու Սոֆիանի աղջիկն էր, և մարգարէն կարծում էր, թէ աղջկայ հետ կարգուելով հօր թըշնամութիւնը կ՚ամոքէ,—մի նուրբ հաշիւ, որ թելադրուած ու վաւերացուած էր, ասում են, Կուրանի մի նոր գլխի յայտնութեամբ։

«Ալլահը վկայ է,» գոչեց Աբու Սոֆիանն այդ ամուսնութեան լուրն առնելիս, «որ ոչ մի պախուցով չէ կարելի սանձել այդ ըմբոստ ուղտին։»

## ԻԶ.

*Հերակլիոս կայսրի, Խոսրով Երկրորդի եւ Եգիպտոսի բդեշխի մօտ ուղարկուած դեսպանութիւնները։—Դրանց հետեւանքը։*

Տարուայ մնացած մասը Մահմեդը Մեդինայում անցկացրեց, զանազան արշաւանքներ անել տալով իւր հաւատարիմ աշակերտներին, որոնք արդէն մի մի փորձառու զօրավար էին, և նրանց զէնքով արագ արագ հնազանդութեան լուծի տակ դրաւ տակաւին անսաստ ցեղերը։ Իւր երկիրների սահմանն ընդարձակելիս՝ նա իւր պետական դիտումների շրջանն էլ ընդլայնեց։ Թէպէտ անհրաժեշտ դէպքերում հրամայում էր սրով տարածել իւր հաւատը, բայց դիւանագիտութեան հաշտ միջոցներն էլ անտես չէր թողնում, դեսպաններ առաքելով զանազան իշխանների ու պետերի մօտ, որոնց կալուածները սահմանակից էին իւր քաղաքական հորիզոնին, և յորդորելով ըն-

գունել Իսլամը, ասել է թէ առաքեալ, ուրեմն և մեծաւոր ճանաչել իւր անձը։

Այդ դեսպանութիւններից երկուսն և ամենակարևորը ուղարկուած էին պարսից Խոսրով Բ. թագաւորի և հռովմայեցոց Հերակլիոս կամ Հրակլ կայսրի մօտ՝ Կ. Պօլիս։ Արևելքին տիրանալու համար դարերէ 'ի վեր հռոմայեցոց ու պարսից միջև մղուող պատերազմները նորոգուել էին այդ երկու վեհապետի օրով փոփոխական յաջողութեամբ և արդէն վաղուց աղմկում արևելեան աշխարհը։ Երկիրները նուաճվում էին մերթ մէկի, մերթ միւսի զօրքերով. ամբողջ պետութիւններ ու նահանգներ իրար յաջորդող ասպատակների ազդեցութեան տակ փոխում էին իրենց տէրերին, նայելով թէ կռուողներից որն էր յաղթում կամ պարտվում։ Մի ժամանակ Խոսրովն իւր երեք գումարտակով, որոնցից մէկը խորոխտաբար «Հինգ հազար ոսկետէգ» էր անուանվում, յափշտակեց հռոմայեցոց կայսրից Պալէստինան, Կապադովկիան, Հայաստանն և ուրիշ մի քանի մեծ ու հարուստ երկրներ. առաւ Երուսաղէմն և Պարսկաստան տարաւ Ս. Խաչը. յետոյ մտաւ Աֆրիկա, նուաճեց Լիբիան և իւր յաղթանակները մինչև Կարքեդոն տարածեց։

Այդ յաղթական ընթացքի միջոցին էր, որ նրա մօտ մի մուսուլման դեսպան եկաւ, Մահմեդից նամակ բերելով։ Խոսրովը կանչեց իւր դպիրն և հրամայեց կարդալ նամակը։ Նամակն սկսվում էր այսպէս.

«Ամենագութ Աստուծու անունով։ Աբդալլահի որդի և Աստուծու առաքեալ Մահմեդը՝ պարսից Խոսրով թագաւորին»։

«Ի՞նչ,» որոտաց Խոսրովը, գայրագին հպարտու-

թեամբ ցատկելով տեղից. «իմ ստրուկը յանդգնում է իւր անունն առաջուց դնել ինձ ուղղած գրութեան մէջ։» Այս ասելով նա խլեց նամակն և պատռեց՝ առանց նոյն իսկ բովանդակութիւնը հարցնելու։ Այնուհետև գրեց իւր Եմէնի կուսակալին. «Լսած եմ, որ Մէդինայում մի խելագար է յայտնուել Կորէյշեան տոհմից, որ մարգարէ է հռչակում իրեն։ Խելքի բեր նրան, և կամ եթէ չես կարող՝ նրա գլուխն ինձ հասցուր։»

Խոսրովի ձեռով իւր նամակի պատառուիլը լսելիս Մահմեդը գոչեց. «Այդպես էլ Ալլահ նրա թագաւորութիւնը կտոր կտոր կ'անէ»։

Հերակլն աւելի քաղցրութեամբ ընդունեց մարգարէի գիրը, թերևս այն պատճառով, որ ստանալիս նեղ դրութեան մէջ էր։ Թուղթը ստորագրուած էր արձաթագիր բառերով՝ «Մահմեդ Աղզարէլ,» այսինքն Աստուծու առաքեալ Մահմեդ, և հրաւիրում էր կայսրին հրաժարուիլ քրիստոնէութիւնից և Իսլամ ընդունել։ Հերակլը, ասում են, յարգանքով բարձի վրայ դրաւ նամակը, արժանապէս հիւրասիրեց դեսպանին և ամենաճոխ ընծաներով արձակեց։ Սակայն պարսկական պատերազմով զբաղուած՝ նա այլ ևս ուշք չդրաւ նամակին, որի հեղինակը, իւր կարծիքով, անշուշտ մի ցնդած մարդ էր, իսկ նրա պատերազմները ոչ այլ ինչ, բայց եթէ աւազակային ասպատակներ, որոնք սովորական բաներ էին անապատի վայրագ ցեղերի մէջ։

Մահմեդի մէկ ուրիշ դեսպանութիւնն էլ ուղարկուած էր Եգիպտոսի Մուկովկիս կուսակալի մօտ, որ առաջ Հերակլի ձեռքով հարկահան էր նշանա-

կուած այդ երկրում, իսկ յետոյ հռոմայեցոց ու պարսից պատերազմների շփոթմունքից օգուտ քաղելով, գրեթէ միահեծան իշխան դարձել և կայսրին հպատակելու պարտքը թօթափել։ Նա մեծ պատուով ընդունեց դեսպանին, սակայն զլացաւ պատասխան տալ հաւատը փոխելու հրաւէրին, պատճառելով թէ այդ ծանր խնդիրն երկար մտածութեան կարօտ է։ Առ ժամանակ նա ուղարկեց Մահմեդին ազնիւ ազնիւ ընծաներ՝ զանազան ակներ, եգիպտական կտաւից կարուած հագուստներ, ընտիր մեղր և իւղ, Եաֆուր անունով մի սպիտակ էշ, Դալդալ անունով մի սպիտակ ջորի և մի սօս երիվար, որի անունն էր Լազլոս կամ սըրարշաւ։ Սակայն նրա պարգևներից ոչ մէկն այնքան դուր չեկաւ մարգարէին, որքան Մարիամ և Շիրէն անունով երկու ղպտացի կոյս քոյրերը։

Մարիամի գեղեցկութիւնը սաստիկ շփոթեց մարգարէին։ Նա սիրով պատրաստ էր հարճ անել նրան, սակայն այդ բանին արգելք էր Կուրանի ԺԵ. գլուխը, որ մտրակ էր սպառնում շնացողին։

Այդ երկսայրի դրութիւնից նրան ազատեց մի ուրիշ յայտնութիւն, որ ջնջում էր օրէնքը մարգարէի համար և թոյլ տալիս նրան իւր աղախնի հետ կենակցել։ Գայթակղութեան առիթ չտալու և մանաւանդ իւր կանանց նախանձը չշարժելու համար՝ մարգարէն ծածուկ էր պահում իւր յարաբերութիւնը չնաշխարհիկ Մարիամի հետ, և գուցէ այդ էր պատճառը, որ Մարիամն երկար ժամանակ նրա սիրելին մնաց։

## Իէ.

*Մահմեդի Մէկկա ուխտ գնալը։— Ամուսնութիւնը Մէյմունայի հետ։— Խալէդ իբն Վալէդի եւ Ամրու իբն Ասսի դարձը։*

Արդէն հասել էր ժամանակը, երբ Մահմեդն և իւր հետևողները՝ Կորէյշների հետ դրած դաշինքի զօրութեամբ, կարող էին Մէկկա ուխտ գնալ և երեք օր անարգել մնալ սրբազան վայրում։ Եւ Մահմեդը ճանապարհ ընկաւ բազմաթիւ սպառազէն զօրքով և եօթանասուն զոհելու ուղտով։ Հին հակառակորդները թէև կ'ուզէին նրա ճանապարհը խափանել, սակայն վախեցան զօրքի թուից և նրա մօտենալու միջոցին լուռ ու հանդարտ յետ քաշուեցան դէպի մերձակայ բլուրները։

Ուխտաւորները Մէկկայի սահմանը մտան թէ չէ՝ դաշինքի և հին սովորութեան համեմատ բոլոր զէնքերն ու զրահները հանեցին, բացի սակայն սրերից, որոնք պատեանում մնացին։ Մեծ եղաւ նրանց ուրախութիւնը սրբազան քաղաքի աշտարակներն ու պարիսպները նորից տեսնելիս։ Նրանք ուխտաւորի պէս հագնուած, երկիւղած ու շնորհակալ սրտով քաղաք մտան, և Մահմեդն այնպիսի ջերմ եռանդով կատարեց հին ծէսերը, որ ականատեսների գութը շարժուեցաւ և շատերը դարձի եկան։ Բոլոր արարողութիւններն աւարտելուց յետոյ՝ նա հանեց իհրամը կամ ուխտաւորի հագուստը և գնաց Սէրիֆ, որ Մէկկայի սրբազան շրջանից երկու ժամ հեռու գտնուող աւան է։ Այն տեղ կատարելու էր մի ուրիշ ծէս, որ սովոր էր միշտ անկեղծ եռանդով կա-

տարել։ Հարկաւոր էր ամուսնանալ Հիլէլեան Ալ Հարէսի դուստր Մայմունայի հետ, որի հետ նշանուած էր դեռ Մէկկա մտնելիս։ Այդ էլ անտարակոյս քաղաքական դիտումներով գլուխ բերուած ամուսնութիւն էր, որովհետև Մայմունան յիսունմէկամեայ այրի էր. սակայն մարգարէն, կին առնելով Մայմունային, երկու հզօր աշակերտ էր վաստակում։ Մէկն էր Խալէդ իբն Վալէդը՝ այրի կնոջ եղբօրորդին և այն քաջ զինուորը, որ քիչ էր մնացել ոչնչացնէր Մահմեդի զօրութիւնն Օհոդեան պատերազմում։ Այժմ նա Իսլամի ամենայաղթական շահատակներից մէկը դարձաւ և իւր անվեհեր քաջութեան համար «Ալլահի սուր» կոչուեցաւ։

Երկրորդ նորադարձն էր Ամրու իբն ալ Ասսը՝ այն իսկ մարդը, որ երգիծական երգերով հալածել էր Մահմեդին նրա քարոզութեան սկզբում և մի ժամանակ փախստական մուսլէմներին յետ պահանջելու նըպատակով Հաբէշստան ուղարկուած Կորէյշեան դեսպանութեան գլուխն էր։ Այժմ այդ մարդը կոչուած էր յաղթական սրով օտար երկիրներ տարածել այն հաւատը, որի դէմ առաջ այնպէս սաստիկ մաքառել էր։

Ծանօթութիւն։ Մայմունան մարգարէի վերջին ամուսինն էր, որ չնայելով իւր ծերութեան՝ նրա բոլոր միւս կանանցից երկար ապրեց։ Մեռաւ իւր մարդուց մի քանի տարի յետոյ Սէրիֆ գիւղի այն ծառի տակ, ուր կանգնած էր իւր հարսնական վրանը, այնտեղ էլ թաղուեցաւ։ Բարեպաշտ Ալ Ջաննաբի պատմաբանը,—„Ալլահի խոնարհ ծառան, որ նրա ամբաւ ողորմութեամբ յոյս ունի արժանանալ իւր մեղքերի քաւութեան“,—տեսել է Մայմունայի գերեզմանը Մէկկայից վերադառնալիս հիջրէթի 963 և փրկչական 1555 թուականին։ „Ես տեսայ այն տեղ“, գրում է նա, „մի սև մարմարեայ մզկիթ, շինած ՚ի յիշատակ

Մայմունայի յատկապէս այն գետնի վրայ, ուր Ալլահի մարգարէն ննջած էր նրա հետ։ Ճշմարտութիւնը յայտնի է միայն Ալլահին, և նա գիտէ, թէ քարն ինչու է սևացել։ Այնտեղ կայ և մի լողարան և մի աղօթարան, բայց շինութիւնն արդէն քայքայուած է"։

## ԻԸ.

*Մուսլէմ դեսպանի սպանուիլը Ասորոց երկրում։—Նրա մահուան վրէժն հանելու համար եղած արշաւանքը։—Մութայի պատերազմը։—Դրա հետեւանքը։*

Հարևան իշխաններին նոր հաւատի հրաւիրելու համար Արաբիայի սահմաններից դուրս ուղարկուած դեսպանութիւններից մէկն էլ Բօսրայի կուսակալի մօտ ուղարկուածն էր։ Բօսրան այն մեծ վաճառաշահ քաղաքն էր Ասորիքի սահմանի վրայ, ուր Մահմեդը գնացել էր իւր պատանեկութեան ժամանակ առաջին անգամ կարաւանով ուղևորութիւն անելիս։ Ասորոց երկիրը, որ փոփոխակի մերթ հռոմայեցոց, մերթ պարսից իշխանութեան ենթակայ էր, այժմ պատկանում էր կայսրին և շատ անկարգ դրութեան մէջ էր։ Մահմեդի դեսպանը սպանուեցաւ Մութայում, որ Երուսաղէմից երեք օրուայ ճանապարհով դէպի արևելք գտնուող քաղաք է։ Սպանիչներից մէկն էր Հերակլի անուամբ Մութան կառավարող Շորհայլ էմիրի որդին՝ Գասսան կոչուած քրիստոնեայ արաբների ցեղից։

Այդ դեսպանի սպանութեան վրէժը հանելու և իւր յաջորդ նուիրակների պատիւն ապահովելու համար՝ Մահմեդը սպառազինեց երեք հազար մարդ և

յանցաւոր քաղաքի դէմ արձակեց։ Դա մի նշանաւոր արշաւանք էր, որովհետեւ կարող էր առաջին անգամ ընդհարումն յառաջ բերել իսլամական զէնքերի և հռոմէական պետութեան միջև. սակայն Մահմեդը վստահ էր իւր աճող զօրութեան, իւր զօրքերի քաջութեան վրայ, և օգուտ էր սպասում Ասորոց երկրի խառնաշփոթ վիճակից։ Զօրքի հրամանատարն էր Զէիդը, որ անձնուիրութեան այնպիսի պայծառ ապացոյց էր տուել, 'ի սէր մարգարէի հրաժարուելով իւր չքնաղ Զէյնաբ կնոջից։ Նրան աջակից էին մի քանի ընտիր զօրավարներ։ Մէկն էր Աբու Թալէբի որդի և Ալիի եղբայր Ջաֆարը, որ իւր ճարտար լեզուով ջատագովել էր Մահմեդի կրօնը Հաբէշստանի թագաւորի առջև և 'ի դերև հանել Կորէյշների դեսպանութիւնը։ Այժմ նա մի քաջառույգ, արիասիրտ և գեղեցիկ տղամարդ էր։ Զէիդի միւս ընկերն էր Աբդալլահ իբն Կաւահա բանաստեղծը, որ հաւասար անուանի էր թէ քերթողական ձիրքերով և թէ պատերազմական գործերով։ Երրորդն էր նորադարձ Կալէդը, որ յօժար կամքով միացել էր զօրքին և փափագ ունէր սրով ցոյց տալ իւր դարձի անկեղծութիւնը։

Զէիդին հրամայուած էր՝ շտապ շտապ արշաւել, յանկարծակի առնել Մութան, դարձի բերել բնակիչներին և հետևը մեղմ վարուիլ։ Կանայք, երեխայք, կրօնաւորներն ու կոյրերը յամենայն դէպս պիտի խնայուէին. տները չպիտի քանդուէին, ծառերը չպիտի կտրուէին։

Փոքրաթիւ զօրքը դուրս ելաւ Մեդինայից թըշնամու վրայ յանկարծակի յարձակուելու վստահու-

թեամբ։ Սակայն ճանապարհին իմացաւ, որ իւր դէմ
հռոմայեցոց կամ լաւ ասել՝ յոյների և արաբների
գումարտակ է գալիս գերազանց ուժով։ Պէտք եղաւ
պատերազմական խորհուրդ կազմել։ Ոմանց կարծիքն
էր կանգ առնել և Մահմեդի նոր պատուէրին սպա-
սել. բայց Աբդալլահ բանաստեղծն առաջարկեց ուշք
չդարձնել թշնամիների գերազանց թուին և անվե-
հեր յառաջ խաղալ։ «Մենք մարտնչում ենք հաւա-
տի համար,» գոչեց նա. «եթէ ընկնենք, մեր հատու-
ցումը դրախտը կըլինի։ Ուրեմն յառա՜ջ՝ կամ յաղթե-
լու և կամ նահատակի մահով մեռնելու։»

Ամենքն էլ բռնկուեցան բանաստեղծի կրակի
կայծից, ֆանատիկոսութեան եռանդից։ Նրանք Մու-
թայի մօտ հանդիպեցան թշնամուն և ոչ միայն քա-
ջօրէն, այլ մոլեգնութեամբ գրոհ տուին վրան։ Ընդ-
հարման ահեղ րոպէին Աբդալլահը մահացու վէրք
ստացաւ։ Սրբազան դրօշը ձեռից ընկաւ. բայց դը-
րան բռնեց և նորից պարզեց Ջաֆարը։ Կռիւն այժմ
Ջաֆարի շուրջը սաստկացաւ, որովհետև դրօշը կա-
տաղի ոգորման առարկայ էր։ Ջաֆարը հիանալի քա-
ջութեամբ էր պաշտպանվում։ Թշնամիները նրա աջ
ձեռը կտրեցին. նա ձախով բռնեց դրօշը։ Ձախն էլ
կտրեցին։ Այն ժամանակ նա արիւնոտ արմուկներով
գրկեց դրօշը։ Սրի հարուածը նրա գագաթը ջախջա-
խեց, և նա գետին ընկաւ, բայց դարձեալ հաւատի
դրօշն ամուր բռնած։ Այժմ Աբդալլահ բանաստեղծը
դրօշը վերցրեց. սակայն նա էլ ընկաւ սրի հարուա-
ծից։ Երեք մուսլէմ զօրավարների մահից յետոյ՝ վեր-
ջապէս նորահաւատ Կալէդը բռնեց օրհասաբեր նը-
շանը, և դա հաստատ մնաց նրա ձեռում։ Կալէդի

ձայնը նորից հաւաքեց տատանուող մուսլէմներին և նրա հզօր բազուկը ճանապարհ ճեղքեց թշնամու ամենաստուար շարքերի միջով։ Եթէ հաւատանք իւր խօսքին,—և նա մէկն էր այն քաջերից, որոնց գործերը չափազանցութեան չեն կարօտ,—ինն հատ սուր փշրեց նա, կատաղի հարուածներ իջեցնելով աջ ու ձախ։

Գիշերը բաժանեց կռուողներին։ Առաւօտեան զօրքի կողմից սպարապետ ճանաչուած Կալէդը ցոյց տուաւ, որ քաջութեան չափ զգուշութիւն էլ ունէր։ Ճարտար ու ոլոր մոլոր պտոյտներով այնքան կողմերից յերևան հանեց իւր զօրքը, որ թշնամին խաբուեցաւ դրա թուի մասին և կարծեց թէ Կալէդը մեծ օգնութիւն է ստացել։ Ուստի նրա առաջին իսկ յարձակումից թշնամին նահանջեց, և շուտով այդ նահանջը մի կորստաբեր և արիւնահեղ փախուստ դարձաւ։

Այնուհետև Կալէդը թշնամու բանակը կողոպտեց և բազմաթիւ աւար առաւ։ Պատերազմի դաշտում ընկած զինուորների մէջ գտան նաև Զաֆարի վէրքերով լի դիակը, որոնք սակայն բոլորն էլ առջևից էին։ 'Ի պատիւ նրա քաջութեան և ազգակցութեան մարգարէի հետ՝ Կալէդը թոյլ չտուաւ թաղել նրան կռուի դաշտում, այլ հրամայեց Մէդինա տանել փառաւոր կերպով գերեզմանի յանձնելու համար։

Թէև բանակը ճոխ աւարով բեռնաւորուած վերադարձաւ Մէդինա, բայց նրա մուտքն աւելի յուղարկաւորութեան նման էր, քան յաղթական հանդէսի։ Նրան ցոյց տրուած ընդունելութեան մէջ ցըն-

ծութիւնն ու թախծութիւնը իրար հետ խառն էին։ Մի կողմից ժողովուրդն ուրախանում էր իւր զէնքերի յաղթութեան վրայ, միւս կողմից՝ սիրելի զօրավարների կորուստն ողբում։ Ամենքն էլ այժմ արտասվում էին Ջաֆարին, որի յօշատուած դիակն էր տեսնում Մէդինան, որտեղից նա փոքր ինչ առաջ մեկնել էր արիական դեղեցկութեան բոլոր շքով՝ հրապուրելի ամենքին։ Նա թողել էր մի սիրուն կին և մի որդեակ։ Դրանց վշտից Մահմեդի սիրտը խշխշաց. նա գրկեց մանկան և արտասուքով գլուխը թրջեց։ Սակայն և՛ս աւելի յուզուեցաւ նա, երբոր հաւատարիմ Սէիդի մատաղ աղջկան իւր մօտ բերին։ Մահմեդը փարուեցաւ նրա վզով և անբարբառ լաց եղաւ։ Աշակերտներից մէկը զարմանք յայտնեց, թէ ինչո՞ւ է նա արտասուք թափում մի այնպիսի մահուան վրայ, որ նոյն իսկ Կուրանի ասելով ուղղակի արքայութիւն պիտի տանէր։ «Ո՜խ,» հառաչեց մարգարէն, «սրանք բարեկամութեան արտասուք են՝ բարեկամի մահուան նուիրուած։»

Ջաֆարի յուղարկաւորութեան հանդէսը բանակի վերադառնալու երրորդ օրը կատարուեցաւ։ Մահմեդն արդէն տիրացել էր ինքն իրեն և վերստին մարգարէ դարձել։ Նա մեղմիւ յանդիմանեց ժողովրդի բարձրագոչ հեծութիւնն և այդ առթիւ հրաչակեց իւր հաւատի այն ուսմունքը, որ ամենաքաղաքականն է և ամենասփոփիչը։

«Բաւական է, էլ մի՛ ողբաք եղբօրս մահը», ասաց նա։ «Փոխանակ երկու ձեռի, որոնցով նա պաշտպանում էր հաւատի դրօշը, նա ստացաւ երկու թև և վերասլացաւ արքայութիւն՝ այն անվերջ հեշտու-

թիւնները վայելելու, որոնք վերապահուած են պատերազմում ընկնող նահատակներին»։

Այդ վտանգաւոր պատերազմում Կալէդի ցոյց տուած քաջութեան և խոհեմութեան համար Մահմեդը տուաւ նրան «Ալլահի սուր» պատուանունը, որով էլ նա հռչակուեցաւ վերջերը։

ԻԹ.

*Մահմեդի դիտումները Մէկկայի նկատմամբ։—Աբու Սոֆիանի դեսպանութիւնը։—Դրա հետեւանքը։*

Մահմեդը թէ իւր զէնքի և թէ լեզուի զօրութեամբ արդէն տիրացել էր արաբական ցեղերի մեծ մասին։ Նրա իշխանութեան հնազանդ էին այժմ հազար ու հազար զինուորներ՝ սով ու ծարաւի, խորշակ ու տապի սովորած անապատի զաւակներ, որոնց համար պատերազմը մի զբօսանք էր, քան աշխատանք։ Նա զսպել էր այդ մարդկանց ամեհի բարքը, ուղղել էր քաջութիւնն և բոլորին հնազանդութեան վարժեցրել։ Բազմաթիւ յաղթանակներով քաջալերուած, այժմ նրանք վստահութիւն ունէին իրենց անձի և պետի վրայ, որի դրօշին պատրաստ էին հետեւել զինուորի անպայման հլութեամբ և աշակերտի կոյր ֆանատիկոսութեամբ։

Այդպիսի իշխանութիւն ձեռք բերելուց յետոյ Մահմեդը մի մեծ ձեռնարկութեան միտք յղացաւ։ Մէկկան՝ նրա ծննդեան քաղաքը, նրա տոհմի հինաւուրց օրօրանը, նրա երջանիկ տարիների ասպարէզը, տակաւին իւր ոխերիմ թշնամիների ձեռքումն էր։

Քեաբեն՝ այդ Իսմայէլեան ամբողջ ազգի կրօնական սիրոյ և երկրպագութեան առարկան, նրա ամենահին սստուածպաշտութեան տաճարը, այժմ էլ դեռ պղծւում էր կռապաշտութեան նշաններով ու ձեւերով։

Հաստատել կրօնի դրօշը Մէկկայի նուիրական պարսպի վրայ, մաքրել ապականութիւնից սուրբ տաճարը, վերականգնել նրան միակ ճշմարիտ Աստուծու հոգևոր պաշտաման համար և անել Իսլամութեան միաւորիչ կենդրոնավայր—այս էր այժմ Մահմեդի փառասիրութեան գլխաւոր նպատակը։

Կորէյշների հետ կնքուած դաշինքը արգելում էր որ և է պատերազմ սկսել նրանց դէմ. սակայն մի քանի թեթև ընդհարումներ ու մասնաւոր կռիւներ առիթ էին տալիս մեղադրելու նրանց, թէ հաշտութեան պայմանագրի յօդուածները բռնաբարել են։

Կորէյշացիք սովորել էին արդէն երկիւղով յարգել Մահմեդի արագ աճող զօրութիւնն և պատրաստ էին քաւել և կամ թէ արդարացնել մի քանի թեթևամիտ անհատների վէճերն ու յանցանքը։ Նրանք մինչև անգամ դրդեցին իրենց Աբու Սոֆիան առաջնորդին իբրև հաշտարար դեսպան գնալ Մէդինա, յուսալով թէ նա իւր Օմմ Հաբիբա դստեր միջնորդութեամբ գէթ փոքր ինչ կ'ազդէ մարգարէի վրայ։

Ծանր փորձութիւն էր այդ գոռոզ պարագլխի համար գրեթէ իբրև աղաչաւոր գնալ մի մարդու մօտ, որին նա խաբեբայ էր համբաւել և ոխերիմ ատելութեամբ հալածել. բայց նրա ամբարտաւան ոգուն վիճակուեցաւ և՛ս աւելի նուաստանալ, երբ որ պատերազմելու ծածուկ փափագ ունեցող Մահմեդը, այդ դեսպանութիւնը հակառակորդների թուլութեան նը-

շան համարելով, նրան պատասխանի անգամ արժանի չարաւ։

Իւր զայրոյթը ճնշելով, Աբու Սոֆիանը դիմեց Աբու Բեկրի, Օմարի և Ալիի բարեխօսութեան. սակայն երեքն էլ յանդիմանեցին ու մերժեցին նրան, որովհետև տեղեակ էին Մահմեդի ծածուկ խորհրդին։ Այնուհետև ջանաց գրաւել Մահմեդի դստեր և Ալիի Ֆաթմա կնոջ կարեկցութիւնը, և նրա մայրենի հըպարտութիւնը փաղաքշելով աղաչեց, որ գոնէ նրա վեցամեայ Հասան որդին միջնորդ լինի իւր համար։ Բայց Ֆաթման գոռոզ գոռոզ պատասխան տուաւ. «Որդիս դեռ այնքան մեծ չէ, որ կարողանար միջնորդ լինել. վերջապէս և ոչ մի միջնորդութիւն չէ կարող Աստուծու մարգարէի կամքն ընկճել։»

Նոյն իսկ Աբու Սոֆիանի Օմմ Հաբիբա աղջիկը, որ Մահմեդի կինն էր և որի ազդեցութիւնից նա շատ բան էր սպասում, չարաչար վիրաւորեց նրան, որովհետև երբ նա ուզում էր աղջկայ տանը մի փսիաթի վրայ նստել, աղջիկը շտապով վերցրեց դրան և գոչեց. «Սա Աստուծու մարգարէի անկողինն է և այնքան սուրբ, որ կռապաշտ մարդուն չէ կարելի վրան նստել։»

Անարգութեան բաժակը լցուեցաւ, և Աբու Սոֆիանը դառնութեամբ անիծեց իւր աղջկան։ Յետոյ նորից գնաց Ալիի մօտ, աղերսելով մի որ է խորհուրդ տալ այս յուսահատ դրութեան մէջ ։

«Ես չեմ կարող ուրիշ խորհուրդ տալ», ասաց Ալին, «բայց միայն այս, որ դու, որպէս Կորէյշների պարագլուխ, դաշինքը հաստատ պահելու երդումդ կրկնես, և ապա թէ վերադառնաս դէպի տուն»։

«Մի՞ թէ կարծում ես, թէ իմ երդումը որ և է օգուտ կ'ունենայ»։

«Չեմ կարծում», պատասխանեց Ալին ցրտութեամբ. «բայց չգիտեմ էլ, թէ ինչ կըլինի, եթէ այդպէս չանես»։

Այդ խորհրդին հետևելով Աբու Սոֆիանը գնաց մզկիթ և հանդիսաբար յայտնեց Կորէյշների անունամբ, թէ հաշտութեան դաշինքն անխախտ կը պահուի. ապա թէ իւր դեսպանութեան կիսատ ելքից սաստիկ վհատուած՝ վերադարձաւ դէպի Մէկկա։ Այնտեղ Կորէյշացիք ծաղրեցին նրան, ասելով թէ նրա հաշտարար զեկուցումը ոչինչ է՝ քանի որ Մահմեդի հաւանութիւնը չկար։

Լ.

Ցեղակարծ յարձակումը Մէկկայի վրայ եւ առումը։

Մահմեդը սկսաւ ծածուկ պատրաստուիլ Մէկկան յանկարծ առնելու համար։ Նա ամեն կողմից Մէդինա կանչեց իւր դաշնակիցներին, սակայն առանց իմացնելու, թէ ինչու է կանչում։ Մէդինա տանող բոլոր ճանապարհները փակուեցան, որպէս զի իւր շարժումների մասին Կորէյշացիք բան չիմանան։ Չընայելով այդ ամեն զգուշութիւններին՝ քիչ մնաց որ գաղտնիքը բացուէր։ Մահմեդի հետ Մէկկայից փախած աշակերտների թւում Հաթէբ անունով մի մարդ կար, որի ընտանիքը տանն էր մնացել՝ անխնամ և անոք։ Այժմ նա մտածեց, որ եթէ Մահմեդի գաղտնիքը Կորէյշներին մատնէ, նրանք անշուշտ օգնութիւն կըհասցնեն իւր ընտանիքին։ Այս հաշուով նա

Մահմեդի ձեռնարկութիւնք մերկացնող մի գիր գրեց և յանձնեց Սառա անունով երգչուհուն, որ մի Հաշէմեան սարկուհի էր, և սա խոստացաւ Մէկկա հասցնել նամակը։

Սառան արդէն ճանապարհ էր ընկել, երբ դաւաճանութեան լուրը Մահմեդին հասաւ։ Իսկոյն Ալին պատուէր ընդունեց հինգ քաջազէն ձիաւորներով հետամուտ լինել երգչուհուն։ Նրան շուտով բռնեցին, բայց վրան բան չգտան։ Ձիաւորներն արդէն ուզում էին դադարեցնել խուզարկութիւնն և յետ գնալ. սակայն Ալին համոզուած էր, թէ Ալլահի մարգարէն ոչ սխալուել կարող է, ոչ էլ խաբուել։ Նա սուրը քաշեց և երդում արաւ կտրել կնոջ գլուխը, եթէ նամակը ցոյց չտայ։ Սաստն ազդեց։ Կինը մազերի միջից հանեց նամակը։

Երբոր Հաթէբի դաւաճանութիւնն երեսին տուին, նա չուրացաւ իւր յանցանքը, միայն թէ ուզեց արդարանալ իւր թշուառ ընտանիքին օգնութիւն տալու փափագով։ «Ես վստահ եմ,» ասաց նա, «որ նամակը բնաւ չէր կարող Աստուծու մարգարէին վնասել և Նրա խորհրդի կատարումը խափանել։» Օմարը մերժեց այդ պատճառանքն և ուզում էր Նրա գլուխը թռցնել։ Սակայն Մահմեդը յիշեց, որ Հաթէբը քաջօրէն կռուել էր հաւատի համար Բեդէրի պատերազմում, և ներեց Նրան։

Մարգարէն տասն հազար զինուորով ձեռնամուխ եղաւ այս կարևոր արշաւանքին։ Օմարը, որին յանձնուած էր կարգադրել չուն և իջևանների տեղը որոշել, լեռնային ծածուկ անցքներով յառաջ տարաւ զօրքն և արգելեց փող և կամ ուրիշ գործիք հնչեց-

նել, որպէս զի թշնամին նրա շարժմունքը չիմանայ։ Ճա՛ սպարհին Մահմեդի հետ միացաւ իւր Ալ Աբբաս հ... լբայրը, որ եկել էր Մէկկայից հաւատի դրօշի տակ մտնելու համար։ Մահմեդը սիրով ընդունեց նրան, թէև զանց չարաւ նրա ուշանալուն վրայ ակնարկել։ «Դու եկաւորների վերջինն ես, ինչպէս որ ես՝ մարգարէների վերջինը», ասաց նա։ Ալ Աբբասը Մէդինա ուղարկեց իւր ընտանիքն, իսկ ինքը մնաց Մահմեդի մօտ։

Զօրքը մտաւ, առանց թշնամու աչքին հանդիպելու, Մար Ազահրանի հովիտը, որ սուրբ քաղաքից հեռու չէ։ Գիշերն արդէն վրայ էր հասել, երբոր նրանք լուիկ լուիկ վրաններ զարկին, և ապա թէ Օմարը թոյլ տուաւ, որ առաջին անգամ գիշերապահ խարոյկներ վառեն։

Ալ Աբբասը թէև սրտանց էր մտել մարգարէի դրօշի տակ, բայց ցաւում էր, որ իւր եղբօրորդին այդպիսի ահեղ զօրքով և այդպիսի թշնամական մըտքերով է Մէկկայի վրայ արշաւում. Նա վախենում էր, որ Կորէյշացիք բոլորն էլ սրամահ կըլինին, եթէ ժամ առաջ յանձն չառնեն անձնատուր լինել։ Գիշերուայ մթնով նա հեծաւ Մահմեդի Փադդա կոչուած սպիտակ ջորին և դիտելու գնաց։ Բանակի շուրջը պտտելիս՝ մարդկային քայլեր ու ձայներ լսեց։ Լըրտեսների վաշտը քաղաքի մօտերքում բռնած երկու գերի էր բերել. Ալ Աբբասը մօտեցաւ և տեսաւ, որ գերիներից մէկն Աբու Սոֆիանն է, իսկ միւսը նրա գնդապետը։ Նրանց տարան Օմարի խարոյկի մօտ։

Օմարը ճանաչեց Աբու Սոֆիանին կրակի լուսով, և գոչեց. «Փա՜ռք Աստուծու, որ այդպիսի թշնամի

ունիմ ձեռքիս տակ, այն էլ առանց պայմանի»։ Նրա միշտ պատրաստի սուրը թերևս օրհասական մեկնութիւն տար այդ խօսքերին, եթէ յառաջ չնետուէր Ալ Աբբասն և հովանի չլինէր Աբու Սոֆիանին՝ մինչև որ մարգարէի կամքն իմացուէր։

Օմարը վազեց այդ կամքն իմանալու, կամ լաւ ևս ասել՝ գերիի մահը պահանջելու. բայց Ալ Աբբասն իւր թամբի ետև նստացրեց գերուն և մտրակելով իւր ջորին՝ առաջինը հասաւ մարգարէի վրանի առջև, մինչդեռ Օմարը փոքր ինչ յետոյ ժամանեց, բարձրաձայն պահանջելով Աբու Սոֆիանի գլուխը։

Այսպէս ուրեմն Մահմեդը իւր ձեռքն ընկած տեսաւ այն կամակոր թշնամուն, որ արտաքսել էր նրան հայրենի տանից ու երկրից և հալածել նրա ընտանիքն ու ընկերներին. սակայն և այնպէս նա գթութիւն զգաց, որովհետև այդ թշնամին իւր Օմմ Հաբիբա կնոջ հայրն էր։ Նա մինչև առաւօտ յետաձգեց իւր վճիռն և Ալ Աբբասի հսկողութեան յանձնեց բռնուածին։

Երբ կալանաւորը միւս օր նրա մօտ բերուեցաւ, —«Դէհ, Աբու Սոֆիան,» գոչեց նա, «արդեօք ժամանակ չէ՞ գիտենալու, որ բացի Աստուծուց Աստուած չկայ։»

«Այդ ես վաղուց գիտէի,» պատասխանեց Աբու Սոֆիանը։

«Շատ լաւ. ժամանակ էլ չէ՞ արդեօք, որ դու ինձ Աստուծու առաքեալ ճանաչէիր։»

«Դու ինձ համար հօրս ու մօրից աւելի թանգ ես,» պատասխանեց Աբու Սոֆիանն արևելեան եղա-

նակով, «բայց ես դեռ պատրաստուած չեմ քեզ մարգարէ դաւանելու։»

«Ամօթ երեսիդ,» որոտաց Օմարն. «այս րոպէիս ճշմարտութիւնն ընդունիր, եթէ ոչ՝ իսկոյն և եթ գլուխդ կը փրցնեմ։»

Այդ սպառնալիքին յաջորդեց Ալ Աբբասի աղաչանքը, որ նեղուած Աբու Սոֆիանի ճշմարիտ բարեկամը հանդիսացաւ։ Աբու Սոֆիանի սրտի ոխն արդէն զիջել էր Մահմեդի անակնկալ մեղմութեամբ, և նա վերջապէս ստիպուած եղաւ դաւանել մարգարէի առաքելութիւնը, մի նոր լուսաբանութիւն տալով Իսլամի այն սկզբունքին, թէ «Կամակոր անհաւատներին համոզելու համար սրից ազդու փաստ չկայ։»

Այս կերպով նոր հաւատն ընդունելուց յետոյ՝ Աբու Սոֆիանը ձեռնտու պայմաններ ստացաւ Մեկկայի բնակիչների համար, եթէ նրանք հնազանդութիւն ցոյց տային։ Պայմանների զօրութեամբ՝ ոչ մի վնաս չպիտի հասնէր այն մարդկանց, որոնք հանգիստ տանը նստած կըմնային և կամ Աբու Սոֆիանի և Հաքիմի հարկին կ'ապաւինէին և կամ թէ Աբու Ռաւայի դրօշակի տակ կըմտնէին։

Աբու Սոֆիանին մի պատշաճաւոր գաղափար տալու համար Մեկկային սպառնացող զօրութեան մասին՝ նրան կանգնեցրին Ալ Աբբասի հետ մի կիրճի մէջ, որով ամբողջ բանակը պիտի անցնէր։ Մինչդեռ անցնում էին զանազան արաբական ցեղերն իրենց տարբեր դրօշակներով ու զէնքերով, Ալ Աբբասը հաղորդում էր նրան իւրաքանչիւրի անունն ու բնագաւառը։ Աբու Սոֆիանն ապշած մնաց գնդերի բա-

գմութիւնը, կարգապահութիւնն ու սպառազինութիւնը տեսնելիս, որովհետև մուսլէմները շատ շատ էին յառաջ գնացել պատերազմական արուեստի մէջ. բայց երբոր մօտեցաւ ինքն Մահմեդը՝ Թիկնապահների գրահավառ և ընտիր գնդով շրջապատուած, որոնց զէնքերը շողշողում էին արևի լուսին, Աբու Սոֆիանի հիացման չափն անցաւ։

«Դրան դիմադրելու հնար չկայ,» գոչեց նա Ալ Աբբասին երդուելով. «արդարև եղբօրորդիդ սարսափելի ոյժ ունի։»

«Իրաւ ես ասում,» պատասխանեց Ալ Աբբասը. «ուրեմն գնա շտապիր փրկել ազգդ վտանգից և ընդգուշացուր, որ Աստուծու՝ առաքեալին չընդդիմանան։»

Աբու Սոֆիանն աճապարեց Մէկկա գնալ և հաւաքելով բնակիչներին, զեկուցումն տուաւ Մահմեդի առաջնորդած սոսկալի բանակի մասին, հաղորդեց 'ի դէպս հնազանդութեան առաջարկուած Նպաստաւոր պայմաններն և կցեց, թէ հակառակութիւն ցոյց տալն ամենևին զուր կլինէր։ Որովհետև Աբու Սոֆիանը Մահմեդի անձնաւորութեան և ուսման թշնամիների ոգին էր, Նրա խօսքերն անմիջապէս դրդեցին համակերպուիլ հանգամանքին, որից դուրս գալու հնար չկար։ Ուստի բնակիչների մեծ մասը որոշեց առանց դիմադրութեան ականատես լինել Մահմեդի մուտքին։

Այն ինչ Մահմեդը, որ քաղաքին մօտենալիս դեռ չգիտէր, թէ ինչ ընդունելութիւն կը գտնէ, ամենայն զգուշութեամբ իւր գնդերը բաժանեց։ Նրա հրամանով բանակի բունն ուղղակի յառաջ դիմեց, իսկ թևերն երկու կողմի բլուրներով սկսան իջ-

նել։ Ալին, մի ստուար հեծելագնդի գլուխ անցած, տանում էր սուրբ դրօշակը, որ պիտի վարսէր Հաջուն կոչուած սարի վրայ և սպասէր մարգարէին։ Բոլոր զօրավարները որոշ հրաման ստացան զիջողութիւն գործ դնելու և ոչ մի դէպքում նախայարձակ չլինելու. որովհետև Մահմեդի ջերմ ցանկութիւնն էր՝ քաղցրութեամբ նուաճել Մէկկան, և ոչ թէ բռնի զօրութեամբ։ Դիմադրողները հարկաւ պիտի սրամահ լինէին, բայց հեզութեամբ հնազանդողներին ոչ մի վնաս չըպիտի հասնէր։ Երբոր զօրավարներից մէկը, բուռն եռանդով ոգևորուած, գոչում էր, թէ «կռուի օրը ոչ մի վայր սրբազան չէ», մարգարէն իսկոյն մի աւելի հանդարտ զօրավար նշանակեց նրա տեղ։

Զօրքի գլխաւոր մասն անխափան յառաջ դիմեց։ Ծիրանի թիկնոց հագած և իւր սիրելի Ալ Կասվա ուղտը հեծած Մահմեդը գտնվում էր վերջապահ գնդում։ Նա ծանր էր յառաջ գնում, որովհետև իւր շուրջն հաւաքուած ահագին բազմութիւնը արգելք էր լինում ընթացքին։ Հաջուն սարի վրայ, ուր Ալին արդէն պարզել էր հաւատի դրօշը, նրա համար մի վրան էր պատրաստուած։ Այն տեղ նա վայր իջաւ և կարմիր թիկնոցը հանելով մի սև չալմա և ուխտաւորի զգեստ հագաւ։ Սակայն հովտի վրայ մի ակնարկ ձգելուն պէս՝ սոսկալով տեսաւ, որ սրեր ու տէգեր են փայլակում և ձախ թևի հրամանատար Խալէդը մի կատաղի ջարդ է տալիս։ Կորէյշների մէկ վաշտը նետերի տարափով էր ընդունել Խալէդի նորահաւատ արաբներից բաղկացած այրուձին. կրակոտ զօրավարը, այդ բանի վրայ զայրացած, սուր ու տէգով նետուել էր նրանց խռան մէջ. իւր գունդն էլ՝ ետևից։

Նրանք փախցրել էին Թշնամուն, խուժել էին դըռ-
ների մէջ և պատրաստ էին սրի մատնել քաղաքը,
եթէ Մահմեդն արագ հրամանով կոտորածի առաջը
չառնէր։

Արիւնհեղութեանը վերջ տալուց յետոյ մարգա-
րէն սարից իջաւ և ուղտ հեծած մտեցաւ քաղաքի
դուռն, ուղեկցութեամբ Աբու Բեկրի, որ գնում էր
նրա աջ կողմից, և Օսման իբն Սէիդի, որ գնում էր
ձախ կողմից։ Արեգակը նոր էր ծագել, երբ նա իւր
ծննդեան քաղաքը մտաւ աշխարհակալի փառաւոր
շքով և ուխտաւորի հագուստով ու հեզութեամբ։
Ներս մտնելիս կրկնում էր Կուրանի այն տուները,
որոնք իւր ասելով դեռ Մէդինայումն էին յայտ-
նուած, և ներկայ դէպքի աւետիքն էին ամփոփում։
Նա հոգեպէս բերկրում էր ոչ թէ իբրև մի զօրական,
այլ իբրև կրօնաւոր։ «Աստուծուն են պատկանում,»
ասում էր, «երկնային և երկրային զօրութիւնները,
և Աստուած հզօր ու գերիմաստ է։ Այժմ նա կատա-
րեց, ինչոր աւետել էր իւր առաքեալին տեսիլքով,
թէ—Արդարև դու կատարեալ ապահովութեամբ Մէկ-
կայի սուրբ տաճարը կըմտնես։»

Առանց ուղտից իջնելու՝ Մահմեդը ուղիղ դի-
մեց դէպի Քեաբէն՝ իւր նախկին բարեպաշտութեան
սրբավայրը, նահապետների օրից սրբագործուած ա-
ղօթարանը, որ միակ ճշմարիտ Աստուծու առաջին
տաճարն էր համարում։ Այն տեղ նա եօթ անգամ
թափօր կատարեց նուիրական տան շուրջը,—որ կրօ-
նական մաքրութեան հին օրերից մնացած մի պատ-
կառելի արարողութիւն էր,—և նոյն ջերմեռանդ ըզ-
գացմունքով եօթն անգամ շօշափեց սև քարը, որ

նմանապէս մի սուրբ բան էր իւր համար։ Երբ ուզում էր Քեաբէ մտնել, Ծերունի Օսման իբն Թալհա պահապանը դռները փակեց։ Ալին խլեց նրա ձեռից բանալին, բայց Մահմեդը հրամայեց յետ տալ յարգելի Ծերունուն, և այս բարութեամբ այնպէս գրաւեց նրա սիրտը, որ Ծերունին ոչ միայն դուռը բաց արաւ, այլ և իսկոյն Իսլամ ընդունեց, որի համար և իւր պաշտօնի մէջ մնաց։

Այնուհետև Մահմեդը ձեռք զարկաւ իւր գըլխաւոր կրօնական փափագի իրագործմանը, որ էր մաքրել սուրբ տաճարը կռապաշտութեան նշաններից։ Նա հրամայեց կործանել ու ջախջախել տարուայ օրերի թուով տաճարի մէջն ու շուրջն եղած բոլոր երեք հարիւր վաթսուն կուռքերը։ Այդ կուռքերից գլխաւորը Հոբալն էր, որ բերուած էր Ասորիքի Բալկայից, և առասպելի ասելով՝ երկնքից անձրև իջեցնելու զօրութիւն ունէր. դրա համար էլ շատ էր պաշտուած անջրդի անապատի բնակիչներից։ Այն տեղ կային և Աբրահամի ու Իսմայէլի անդրիները՝ երկուսն էլ հմայական սլաքներ բռնած։ «Այդ նախատինք է նրանց յիշատակին», ասաց Մահմեդը. «այդ դիւային նշանները նրանք երբէք չեն գործածել»։ Նրանց յիշատակը յարգելու համար՝ այդ կուռքերն էլ քանդուեցան։ Որմերի վրայ նկարուած էին սիրուն սիրուն կանանց նման հրեշտակներ։ «Հրեշտակներն այդպիսի էակներ չեն,» ասաց Մահմեդը բարկութեամբ։ «Արքայութեան մէջ կան երկնային հուրիներ՝ բարեպաշտների սփոփանքի համար որոշուած. սակայն հրեշտակները հուրիներ չեն, այլ Բարձրելոյն սպասաւորող ոգիներ, և բնութեամբ այն-

քան մաքուր, որ մինչև անգամ սեռ չունին։» Ուստի այդ պատկերներն էլ ջնջուեցան։

Մահմեդն իւր ձեռքով կոտրտեց և դէն ձգեց նոյն իսկ արուեստապէս փայտից կերտուած աղաւնին, որովհետև դա էլ կռապաշտութեան յիշատակ էր։

Քեաբէից յետոյ Մահմեդը գնաց Զէմ Զէմ ջրհորի մօտ։ Նա սուրբ էր համարում դրան, որովհետև հաւատացած էր, թէ ա՛յն իսկ ջրհորն է, որ յայտնուած էր հրեշտակի ձեռքով Հագարին և Իսմայէլին, երբոր նրանք տոչորվում էին ծարաւից։ Ուստի ջրհորի վերաբերեալ ծէսերն էլ իւր հաւատի մէջ մտցրեց։ Ջրհորի մօտ մարգարէի Ալ Աբբաս հօրեղբայրը մի բաժակ ջուր մատոյց նրան, որպէս զի խմէ և սովորական լուացումն անէ։ 'Ի յիշատակ այդ բարի գործի՝ մարգարէն բաժակի պահապան կարգեց հօրեղբօրը,—մի նուիրական պաշտօն, որ մինչև այս օրս նրա սերնդի մէջ է մնում։

Կէսօրին Մահմեդի հրամանով մի աշակերտ Քեաբէի կտրից աղօթքի կանչեց ժողովրդին, և այն օրից 'ի վեր սովորութիւն դարձաւ մինարէների գագաթից աղօթքի հրաւէր հնչեցնել Իսլամական երկիրներում։ Նոյն միջոցին նա հաստատեց և քէբլան, դէպի որ ամեն մուսլէմ, աշխարհիս ո՛ր կողմն էլ գտնուէր, պարտաւոր է երեսն ուղղել աղօթք անելու ժամանակ։

Այնուհետև քարոզ ասաց ժողովրդին և իւր հաւատի էական մասերը բացատրելով աւելացրեց, թէ հաւատի յաղթանակը մարգարէական աւետումների լրումն է։ Բազմութիւնն աղաղակեց. «Ալլահ Աքբա՛ր։

Մեծ է Աստուած։ Չկայ Աստուած բացի Աստուծուց, և Մահմեդը Նրա մարգարէն է»։

Կրօնական ծէսերն աւարտելուց յետոյ Մահմեդը բարձրացաւ Ալ Սաֆա բլուրը, ուր Մէկկայի բոլոր բնակիչները, արք և կանայք, Նրա առջևից անցան և կռապաշտութիւնից հրաժարուելով հաւատարմութիւն երդուեցան նրան, որպէս Աստուծու մարգարէի։ Այդ հանդէսով արդարանում էր Կուրանի մէկ յայտնութիւնը, որ ասում է. «Աստուած ուղարկել է իւր առաքեալին ճշմարտութեան հաւատով, որպէս զի միւս ամեն հաւատներից վեր բարձրացնէ նրան։ Արդարև, նրան հաւատարմութիւն երդուողներն Աստուծուն հաւատարմութիւն երդուած կըլինին, և Աստուծու աջը նրանց աջի վրայ կըլինի»։ Սակայն Մահմեդն այդ յաղթանակի միջոցին անգամ մերժելով մերժեց իւր անձին նուիրուած յարգանքներն և արքայական իշխանութեան պատիւները։ «Ինչու ես դողում», հարցրեց նա մի մարդու, որ ահ ու դողով էր մօտենում իրեն։ «Ումնից ես այդպէս վախենում, Ես թագաւոր չեմ, այլ մի ապուխտ ուտող Կորէյշացի կնոջ որդի։»

Աչքի էր ընկնում և Նրա մեղմութիւնը։ Երբեմն գոռոզ Կորէյշացի աւագները կոր 'ի գլուխ ներկայացան այն մարդուն, որին միշտ հալածել էին,— կոր 'ի գլուխ, որովհետև Նրա ձեռին էր այժմ իրենց կեանքը։

«Ի՞նչ կարող էք սպասել ինձնից», հարցրեց նա խստութեամբ։։

«Գթութիւն, ով վեհանձն եղբայր։ Գթութիւն, վեհանձն տոհմի շառաւիղ։»

«Թող այդպէս լինի,» գոչեց Մահմեդն արհա-

մարութեան ու կարեկցութեան խառն զգացմունքով․ «Գնացէք կորէք․ Ազատ էք․»

Մահմեդի աքսորակից աշակերտներից ոմանք իրենց արիւնասէր վրէժխնդրութեան յոյսերը դերեւած տեսնելով, տրտնջում էին նրա մեղմութիւնից. բայց նա գթասէր մնաց և մինչև յարութեան օրն անբռնահարելի պատսպարան հռչակեց Մէկկան։ Սակայն ներկայ առթիւ և յատկապէս այդ օրուայ համար վերապահեց իրեն մի քանի չարագործ և արդէն դատապարտուած քաղաքացիք պատուհասելու իրաւունքը։ Բայց վերջ 'ի վերջոյ դրանք անգամ մեծ մասով ներուեցան։

Երդուելու համար ներկայացած Կորէյշեան կանանց դասում Մահմեդը ճանաչեց Աբու Սոֆիանի Հէնդա ամուսնուն՝ այն կատաղի կնոջը, որ գրգռել էր անհաւատներին Օհոդի պատերազմում և Համզայի սիրտը կրծել իւր հօր մահուան վրիժու։ Այժմ նա հագուստը փոխել էր անճանաչելի մնալու համար. բայց մարգարէի աչքն իւր վրայ շեշտուած տեսնելով, նրա ոտքն ընկաւ ու գոչեց․ «Ես Հէնդան եմ. ներիր, ներիր.» Մահմեդը ներեց, և այդ գթութեան փոխարէն՝ ապերախտ կինը սկսաւ յետոյ չարաչար ծաղրել նրա ուսմունքը։

Միւս պատժելին Համզային սպանող եթովպացի Վաքսան էր։ Նա փախել էր զօրքի Մէկկա մտնելու միջոցին և յետոյ մարգարէի մօտ գալով՝ նոր հաւատն ընդունել։ Նրան էլ Մահմեդը թողութիւն շնորհեց և Համզայի մահուան հանգամանքները պատմել տալուց յետոյ՝ արձակեց, սակայն հրամայելով, որ այլ եւս աչքին չերևնայ։ Համզան ապրեց մինչև

Օմարի խալիֆութիւնը, որի օրով շատ անգամ արբեցութեան համար ծեծ կերաւ։

Երրորդ պատժելին էր Աբդալլահ իբն Սաադ Կարէյշացի երիտասարդը՝ իւր սուր խելքով, զուարթ բարքով և զինուորական արիութեամբ անուանի։ Աբդալլահի գեղեցիկ գրութեան համար Մահմեդը սովոր էր թելադրել նրան Կուրանի նորայայտ տուները։ Սակայն գրելիս Աբդալլահը ստէպ փոխում էր բնաբանն և կամ ուղղում. նկատուած էր, որ երբեմն անհոգութեամբ կամ գիտութեամբ այնպէս էր նենգում մարգարէի խօսքերը, որ բոլորովին անշնորհ բան էր դուրս գալիս։ Եւ այդ իւրաստեղծ խանգարումներն ու յաւելուածները մինչև անգամ ծաղր ու ծանակի նիւթ էր անում ընկերների շրջանում, ասելով որ—եթէ Կուրանը Մահմեդի մարգարէութեան ապացոյց է, ուրեմն ինքն էլ գոնէ կէս մարգարէ պիտի համարուի։ Այդ զեղծումներն որ բացուեցան, նա Մահմեդի զայրոյթից փախչելով Մէկկա գնաց և նորից կռապաշտութեան մէջ ընկաւ։ Քաղաքի առման ժամանակ նրա կաթնեղբայրն իւր տանը թաքցրեց նրան և աղմուկը հանդարտուելուց յետոյ մարգարէի մօտ տարաւ, խնդրելով որ ներէ յանցաւորին։ Մահմեդի ներողամտութիւնը դեռ երբէք այդպիսի դժուար փորձութեան չէր ենթարկուած։ Յանցաւորը այն մարդն էր, որ մատնել էր նրա հաւատարմութիւնը, որ ծաղրել էր նրան, որ կասկածելի էր արել նրա առաքելական կոչումն և նոյն իսկ վարդապետութեան հիմքը խախտել։ Մարգարէն մի քանի ժամանակ լուռ կեցաւ խոժոռադէմ, յուսալով որ, ինչպէս յետոյ ասում էր, եռանդուն աշակերտներից մէկն

ու մէկը չարագործի գլուխը կըկտրէ։ Սակայն ոչ ոք չէր շարժվում, և նա Օսմանի աղաչանքին զիջանելով՝ վերջապէս ներեց։ Աբդալլահը նոյն րոպէին երկրորդ անգամ դարձի եկաւ և այն օրից 'ի վեր օրինակելի մուսլէմ դարձաւ։ Նրա անունը ստէպ յիշվում է խալիֆների պատմութեան մէջ։ Նա շատ կտրիճ ասպետ էր և ա՛յն աստիճան ձիասէր, որ մինչև անգամ մեռնելիս կրկնում էր, ասում են, Կուրանի հարիւրերորդ գլուխը որ «Պատերազմի նժոյգներ» է կոչւում։ Թուցէ այդ իսկ գլուխը միւսներից աւելի ենթարկուած լինէր իւր գրչի հաճոյքներին։

Պատժելիներից չորրորդն էր Աքրէմա իբն Աբու Ջահլը, որ շատ անգամ իւր հօր նման թշնամութիւն էր ցոյց տուել մարգարէին։ Մահմեդի Մէկկա մտնելու րոպէին Աքրէման մի սրարշաւ ձի նստաւ ու փախաւ, տանը թողնելով իւր սիրուն Օմմ Հաքիմ կնոջը, որի հետ նոր էր ամուսնացել։ Կինն Իսլամ ընդունեց, բայց յետոյ իմացաւ, որ իւր մարդը ծովով Եմէն փախչելիս փոթորկից յետ է մղուել դէպի նաւահանգիստը։ Այդ իմանալուն պէս Օմմա Հաքիմը մարգարէի մօտ գնաց, հերարձակ ու մերկերես նրա ոտքն ընկաւ և աղաչեց թողութիւն շնորհել իւր մարդուն։ Մարգարէն՝ թերևս աւելի կնոջ գեղեցկութեամբ, քան թէ վշտովն գորոված, քաղաքավար բարձրացրեց նրան և ասաց, թէ խնդիրն ընդունուած է։ Կինը փութաց հասնել նաւահանգիստ և գտաւ մարդուն այն իսկ րոպէին, երբ նաւը նորից մեկնելու վրայ էր։ Նրանք միասին մի ձի նստած եկան Մէկկա և Օմմ Հաքիմը մարգարէի մօտ տարաւ մարդուն, որ այժմ մի ջերմեռանդ մուսլէմ էր դարձել։ Այս անգամ

սակայն կնոջ երեսն այնպէս էր սքողուած, որ միայն սև աչքերն էին երևում։ Մահմեդը լսեց Աքրէմայի դաւանանքն և 'ի սէր անձնուէր ու գեղեցիկ կնոջ՝ Հաւազեան գնդի պետ կարգեց նրան. յետոյ երկուսին էլ ընծաներով արձակեց։ Միւս դարձի եկած թշնամիների նման՝ Աքրէնան քաջ զինուոր հանդիսացաւ հաւատի պատերազմներում և շատ անգամ իւր քաջութիւնը ցոյց տալուց յետոյ նահատակ ընկաւ կռուի դաշտում՝ սրերով յօշատուած ու տէգերով խոցոտուած։

Մէկկայի առումից յետոյ Մահմեդի բռնած բոլոր ընթացքն ապացոյց է, որ նա աւելի մի կրօնական, քան թէ զինուորական յաղթանակ էր տօնում։ Ծննդեան քաղաքը մի անգամ իւր իշխանութեան ենթարկելուց յետոյ՝ իւր սիրտը մեղմացել էր, ոխի զգացմունքը շիջել էր, և յաջողութեան հասնելով տրամադիր էր ամեն բան ներել.

Անսարները կամ Մէդինայի դաշնակիցները, որոնք օգնել էին նրան այդ արշաւանքում, այժմ սկսել էին վախենալ։ թէ դրա յաջողակ ելքը վնասակար կըլինի իրենց համար։ Նրանք տագնապով դիտում էին Մահմեդին, երբ մի օր նա, Ալ Սաֆա բլրի գլխին իւր աղօթքն աւարտելուց յետոյ, անձկութեամբ նայում էր Մէկկայի վրայ՝ իւր առաջին ճիգերի և այժմեայ փառքի ասպարէզի վրայ։ «Արդարև», գոչեց նա «դու քաղաքների պարծանքն ես և Ալլահի սիրելին։ Ես քեզ երբէք չէի թողնիլ, եթէ իմ իսկ տոհմի մարդկանց ձեռքով արտաքսուած չլինէի։» Անսարներն այդ լսելիս ասացին իրար. «Տեսէք, Մահմեդն այժմ իւր մայրենի քաղաքի տիրապետն ու իշխանն

է. անշուշտ այստեղ կըմնայ և կըթողնէ Մէդինան»։

Այդ խօսքերը Մահմեդի ականջին հասան և նա կշամբելով բացագանչեց. «Ո՛չ երբէք. Երբոր դուք հաւատարմութիւն երդուեցաք ինձ, ես ուխտեցի ձեզ հետ ապրել և մեռնել. Ես Աստուծու առաքեալ և սպասաւոր չեմ լինիլ, եթէ բաժանուիմ ձեզանից»։ Նա խոստման համեմատ վարուեցաւ, և Մէդինան, որ Մահմեդի փախստեան ապաւէնն էր, մինչև նրա մահուան օրը իւր բնակութեան կայանը մնաց։

Մահմեդը չէր ուզում շատանալ միայն նրանով, որ Քեաբէն մաքրեց և մայրենի քաղաքի կռապաշտութիւնը ջնջեց. այժմ նա սպառազէն գնդեր արձակեց՝ կործանելու կուռքերը նաև շրջակայ քաղաքներում և գիւղերում և հաւատի բերելու նրանց պաշտողներին։

Այդ գնդերին առաջնորդող զինուորական առաքեալների թւում ամենից եռանդունը Նորադարձ Խալէդն էր։ Նախլահի հովիտը հասնելուն պէս, ուր կռապաշտ Կորէյշացիք հաւաքուել էին երկրպագելու Ուզզային, նա դիցուհու անտառը մտաւ, մեհեանը քանդեց և կուռքը տապալեց։ Կուռքի տակից ճչելով ու ձեռքերը կոտելով մի հերարձակ, սև ու մերկ և այլանդակ պառաւ վըհուկ դուրս վազեց. Խալէդը նըրան սրի մէկ հարուածով երկու մասն արաւ։ Այս դէպքի մասին Մահմեդի հետ խօսելիս՝ նա դժուարանում էր հաստատ ասել, թէ արդեօք քրմուհի՞ էր այն կինը, թէ չար ոգի. «Քո սպանածը նոյն ինքն Ուզզան էր,» պատասխանեց մարգարէն։

Մի ուրիշ անգամ էլ այդպիսի արշաւանքով Թէհամի նահանգում պտտելիս՝ Խալէդն ունէր երեք

հարիւր յիսուն ձիաւոր՝ ըստ մասին Սուլէյմեան ցեղից, և մի զինուոր Աբգ՛ ալրահման անունով, որ նոր հաւատի առաջին աշակերտներից մէկն էր։ Մարգարէն նրան հրամայել էր՝ սէր ու բարեկամութիւն քարոզել, հաւատի հրաւէր կարդալ և զգուշանալ բռնութիւնից, եթէ իւր վրայ նախայարձակ չլինին։ Թէհամա տանող ճանապարհով երկու օր յառաջ խաղալուց յետոյ՝ Կալէդը պիտի անցնէր Ջաձիմեան ազգատոհմի գաւառի միջով։ Բնակիչների մեծ մասն արդէն Իսլամ դաւանող էր, միւս մասը դեռ սաբէութեան հաւատարիմ։ Մի քանի ժամանակ առաջ Կալէդի հօրեղբայրը, Աբդ՛ ալրահմանի հայրն և մի քանի Սուլիմեանք, Երջանիկ Արաբիայից վերադառնալիս, կողոպտուած ու սպանուած էին այդ տոհմի մարդկանց ձեռքով։ Այժմ նրանք Կալէդի վրէժխնդրութեան երկիւղից նրա մերձենալուն պէս զինուել էին։

Կալէդը ներքուստ ուրախացաւ, երբոր նրանք սպառազէն դուրս ելան իւր դէմ, և խրոխտաբար հարցրեց՝ մուսլէմնե՞ր են, թէ անհաւատներ։ «Մուսլէմներ ենք,» պատասխանեցին նրանք դողդոջ ձայնով։—«Ուրեմն ինչո՞ւ էք զէնք ու զրահով մեր դէմ գալիս.»—«Որովհետև չորս կողմը թշնամիներ կան, որոնք կարող են յանկարծակի մեր վրայ ընկնել։»

Կալէդը խստիւ հրամայեց նրանց վայր իջնել և զինաթափ լինել։ Ոմանք հնազանդուեցան, և նրանց իսկոյն կապեցին. միւսները փախան։ Այդ փախուտը յանցաւորութեան ապացոյց համարելով, Կալէգը սոսկալի արիւնհեղութեամբ հալածեց նրանց, ասպատակեց

Նրանց գաւառն և անզուսպ եռանդից մղուելով՝ մինչև անգամ գերիներից մի քանիսին կոտորեց։

Այդ անարդար և անագորոյն գործի լուրն առնելիս՝ Մահմեդը բազկատարած երգումն արաւ և վկայ կանչեց Ալլահին, թէ ինքն անմեղ է։ Կալէդն իւր արարքի համար յանդիմանութիւն լսելով, ուզում էր մեղքն Աբդ՛ ալլահի վրայ ձգել. բայց մարգարէն զայրուցքով մերժեց իւր հին աշակերտի պատուին դիպչող մեղադրանքը։ Վեհանձն Ալին հրաման ըստացաւ իսկոյն գնալ վերադարձնել Ջաձիմա տոհմին Կալէդի յափշտակած աւարն և դրամական տուգանք վճարել սպանուածների ընտանիքին։ Այս պատուէրն Ալիի սրտին հաճելի էր, և նա ճշգութեամբ կատարեց։ Նա մանրամասն հարց ու փորձ արաւ, թէ ով ինչ զրկանք ու վնաս էր կրել, և լիուլի հատուցումն տուաւ ամենքին։ Իւրաքանչիւրի կորուստը փոխարինելուց և բոլոր արեան գինը վճարելուց յետոյ՝ մնացած գումարը ժողովրդին բաժանեց և իւր բարութեամբ բոլոր տոհմի սիրտը շահեց։ Այսպէս Ալին մարգարէի շնորհակալութեամն ու գովասանքին արժանի եղաւ. իսկ ոխակալ Կալէդը կշտամբուեցաւ մինչև անգամ և՛ Նրանցից, որոնց ուզում էր հաճոյանալ։

«Տեսա՞ր, թէ ինչպէս հօրդ մահուան վրէժը հանեցի,» ասաց նա Աբդ՛ ալրահմանին։—«Լաւ է ասէիր, թէ հօրեղբօրդ մահուան վրէժը հանեցիր,» պատասխանեց միւսը դառնութեամբ։ «Դու պղծեցիր մեր հաւատը մի կռապաշտ մարդու վայել գործով։»

## ԼԱ.

*Լեռներում ծագած թշնամութիւնը։—Թշնամիների բանակը Ռուաթասի հովտում։—Հոնէյնի կրճի պատերազմը։—Թշնամական բանակի առումը։—Մահմեդի տեսակցութիւնն իւր դայեկի հետ։—Մահմեդը մօր գերեզմանի վրայ։*

Մինչդեռ Մահմեդի զինակիր առաքեալները դաշտերի վրայ էին հաւատ տարածում սրի սայրով, լեռների մէջ չարագուշակ փոթորիկ էր հաւաքվում։ Թակիֆեանք, Հաւազեանք, Ջօշմիթեանք, Սաադեանք և ուրիշ մի քանի լեռնաբնակ բէդուին ցեղեր դաշնակից էին եղել սանձ դնելու Արաբիայի անկախութեան սպառնացող ուժին։ Սաադեանք կամ արդէն յիշուած Բէնի Սաադեանք այն հովուական արաբներն էին, որոնց մօտ Մահմեդը սնուել էր իւր մանկութեան ժամանակ և որոնց հովտում, աւանդութեան ասելով, հրեշտակը հանել ու մաքրել էր նրա սիրտը։ Դաշնակցութեան պարագլուխ և առաջնորդ Թակիֆեանք մի հզօր ցեղ էին և լեռնանիստ Թայէֆ ամրոցի և դրա պարարտ շրջակայքի տէրերը։ Նրանք մոլեռանդ կռապաշտներ էին, և մեծահամբաւ Էլ Լաթ կուռքի բագինը իրենց բերդումն էր գտնվում։ Ընթերցողը կյիշէ հարկաւ այն խայտառակ ընդունելութիւնը, որ վիճակուեցաւ Մահմեդին, երբ նա փորձեց քարոզութիւն անել Թայէֆում. նրան հրապարակաւ քարկոծեցին և չարաչար վռնտեցին քաղաքից։ Երևի թէ Մահմեդի վրէժխնդրութեան երկիւղից էր, որ Թակիֆեանք այժմ փութացել էին դաշնադիր լինել նրա դէմ։

Նիզակակցութեան հրամանատարն էր Թակի-Ֆեանների Մալէք իբն Աուֆ տոհմապետը։ Նա հրամայել էր հաւաքուել և բանակ դնել Աութասի հովտում՝ Հոնէյնի և Թայէֆի մէջ տեղը. և գիտենալով արաբների հակումը՝ տուն փախչելու ամենաթեթև պատճառից, կարգադրել էր որ իրենց ընտանիքն ու գոյքերն էլ հետերը բերեն։ Հրամանի համեմատ՝ նրանք եկան գումարուեցան թւով իբր չորս հազար սպառազէն մարդ. սակայն բանակը լցուած էր կանանց ու մանկանց բազմութեամբ, նախիրներով, երամակներով ու հօտերով։

Մալէք իբն Աուֆի կարգադրութեան դէմ, որ արել էր զինուորների վրայ վստահութիւն ունենալու համար, սաստիկ բողոքեց Ջոշմիթների ցեղապետ Դորաիդը,—մի կմախքի պէս չոր, հարիւրամեայ, կիսակոյր և այնպէս թոյլ ծերունի, որ նրան ուղտի վրայ կապած դեսպակով էին ման ածում։ Թէև անզօր մասնակցելու կռիւներին՝ նա դեռ զօրեղ էր փորձառութեամբ խորհրդի մէջ։ Անապատների այդ ալևոր զօրականը խորհուրդ էր տալիս՝ անմիջապէս յետ ուղարկել կանանց ու մանկանց և թեթևցնել բանակը բոլոր աւելորդ բեռներից։ Նրա առաջարկութիւնը չընդունեցին, և Աութասի հովիտը շարունակեց ներկայացնել խաշնարած հովիւների մի իջևան, քան թէ ռազմի պատրաստ զօրքերի բանակ։

Մօտալուտ վտանգի առաջն առնելու համար՝ Մահմեդը չու ընկաւ տասներկու հազար զինուորով, որոնք մասամբ մէկկացի փախստականներ և մէդինացի դաշնակիցներ էին, մասամբ էլ անապատի արաբներ՝ ոմանք դեռ անհաւատ։

Դաշտ դուրս գալիս Մահմեդը սովորաբար սաղաւարտ ու զրահ էր հագնում և իւր սպիտակ՝ Դալդալ անունով ջորին հեծնում, այլ ոչ թէ նժոյգ, որովհետև սակաւ էր միջամտում բուն կռուին։ Նոր յաջողութեամբ և զօրքի առաւելութեամբ քաջալերուած՝ նա վստահ էր թեթև յաղթանակ տանելու, ուստի և առանց զգուշութեան լեռները մտաւ։ Այնտեղից դիմեց դէպի թշնամու Սութասեան բանակը և հասաւ մի խոր ու մռայլ լեռնաձոր՝ Հոնէյնի սահմանի վրայ։ Գնդերն անկարգ անցնում էին կիրճի միջով։ Յանկարծ վերևւից նետեր, տէգեր, քարեր տեղացին, և Մահմեդի գինուորներից մի քանիսն անշունչ ընկան իւր ոտքերի տակ, շատերն էլ վէրք ստացան։ Մալէքն իւր ընտիր քաջերով բռնել էր այդ նեղ անցքին տիրապետող բարձունքը. ամեն մի ժայռի գլխին և իւրաքանչիւր խորշի մէջ նստած էին աղեղնաւոր և պարսաւոր զօրականներ, ոմանք էլ վայր էին իջած բըռընցի գուպարելու։

Խուճապած մուսլէմները փախուստ տուին։ Զուր էր ճգնում Մահմեդը զսպել նրանց, որպէս զօրավար և աղերսում, իբրև մարգարէ։ Ամեն մարդ շտապում էր միայն իւր կեանքը փրկել և ահռելի ձորից ճողոպրել։

Մի վայրկեան կարելի էր ամեն բան կորած համարել, և յակամայս դարձի բերուած արաբներից շատերն արդէն սկսել էին ուրախանալ, կարծելով թէ մարգարէի բախտը փոխուել է։

«Երկինքը վկայ,» գոչեց Աբու Սոֆիանը, փախստականների ետևից նայելով։ «Ոչ մի զօրութիւն չէ կարող կանգնեցնել նրանց, մինչև որ ծովին չհասնեն»։

«Այո», կրկնեց մէկ ուրիշը, «Մահմեդի Թովչական ոյժն արդէն կորած է։»

Մէկ երրորդն էլ, որ առիթ էր պտրում մուսլէմների ձեռքով Օհոդեան կռւում սպանուած հօր վրէժը հանելու, քիչ մնաց որ ընդհանուր իրարանցման ժամանակ սրամահ անէր մարգարէին, եթէ մի քանի աշակերտներ չօգնէին և չազատէին։ Ցուսահատութեան րոպէին Մահմեդը մտրակ տուաւ իւր ջորուն թշնամու վրայ սլանալու համար, բայց Ալ Աբբասը սանձից բռնելով արգելեց նրան մահուան բերանը նետուիլ և այնպէս գոռաց, որ ձայնը ամբողջ ձորում բոմբիւն հանեց։ Ալ Աբբասն անուանի էր իւր թոքերի զօրութեամբ, և դա եղաւ զօրքի փրկիչն այն ահեղ ճգնաժամում։ Մուսլէմները, ծանօթ ձայնը լսելով, կանգ առին, և երբ տեսան որ հալածող չկայ, յետ դարձան կռուելու։ Թշնամին իջաւ լեռներից, և այժըմ մի արիւնահեղ ջարդ սկսուեցաւ. նեղ կրճում։ «Հնոցն արդէն վառվում է», աղաղակեց մարգարէն, զէնքերի ճաճանչն ու շողիւնը տեսնելով։ Նա կռացաւ Թամբից, մի բուռն փոշի վերցրեց և թշնամիների դէմ ցնդեց. «Թող այս փոշուց խռովութիւն գայ ձեր դէմքերի վրայ և աչքերը կուրանան,» որոտաց նա։ Եւ նրանք իրօք կուրացան և ահաբեկ փախուստ դարձան, ասում են մուսլէմ պատմիչները, թէ և թշնամու պարտութիւնը հեշտ էր վերագրել մուսլէմների գերազանց թուին և մարգարէի աղաղակով բորբոքուած եռանդին։ Մալէքն և Թակիֆեանք ապաստան գտան հնաւուր Թայէֆ քաղաքում, միւսները վերադարձան Աութասի հովտում նստած բանակը։

Հոնէյնի ձորից Մահմեդը մի ստուար գունդ

արձակեց այդ բանակի դէմ Աբու Ամիրի առաջնորդութեամբ։ Հաւազեանք քաջ դիմադրութիւն ցոյց տուին։ Աբու Ամիրն ընկաւ. Նրա տեղը բռնեց իւր եղբօրորդի Աբու Մուսան և կատարեալ յաղթութիւն տարաւ, բազմաթիւ թշնամիներ կոտորելով։ Յաղթողի ձեռքն ահագին աւար և շատ ու շատ գերիներ ընկան։ Մալէք իբն Աուֆի անհանճար ընթացքի շնորհիւ, որ Դորաիդ ծերունու իմաստուն խորհրդին հակառակ՝ դաշնակիցների ընտանիքով ու գոյքով, երամակներով ու խաշներով բեռնաւորել էր բանակը։

Այդ ալևոր Դորաիդ զինուորի ճակատագիրը յիշատակութեան արժանի է։ Մինչդեռ մուսլէմները բանակի մէջ ցրուելով կողոպուտ հաւաքելու վրայ էին, երիտասարդ Ռաբիա իբն Րաֆի Սուլիմացին մի դեսպակակիր ուղտ նշմարեց, և կարծելով թէ դեսպակում մի սիրուն կին նստած կըլինի, իսկոյն ետեւից արշաւեց։ Երբոր հասաւ ու վարագոյրը յետ քաշեց, կմախացած Դորաիդի դէմքը դիպաւ իւր աչքին։ Յուսախաբ ու զայրացած պատանին սրով խփեց ծերունուն, բայց սուրը փշրուեցաւ։

«Մայրդ քեզ վատ զէնք է տուել,» ասաց ալևորը հեգնութեամբ. «Թամբիս ետևն աւելի լաւ սուր կըգտնես»։

Պատանին առաւ այդ սուրը, բայց մինչ ուզում էր սայրը պատեանից հանել, ծերունին ճանաչեց նրա Սուլիմացի լինելն ու գոչեց. «Գնա ասա մայրիկիդ, որ դու սպանեցիր Դորաիդ իբն Սիմմային, որ նրա տոհմի կանանցից շատերին է փրկել կռուի օրը»։ Այդ խօսքերը չազդեցին, և ծերունու գլուխը ճեղքուեցաւ իւր սեփական սուսերով։

Երբ որ Օսբիան Մէկկա վերադառնալով այդ դէպքերի հանգամանքն իւր մօրը պատմեց,—«Իրաւ որ սպանած մարդդ մեր տոհմի բարերարն էր», ասաց մայրը կշտամբելով։ «Միայն մեր տոհմի կանանցից երեք հոգի ազատել է իբն Սիմման։»

Աբու Մուսան փառքով վերադարձաւ Մահմեդի մօտ, ճոխ աւար և բազմաթիւ գերուած կանայք ու մանուկներ բերելով իւր հետ Աութասի բանակից։ Գերուհիներից մէկը մարգարէի ոտքն ընկաւ և գըթութիւն խնդրեց, որպէս նրա կաթնաքոյրը, Սաադեան հովտում նրան սննդած Հալէմա դայեկի Ալ Շիման աղջիկը։ Մահմեդը զուր էր աշխատում կնոջ զառամեալ երեսին նայելով ճանաչել իւր մանկութեան զուարթ ընկերուհուն. բայց երբոր կինն իւր ուսը մերկացրեց և ցոյց տուաւ այն սպին, որ մնացել էր մի մանկական խաղի ժամանակ Մահմեդի տուած հարուածից,—էլ տարակոյս չմնաց։ Մահմեդը գորովանքով ընդունեց նրան և նրա ազատ կամքին թողաւ՝ կամ իւր հովանաւորութեան տակ մնալ և կամ թէ վերադառնալ դէպի տուն։

Մուսլէմների մէջ կռիւ ծագեցաւ գերի կանանց նկատմամբ, թէ արդեօք կարելի՞ էր արամբի գերուհուն կին առնել՝ առանց շնութեան մեղք գործելու։ Ղուրանի նոր յայտնութիւնը վերջ դրաւ այդ դըժուարութեան։ «Դուք չպիտի ամուսնանաք ազատ արամբի կանանց հետ, մինչև որ ձեր աջ ձեռը նրանց տէրուն չդարձնէ՛» Այդ պատգամին համեմատ՝ ամեն մի գերուած կին կարող էր գերողի ամուսինը դառնալ, նոյն իսկ եթէ առաջին մարդը կենդանի լինէր։

Հոնէյնի յաղթողները զանց չարին հարկաւ օգուտ քաղել նոր օրէնքից։

Գերիներին և աւարը մի ապահով տեղ ու վստահելի հսկողութեան տակ թողնելուց յետոյ՝ Մահմեդը հետամուտ եղաւ այն Թակիֆեաններին, որոնք պատսպարուել էին Թայէֆում։ Այժմ Նրա կրօնական զգացմունքի հետ ոխի կիրքն էլ եռաց սրտում, երբ մօտեցաւ այդ կռապաշտական քաղաքին, որ երբեմն վիրաւորել ու նախատել էր Նրան, և տեսաւ այն դուռը, որտեղից Նրան թշնամանքով վռնտել էին։ Սակայն քաղաքի ամուր պարիսպներն ու միջնաբերդը չէր կարելի յարձակմամբ առնել. այս պատճառով պէտք եղաւ առաջին անգամ գործ դնել զանազան որմակործ մեքենաներ՝ խոյ, բաբան, մանգլիոն ևայլն, որոնք դեռ չէին յայտնի արաբական պատերազմներում։ Այդ գործիքները պատրաստուեցան նորադարձ Սալման պարսկի ցուցմունքով։

Այն ինչ պաշարուածները քաջօրէն յետ էին մղում ամեն մի յարձակում, տէգ ու նետեր և հալուած երկաթ թափելով թշնամու կաշեղէն վահանների վրայ։ Այն ժամանակ Մահմեդը հրամայեց այրել նրանց ագարակները, այգիներն ու պարտէզներն և խոստացաւ ազատութիւն տալ քաղաքից փախչող գերիներին։ Քսան օր տևեց ապարդիւն պաշարումը, և այդ միջոցին մարգարէն ամեն օր աղօթք էր անում իւր Ումմ Սալամ և Զէյնաբ կանանց տաղաւարների միջև։ Նա սկսել էր արդէն յուսահատուիլ յաջող ելքից, մանաւանդ որ Աբու Բեկրը, որ շատ լաւ երազահան էր, չարագուշակ մեկնութիւն էր տուել նրա՝ այդ միջոցին տեսած երազին։ Նա պատրաստ

էր վերցնել պաշարումը, սակայն զօրքը տրտունջ յայտնեց, և այն ժամանակ մարգարէն հրամայեց, որ դռներից մէկի վրայ յարձակուին։ Պաշարուածներն այս անգամ էլ յամառութեամբ դիմադրեցին և երկու կողմից բազմաթիւ մարդիկ ընկան. Աբու Սոֆիանը, որ քաջութեամբ կռվում էր այժմ Մահմեդի համար, իւր աչքերից մինը կորցրեց, և մուսլէմները բոլորովին յետ մղուեցան։

Վերջապէս Մահմեդը բանակը վերցրեց, խոստանալով զօրքին մի ուրիշ օր կրկնել պաշարումը, և գնաց այն տեղ, ուր որ պահուած էր այդ արշաւանքում յափշտակուած աւարը։ Արաբացի պատմիչների ասելով՝ աւարը բաղկացած էր 24,000 ուղտից, 40,000 ոչխարից, 4,000 ունկի ոսկուց և 6,000 գերուց։

Փոքր ինչ յետոյ հաւազեանների կողմից մի դեսպանութիւնն եկաւ Մահմեդի մօտ՝ հպատակութիւն յայտնելու նրան և խնդրելու, որ իրենց ընտանիքներն ու գոյքերը յետ տրուին։ Նրանց հետ եկել էր և Մահմեդի դայեակը՝ արդէն պառաւ հալէման։ Մահմեդի սիրտը նորից յուզուեցաւ մանկութեան յիշատակներով, և նա հարցրեց հաւազացոց. «Ի՞նչ բան աւելի թանգ է ձեզ համար՝ ձեր ընտանիքը թէ ըստացուածքը։»—«Մեր ընտանիքը,» պատասխանեցին նրանք։

«Բաւ է,» ասաց մարգարէն։ «Ալ Աբբասին և ինձ զալով՝ մենք յօժար ենք մեր գերիների բաժնից հրաժարուիլ. բայց պէտք է ուրիշների սիրտն էլ շահել։ Եկէք ինձ մօտ կէսօրուայ աղօթքից յետոյ և ասացէք. Աղաչում ենք Աստուծու դեսպանին, որ նա յորդորէ իւր հետևողներին՝ վերադարձնել մեզ մեր

երեխաներն ու կանայքը. աղաչում ենք նաև իւր հետևողներին՝ բարեխօս լինել մեզ համար Նրա առջև։»

Պատգամաւորները այդպէս էլ արին։ Մահմեդն և Ալ Աբբասը իսկոյն հրաժարուեցան իրենց վիճակուած գերիներից, նոյնն արին և միւսները, բացի Թէմիմ ու Ֆազարա ցեղերից. բայց Մահմեդը նրանց էլ համոզեց զիջանել, խոստանալով որ հետևեալ արշաւանքում բռնուելիք գերիների վեցերորդ մասը նրանց կըտայ։ Եւ այսպէս Հալէմայի միջնորդութեամբ իւր ցեղի բոլոր գերիներն ազատութիւն ստացան։

Աւանդութեան յիշատակած մի դէպք ցոյց է տալիս, թէ որքան էր յարգում Մահմեդն իւր մանկութեան այդ խեղճ հոգատարին։ «Ես նստած էի մարգարէի մօտ,» ասում է Նրա աշակերտներից մէկը. «յանկարծ մի կին ներս մտաւ. մարգարէն իսկոյն ոտքի ելաւ և գորգ փռեց Նրա առջև, հրաւիրելով որ նստի։ Երբոր հիւրը հեռացաւ, ինձ ասացին. Այդ կինն է դիել մարգարէին։»

Մահմեդը նուիրակ ուղարկեց Մալէքի մօտ, որ դեռ փակուած էր Թայէֆում, և խոստացաւ յետ տալ նրան Հոնէյնում առնուած բոլոր աւարն և հարիւր ուղտ ընծայել, եթէ հնազանդուէր և հաւատ ընդունէր։ Այդ վեհանձն առաջարկից Մալէքը պարտուեցաւ և իրեն դաշնակից մի քանի տոհմերի հետ մարգարէի դրօշի տակ մտաւ։ Մահմեդն իսկոյն զօրավար կարգեց նրան այդ ցեղերի վրայ, և այնուհետև Մալէքը նոր հաւատի օգտին նուիրած խարազան դարձաւ իւր Թակիֆեան հին ընկերների համար։

Սակայն մուսլէմները վախենալով, որ առատաձեռն մարգարէն դէս ու դէն չվատնէ իրենց վերջին

պատերազմի վաստակը, մի օր շրջապատեցին նրան և աւարի ու գերիների բաժանումը պահանջեցին բարձրաձայն։

Մահմեդը բարկութեամբ դարձաւ նրանց և ասաց. «Ե՞րբ էք տեսել, որ ես ագահ, կամ խաբեբայ և կամ անիրաւ լինէի։» Այս ասելով նա մի մազ քաղեց ուղտի վզից և գոչեց. «Վկայ է Ալլահ, որ ես երբէք մինչև անգամ այս մազի չափ բան չեմ վերցրել աւարից, բացի իմ հինգերորդ մասը. այդ մասն էլ միշտ ձեր օգտին եմ գործ դրել։»

Այնուհետև նա բաժնեց աւարը սովորական եղանակով—չորս հինգերորդ մասը զօրքին, իսկ իւր հինգերորդ մասն այն մարդկանց, որոնց հաւատարմութիւնը շահել էր ուզում։ Նա կասկած ունէր նորեկներից. թերևս լաւ լինէր, թէ ինչպէս էին ուրախացել, նրան յաղթուած կարծելիս։ Այժմ նա ըշտապեց պարգևներով գրաւել նրանց և իւր հետ կապել։ Աբու Սոֆիանին նա պարգևեց—Թայէֆի պաշարման ժամանակ կորցրած աչքի փոխարէն—հարիւր ուղտ և քառասուն օքա արծաթ։ Աբու Ջահլն և դրա նման միւս մեծերն իրենց վայելուչ ընծաներ ստացան, և այդ բոլորը մարգարէի յատուկ բաժնից։

Այս կերպով շահուած գաղջերի թւումն էր և Աբբաս իբն Մարդաս բանաստեղծը։ Նա դժգոհ էր իւր բաժնից և երգիծական երգերով էր արտայայտում իւր տհաճութիւնը։ Մահմեդն իմացաւ այդ և գոչեց. «Հեռացրէք այդ մարդուն և լեզուն կտրեցէք»։ Խիստ միջոցներ սիրող Օմարն ուզեց իսկոյն և բառական ճշդութեամբ այդ հրամանը կատարել. բայց միւսներն աւելի լաւ ըմբռնելով մարգարէի միտքը,

յափշտակուած նախրի դաշտը տարան Աբբասին և ասացին, որ ընտրէ, ինչ էլ սիրտը կամենայ։

«Ի՞նչ» բացագանչեց լեզուն կորցնելու վտանգից ազատուած բանաստեղծը։ «Մարգարէն այս կերպով է ուզում կապել իմ լեզուն։ Ալլահը վկայ. ես ոչ մի բան չեմ վերցնիլ։» Սակայն Մահմեդն իւր քաղաքագիտական վեհանձնութեան հաստատ մնաց և վաթսուն ուղտ ուղարկեց նրան։ Այն օրից 'ի վեր բանաստեղծը չէր դադարում առատաձեռն մարգարէի գովասանքն երգելուց։

Մինչդեռ մի կողմից Մահմեդն աշխատում էր այդ կերպով որսալ մէկկացի թոյլ նորադարձների մտերմութիւնը, միւս կողմից Մէդինայի դաշնակիցները տրտունջ էին յայտնում։ «Տեսէ՛ք, տեսէ՛ք,» ասում էին նրանք, «թէ ինչպիսի պարգևներ է շռայլում այդ դաւաճան Կորէյշներին, մինչդեռ մեզ, որ միշտ նրան հաւատարիմ ենք մնացել ամեն տեսակ վտանգներում, ոչ մի բան չէ տալիս՝ մեր օրինական բաժնից զատ։ Արդեօք ինչո՞վ ենք յանցաւոր, որ մեզ այսպէս յետ է դասում»։

Այդ գանգատը լսելուն պէս Մահմեդն իւր մօտ կանչեց նրանց աւագներին և ասաց. «Լսեցէք, ո՞վ մէդինացիք, չէ՞ որ դուք ընտանեկան կռիւներով ջլատուած էիք, և ես ձեր մէջ միաբանութիւն հաստատեցի։ Չէ՞ որ դուք մոլորուած էիք, և ես ձեզ ճշմարտութեան ճանապարհը ցոյց տուի։ Չէ՞ որ աղքատ էիք, և ես՝ ձեզ հարստացրի։»

Նրանք ճշմարիտ գտան այդ խօսքերը։ «Տեսէք ուրեմն», շարունակեց նա. «ես եկել էի ձեզ մօտ իբրև խաբեբայ հռչակուած, բայց դուք ինձ հա-

ւառացիք. հալածուած էի, բայց դուք ինձ ասպըն-
ջական եղաք. աքսորուած էի, և ընդունեցիք, անօք
էի, և օգնեցիք։ Մի՞թէ կարծում էք, թէ չեմ զգում
այդ բոլորը։ Մի՞թէ կարծում էք, թէ կարող եմ ա-
պերախտ լինել։ Դուք տրտնջում էք, թէ ուրիշներին
ընծաներ եմ տալիս, իսկ ձեզ ոչ։ Իրաւ է. ես տա-
լիս եմ նրանց երկրային բարիք. բայց այդ անում
եմ նրանց աշխարհասէր սրտերը շահելու համար։ Իսկ
ձեզ, ձեր հաւատարմութեան փոխարէն, ես նուիրում
եմ իմ անձը՛։ Նրանք ուղտեր և ոչխարներ տանելով
տուն կ'երթան. իսկ դուք Աստուծոյ մարգարէի հետ
կըվերադառնաք, որովհետև,—վկա՛յ եմ կոչում Ա-
լահին, որի աջումն է Մահմեդի հոգին,—եթէ ամ-
բողջ աշխարհն էլ մի կողմ գնայ և դուք ուրիշ կողմ,
ես դարձեալ ձեզ հետ կըմնամ։ Ուրեմն որի՞ պարգևն
է աւելի մեծ։»

Դաշնակիցներն արտասուելու չափ գործվեցան
այդ խօսքերից։ «Ո՜վ Աստուծոյ մարգարէ,» գոչեցին
նրանք, «մենք գոհ ենք մեր վիճակից։»

Աւարը բաժանելուց յետոյ Մահմեդը Մէկկա
վերադարձաւ, բայց ոչ թէ յաղթողի շքով ու պեր-
ճութեամբ, այլ որպէս մի համեստ ուխտաւոր՝ երկր-
պագութեան ծէսերը վերջացնելու համար։ Երբոր
այդ ծէսերն էլ վերջացան, նա իման կամ քահանա-
յապետ կարգեց Մոադ իբն Ջեբէլին, հրամայելով որ
Իսլամի ուսմունքը ժողովրդի մէջ տարածէ. իսկ տասն-
ութամեայ երիտասարդ Օթաբին քաղաքի կառավա-
րիչ նշանակեց։ Այնուհետև հրաժեշտի ողջոյն տալով
իւր մայրենի քաղաքին և զօրքի հետ ճանապարհ
ընկաւ դէպի Մէդինա։

Այլ Օբուա գիւղում, ուր Թաղուած էր իւր մայրը, նա ուզեց որդիական պարտք հատուցանել նրա շիրմին,—բայց որովհետեւ իւր իսկ օրէնքն արգելում էր պատիւ ընծայել անհաւատ մեռած հեթանոսների գերեզմանին,—նա սրտի բուռն յուզմունքով սկսաւ աղաչել Աստուծուն, որ մեղմացնէ այդ օրէնքը։ Եթէ ենթադրելու լինինք, թէ այդպիսի դիպուածում կարող էր ոՐ և պատրանք տեղի ունենալ, այն ժամանակ կ'ասենք, թէ այդ պատրանքը մի պարզ ինքնախաբէութիւն էր, որովհետեւ Մահմեդը իրօք հաւատաց երկնային պատուէրին, որ գէթ ներկայ առթիւ ամոքում էր օրէնքի խստութիւնը, թոյլ տալով նրան գերեզմանը տեսնել։ Նա որդիական գողտր սիրոյ արտասուքով լաց եղաւ գերեզմանի վրայ, բայց արտասուքից զատ չկարողացաւ ոչինչ վճարել մօր թանգագին յիշատակին։ «Ես խնդրել էի Աստուծուց,» ասաց նա տրտմութեամբ, «թոյլ տալ ինձ մօրս գերեզմանը տեսնելու, և Աստուած խնդիրս կատարեց. բայց երբոր աղաչեցի որ թոյլ տայ ինձ աղօթք անել մօրս համար, աղաչանքս լսելի չեղաւ։»

## ԼԲ.

Մարգարէի Զէյնաբ դստեր մահը։ — Իբրահիմ որդու ծնունդը։ — Դեսպանութիւններ հեռաւոր ցեղերից։ — Բանաստեղծական պայքարը մարգարէի ներկայութեամբ։ — Նրա դիւրազգայութիւնը քերթողական հրապոյրների առջեւ։ — Թայէֆ քաղաքի առումն․ դրա կուռքերի կործանումը։ — Բանակցութիւնը բէդուինների էմիր իբն Թաֆիլ զոռոզամիտ իշխանի հետ․ դրա անկախ ոգին։ — Էդի անունով միւս իշխանի տեսակցութիւնը Մահմեդի հետ։

Մէդինա վերադառնալուց փոքր ինչ յետոյ Մահմեդը մի ցաւալի կորուստ ունեցաւ․ մեռաւ իւր Զէյնաբ աղջիկը, որ յետ էր տրուած իւր հօրը՝ Բեդէրեան կռւում գերուած անհաւատ Աբուլ Աաս մարդու փոխարէն։ Մահմեդի ընտանեկան սէրը զօրեղ էր, և այդ մահը խոր ցաւ ազդեց նրա սրտին․ սակայն նա մխիթարուեցաւ Մարիամ հարճի ծնած որդով։ Նա Իբրահիմ անուանեց որդուն և յոյս ունէր, թէ իւր ծերութեան այդ զաւակը, որ իւր միակ արու շառաւիղն էր, իւր անունը յաջորդ սերունդներին կ՚աւանդէ։

Մահմեդի հռչակը, որպէս մարգարէի և աշխարհակալի, արդէն տարածուած էր մինչև Արաբիայի ամենահեռաւոր մասերը, և տարաբնակ ազգերից անդադար դեսպաններ էին գալիս Մէդինա՝ կամ մարգարէ ճանաչելով նրան և Իսլամն ընդունելով, և կամ հնազանդութիւն յայտնելով և հարկատու լինելով, իբրև մի աշխարհական վեհապետի։ Ժամանակի պէտքերին համեմատ Մահեդի ձիրքերն աճում էին․ տեսութեան շրջանն էլ ընդլայնվում էր յաջողու-

թեան հետ միասին, և նա սկսել էր պետական անձի հմտութեամբ կարգի բերել իւր արագ զօրացող տէրութեան գանձային գործերը։ Ճշմարիտ հաւատացողներից նա վերցնում էր ողորմութիւն կոչուած մի տուրք, որ հաւասար էր բերքերի տասներորդ մասին այն տեղերում, ուր որ երկիրը պարարվում էր անձրևով ու վտակներով, և քսաներորդին, ուր որ պըտղաբերութիւնն արուեստական ոռոգումով էր յառաջ գալիս։ Ամեն մի տասնեակ ուղտից պահանջվում էր երկու ոչխար. քսան գլուխ տաւարից՝ մի կով. երեսնից՝ մի զուարակ. քառասուն ոչխարից՝ մի ոչխար. իսկ աւելի վճարողը համարվում էր աւելի բարեպաշտ, ուրեմն և նոյն չափով Աստուծու առջև շնորհագիւտ։

Մահմեդի աշխարհական իշխանութեան հնազանդուող, բայց տակաւին կռապաշտ ազգերի վճարած տուրքն էր՝ ամեն մի չափահաս ազատից կամ ստրկից մի դինար—կամ դրամով կամ թէ գոյքով։

Ողորմութեան տուրքը հաւաքելիս մի քանի դժուարութիւններ ծագեցան։ Թէմիմների ըմբոստ ազգատոհմը բացարձակ ընդդիմացաւ և վռնտեց հարկահանին։ Նրանց դէմ Մահմեդը մի արաբական հեծելազունդ ուղարկեց, որ և յետ եկաւ բազմաթիւ գերիներով։ Այդ գերիներին ազատելու համար Թէմիմները մի դեսպանութիւն առաքեցին Մահմեդի մօտ։ Դեսպաններից չորսն անուանի ճարտասան ու քերթողներ էին. դրանք փոխանակ խոնարհուելու նրա առջև՝ սկսան արձակ ու չափածոյ ոճով բանաստեղծական պայքար անելու հրաւէր կարդալ մուսլէմներին։

«Ես բանաստեղծ չեմ առաքուած Ալլահից,» ա-

սաց Մահմեդը. «ոչ էլ հետամուտ եմ ճարտասանի փառք ստանալու»

Սակայն նրա հետևողներից մի քանիսը հրաւէրն ընդունեցին, և այսպէս սկսուեցաւ մի բանաւոր մրցութիւն, որի մէջ Թէմիմներն իրենց պարտուած ճանաչեցին։ Նրանց հրաւէրի ոգին, բանաստեղծական աշխոյժն և պարտութեան պարզ խոստովանութիւնը այն աստիճան դիւր եկան Մահմեդին, որ նա ոչ միայն ազատութիւն տուաւ գերիներին, այլ և առատ ընծաներով արձակեց։

Բանաստեղծական հրապոյրների համար Մահմեդի ունեցած ոխրոյն իբրև մի ուրիշ օրինակ յիշատակում են նրա վարմունքը հռչակաւոր բանաստեղծ Կաաբ իբն Զոհայրի հետ, որ ծաղրել էր նրան երգիծական երգերով, ուստի և պատժելիների ցանկն ընկել և փախուստ տուել սրբազան քաղաքի առման ժամանակ։ Այժմ Կաաբը Մէդինա եկաւ մարգարէի հետ հաշտուելու համար, մօտեցաւ նրան մզկիթում և սկսաւ փառաբանել նրան մի ներբողով, որ մինչև այս օրս հրաշակերտ է համարուած արաբների մէջ։ Վերջաբանում նա շեշտեց յատկապէս մարգարէի գըթութիւնը, նրա ներողամտութիւնը, «որովհետև դա Աստուծու մարգարէի առաքինի յատկութիւններից այն մէկն է, որին ամեն մարդ կարող է լիակատար վստահութեամբ ապաւինիլ։»

Ոտանաւորով հրապուրուած և գովասանքով ամոքուած Մահմեդը բանաստեղծի խօսքերը ճշմարտեց և ներումն շնորհելը քիչ համարելով, իւր վերարկուն անգամ հանեց և նրա ուսերի վրայ ձգեց։ Երգիչը մինչև իւր մահն անկորուստ պահեց սուրբ վե-

բարկուն, թէպէտ և ծանրակշիռ ոսկի էին տալիս դրա փոխարէն։ Յետոյ Մոաւիա խալիֆը տասն հազար դիր-հէմով (ֆրանկ) գնեց այդ զգեստը նրա ժառանգնե-րից, և այն օրից սկսած խալիֆները սովոր էին հագ-նել նրան մեծաշուք հանդէսների ու տօների ժա-մանակ՝ մինչև երեսունվեցերորդ խալիֆութիւնը, երբոր Թաթարների Հոլագու աշխարհակալը խլեց նը-րան Ալ Մոսթ'ազէմ Բիլլահ խալիֆի ուսերից և այ-րելով փոշի դարձրեց։

Մինչդեռ քաղաք քաղաքի և բերդ բերդի ե-տևից ընդունում էին նոր հաւատն և հնազանդու-թեան երդում տալիս Մահմեդին, Թակիֆեանների Թայէֆ ամրոցը դեռ շարունակում էր աստուածարել հռչակաւոր Էլ Լաթ կուռքը։ Բնակիչներն ապաւի-նած էին ամրոցի լեռնային դիրքին և պարիսպների ամրութեան։ Սակայն չնայելով որ բերդն ապահով էր յարձակումից, մուսլէմները հետզհետէ այն աստի-ճան պատեցին ու փակեցին նրան, որ բնակիչները չէին կարողանում այլևս դռներից դուրս ոտք դնել՝ առանց վտանգի հանդիպելու։ Այսպէս նեղուելուց ու վտանգուելուց յետոյ՝ վերջապէս դեսպաններ ուղարկեցին Մահմեդի մօտ հաշտութիւն խնդրելու համար։

Մարգարէն սաստիկ ոխ ունէր այդ կամակոր և շատ կռապաշտ քաղաքի դէմ, որ մի անգամ ար-տաքսել էր նրան իւր միջից, իսկ միւս անգամ յետ վանել պարիսպներից։ Նրա պայմաններն էին՝ դարձ և բացարձակ հնազանդութիւն։ Դեսպանները յօժա-րացան անձամբ Իսլամ ընդունել, բայց հարկ հա-մարեցին զգուշացնել, թէ վտանգաւոր կը լինէր այդ-

պէս յանկարծ հին կրօնից հրաժարուելու ստիպմունք դնել Թայէֆացի ժողովրդի վրայ, և խնդրեցին, որ մնչ ևս երեք տարի Էլ Լաթ կուռքը պաշտելու թոյլտուութիւն շնորհուի նրան։ Այդ խնդիրը բացէ ՚ի բաց մերժուեցաւ։ Այն ժամանակ դեսպաններն աղաչեցին գէթ մի ամսուայ միջոց տալ ժողովրդի միտքը փոխելու համար։ Այդ էլ չընդունուեցաւ, որովհետև կռապաշտութիւնը հակառակ էր ճշմարիտ կրօնին։ Վերջապէս խնդրեցին գոնէ ազատել ժողովուրդն ամենօրեայ աղօթք ասելու խիստ կանոնից։

«Ճշմարիտ հաւատն առանց աղօթքի չի լինիլ,» պատասխանեց մարգարէն։ Մէկ խօսքով նրանք ստիպուեցան անպայման հնազանդութիւն յանձն առնել։

Աբու Սոֆիան իբն Հարբն և Ալ Մոգէյրան Թայէֆ ուղարկուեցան Էլ Լաթի քարաշէն կուռքը կործանելու։ Աբու Սոֆիանը փորձեց ջախջախել նրան բրչի զարկով, բայց վրիպեցաւ հարուածից և ընկաւ երեսի վրայ։ Ժողովուրդը բարի նշան համարեց այդ և ցնծաց։ Այն ժամանակ Ալ Մոգէյրան մուրճի մէկ հարուածով տապալեց բազմութեան թէ յոյսերն և թէ կուռքը։ Յետոյ հանեց նրա թանգագին հանդերձը, ապարանջանքը, մանեակը, օղերն և միւս ոսկեղէն ու ակնեղէն զարդերը, իսկ խորտակուած բեկորները փռուած թողաւ գետնի երեսին, ուր Թայէֆի կանայք ճիչ ու լացով ողբում էին իրենց աստուծուն *)։

*) Թակիֆացիք մինչև այս օր մի զօրեղ ցեղ են և մի և նոյն արգաւանդ երկրի տէր Հէջազեան լեռների արեւելեան ստորոտում։ Նրանց մէկ մասը բնակվում է Նախ-

Մահմեդի իշխանութեան դեռ աննշանական ըմբոստներից մէկն էր Էմիր կոչուած զօրաւոր բէդուինների էմիր իբն Թուֆիէլ առաջնորդը։ Նա մի վայելչակազմ և արքայական ճոխութեան տէր, բայց և ամբարտաւան ու ցուցամոլ իշխան էր։ Օքազի մարդաշատ տօնավաճառում, Թայէֆի ու Նախլահի միջև, որ արաբական վաճառականների, ուխտաւորների և երգիչների հաւաքման տեղն էր, մի քարոզ բարձր ձայնով կանչում էր. «Ո՛ւմ որ գրաստ է հարկաւոր, թող էմիրի մօտ գնայ և ստանայ. ո՛վ որ սոված է, թող էմիրի մօտ գնայ և կշտանայ. ո՛վ որ հալածուած է, թող էմիրի մօտ գնայ և նրա հովանու տակ մտնի։»

Որքան առատաձեռն էր էմիրն և այդ պատճառով ժողովրդի մէջ հռչակուած, այնքան էլ փառամոլ էր։ Մահմեդի աճող զօրութիւնը նրա նախանձը շարժում էր։ Երբ նրան Մահմեդի հետ դաշնակցելու խորհուրդ էին տալիս,—«Ես երդուել եմ,» ասում էր նա գոռոզաբար, «չհանգստանալ, մինչև որ ամբողջ Արաբիան չնուաճեմ, և այժմ ուզում էք, որ այդ Կորէյշի առջև գլուխ խոնարհեմ։»

Սակայն մուսլէմների նոր յաղթանակները ստիպեցին նրան ականջ դնել բարեկամների խորհրդին։ Նա գնաց Մէդինա և ներկայանալով Մահմեդին, համարձակ հարցրեց. «Ուզո՞ւմ ես ինձ ընկեր լինել։»

---

կին Թայէֆ քաղաքում. միւսը վրանաբնակ է և խաշնարած։ Կարող են երկու հազար ձիաւոր հանել թշնամու դէմ և գիտեն քաջ պաշտպանել իրենց երկիրը Վահաբիների ասպատակից։—*Burkhardt's*, *Notes*, *II*.

«Ո՛չ երբէք, Ալլահը վկայ, մինչ որ Խալամ չընդունես,» պատասխանեց մարգարէն։

«Եւ եթէ ընդունեմ, արդեօք դու կըշատանես քաղաքաբնակ արաբների վրայ իշխելով, իսկ անապատի բէդուիններին ինձ կը թողնե՞ս։»

Մահմեդը բացասական պատասխան տուաւ։

«Ուրեմն հաւատք ընդունելով ինչ վաստակած կըլինիմ։»

«Ամեն հաւատացողների բարեկամութիւնը։»

«Ես այդպիսի բարեկամութեան բնաւ կարօտ չեմ,» պատասխանեց հպարտ Էմիրն և պատերազմ սպառնալով վերադարձաւ իւր ցեղի մօտ։

Ուրիշ բնութեան տէր բէդուին էր Թայի ցեղի Էդի իշխանը։ Նրա Հաթիմ հայրն այն աստիճան անուանի էր թէ զինուորական քաջութեամբ և թէ անչափ առատաձեռնութեամբ, որ արաբացիք սովորել էին ասել «Հաթիմի պէս առատաձեռն։» Հաթիմի որդին քրիստոնեայ էր, և թէպէտ ժառանգել էր հօր առատաձեռն բնաւորութիւնը, բայց զուրկ էր նրա քաջութիւնից։ Էդին, մուսլէմների ասպատակից զարհուրած, հրամայել էր իւր ուղտապահ երիտասարդ արաբին միշտ պատրաստ պահել մի քանի սրընթաց ու զօրեղ ուղտ և թշնամիների մօտենալուն պէս՝ լուր տալ իրեն։

Դէպքի բերմամբ այդ միջոցին Ալին էր պտտում այն կողմերն իւր հեծեալ վաշտի հետ, սև ու ըսպիտակ դրօշներով։ Երիտասարդ բէդուինը այդ որ նկատեց, վազելով գնաց Էդիի մօտ և աղաղակեց. «Մուսլէմները գալիս են. ես տեսայ նրանց դրօշակը։»

Էդին իսկոյն ուղտ նստեցրեց իւր կնոջն ու

երեխաներին և փախաւ դէպի Ասորիք։ Նրա Սաֆ-ֆանա կամ Մարգարիտ անունով քոյրը մուսլէմների ձեռքն ընկաւ և ուրիշ գերիների հետ Մէդինա տարուեցաւ։ Մի օր նա տեսնելով Մահմեդի անցնելն իւր արգելանի մօտով, գոչեց.

«Գթա՛ ինձ, ո՜վ Աստուծու առաքեալ։ Հայրս մեռած է, իսկ նա, որ պարտաւոր էր պաշտպանել, թողաւ ինձ։ Բարեգութ եղիր, որ Ալլահ էլ քեզ գթայ։»

«Ո՞վ է պաշտպանդ,» հարցրեց Մահմեդը։

«Էդին, Հաթիմի որդին։

«Նա փախստական է Ալլահի և մարգարէի առ-ջև,» ասաց Մահմեդն և անցաւ։

Հետևեալ օրը, երբ Մահմեդը կրկին անցնում էր այն տեղով, Ալին, աղջկայ գեղեցկութեամբ ու տրտմութեամբ գորոված, կամացուկ թելադրեց նրան, որ վերկենայ և դարձեալ մի անգամ աղերս յայտնէ մարգարէին։ Աղջիկը կրկնեց իւր աղաչանքը։

«Ո՜վ Աստուծու մարգարէ, հայրս մեռած է, իսկ եղբայրս, որ պարտաւոր էր պաշտպանել ինձ, թողաւ ինձ։ Ողորմիր ինձ, որ Ալլահ էլ քեզ ողորմի։»

Մահմեդը քաղցրութեամբ դարձաւ նրան և ասաց. «Թող այդպէս լինի», և ոչ միայն արձակեց նրան, այլ և ուղտ ու հագուստ ընծայեց, և առաջին իսկ կարաւանով Ասորիք ուղարկեց։

Եղբօր մօտ հասնելուն պէս՝ Սաֆֆանան նրա փախուստը յանդիմանեց։ Եղբայրը խոստովանեց իւր յանցանքն և ներողութիւն ստացաւ։ Այնուհետև քոյրը յորդորեց նրան հաշտութիւն կնքել Մահմե-դի հետ։ «Նա արդարև մարգարէ է,» ասաց աղջիկը.

«Նա շուտով ամբողջ աշխարհի տէրը կըդառնայ. ուրեմն շատապիր ժամ առաջ շնորհ գտնել նրա առջև։»

Ջգուշամիտ Եդին ընդունեց քրոջ խորհուրդն և Մէդինա փութալով ողջոյն տուաւ մարգարէին, որ նոր էր մզկիթ մտել։ Եդիի յատուկ պատմութիւնն այդ տեսակցութեան մասին շատ լաւ է պատկերացնում Մահմեդի բարք ու վարքի պարզութիւնը մինչև անգամ և այն միջոցին, երբ մարգարէն լիազօր իշխանութեան տէր էր դարձել և արագ յառաջ էր գնում աշխարհակալութեան ասպարէզի վրայ։ «Նա հարցրեց իմ անունը,» ասում էր Եդին, «և երբոր ասացի, հրաւիրեց ինձ դէպի իւր տունն ուղեկցել։ Ճանապարհին մի նիհար ու թոյլ կին մօտեցաւ նրան։ Նա կանգ առաւ և սկսաւ խօսել կնոջ հետ նրա գործերի մասին։ Այդ վարմունքը կարծես թէ շատ արքայական չէ, մտածեցի ես ինքս ինձ։ Տուն որ մտանք, նա մի մաշկեղէն բարձ առաջարկեց ինձ և հրաւիրեց նստել, մինչդեռ ինքն յատակի վրայ բազմեցաւ։ Այդ էլ շատ արքայավայել վարմունք չէ, ասացի ես մտքումս։

«Այնուհետև նա երեք անգամ ցանկութիւն յայտնեց, որ ես Իսլամ ընդունեմ։ Պատասխանեցի, թէ իմ սեփական հաւատն ունիմ։—Քո հաւատը քեզնից լաւ եմ ճանաչում, ասաց նա։ Դու, որպէս իշխան, վերցնում ես ժողովրդից աւարի չորրորդ մասը։ Միթէ այդ է քրիստոնէութեան պատուէրը։—Այդ խօսքերից իմացայ, որ նա մարգարէ է և աւելի բան գիտէ, քան թէ միւս մահկանացուք։—Իսլամը քեզ սիրելի չէ, շարունակեց նա, որովհետև չքաւոր ես

տեսնում մեզ։ Սակայն մօտ է ժամանակը, երբ ճշմարիտ հաւատացեալներն այնքան հարստութիւն կ'ունենան, որ չեն էլ իմանալ, թէ ինչպէս գործածեն։ Թերևս դու վհատում ես մուսլէմների թիւն աւելի քիչ տեսնելով, քան թէ մեր թշնամիների բազմութիւնը։ Վկայ է Ալլահ, շուտով իւրաքանչիւր մուսլէմ կին կարող կըլինի ուղտ նստած մենակ և աներկիւղ Քադէսիայից Մէկկա գնալ Աստուծու տաճարում աղօթելու համար։ Դու անշուշտ կարծում կըլինիս, թէ զօրութիւնն անհաւատների ձեռին է։ Իմացիր ուրեմն, որ շուտով մեր դրօշակները Բաբիլոնի սպիտակ աշտարակների վրայ պիտի պարզուին։ *)»

Քաղաքագէտ Էդին այդ մարգարէութեան հաւատաց և իսկոյն դարձի եկաւ։

## ԼԳ.

Ասորիք արշաւելու պատրաստութիւնները։—Աբդալլահ իբն Օբբայի խարդաւանքը։—Հաւատացեալների նպաստը։—Բանակի չուն։—Հաջարի նզոված գաւառը։—Բանակը Թաբուկի մօտերքում։—Շրջակայ գաւառների նուաճումը։—Կալէդը յանկարծ բռնում է Օկայդէրին եւ առնում է բերդը։—Զօրքի վերադարձը Մէդինա։

Թէ քարոզութեան և թէ աշխարհակալութեան միջոցներով Մահմեդն արդէն գրեթէ ամբողջ արաբիայի տէրն էր դարձել։ Մինչև այժմ մէկ մէկու վտանգաւոր, բայց իրենց անմիաբանութեամբ աշ-

*) *Weil, Mohammed, p. 247.*

խարհի միւս մասերի դէմ անզօր՝ ցիրուցան տոհմերից նա կազմել էր մէկ ազգութիւն և այդպիսով արտաքին աշխարհակալութեան ընդունակ արել։ Մարգարէի կոչումը բացարձակ իշխանութիւն էր տալիս Մահմեդին այդ կերպով անապատում ծագած զարհուրելի զօրութեան վրայ, և այժմ նա պատրաստ էր յառաջ մղել դրան իւր հաւատը սփռելու և Իսլամի ոյժն Արաբիայից դուրս տարածելու համար։

Նրա բազմաթիւ յաղթանակներն և նոր յարձակումը Մութայի վրայ վերջ 'ի վերջոյ Հերակլ կայսեր ուշադրութիւնը գրաւեցին, և կայսրն սկսաւ զօրք հաւաքել Արաբիայի սահմանների մօտ՝ այդ նորելուկ թշնամուն խորտակելու համար։ Մահմեդը որոշեց նրա թշնամական շարժումների առաջն առնել և նոյն իսկ Ասորիքի խորքը տանել հաւատի դրօշը։

Մինչև այժմ նա իւր արշաւանքները ծածուկ էր սկսում և խորհուրդներն ու մտքերը միայն ամենահաւատարիմ սպաներին յայտնում, թաքցնելով հետևողներից իւր ձեռնարկութիւնների վտանգը։ Սակայն ներկայ պատերազմը, որ արաբների նախկին կարճատև աւազակային ասպատակներից տարբեր բան էր, մեծամեծ պատրաստութեանց կարօտ էր. հեռաւոր չուների և երկարատև բացակայութեան համար հարկաւոր էր սովորականից աւելի զօրք գումարել և ամեն տեսակ պաշար մթերել։ Այս պատճառով նա յայտնապէս հրատարակեց իւր ձեռնարկութեան նըպատակն ու բնութիւնը։

Այս անգամ զինուորները տրամադիր չէին առաջուայ փութով համախմբուիլ նրա դրօշի տակ։ Ոմանք յիշում էին Մութայի աղէտալի կռիւն և վա-

-խենում նորից ընդհարուիլ հռոմայեցոց քաջակիրթ գնդերի հետ։ Տարուայ եղանակն էլ ձեռնտու չէր այդպիսի երկար ու հեռաւոր արշաւանքին։ Ամառուայ տօթը վրայ էր հասել, երկիրը տոչորուել էր, աղբիւրներն ու վտակները ցամաքել։ Մօտեցել էր նաև արմաւ կթելու ամիսը, երբ ամեն մարդ աւելի կ՚ուզենար տանը մնալ և պտուղ քաղել, քան թէ դրսի աւարին հետամուտ լինել։

Աբդալլահ իբն Օբբա Կազրադացին, որ այժմ էլ Մահմեդի ծածուկ թշնամին էր և միշտ նրա դիտումներին վնասելու պատրաստ, այդ բոլոր հանգամանքները նենգութեամբ ժողովրդի առջև դրաւ։ «Շատ յարմար ժամանակ է,» գոչեց նա, «այդպիսի հեռաւոր արշաւանք սկսելու՝ հակառակ երաշտին ու խորշակին և անապատի կիզիչ տօթին։ Մահմեդը, կարծեմ, կատակ է համարում յոյների դէմ պատերազմ մղելը. սակայն հաւատացէք ինձ, որ դա բոլորովին ուրիշ բան կլինի, քան թէ արաբների կռիւն արաբների հետ։ Ալլա՜հ վկայ, ինձ այնպէս է թւում, թէ դուք արդէն բոլորդ էլ շղթայուած գերիներ էք։»

Այդ և այդպիսի հեգնական խօսքերով ու սադրանքներով նա գրգռեց Կազրադացոց երկիւղն և ընդհանրապէս ժողովրդին ատելի արաւ ձեռնարկութիւնը։ Մահմեդը, իւր սովորութեան համեմատ, հարկ համարեց յայտնութեան դիմել։ «Նրանք որ ուզում են տանը մնալ և խոյս են տալիս Աստուծու գործին նուիրուելուց, ամառուայ տօթն են պատճառ բռնում,» ասում էր Կուրանի ՚ի դէպ յայտնուած ամենանոր գլուխը։ «Ասա՛ նրանց, որ գեհէնի հուրն աւելի տաք է։ Թող այժմ նրանք անձնատուր լինին հանգստու-

թեան գրգանքին. բայց անվերջ արցունք ու լաց կը֊լինի նրանց պատիժն այն աշխարհում։»

Հաւատարիմ հետեւողներից մի քանիսը մեծ ջեր֊մեռանդութիւն ցոյց տուին այդ գաղջութեան միջո֊ցին։ Օմարը, Ալ Աբբասն և Աբդ՛ ալրահմանն աճա֊գին գումարներ նուիրեցին. մի քանի բարեպաշտ կանայք իրենց գոհարներն ու զարդերն ընծայ բե֊րին։ Օսմանը մի հազար, կամ ոմանց ասելով՝ տասն հազար դինար տուաւ Մահմեդին, որի փոխարէն էլ իւր անցեալ, ներկայ և ապագայ մեղքերի թողու֊թիւնն ստացաւ։ Աբու Բեկրը չորս հազար դրաքմ ընծայեց։ Մարգարէն դժուարանում էր ընդունել այդ պարգևը, որովհետև դա Աբու Բեկրի ամբողջ ստա֊ցուածքն էր։ «Հապա քեզ և կնոջդ ինչ կըմնայ,» ասաց նա։—«Ալլահ և նրա մարգարէն,» եղաւ Աբու Բեկրի պատասխանը։

Այդ ջերմեռանդութեան օրինակները սաստիկ ազդեցին. բայց և այնպէս Մահմեդը մեծ դժուարու֊թեամբ կարողացաւ տասն հազար ձիաւոր և քսան հազար հետեւակ հաւաքել։ Իւր բացակայութեան ժա֊մանակ Մէդինայի վրայ հսկելու պաշտօնն Ալիին յանձնեց. նրան յանձնեց և իւր ընտանիքին հովա֊նաւոր լինելու պարտքը։ Ալին, որ միշտ մարգարէի ուղեկիցն էր և նրա ամեն վտանգների բաժանորդը, դժգոհ մնաց այդ պաշտօնից։ Մահմեդը բոլոր պատ֊րաստութիւնները հոգալուց յետոյ դուրս ելաւ Մէդի֊նայից իւր նշանաւոր արշաւանքը սկսելու։ Նրա զօրքի մեծ մասը Կազրադացիք էին և դրանց դաշնակից֊ները՝ Աբդալլահ իբն Օբբայի առաջնորդութեամբ։

Այդ մարդը, որին Մահմեդն իրաւամբ «Կեղ֊

Ծառորների առաջնորդ» էր անուանել, գիշերը վրայ հասնելուն պէս բուն բանակից մեկուսի նստաւ իւր կուսակիցների հետ, և երբ բանակն առաւօտեան յառաջ չուեց, նա անշարժ մնաց իւր գնդով և յետոյ Մէդինա վերադարձաւ։ Այնտեղ նա գնաց Ալիի մօտ, որ իւր ընկերների հետ միասին շատ դժգոհ էր քաղաքապահութեան պաշտօնից, և սկսաւ բորբոքել նրա տհաճութիւնը, ասելով թէ Մահմեդն այն մըտքով է յանձնել նրան Մէդինան, որ ազատուի իրեն անհաճոյ մարդու ձեռքից։ Այդ քսութեամբ խայթուած Ալին իսկոյն սլացաւ Մահմեդի ետևից և հարցրեց—արդեօք ճի՞շդ էր Աբդալլահի և նրա համախոհների ասածը։

«Այդ մարդիկ խաբեբայ են,» ասաց մարգարէն։ Նրանք կեղծաւորների ու թերահաւատների խումբ են կազմում, որոնց նպատակն է ապստամբութիւն գրգռել Մէդինայի մէջ։ Ես յետ թողի քեզ, որպէս զի նրանց վրայ հսկես և մեր երկուսիս ընտանիքը պաշտպանես։ Ես կըցանկայի որ դու ինձ համար նոյնը լինէիր, ինչ որ Ահարոնն էր Մովսէսի համար. տարբերութիւնը միայն այս է, որ դու չես կարող մարգարէ լինել նրա նման, քանի որ ես եմ վերջին մարգարէն։» Ալին գոհ մնաց այդ բացատրութեամբ և վերադարձաւ Մէդինա։

Վերոյ գրեալից շատերն հետևցրին, թէ Մահմեդը խալիֆ կամ յաջորդ էր կարգել Ալիին. որովհետև Ահարոնի և Մովսէսի յարաբերութիւններն արտայայտող արաբական բառը այդ իմաստն ունի։

Մահմեդի հետ չուող զօրքը շուտով զգաց, թէ որքան դժուար է ճանապարհ կտրել անապատի մի-

ջով այդ հրատապ կղանակին։ Ջինուորներից շատերը հետևեալ օրն իսկ վերադարձան, շատերն էլ երրորդ կամ չորրորդ օրը։ Դրանց դասալքութեան լուրն առնելիս մարգարէն ասում էր. «Թողէք գնան։ Եթէ նրանք որ և է բանի պիտանի են, Ալլահ դարձեալ նրանց մեզ մօտ կըբերէ. իսկ եթէ պիտանի չեն, ազատուած կըլինինք աւելորդ բեռից։»

Մինչդեռ շատերն այդպէս սրտաբեկ էին լինում չուի ժամանակ, Մէդինա մնացողներից ոմանք սկսել էին զղջալ իրենց փոքրոգութեան վրայ։ Այդպիսիներից մէկը՝ Աբու Կայսամը, կէսօրուայ խեղդուկ շոգին իւր պարտէզը մտնելիս՝ մսեղէն խորտիկներից ու սառն ջրից բաղկացած մի ճաշ տեսաւ, որ պատրաստել էին նրա համար իւր երկու ամուսինները վրանի զով ստուերի տակ։ Նա կանգ առաւ շեմքի վրայ և գոչեց։ «Այս րոպէիս Ալլահի մարգարէն անապատի տօթից ու խորշակից տանջվում է, և Կայսամը պիտի այստեղ նստած մնայ իւր գեղեցիկ կանանց հետ։ Ալլահ վկայ, ոտք չեմ դնիլ վրանը։» Ասաց, նիզակն ու սուրն առաւ, ուղտ հեծաւ և փութաց միանալ մարգարէի դրօշակին։

Եօթնօրեայ տաժանակիր ճանապարհից յետոյ զօրքը մտաւ Հէջարի լեռնոտ գաւառը, որ անհետացած Թամուդեան ցեղի բնակավայրն էր։ Դա այն նզոված գաւառն էր, որի վերաբերեալ աւանդութիւնն արդէն պատմել ենք վերևում։*) Աւանդութեան անգիտակ, տօթից նուաղած ու յոգնած յառաջապահ գունդը ուրախացաւ, երբ որ մի կարկաճուն վտակ տե-

*) Տես գլ. Դ.։

սպա կանաչ հովտում և հովասուն այրեր շրջակայ բլուրներում, ուր մի ժամանակ բնակուել էին երկնքից պատուհասուած Թամուղացիք։ Ձինուորները դադար առին վտակի ափին. ոմանք ուզում էին լողանալ, ուրիշները սկսան կերակուր եփել, հաց թխել և ամեն մարդ գոհ էր, որ գով գիշերօթ պիտի վայելէ քարայրներում։

Արշաւանքի ժամանակ Մահմեդը, իւր սովորութեան համեմատ, վերջապահ գնդումն էր մնացել՝ տկարներին օգնելու, երբեմն էլ այս կամ այն յոգնածին իւր թամբի ետևը նստեցնելու համար։ Յառաջապահ վաշտին մօտենալուն պէս՝ նա իսկոյն լիշեց դեռ պատանեկութեան ժամանակ այն տեղ լսած առասպելներն ու վէպերը, և վախենալով գաւառին հասած նզովքից՝ իսկոյն հրամայեց դէն ձգել վտակի ջրով եփուած միսը, ուղտերին տալ նոյն ջրով շաղուած խմորն և հեռանալ նզոված երկրից։ Ապա թէ վերարկուով դէմքը ծածկեց, խթան տուաւ ջորուն և հապճեպ փախաւ այն մեղապարտ սահմանից. նոյնն արաւ և զօրքը, ասես թէ թշնամու երեսից ճողոպրելով։

Խուճապական էր վրայ հասնող գիշերը. զօրքը ստիպուած էր անջուր տեղում բանակել. օդը խեղդուկ էր, անապատի հողմը դառնաշունչ. մարդիկ պապակվում էին անտանելի ծարաւից։—կարծես թէ Թամուղեան անէծքը դեռ ծանրանում լինէր նրանց վրայ։

Յաջորդ օրուայ անձրևը սակայն զովացրեց մարդկանց և անասուններին։ Բանակը նորոգուած ուժով յառաջ խաղաց և առանց նոր նեղութիւններ հանդիպելու հասաւ Թաբուկ, որ մի փոքրիկ քաղաք

էր հռոմէական պետութեան սահմանի վրայ, Մէդինայից Դամասկոս տանող ճանապարհի մէջ տեղը, մէկից և միւսից տասն օր հեռու։

Մահմեդն այդ տեղ՝ ծառերով ու արօտներով շրջապատուած մի աղբիւրի մօտ բանակ դրաւ։ Արաբական աւանդութիւնն ասում է, թէ աղբիւրն այն աստիճան ցամքած էր, որ միջից մարգարէի համար մի կում ջուր հանելուց յետոյ՝ էլ ոչ մի կաթիլ չմնաց։ Սակայն մարգարէն իւր ծարաւն կտրելուց և լուացումն աւարտելուց յետոյ, աւելորդ ջուրը յետ ածեց աղբիւրի մէջ, և դա իսկոյն այնպէս առատ սկսաւ բղխել, որ ոչ միայն բոլոր զօրքը, այլ գրաստն էլ յագեցաւ։

Այդ իջևանից Մահմեդը նուիրակներ արձակեց հաւատ քարոզելու և դարձ ու տուրք պահանջելու բռնութեամբ։ Շրջաբնակ իշխաններից մի քանիսը դեսպաններ առաքեցին նրա մօտ, ոմանք նրա երկնային առաքելութիւնն ընդունելով, ոմանք էլ աշխարհային իշխանութեան հնազանդուելով։ Նրանցից մէկն էր Կարմիր ծովի եզերքին գտնուող քրիստոնէական Էյլա քաղաքի Յոհաննա իբն Ռուբա իշխանը։ Այդ այն քաղաքն էր, որի մասին աւանդութիւն կար, թէ հին դարերում, երբ բնակիչները դեռ հրէայ էին, մի օր ծերերը յանկարծակի խոզ էին դարձել, իսկ մանուկները կապիկ, որովհետև յանդգնել էին ձուկ որսալ շաբաթ օրը,—մի պատուհաս, որ լրջօրէն պատմուած է Կուրանում։

Էյլայի իշխանը հաշտութեան դաշն կապեց Մահմեդի հետ և յանձն առաւ տարեկան երեք հազար ոսկի վճարել, իբրև հարկ։ Այս դաշնագրի ձևն օրի-

նակ եղաւ և միւս իշխանների հետ դրուելիք պայ-մանների համար։

Մահմեդին հնազանդութիւն զլացող արաբացի քրիստոնեայ պետերից մէկն էր Օկայդէր իբն Մալէք կէնդացին, որ բնակվում էր իւր կալուածների մէջ տեղը, մի լեռնոտեայ ամրոցում։ Խալէդը հրաման ստացաւ նրան հնազանդութեան բերելու, և տեսնելով որ բերդն ամրաշէն է և յարձակման անմատչելի, խորամանկութիւն բանեցրեց։ Մի լուսնեակ գիշեր Օկայդէրը, իւր կնոջ հետ ամրոցի կտրին նըստած, զով օդ էր վայելում. յանկարծ նա մի կենդանի նշմարեց, որ արածում էր պարսպի տակ, և կարծելով թէ դա լեռներից իջած մի ցիռ (վայրենի էշ) կըլինի, իսկոյն հրամայեց իւր տէգն ու ձին բերել և որսի ելաւ Հասան եղբօր և մի քանի ուրիշ զինուորների հետ։ Յայտնուեցաւ որ ցիռը մի խաբուսիկ խանձ էր միայն։ Օկայդէրի երևնալուն պէս՝ Խալէդը դուրս թռաւ դարանից իւր գնդով և նրա վրայ ընկաւ։ Թեթևազէն իշխանն անկարող էր դիմադրել։ Հասանը տեղն ու տեղը սպանուեցաւ, Օկայդէրը գերի ընկաւ, միւսները բերդ փախան, որ և իսկոյն զինաթափ եղաւ։ Փոքր ինչ յետոյ այդ իշխանն ազատութիւն ստացաւ, ահագին փրկանք վճարելով և հարկատու դառնալով։

Խալէդն ուղարկեց Մահմեդին Հասանի մետաքսեայ և ոսկեհուռ զգեստը, իբրև մի յաղթութեան նշան։ Մուսլէմները խմբուեցան ու սկսան զննել հիացմամբ։ «Դուք սքանչանում էք այդ զգեստի վըրայ,» ասաց նա. «իսկ ես երդվում եմ նրանով, որի ձեռին է Մահմեդի հոգին, թէ Սաադ իբն Մալէքի

զգեստը, որ հագած ունի այժմ դրախտում, դրանից էլ պատուական է։» Այդ այն Սաադ դատաւորն էր, որ մի նախորդ արշաւանքից յետոյ եօթն հարիւր գերուած հրէայ էր մահուան մատնել Մէդինայում։

Թաբուկում զօրքին հանգստութիւն տալուց և շրջակայ գաւառները նուաճելուց յետոյ՝ Մահմեդն ուզում էր իւր արշաւանքի նպատակին հասնել և բուն Ասորւոց երկրի մէջ խորամուխ լինել։ Սակայն հետևողներն այդքան եռանդ չէին ցոյց տալիս։ Զօրքի սիրտը վհատուել էր լսելով, թէ Ասորիքի սահմանի վրայ թշնամին անթիւ գնդեր է գումարել։ Մահմեդը տեսաւ այդ ընդհանուր լքումը, բայց և այնպէս տրամադիր չէր կիսաւարտ թողնել արշաւանքը։ Նա զինուորական խորհուրդ կազմեց և հարցրեց—արդեօք պէտք է յառաջ խաղալ թէ պէտք չէ։ Առ այդ Օմարը սառնութեամբ ասաց. «Եթէ Աստուած հրամայել է քեզ յառաջ գնալ, ուրեմն գնա՛։» —«Եթէ ես Աստուծուց հրաման ունենայի, քեզնից խորհուրդ չէի հարցնիլ,» պատասխանեց մարգարէն։

Օմարը զգաց այդ կշտամբանքն և խոնարհաբար ցոյց տուաւ, թէ անզգուշութիւն կըլինէր շարունակել չուն այն ահագին զօրութեան դէմ, որ ասածներին նայելով հաւաքուած էր Ասորիքի սահմանի վրայ, և նկատեց, թէ արդէն այն էլ բաւական է, ինչոր ներկայ արշաւանքում ձեռք էր բերել Մահմեդը։ Չէ՞ որ նա խափանել էր կայսերական զօրքերի մօտալուտ յարձակումն և այնքան ցեղերի ու ազգերի մեծարանքն և հպատակութեան հաւատիքը ստացել՝ սկսած Կարմիր ծովից մինչև Եփրատը։ Ուստի խորհուրդ տուաւ առ այժմ շատանալ այս տարի

գլուխ բերած գործերով և յաջորդ արշաւանքին թողնել ձեռնարկութեան վախճանը։

Օմարի խորհուրդն ընդունուեցաւ, որովհետև զինուորական գործերում Մահմեդը սովոր էր տեղի տալ իւր զօրավարների կարծիքին, եթէ ինքն սաստիկ գրգռուած և կամ ցնորական ոգևորութեամբ յափշտակուած չլինէր։ Եւ այսպէս մօտ քսան օր Թաբուկում մնալուց յետոյ՝ նա վերցրեց բանակն և վերադարձաւ Մէդինա։

## ԼԴ.

*Հանդիսաւոր մուտքը Մէդինա։—Արշաւանքին մասնակցել չկամեցողների պատիժը։—Բանաստեղծութեան հետեւանքը։—Արդարացած կին Օբբայի մահը։—Մարգարէի հարէմում ծագած խռովութիւնը։*

Որքան պարզ էր Մահմեդի բարքն ու վարքը, այնքան էլ պարզ և անշուք էին նրա մուտքերը Մէդինա պատերազմական յաղթանակներից յետոյ։ Քաղաքին մօտենալիս, երբ նրա ընտանիքն ու ժողովրդի բազմութիւնը շտապում էին դիմաւորել իրեն, նա կանգ էր առնում ողջունելու ամենքին և իւր թամբի ետև նստեցնում տան մանկանց։ Այսպիսի պարզութեամբ մտաւ Մէդինա և՛ Թաբուկի արշաւանքից յետ գալիս։

Աւարով բեռնաւորուած զօրքի վերադարձն այնպիսի հեռաւոր արշաւանքից, որի նմանը դեռ երբէք չէին կատարել Իսլամի զինուորները, այն աստիճան մեծ դէպք էր, որ չէր կարող ցնծութիւն չազդել ժո-

զովրդին։ Տրտում էին միայն այն մարդիկ, որոնք զլացել էին միանալ զօրքին և կամ դասալիք եղել չուի ժամանակ։ Նրանք բոլորն էլ բանադրանքի տակ ընկան. Մահմեդն հրամայեց իւր բարեպաշտ հետեւողներին, որ ոչ մի յարակցութիւն չունենան նրանց հետ։ Սակայն նրանց վշտից ու զղջանքից մեղմանալով, հետզհետէ ներումն շնորհեց մեծ մասին։ Բանադրանքի ներքև մնացող եօթն հոգի, ազգականների հաղորդակցութիւնից կտրուած և ընդհանուր բերկրութեան ժամանակ իրենց անձը խայտառակուած տեսնելով, յուսահատութեան մէջ ընկան և իրենց մարմինը մզկիթի որմերին շղթայելով երդում արին, որ այդպէս էլ կըմնան, մինչև որ թողութիւն չընդունեն։ Մահմեդն էլ երդում արաւ այդ դրութեան մէջ թողնելու նրանց, մինչև որ Ալլահից մի ուրիշ հրաման չստանայ։ Բարեբախտաբար հրամանն իջաւ Կուրանի նորայայտ տունով. սակայն մարգարէն չազատեց յանցաւորներին ինքնադիր շղթաներից, մինչև որ չառաւ նրանց գոյքերի երրորդ մասը՝ հաւատի պէտքերը հոգալու համար։

Կաաբ իբն Մալէքը, Մուրարա իբն Ռաբիան Հիլալ իբն Օմէյը դեռ արգելման տակ էին։ Դրանք երբեմն ամենաջերմ մուսլէմներ էին. այս պատճառով նրանց ձեռնթափ լինիլը տասնապատիկ ծանր երևցաւ մարգարէին, քան միւսների դասալքութիւնը, որոնց հաւատն առաջ էլ թոյլ էր և կասկածելի, ուստի նա անողոք մնաց։ Յանցաւորները քառասուն օր տառապեցան պատժի տակ, մինչև անգամ ամուսիններին մերձենալու իրաւունքից զուրկ լինելով այդ միջոցին։

Կաաբ իբն Մալէքի պատմութիւնն այդ բանադրանքի ժամանակ կրած նեղութեան մասին կենդանի կերպով ցոյց է տալիս, թէ որքան մեծ էր Մահմեդի ազդեցութիւնը հետևողների վրայ։ Կաաբն ասում է, թէ ամեն մարդ խորշում էր իրենից և կամ թէ ուրիշ աչքով նայում վրան։ Իւր պատժակից ընկերներից երկուսը տանից անգամ չէին դուրս գալիս, իսկ ինքը թէև շրջում էր զանազան տեղ, բայց ոչ ոք հետը չէր խօսում։ Գնում էր մզկիթ, նստում էր մարգարէի մօտ, ողջոյն էր տալիս նրան. սակայն ողջոյնը ոչ մի փոխարէն չէր գտնում։ Քառասունմէկերորդ օրը հրաման ելաւ, որ նա կնոջից բաժանուի։ Այն ժամանակ նա թողաւ քաղաքը, մի տաղաւար շինեց Սէլա բլրի գագաթին և որոշեց ամենախիստ ճգնութեամբ տոկալ իւր դառն պատուհասին։ Սակայն իւր սիրտը կեղեքվում էր. ամբողջ աշխարհը, իւր ասելով, անձուկ էր դարձել իւր համար։ Յիսունմէկերորդ օրը մի պատուիրակ եկաւ նրա մօտ, թողութեան լոյս բերելով։ Նա փութաց գնալ Մէդինա և մզկիթում ներկայացաւ մարգարէին, որ քաղցրութեամբ ընդունեց նրան և ասաց, թէ Աստուած ներել է նրան։ Կաաբի հոգին դէպի վեր ճախրեց յուսահատութեան անդնդից, և նա երախտագիտութեան եռանդով վառուած՝ իւր կայքի երրորդ մասն յանցանքի քաւութեան համար նուիրեց։

Բանակի Մէդինա վերադառնալուց շատ չանցած «կեղծաւորների առաջնորդ» Աբդալլահ իբն Օբբա Կազրադացին անյոյս կերպով հիւանդացաւ։ Մահմեդը թէև քաջ գիտէր այդ մարդու նենգութիւնն և իւր անձի դէմ լարած որոգայթները, բայց և այնպէս

մի քանի անգամ այցելեց նրան հիւանդութեան միջոցին, ներկայ եղաւ նրա մահուան երկունքին և գերեզման յուղարկեց մարմինը, ուր հանգուցեալի որդու թախանձանքին զիջանելով մինչև անգամ աղօթք էլ կարդաց նրա մեղքերի թողութեան համար։

Օմարն առանձնակի յանդիմանեց Մահմեդին, թէ ինչու նա աղօթք կարդաց այդ կեղծաւոր մարդու համար. չէ՞ որ Աբդալլահը շատ ու շատ անգամ զրպարտել էր նրան։ Մարգարէն վարպետութեամբ պատասխան տուաւ Կուրանի խօսքով, թէ «Աղօթես կամ չաղօթես կեղծաւորների համար, բոլորը մէկ է. եօթանասուն անգամ էլ աղօթես, նրանք քաւութիւն չեն ստանալ։»

Ուրեմն Մահմեդը քաղաքագիտական, և յատկապէս Խազրաջացոց և ննջեցեալի հզօր բարեկամներին գրաւելու մտքով աղօթք արաւ Աբդալլահի գերեզմանի վրայ. և այս առմամբ նա կատարեալ յաջողութիւն գտաւ, որովհետև հանգուցեալի գրեթէ բոլոր կուսակիցներն անձնատուր եղան մարգարէին, որ այնուհետև անվիճելի միապետ դարձաւ Մեդինայում։ Փոքր ինչ յետոյ նա մի ուրիշ յայտնութիւն հրատարակեց, որ արգելում էր աղօթք անել անհաւատ ննջեցեալի մահճի մօտ և կամ թէ նրա գերեզմանի մօտ կանգնել։

Չնայելով սակայն որ Մահմեդն այդպիսի ազդեցութիւն ունէր իւր աշակերտների ու համայնքի վրայ, դարձեալ շատ էր դժուարանում կառավարել իւր կանանց և կարգ պահպանել հարէմում։ Ըստ երեւութին՝ նա բաւական արդար էր կարգադրել իւր ամուսնական յարաբերութիւնները, որովհետև ամեն մի կնոջ ջոկ բնակարան էր յատկացրել, ուր նրանք ինք-

նազլուխ տիրուհի էին, և իւրաքանչիւրի մօտ քսան չորս ժամ էր մնում հերթով։ Մի օր այնպէս պատահեցաւ, որ մինչ նա Հաֆզայի մօտ էր գտնվում, այդ կինը իւր հօրն այցելութիւն անելու գնաց։ Յանկարծակի յետ գալիս՝ նա միասին գտաւ մարգարէին և նրա սիրած Մարիամ հարճին, որ նրա Իբրահիմ որդու մայրն էր։ Հաֆզան ճիչ արձակեց նախանձից։ Մահմեդը վախենալով որ նրա աղաղակն ապստամբութեան փոթորիկ կըձգէ հարէմի մէջ, իսկոյն շտապեց հանգստացնել նրան. և կինը միայն այն պայմանով ձայնը կտրեց, որ մարգարէն այլ ևս ոչ մի անգամ չմօտենայ Մարիամին։ Հաֆզան միայն այդ պայմանով ներեց նրան և խօսք տուաւ ծածուկ պահել գաղտնիքը։

Սակայն խօսքը չպահեց և պատմեց Այէշային Մահմեդի անհաւատարմութիւնը, որ և իսկոյն ամբողջ հարէմին յայտնի եղաւ։ Այն ժամանակ նրա կանայքն այնպիսի աղմուկ հանեցին, որ մարգարէն համբերութիւնը կորցրեց և խսպառ մերժելով Հաֆզային, որոշեց միւսներին էլ չմօտենալ։ Ամբողջ ամիս մենակ նստած էր մի առանձին սենեակում. վերջապէս Ալլահ, նրա միայնութեան կարեկցելով, առաքեց նրան Կուրանի Ա. և Զ. գլուխները, որոնք արձակում էին նրան Մարիամի նկատմամբ արած երդումից. և այնուհետև Մարիամը դարձաւ նրա առանձնութեան ընկերուհին։

Այն ժամանակ ըմբոստ կանայք իրենց սխալը հասկացան և նոյն իսկ յայտնութիւնից իմացան, որ հասարակ մարդկանց վերաբերեալ կանոնները պարտաւորիչ չեն մարգարէի համար։ Վերջ 'ի վերջոյ նա

յետ կանչեց զղջասիրտ Հաֆզային, հաշտուեցաւ Այէշային հետ, որին քնքուշ սիրով սիրում էր, և փոքր ինչ յետոյ բոլորն էլ շնորհ գտան իւր առջև. սակայն նա շարունակեց գգուել Մարիամին, որովհետև դա շատ գեղեցիկ էր և իւր միակ որդու մայրն էր։

## ԼԵ.

*Աբու Բեկրը Մէկկա է տանում ուխտաւորներին։—Ալին առաքվում է մի նոր յայտնութիւն հրատարակելու։*

Տարևոր ուխտագնացութեան սրբազան ամիսը մօտեցել էր, սակայն ընտանեկան ու հասարակային գործերով զբաղուած Մահմեդը չէր կարողանում Մէդինայից հեռանալ։ Այս պատճառով նա իւր փոխարէն Աբու Բեկրին էմիր կամ առաջնորդ կարգեց Մէդինայից սուրբ քաղաքը գնալ կամեցող բարեպաշտների վրայ, և Աբու Բեկրը ճանապարհ ընկաւ, երեք հարիւր ուխտաւոր և քսան հատ զենլի ուղտ տանելով իւր հետ։

Այդ դէպքից փոքր ինչ յետոյ մարգարէն կանչեց իւր փեսայ և ջերմեռանդ աշակերտ Ալիին և հրամայեց հեծնել իւր Ալ Ադհա կամ Ականջատ կոչուած թեթև ուղտը, անձապարել գնալ Մէկկա և այնտեղ հաւաքուած ուխտաւորների բազմութեան առջև հռչակել մի կարևոր սուրա կամ Կուրանի գլուխ, որ նոր էր ընդունուած երկնքից։

Այդ պատուէրն Ալին կատարեց իրեն յատուկ եռանդով ու ճշդութեամբ։ Նա հասաւ քաղաք կրօնական հանդէսների ամենավառ միջոցին։ Եւ հենց այն օրը, երբ զոհերի մորթուելովը Մայնա հովտում

նուիրական ուխտի ծէսերը վերջացել էին և Աբու Բեկրը իւր քարոզն աւարտել էր և Իսլամի դաւանանքն ու կարգերը ժողովրդին բացատրել,—Ալին կանգնեց Ալ Աքաբա բլրի վրայ հաւաքուած անհամար բազմութեան առջև և յայտնեց, թէ առաքուած է մարգարէից մի կարևոր յայտնութիւն հըռչակելու։ Ապա թէ կարդաց իւր բերած սուրան, որ ամենայն խստութեամբ սրի հաւատ էր քարոզում։ Այդ սուրան արձակում էր Մահմեդին կռապաշտների և ուրիշ անհաւատների հետ հաստատուած ո՛ր և է զինադուլի և կամ դաշնադրութեան կապերից, եթէ նրանք ո՛ր և է կերպով ուխտադրուժ լինէին և կամ նրա թշնամիներին օգնէին։ Այդ յայտարարութեան օրից սկսած սուրան չորս ամսուայ ժամանակ էր տալիս անհաւատներին, որի ընթացքում նրանք կարող էին ազատ շրջել երկրի երեսին. իսկ պայմանաժամի լրանալուն պէս՝ այլևս ո՛չ մի զիջումն չպիտի արուէր. այնուհետև ամենուրեք և ամեն ժամանակ, թէ բացարձակ ուժով և թէ նենգութեամբ պատերազմ պիտի մղուէր անհաւատութեան մէջ մնացողների դէմ, և ուրիշ ընտրութիւն չպիտի թողուէր այդպիսիներին, բայց միայն հաւատն ընդունել և կամ թէ հարկատու լինել։ Սրբազան ամիսներն և նուիրական տեղերն այլ ևս ոչ մի ապաստան չպիտի տային այդ մարդկանց։ «Հենց որ լրանան այն ամիսները, որոնց ընթացքում ձեզ արգելուած է դիպչել նրանց,» ասում էր սուրան, «սպանեցէք կռապաշտներին, ուր, էլ գտնէք, և կամ գերի բռնեցէք. պաշարեցէք նրանց և կամ որոգայթ դրէք նրանց առջև։» Պիտի խզուէին նոյն իսկ արեան և բարեկամութեան կա-

պերը. Հաւատացեալը յարաբերութիւն չպիտի ունենար մինչև անգամ ամենամօտիկ ազգականների և սըրտակից ընկերների հետ, եթէ դրանք անհաւատութեան մէջ յարատևելու լինէին։ Տարին վերջանալուց յետոյ ոչ մի անհաւատ այլ ևս իրաւունք չպիտի ունենար Մէկկայի սուրբ սահմանը մտնելու և կամ Ալլահի տաճարը ոտք դնելու, — մի արգելք, որ մինչև այս օր էլ տևում է։

Կուրանի այդ խիստ սուրայի հրատարակման գլխաւոր պատճառներից մէկը, ոմանց ասելով, մի քանի հրէադաւան և հեթանոս արաբացոց ընթացքն էր, որոնք թէև դաշնակից էին Մահմեդին, բայց ստէպ դաւաճան էին երևցել և մինչև անգամ Նրան սպանելու փորձեր արել։ Ինչևիցէ՝ այդ սուրան ցոյց է տալիս, որ Մահմեդն իւր խորամանկ և ազդեցիկ թշնամու՝ Աբդալլահ իբն Օբբայի մեռնելուց և արաբական ցեղերին արագ արագ նուաճելուց յետոյ՝ օր ըստ օրէ աճող վստահութիւն էր ձեռք բերել։ Այդ սուրայով Մահմեդը մի վճռական հարուած էր տալիս իւր հաւատի բացարձակ իշխանութիւնը հաստատելու համար։

Երբոր Աբու-Բեկրն և Ալին Մէդինա վերադարձան, առաջինը զարմանք ու տրտունջ յայտնեց, որ իրեն չէր վիճակուած այդ խորհրդաւոր սուրայի հրատարակման պաշտօնը, քանի որ դա կարծես թէ իւր վերջին առաքելութեան կապակից էր. սակայն Նրան հանգստացրին՝ ասելով, թէ իւրաքանչիւր նոր յայտնութիւն պիտի ծանուցուի կամ նոյն ինքն մարգարէի և կամ Նրա գերդաստանի ամենամօտիկ անդամներից մէկի ձեռքով։

## ԼԶ.

*Մահմեդը հեռաւոր տեղեր է արձակում իւր զօրավարներին։ —Կուսակալներ է կարգում Երջանիկ Արաբիայի վրայ։ —Ուղարկում է Ալիին այդ նահանգում ծագած ապստամբութիւնն ընկճելու։ —Մարգարէի միակ որդու Իբրահիմի մահը։ —Նրա վարմունքը որդու անկողնի եւ գերեզմանի մօտ։ —Սաստկացող տկարութիւնը։ —Վերջին անգամ ուխտ գնալը Մէկկա եւ նրա վարմունքն ու քարոզները այդ քաղաքում։*

Դարձի գալու և կամ հնազանդուելու անյօժար մարդկանց դէմ սատակիչ մարտ քարոզող Կուրանի վերոյիշեալ սուրայի հրատարակութիւնը նորադարձների և հարկատուների մի ամբողջ բանակ յառաջ բերաւ, այնպէս որ ամսէ վերջերն և հիջրէթի տասներորդ թուականի սկզբին Մէդինայի փողոցները հեռաբնակ ցեղերի և իշխանների դեսպաններով լցուեցան։ Մարգարէի աշխարհական իշխանութեան առջև խոնարհուողներից մէկն էր և Ֆարվան, որ Հերակլ կայսրի փոխանորդն էր Ասորոց երկրում և Ամմոնացոց Ամմոն քաղաքի կառավարիչը։ Սակայն կայսրը մերժեց այդ հպատակութիւնն և բանտարկեց Ֆարվային։

Մահմեդն օր ըստ օրէ վեհապետ էր զգում իրեն և ինքնակալ իշխանի նման գործ տեսնում. բայց և այնպէս իւր ամենամեծ աշխարհակալական ձգտումները միշտ սրբագործուած էին կրօնաւորի եռանդով։ Նա ուղարկում էր իւր զօրավարներին աւելի հեռաւոր տեղեր, քան թէ առաջ, սակայն միշտ կուռքերը կործանելու և կռապաշտներին նուաճելու համար, այնպէս

որ իւր աշխարհական զօրութիւնը կրօնի ծաւալման հետ քայլ առ քայլ էր ընթանում։ Նա երկու կուսակալ էր նշանակել Երջանիկ Արաբիան իւր անուամբ կառավարելու համար. բայց տեսնելով որ այդ բարեբեր ու կարեւոր երկրի մէկ մասն անդադար ըմբոստութիւն է ցոյց տալիս, պատուէր տուաւ Ալիին երեք հարիւր ձիաւորով այնտեղ գնալ և խելքի բերել բնակիչներին։

Երիտասարդ աշակերտը մի վայելուչ վարանք զգաց այդ առաքելութիւնն ընդունելիս, որ իրենից շատ աւագ ու խորագէտ մարդկանց հետ բանակցելու հարկ էր դնում իւր վրայ։ Նրան սիրտ տալու համար մարգարէն իւր մի ձեռը նրա շուրթին, միւսը կուրծքին դրաւ և աչքերն երկինք ամբառնալով բացագանչեց։ «Ո՜վ Ալլահ, Դու՛ բաց արա սրա լեզուն և առաջնորդ եղիր սրտին։» Եւ հետեւալ հրահանգը տուաւ նրան, որպէս դատաւորի։ «Երբոր քեզ մօտ երկու կողմի մարդիկ գան, տես որ գործը յօգուտ մէկի չվճռես, մինչև որ լսած չլինիս միւսին։» Այդ ասելով յանձնեց նրան հաւատի դրօշը, գլխին չալմա փաթթեց և արձակեց։

Երբոր զինուոր առաքեալը Եմէնի անհաւատ նահանգը մտաւ, նրա մարդիկն իրենց հին արաբական հակումներից մղուելով, սկսան ասպատակել, աւերել և կոտորել։ Ալին զսպեց նրանց բռնութիւնը, յետ կանչեց փախստական բնակիչներին և սկսաւ Իսլամ քարոզել։ Սակայն չնայելով որ իւր լեզուն դեռ նոր էր նուիրագործուած մարգարէից, նա չկարողացաւ համոզել նրանց, և ունկնդիրները ․ տէգերով ու նետերով պատասխան տուին։ Այն ժամանակ Ալին

համոզման հին միջոցը գործ դրաւ՝ սուրը, և այնպէս ազդու կերպով, որ անհաւատներից քսան հոգի դիտապաստ ընկան, իսկ միւսները լիովին դարձի եկան։ Այս եռանդուն քաջագործութեանը յաջորդեցին և ուրիշ գործեր, և ամեն մէկից յետոյ Ալին սուրհանդակ էր արձակում մարգարէի մօտ հաւատի նոր յաղթանակն աւետելով։

Մինչդեռ Մահմեդը հրճվում էր ամեն կողմից իրեն հասնող յաջողութեան լուրերով, յանկարծ նա մի ծանր ընտանեկան վշտի հարուածով խոցուեցաւ։ Իւր սիրելի Մարիամ հարճի ծնած որդին, տասնհինգամսեայ Իբրահիմը, իւր միակ արու շառաւիղը, որով յոյս ունէր իւր անունը յաջորդ սերունդներին աւանդել, մերձ ՚ի մահ հիւանդացաւ և հօր ձեռին շունչը փչեց։ Իւր յոյսերի վաղաթառամ ծաղկի վրայ դառն ցաւով խոնարհելիս Մահմեդն ոյժ չունեցաւ հայրական վիշտը զսպելու. սակայն այդ փորձութեան ժամին էլ հնազանդութիւն ցոյց տուաւ Աստուծու կամքին, որ իւր հաւատի հիմնաքարն էր։

«Սիրտս տրտում է,» մրմնջում էր նա, «ես արտասվում եմ, բաժանուելով քեզնից, ո՜վ որդեակ իմ։ Իմ վիշտն աւելի մեծ կըլինէր, եթէ վստահ չլինէի, որ ես էլ շուտով քո ետևից պիտի գամ։ Մենք բոլորս Աստուծուց ենք. Նրանից ենք եկել, Նրա մօտ էլ կըվերադառնանք։»

Աբդ՚ալրահմանը նրա լաց լինելը տեսնելով հարցրեց. «Դու ինքդ չէ՞ր, որ արգելեցիր մեզ մեռելների վրայ լաց լինել.»—«Ոչ,» պատասխանեց մարգարէն։ «Ես արգելել եմ կոծել ու ճիչ բարձրացնել, երես ծեծել և հանդերձներ պատառել. այդ բոլորը

չար ոգու ազդմունքներ են։ Իսկ դժբախտութեան ժամանակ աչքերից հոսած արտասուքը բալասան է սրտի համար և երկնային գթութեան պարգև։»

Նա մինչև գերեզման յուղարկեց որդուն և հրաժարման դառնակսկիծ րոպէին դարձեալ ցոյց տուաւ, որ իւր կրօնի տարրերը միշտ կենդանի են իւր մրտքում։ «Որդեա՜կ իմ, որդեա՜կ իմ,» գոչեց նա, երբոր մարմինը հողին յանձնեցին, «ասա․ Աստուած է տէրս, Աստուծու մարգարէն է հայրս, Իսլամն է հաւատս։» Եւ այդ արաւ պատրաստելով իւր որդուն պատասխան տալու հրեշտակներին, որոնք, մուսլէմների համոզմամբ, քննում են մեռելներին գերեզմանի մէջ։ *)

Այդ միջոցին պատահած արեգակի խաւարումը ջերմեռանդ աշակերտները մեկնեցին իբրև Իբրահիմի

*) Մուսլէմների թաղման ժամանակ մոլակէնը կամ մոլլան հետևեալ խօսքերն է ուղղում մեռելին. „Ո՜վ Ալլահի ծառայ, ո՛վ Աստուծու աղախնի որդի, իմացէ՛ր որ այժմ քեզ մօտ երկու երկնային հրեշտակներ կ'իջնեն։ Երբ հարցնեն քեզ. Ո՞վ է տէրդ, պատասխան տուր. Աստուած է տէրս. և երբ հարցնեն մարգարէի կամ առաքեալի մասին, պատասխանիր. Մահմեդն է Աստուծու առաքեալը. և երբ հարցնեն, թէ ո՞րն է հաւատդ, ասա. Իսլամն է իմ հաւատը։ Եւ երբ հարցնեն վարքիդ առաջնորդ գրքի մասին, պատասխանիր. Կուրանն է վարքիս առաջնորդն և մուսլէմները եղբայրներս են. և եթէ կէբլայիդ մասին հարցնելու լինին, ասա նրանց. Քեաբէն է իմ կէբլան, և ես ապրել ու մեռել եմ այն հաւատով, թէ Աստուծուց զատ Աստուած չկայ և Մահմեդը նրա առաքեալն է։ Այն ժամանակ նրանք կ'ասեն. Հանգի՛ր, ծառայդ Աստուծոյ, ընդ հովանեաւ Աստուծոյ։“—Տես. *Lane's Modern Egiptians, vol. II. p. 338.*

մահուան առթիւ տեղի գտած սուգի նշան. բայց վշտահար հայրը մերժեց այդ անվայել շողոքորթութիւնն, ասելով թէ «Արեգակն և լուսինը Աստուծու հրաշալիքներն են, որոնցով նա երբեմն իւր կամքն է յայտնում ծառաներին. սակայն նրանց խաւարումը որ և է մարդու ծննդեան կամ վախճանի հետ բնաւ կապ չունի։»

Իբրահիմի մահը դէպի գերեզման տանող մի հարուած էր Մահմեդի համար։ Նրա կազմուածքն արդէն վնասուած էր ոգու անչափ տքնութիւնից ու յուզմունքից և մարմնի կրած տանջանքից։ Հայբարեան թոյնն էլ ապականել էր նրա կեանքի աղբիւրներն և վաղահաս ծերութեան մատնել նրան, լկնէչ ցաւեր ազդելով։ Մահմեդի տկարութեան սաստկանալուց նրա կրօնական եռանդը և՛ս աւելի զօրացաւ, և նա որոշեց նուիրել իւր ուժերի մնացորդը մի վերջին ուխտագնացութեան դէպի Մէկկա, որ ընդ միշտ պիտի օրինակ դառնար այդպիսի դէպքերում կատարուելիք ծէսերի համար։

Այդ բարեպաշտ որոշման լուրն Արաբիայի ամեն մասերից հաւատացողներ հաւաքեց, որոնք փափագում էին ընկերակցել ուխտաւոր մարգարէին։ Մէդինայի փողոցները քաղաքների ու գիւղերի, լեռնային բերդերի ու հեռաւոր անապատի բնակիչներով լցուեցան և շրջակայ հովիտները նրանց վրաններով ծածկուեցան։ Հաւատի յաղթութեան մի մտահար տեսարան էին պատկերացնում այդ բազմաթիւ և դեռ երէկ անմիաբան, բարբարոս և իրար հետ կռուող ցեղերը, որոնք այժմ եղբայրների պէս միացել էին և միևնոյն կրօնի ոգով վառուել։

Այս անգամ Մահմեդին ուղեկից եղան և իւր ինն կանայքը, որոնք տարվում էին դեսպակներով։ Նա ճանապարհ ընկաւ մի ահագին բազմութեան հետ, որ ոմանց ասելով չիսուն հինգ հազար, ոմանց՝ իննսուն հազար և դարձեալ ոմանց՝ հարիւրքառասուն հազար ուխտաւորներից էր բաղկացած։ Կարաւանում կային և զոհուելու համար տարուող բազմաթիւ ուղտեր՝ գոյնզգոյն ծաղիկներով ու դրօշակներով զարդարուած։

Առաջին գիշերօթը տեղի ունեցաւ Մէդինայից մի քանի մղոն հեռու գտնուող Դուլ Հոլայֆ գիւղի մօտ, ուր մի նախորդ ուխտագնացութեան ժամանակ Մահմեդն և իւր աշակերտներն իրենց զէնքերը վայր էին դրել և ուխտաւորի հանդերձ հագել։ Հետևեալ արշալուսին, մզկիթում աղօթք անելուց յետոյ, նա հեծաւ իւր Ալ Ասվա ուղտն և Բայդայի հովիտը մտնելուն պէս՝ Թալբիջա աղօթքը կարդաց, որին բոլոր բազմութիւնը ձայնակից եղաւ։ Այդ հանդիսաւոր աղօթքի բովանդակութիւնը հետևեալն է. «Այս տեղ եմ, քեզ պաշտելով, ո՛վ Աստուած։ Այս տեղ եմ, քեզ պաշտելով։ Ընկերակից չունիս դու։ Քե՛զ միայն արժանի է երկրպագել։ Ամեն բարութիւն քեզնից է։ Քո՛նն է միայն արքայութիւնը։ Ոչ ոք չկայ, որ դրա մէջ բաժանակից լինէր քեզ։»

Այդ այն աղօթքն է, ասում է իսլամական աւանդութիւնը, որ կարդացել էր Աբրահամ նահապետը՝ Կուբէիս լերան գագաթից մարդկային ազգին ճըշմարիտ հաւատ քարոզելիս. և այնքան հրաշալի էր նրա ձայնը, որ ամբողջ աշխարհի կենդանի արարածները լսեցին, և մինչև անգամ դեռ մօր արգանդից

չելած մանուկն աղաղակեց. «Ես այստեղ եմ քեզ պաշտելով, ո՜վ Աստուած։»

Ուխտաւորների երկարաձիգ կարաւանն այսպէս շարունակում էր իւր ոլորապտոյտ ընթացքը լեռների ու հովիտների միջով, և նրանց միաբերան աղօթքներն ու հառաչանքներն արձագանք էին տալիս անապատների մէջ։ Նրանք երկիւղ չունէին թշնամական զօրքերի հանդիպումից և արգելքից, որովհետև Իսլամը տիրաբար իշխում էր գրեթէ ամբողջ Արաբիայում։ Մահմեդը մօտեցաւ սրբազան քաղաքին այն իսկ բարձունքից, ուստի իջել էր Մէկկայի առման ժամանակ, և ներս մտաւ Բէնի Շէյբա կոչուած դռնով, որ մինչև այս օր սուրբ է համարուած։

Մի քանի օրից յետոյ Մէկկա հասաւ և Ալին, որ գալիս էր Եմէնից, բազմաթիւ ուղտեր բերելով։

Որպէս զի այս ուխտագնացութիւնն օրինակելի մնայ, Մահմեդը որոշեց ամենայն ճշդութեամբ կատարել այն բոլոր ծէսերը, որ հաստատել էր մասամբ նահապետների օրինակին, մասամբ էլ իւր յայտնած պատգամներին համեմատ։ Շատ թուլացած լինելով նա չէր կարող հետի գնալ. ուստի Քեաբէի շուրջն և Սափա ու Մէրվա բլուրների միջև կատարուելիք պտոյտներն ու թափօրը ուղտ նստած արաւ։

Մատաղների զենման ժամանակ նա անձամբ մորթեց վաթսուն երեք ուղտ՝ իւր հասակի իւրաքանչիւր տարուայ համար մի մի հատ, իսկ Ալին մորթեց երեսուն եօթ։

Այնուհետև Մահմեդն իւր գլուխն սափրել տուաւ, սկսելով աջ կողմից։ Նրա գանգուրները հաւասար կերպով բաժանուեցան աշակերտներին և իբ-

րև սրբութիւն պահուեցան։ Կալէդը միշտ կրում էր իւր չալմայի ծալքերի մէջ այդ մազերի մի փնջիկն և հաւատացնում, թէ դա գերբնական զօրութիւն է տալիս նրան պատերազմի ժամանակ։

Մահմեդը զգալով որ իւր կեանքի վախճանը մօտեցել է, կամեցաւ, վերջին անգամ իւր հաւատի սուրբ քաղաքում գտնուելիս, ամուր տպաւորել հետեւողների սրտի ու մտքի մէջ իւր վարդապետութեան էական մասերը։ Այս խորհրդով ստէպ քարոզում էր Քեաբէում ամբիոնի վրայից և կամ դուրսը՝ ուղտի վրայից։ «Մտիկ արէք խօսքերիս,» ասում էր նա, «որովհետև յայտնի չէ, թէ արդեօք վերստին կը տեսնուինք այս քաղաքում։ Ո՞վ ունկնդիրներ, ես էլ ձեզ նման մի մարդ եմ. մահուան հրեշտակն ամենայն ժամ կարող է գալ, և ես հետևելու եմ նրա կոչին։» Նա աշխատում էր ոչ միայն կրօնական ծէսերն ու կարգերը բացատրել, այլ և ընտանեկան ու հասարակային կեանքում գործադրելի կանոններ աւանդել, և այս առթիւ քարոզած մտքերը զօրեղ ու տեւուն ազդեցութիւն ունեցան ամբողջ իսլամական աշխարհի բարոյականութեան, սովորոյթների և բարք ու վարքի վրայ։

Իւր մօտալուտ մահն ի նկատ առնելով ցանկանում էր անշուշտ, որ իւր վախճանից յետոյ ազգականների ու բարեկամների, և մանաւանդ սիրական Ալիի վիճակը (Ալիի, որ իւր վերջին Եմէնեան արշաւանքով դժգոհութիւն էր պատճառել) ապահոված լինի, և այդ էր հարկաւ պատճառը, որ մի բուռն ոգևորութեան ու յափշտակութեան բոպէին

Հետեւեալ հանդիսաւոր փափագը յայտնեց իրեն ունկն-
դիր բազմութեան։

«Դուք հաւատում էք,» ասաց նա, «որ Աս-
տուած մի է, որ Մահմեդը նրա մարգարէն և առա-
քեալն է. որ արքայութիւնն ու դժոխքը, մահն ու
յարութիւնը ստոյգ և հաւաստի բաներ են, և թէ
պիտի գայ մի որոշ ժամանակ, երբ ամեն յարութիւն
առնողները դատաստանի առջև կըկոչուին։»

Ամենքը պատասխանեցին. «Այո, հաւատում ենք
այդ բոլորին։» Այն ժամանակ նա դաւանութեան
այդ կէտերով հանդիսաբար երդուեցրեց ունկնդիր-
ներին միշտ սիրել ու յարգել իւր ընտանիքը, և մա-
նաւանդ Ալիին։ «Ով որ ինձ սիրում է,» ասաց, «թող
Ալիին էլ բարեկամ ճանաչէ։ Թող Աստուած հովանի
լինի նրա բարեկամներին և երեսը դարձնէ թշնամի-
ներից։»

Ասում են, թէ այդպիսի մի բացօթեայ քարոզու-
թիւնից յետոյ, որ մարգարէն արել էր ուղտի վրայից,
Ալլահ Կուրանի հետևեալ հռչակաւոր տունը լսելի
արաւ 'ի վերուստ. «Վայ նրանց այս օր, որոնք ու-
րացան ձեր հաւատը։ Մի վախենաք նրանցից. ինձ-
նից վախեցէք։ Այս օր ես ձեր հաւատը կատարեալ
արի և իմ շնորհը ձեր մէջ լրացրի։ Ինձ հաճելի է,
որ Իսլամը լինի ձեր հաւատը»։

Արաբացի պատմաբանների ասելով՝ մարգարէի
նստած Ալ Կասվա ուղտն այդ խօսքերը լսելուն պէս
երկիւղածութեամբ չոքեց։ «Այդ խօսքերը,» ասում
են նրանք, «օրէնքի կատարումն ու կնիքն էին,
որովհետև նրանցից յետոյ էլ ոչ մի յայտնութիւն
չեղաւ։»

Ու խոստումնով բոլոր ծէսերն ու պարտքերն այդ կերպով աւարտելուց և իւր ուսման հիմքերը լիովին բացատրելուց յետոյ՝ Մահմեդը վերջին անգամ մնաս բարով ասաց իւր մայրենի քաղաքին և ապա թէ իւր աղօթարար զինուորութեան հետ միասին վերադարձաւ Մէդինա։

Քաղաքը հեռուից նշմարելուն պէս նա բարձրացրեց ձայնն ու գոչեց. «Մեծ է Աստուած։ Մեծ է Աստուած։ Մի է Աստուած։ Նա ընկեր չունի։ Նրանն է արքայութիւնը։ Նրան միայն վայել է օրհնութիւն։ Նա ամենազօր է։ Նա կատարեց իւր խոստումը։ Նա օգնեց իւր ծառային և ցրուեց ամեն թշնամիներին։ Վերադառնանք մեր տներն և նրան պաշտենք և օրհնենք։»

Այսպէս վերջացաւ մարգարէի հրաժեշտի կոչուած ուխտագնացութիւնը, որ վերջինն էր։

## ԼԵ.

### Ալ Ասուադ եւ Մոսէյլիմա անունով երկու սուտ մարգարէներ։

Մահմեդի առողջութիւնը նրա Մէդինա վերադառնալուց յետոյ շարունակ թուլանում էր, սակայն իւր եռանդը կրօնական իշխանութիւն տարածելու մասին չէր թուլացել, և նա մեծամեծ պատրաստութիւն էր տեսնում Ասորիք և Պաղեստինա արշաւելու։ Բայց մինչ նա օտար երկիրներ նուաճելու մտքեր էր որոճում, նոյն իսկ Արաբիայում երկու հակառակ մարգարէներ ոտքի ելան նրա իշխանութիւնը մերժելու համար։ Մէկի անունն էր Ալ Ասուադ, միւսինը

Մոսէյլմա։ Ճշմարիտ հաւատացեալները երկուսին էլ իրաւամբ «երկու խաբեբայ» անուանեցին։

Ալ Ասուադը, մի կորովամիտ ու համոզիչ ճարտասան, նախ կռապաշտ էր, յետոյ Իսլամ էր ընդունել, վերջապէս դրանից էլ հրաժարուելով, ինքն իրեն մարգարէ հռչակել և իւր սեփական կրօնը հնարել։ Այդ կրօնական դիւրաթեքութեան համար նորան անուանել էին Ալհալա, այսինքն հողմացոյց։ Մահմեդի օրինակին հետևելով նա պնդում էր, թէ երկնային յայտնութիւններ է ստանում երկու հրեշտակի միջնորդութեամբ։ Որպէս ձեռնածութեան արուեստին և բնական կախարդութեան հմուտ մարդ՝ նա շլացնում էր ամբոխին ճիւաղային կամ առաջօք երևոյթներով, որ իբրև հրաշք էր արժեցնում, այնպէս որ մի քանի մահմեդական գրագէտներ հաւատացած են, թէ նա իրօք օգնութիւն էր ստանում երկու չար դևերից։ Նրա խաբուսիկ հնարները մի քանի ժամանակ մեծ յաջողութիւն ունեցան, որ ապացոյց է, թէ այն դարում արաբացիք որ աստիճան անհաստատ էին հաւատի խնդիրներում և որքան դիւրամէտ ամեն տեսակ կրօն ընդունելու։

Մահմեդի ձեռքով Երջանիկ Արաբիայի վրայ կուսակալ կարգուած Բադհան պարսիկը այդ միջոցին մեռաւ։ Ալ Ասուադը, որ արդէն մի հզօր աղանդի պարագլուխ էր դարձել, սպանեց նրա որդուն ու ժառանգին, ամուսնացաւ նրա այրի կնոջ հետ, նախ մեռցնելով դրա հօրը, և վարչութեան ղեկը յափշտակեց։ Նաջրանի բնակիչներն իրենց քաղաքը հրաւիրեցին նրան. Եմէնի Սանաա մայրաքաղաքն էլ նրա առջև իւր դռները բաց արաւ, և այսպէս կարճ միջո-

ցում ամբողջ Երջանիկ Արաբիան Նրա իշխանութեան տակ ընկաւ։

Մահմեդը տանջվում էր մի վտանգաւոր հիւանդութեան առաջին ցաւերով և Ասորիք արշաւելու պատրաստութիւններ տեսնելու վրայ էր, երբոր այդ յափշտակութեան լուրն առաւ։ Նա զայրացաւ իւր մտքերի իրագործմանը վտանգ սպառնացող արգելքից և տեսնելով որ այդ վտանգը միայն մի մարդու կեանքից է կախուած, հրաման ուղարկեց Ալ Ասուադի մօտ գտնուող իւր մի քանի մտերիմներին՝ յայտնի կամ ծածուկ կերպով սպանելու նրան, քանի որ Ալիի նոր հռչակած յայտնութեամբ այդ երկու միջոցն էլ կարելի էր գործ դնել հաւատի ամեն թշնամիների դէմ։ Երկու հոգի յանձնառու եղան այդ հրամանը կատարել, սակայն ոչ այնքան կրօնական եռանդից դրդուելով, որքան վրէժխնդրութեան զգացմունքից։ Մէկն էր Բայիսը, որ մահու չափ նախատուած էր յափշտակչից. միւսն էր Նրա նոր ամուսնի ըսպանուած հօրեղբօր որդի Դայլէմացի Ֆիրուզը։ Նրանք գնացին այդ կնոջ մօտ, որ երեւի թէ բռնի էր միացած Ալ Ասուադի հետ, և յիշեցրին, թէ նա պարտաւոր է, արաբացոց արեան օրէնքով, վրէժխնդիր լինել իւր հօր և առաջին մարդու սպանութեան համար։ Մեծ դժուարութեամբ համոզեցին նրան օգնել իրենց՝ գիշերուայ մթնով Ալ Ասուադի ննջարանը մտնելու, ուր նա քնած էր։ Ֆիրուզը դաշոյնով հարուած տուաւ նրա կոկորդին. սակայն մահացու վէրք չհասցրեց։ Ալ Ասուադը տեղից թռաւ, և նրա աղաղակը պահապաններին վրդովեց։ Սակայն կինը դուրս ելաւ և միամտացրեց նրանց ասելով, թէ մարգարէն

երկնային ներշնչութեան ներքոյ է։ Մարդու ձայնն էլ այդ միջոցին հատաւ, որովհետև սպանիչներն արդէն գլուխը կտրել էին։ Արշալուսին Մահմեդի դրօշը նորից պարզուեցաւ քաղաքային պարսպի վրայ և քարոզը փողի ձայնով հնչեցրեց Ալ Ասուադի կամ խաբեբայի մահուան լուրը։ Դրա իշխանութիւնը ծագեց և ջնջաւ չորս ամսուայ ընթացքում։ Դիւրահաւատ ժողովուրդը նոյն հեշտութեամբ դարձեալ Իսլամ ընդունեց, ինչպէս որ առաջ թողել էր։

Միւս խաբեբան էր Հոնիֆացի Մոսէյլմա արաբը, որ իշխում էր Եամամա քաղաքի ու նահանգի վրայ, Կարմիր ծովի և Պարսից ծոցի մէջ տեղում։ Հիջրէթի իններորդ թուականին նա իւր ցեղի կողմից դեսպան էր եկել Մէկկա և Մահմեդի հաւատն ընդունել. բայց տուն վերադառնալուն պէս սկսել էր քարոզել, թէ ինքն էլ մարգարէութեան շնորհ է ստացել Աստուծուց և կոչուած է աջակից լինել Մահմեդին մարդկային ազգի փրկութեան գործում։ Այս նպատակով Մոսէյլման շարադրել էր մի կուրան և յայտարարել, թէ դա էլ աստուածաշունչ ճշմարտութիւն է։ Այդ մարդու վարդապետութիւնը նրանով էր նշանաւոր, որ մի ստորացուցիչ բնակարան էր յատկացնում հոգուն ներքին որովայնի կամ փոքրափորի սահմանում (in the region of the abdomen)։

Մոսէյլման իւր ազդեցութեան ու ճարպիկութեան շնորհիւ կարճ միջոցում տարածեց իւր ուսմունքը դիւրահաւան ազգակիցների մէջ և յաջողութեամբ փքանալով՝ այսպէս սկսուող նամակ գրեց Մահմեդին.

«Ալլահի Մոսէյլմա մարգարէից Ալլահի Մահմեդ

մարգարէին։ —Ե՛կ բաժանենք տխեղերքը․ կէսը քեզ լինի, կէսն ինձ։»

Այդ նամակն էլ Մահմեդի տկարութեան սաստկացած և սպառազինութեան հոգսերով պատաղուած միջոցին նրա ձեռքն ընկաւ։ Առ այժմ նա շատացաւ հետևեալ պատասխանով.

«Ալլահի մարգարէ Մահմեդից Մուսէյլմա խաբեբային՛։—Աշխարհը Աստուծունն է, և Աստուած տալիս էդրան ՚ի ժառանգութիւն իւր այն ծառաներին, որոնք իրեն հաճելի են։ Երանի՜ նրանից երկնչողներին։»

Միւս ստիպողական գործերի պատճառով Մահմեդն առ ժամանակ անպատիժ թողաւ Մուսէյլմայի յափշտակութիւնը։ Այդ պատիժը մի ուրիշ օրուան էր վերապահուած։

## ԼԸ.

*Զօրքը պատրաստվում է Ասորիք արշաւելու։—Օսաման սպարապետ է նշանակվում։—Մարգարէի՝ զօրքին ուղղած հրաժեշտի խօսքը։—Վերջին հիւանդութիւնը։—Մզկիթում ասած քարոզը։—Նրա մահն եւ մահուան հանգամանքները։*

Արտաքոյ կարգի պատրաստութիւններից յետոյ, հիջրէթի տասնմէկերորդ թուականի սկզբում, մի ահագին զօրք էր պատրաստ Ասորւոց երկիրն արշաւելու։ Մահմեդի մտքի կարողութեան նուազելուն ապացոյց էր, որ նա այդ մեծ բանակի վարչութիւնը փոխանակ մի հնօրեայ և փորձառու զօրապետի յանձնելու, քսան տարեկան Օսամա պատանուն յանձնեց։ Այդ շնորհը մի երախտագիտական ազնիւ զգացմուն-

քից յառաջ եկած պիտի լինէր։ Օսման Մահմեդին հաւատարիմ Սէիդ ազատագրի որդին էր, Սէիդի, որ անձնուիրութեան այնպիսի մեծ և ակներև ապացոյց էր տուել, յօգուտ մարգարէի հրաժարուելով իւր գեղեցիկ ամուսնուց։ Սէիդը մինչև վերջին րոպէն նոյն անձնազոհ ու եռանդուն աշակերտն էր մնացել և հաւատի նահատակ հանդիսացել Մութայի պատերազմում։

Մահմեդը գիտակ էր իւր ընտրութիւնից յառաջ գալիք վտանգին և երկիւղ զգալով, թէ գուցէ գնդերը չհնազանդուին երիտասարդ սպարապետին, մի ընդհանուր զօրահանդէսի ժամանակ հնազանդ լինելու յորդոր կարդաց զինուորութեան, յիշեցնելով թէ Օսմայի հայր Սէիդը միևնոյն տեսակ արշաւանքի առաջնորդ էր եղած միևնոյն թշնամիների դէմ և նրանց սրով սպանուած. թէ ուրեմն 'ի յարգանս նրա յիշատակի արդարութիւն կըլինէր՝ հօր մահուան վրէժն առնելու հնար տալ որդուն։ Ապա թէ յանձնելով երիտասարդ զօրավարին հաւատի դրօշը, հրամայեց արիաբար մարտնչել Ալլահի միութիւնն ուրացող բոլոր թշնամիների դէմ։

Բանակը նոյն իսկ օրը չու ընկաւ և նստաւ գիշերելու Ջորֆի մօտ՝ Մէդինայից մի քանի մղոն հեռու. սակայն մի քանի պատահարներ արգելք եղան նրա յառաջ գնալուն։

Հենց այդ գիշերուայ կէսին Մահմեդը բռնուեցաւ ժամանակէ 'ի վեր իրեն տանջող հիւանդութեան տաժանելի զայրուցքից, որ ոմանք հայբարեան թոյնի հետևանք էին համարում։ Հիւանդը սաստիկ գլխացաւ զգաց և սկսաւ զառանցել, ինչպէս որ ա-

նելիս է եղել և առաջուայ հիւանդութեան զայրուցք-ների ժամանակ։ Կէս գիշերին խուճապական քնից սթափուելով, հրամայեց սպասաւորին հետևել իրեն և ասաց, թէ Մեդինայի գերեզմանատան մեռելները կանչում են իրեն, որ նրանց համար աղօթելու գը-նայ։ Այդ ծառայի հետ միասին գիշերուայ մթնով նա անցաւ լուռ քաղաքից, ուր ամեն մարդ քնած էր, և մտաւ պարսպից դուրս գտնուող հանգստարանը։

Հանգստարանի մէջ տեղը հասնելուց յետոյ՝ նա բարձրացրեց իւր ձայնն և հանդիսաբար ասաց մե-ռելներին. «Ուրա՜խ եղէք, գերեզմանի բնակիչներ։ Ձեզ համար բացուելու առաւօտն աւելի զուարթ կը լինի, քան թէ այն, որ սպասում է ապրողներին։ Ձեր վիճակն աւելի երանելի է, քան թէ նրանցը։ Աստուած ազատել է ձեզ այն փոթորիկներից, որոնք սպառնում են նրանց, և որոնք մրրկայոյզ գիշերուայ պահակների պէս յաջորդելու են իրար, մէկը միւսից աւելի խաւար։»

Այնուհետև աղօթք արաւ մեռելների համար և և ասաց իւր ծառային. «Իմ ընտրութեան է թո-ղուած՝ կամ մնալ երկրիս վրայ մինչև աշխարհի կա-տարածը, սրա բոլոր բարիքը վայելելով, և կամ թէ ժամ առաջ վերադառնալ Աստուծու մօտ, և ես ընտ-րել եմ վերջինը։»

Այդ ժամանակից սկսած նրա հիւանդութիւնն ևս աւելի ծանրացաւ, թէև նա աշխատում էր ա-ռաջուայ պէս դուրս գալ տանից և սովորութեան համեմատ մի մի օր հերթով մնալ իւր զանազան կա-նանց մօտ։ Նա Մայմոնայի սենեակումն էր, երբ իւր ցաւի խայթոցներն այն աստիճան սաստկացան,

որ նա մահուան մօտենալը գուշակեց։ Այդ միջոցին իւր սիրելի Այէշային տեսնելու և կեանքի վերջին րոպէները նրա հետ անցնելու փափագ զգաց։ Վերկացաւ և գլուխը կապած և Ալիի ու Ալ Աբբասի որդի Փադլի կռներին յենուած՝ դանդաչելով դիմեց դէպի նրա տունը։ Այէշան էլ այդ միջոցին տաժանելի գլխացաւ ունէր, և դարման խնդրեց մարգարէից։

«Ինչացո՞ւ է դարմանը,» ասաց մարգարէն։ «Նրանի թէ ինձնից առաջ մեռնէիր. Ես աչքերդ կըփակէի, մեռելի պատանք կըհագցնէի, գերեզման կ'իջեցնէի և վրադ աղօթք կ'անէի։»

«Այո,» պատասխանեց Այէշան, «և յետոյ կ'երթայիր ապրելու մի ուրիշ կնոջ հետ, որ կ'ուրախանար մահուանս վրայ։»

Մահմեդը ժպտաց այդ յաչաղկոտ սիրոյ արտայայտութիւնը լսելով և անձնատուր եղաւ Այէշայի խնամքին։ Փոքր ինչ յետոյ նրան տեսնելու եկաւ իւր միակ կենդանի զաւակը՝ Ֆաթիման, որ Ալիի կինն էր։ Այէշան սովոր էր ասել, թէ երբէք չէ տեսած մի ուրիշ էակ, որ այդ դստեր չափ նրման լինէր մարգարէին քաղցրաբարոյ բնութեամբ։ Հայրը միշտ ակնածելի զգուանքով էր վարվում նրա հետ. գալուն պէս վեր էր կենում, մօտենում էր, աչքը համբուրում և իւր գորգի վրայ նստեցնում։ Աբուլֆէդա պատմաբանի արձանագրած աւանդութեան նայելով, Այէշան այսպէս էր նկարագրում հօր և աղջկայ վերջին տեսակցութիւնը.

«Բարով եկար, դստրիկ իմ,» ասաց մարգարէն և իւր մօտ նստեցնելով նրան, մի բան շշնջեց ա-

կանչին, որից յետոյ Ֆաթիման սկսաւ լաց լինել։ Աղջկայ տրտմիլը նկատելուն պէս՝ մարգարէն մի ուրիշ բան շշնջեց, և աղջկայ դէմքը նոյն վայրկենին զուարթացաւ։—Այդ ի՞նչ է նշանակում, ասացի ես Ֆաթիմային. մարգարէն այնպիսի մտերմութիւն է շնորհում քեզ, որի նմանը դեռ ոչ մի կնոջ չէ շնորհել։—Ես չեմ կարող Աստուծու մարգարէի գաղտնիքը յայտնել, պատասխանեց Ֆաթիման։ Սակայն մարգարէի մեռնելուց յետոյ պատմեց ինձ, թէ հայրը նախ իւր մահուան մօտենալն էր յայտնել իրեն և յետոյ, աղջկայ արտասուքը տեսնելով, սփոփել նրան, թէ նա էլ շուտով կըհեռանայ այս աշխարհից և բոլոր բարեպաշտ կանանց վրայ դշխոյ կըդառնայ երկնքում։»

Հիւանդութեան երկրորդ օրը Մահմեդը մի հրատապ տենդ ունեցաւ և հրամայեց սափորով ջուր ածել իւր գլխի ու մարմնի վրայ։ «Այժմ զգում եմ,» գոչում էր նա ցաւի զայրույթքից, «թէ Խայբարի թոյնն ինչպէս է կտրտում փորոտիքս։»

Փոքր ինչ դիւրութիւն զգալուց յետոյ հիւանդը խնդրեց, որ իւր տան կից մզկիթը տանեն իրեն։ Այն տեղ մի աթոռի կամ ամպիոնի վրայ նստած՝ ջերմեռանդ աղօթք արաւ և դառնալով բազմաթիւ ժողովրդին, ասաց.«Եթէ ձեզնից մէկի խիղճն անհանգիստ է, թող պարզ ասէ, որպէս զի նրա համար թողութիւն խնդրեմ Աստուծուց։»

Այն ժամանակ մի մարդ, որ բարեպաշտ մուսլէմ էր համարուած, յառաջ եկաւ և յայտնեց, թէ ինքը խաբեբայ է, կեղծաւոր է և անարժան աշակերտ։ «Ամօթ քեզ,» որոտաց Օմարը։ «Ինչո՞ւ մերկա-

ցար. ինչ որ Աստուած թոյլ էր տուել ծածուկ պահել։» Սակայն մարգարէն յանդիմանեց Օմարին. «Ո՛վ Խաթթաբի որդի,» ասաց նա, «լաւ է այս աշխարհում ամօթից կարմրել, քան թէ այն աշխարհում չարչարուիլ։» Ապա թէ աչքերը համբառնալով սկսաւ աղօթել զղջացող արաբի համար և գոչեց. «Ո՜վ Տէր, տո՛ւր սրան արդարութիւն և հաւատ, և կամքի հաստատութիւն՝ կատարելու քո այն պատուէրները, որ կըթելադրէ իրեն իւր խիղճը։»

Յետոյ նորից դարձաւ ժողովրդին և ասաց. «Եթէ ձեր մէջ մի այնպիսի մարդ գտնուի, որին ես զարկած լինիմ, — ահա մէջքս. թող նա էլ ինձ զարնէ։ Եթէ կայ մէկը, որին ես զրպարտած լինիմ, թող նա էլ ինձ յանդիմանէ։ Եթէ կայ մէկը, որից ես յանիրաւի որևէ բան խլած լինիմ, թող յառաջ գայ և փոխարէնը պահանջէ։»

Բազմութեան միջից մի մարդ յիշեցրեց Մահմեդին երեք դինար արծաթի պարտքը, և անմիջապէս յետ ստացաւ պարտքը տոկոսիքով հանդերձ։ «Լաւ է,» ասաց մարգարէն, «տուգանք տուժել այս աշխարհում, քան թէ յաւիտեանս յաւիտենից։»

Այնուհետև աղօթք արաւ Օհոդեան կռւում և հաւատի միւս պատերազմներում նահատակուած քաջերի համար և բարեխօս եղաւ յանուն այն ուխտի, որ հաստատուած է ապրողների և մեռածների միջև։

Դրանից յետոյ դարձաւ Մոհաջէրներին կամ աքսորուածներին, որոնք ուղեկցել էին իրեն Մէկկայից, և յորդորեց յարգել Անսարներին կամ մէդինացի դաշնակիցներին. «Հաւատացողների թիւն աճում է,» ասաց նա. «իսկ դաշնակիցների թիւը միշտ

նոյնը կըմնայ։ Նրանք իմ ընտանիքս էին, և ես նրանց մօտ ապաստան գտայ։ Բարի արէք նրանց բարերարներին և մի ընկերանաք նրանց թշնամիներին։»

Ապա թէ երեք հրաժեշտի պատուէր տուաւ.

Առաջին. Հալածեցէք Արաբիայից բոլոր կռապաշտներին։

Երկրորդ. Ձերինին հաւասար իրաւունք տուէք ամեն նորադարձներին։

Երրորդ. Հանապազ աղօթք արէք։

Քարոզն ու յորդորակը վերջացնելուն պէս՝ նրան զգուշութեամբ յետ տարան Այէշայի մօտ. բայց նա այնքան յոգնած էր, որ ներս մտնելն և ուշաթափուելն մէկ եղաւ։

Մահմեդի հիւանդութիւնն օր ըստ օրէ խստանում էր, մերթ ընդ մերթ զառանցութեան տեղի տալով։ Այդ միջոցին նա ստէպ մրմնջում էր, թէ տեսնում է Գաբրիէլ հրեշտակին, որ գալիս է Աստուծոյ նրա որպիսութիւնն իմանալու և ասելու, թէ նա ազատ է ինքն որոշել իւր մահուան վայրկեանը, քանի որ Աստուած արգելել է մահուան հրեշտակին մօտենալ նրան առանց իւր թոյլտուութեան։

Մի այդպիսի ցնորման ժամանակ նա հրամայեց կաղամար ու գրիչ բերել, ասելով թէ կամենում է մի քանի կանոններ աւանդել իւր հետևողներին։ Հիւանդապահները վախեցան՝ չլինի թէ այնպիսի բաներ գրէ, որ Կուրանի հեղինակութեան վնասէին։ Լսելով որ նրանք իրար հետ խորհուրդ են անում՝ արդեօք կատարել թէ չկատարել իւր պահանջը, մարգարէն

պատուիրեց նրանց դուրս գնալ սենեակից, և այնու-
հետև ոչ մի բան չասաց խնդրի մասին։

Մի ուրբաթ, որ հանդիսաւոր աղօթքի օր էր, նա ուզեց՝ հիւանդութեան չնայելով պաշտօն կատարել մզկիթում, և դարձեալ ջուր ածել տուաւ իւր գլխի վրայ, որպէս զի զօվանայ ու կազդուրուի. սակայն մի քանի քայլ արած չարած՝ սիրտը գնաց։ Ուշքի գալուց յետոյ՝ Աբու Բեկրին յանձնեց հասարակաց աղօթքը կատարել և ասաց. «Ալլահ իրաւունք է տըւած իւր ծառային՝ ում որ կամենայ, նրան դնելու իւր տեղը։» Ոմանք յետոյ պնդում էին, թէ այդ սանկով մարգարէն կամեցել էր իւր վաղուց փորձուած բարեկամին ու հետևողին իւր պաշտօնի ժառանգ կարգել. սակայն Աբու Բեկրը տրամադիր չէր այդպիսի նեղ մեկնութիւն տալ մարգարէի խօսքերին։

Շուտով Մահմեդն իմացաւ, որ Աբու Բեկրի յայտնուիլն ամպիոնի վրայ մեծ աղմուկ է յարուցել, առիթ տալով կարծելու, թէ մարգարէն վախճանուած է։ Ուստի նա վերջին ճիգը թափելով, Ալիի և Ալ Աբբասի ուսերին յենուեցաւ և դարձեալ մի անգամ մզկիթ գնաց, ուր իւր երևնալն ամենքին ուրախութիւն պատճառեց։ Աբու Բեկրն ընդհատեց աղօթքը. սակայն Մահմեդը հրամայեց նրան շարունակել, և ինքն բեմի վրայ իւր աթոռը նստելով, աղօթքի խօսքերը կրկնեց։ Այնուհետև դարձաւ հաւատացեալներին և ասաց.

«Լսեցի թէ ձեր մարգարէի մահուան մասին պտտող մի լուր շփոթութիւն է պատճառել ձեզ. բայց արդեօք ինձնից առաջ ո՞ր և է մարգարէ յաւիտեան ապրե՞լ է, որ կարծէիք, թէ ես երբէք ձեզ թողնելու

չեմ։ Ամեն բան Աստուծու կամքով է կատարվում և իւր որոշ ժամանակն ունի, որ չէ կարելի ոչ փութացնել, ոչ ուշացնել։ Ես վերադառնում եմ ինձ առաքողի մօտ, և իմ վերջին աւանդն այս է, որ դուք միաբան լինիք, իրար սիրէք, միմեանց յարգէք և օգնէք, միմեանց յորդորէք հաստատուն մնալ հաւատի մէջ և յարատևել բարեպաշտական գործերում։ Միայն այս է երջանկութեան ճանապարհը. մնացածը տանում է դէպի կորուստ։»

Իւր խրատական ճառի վերջաբանում ասաց.«Ես միայն ձեզնից առաջ եմ մեկնում. շուտով դուք էլ ինձ կըհետևիք։ Մահը բոլորիս սպասում է. թող ոչ ոք չաշխատէ հեռացնել նրան ինձանից։ Կեանքս նուիրուած էր ձեր օգտին. մահս էլ այդպէս կըլինի։»

Այդ էին նրա հրապարակաւ ասած վերջին խօսքերը։ Ալին և Ալ Աբբասը նորից տարան նրան Այէշայի բնակարանը։

Յետևեալ օրերից մի օր հիւանդն այնպիսի դիւրութիւն զգաց, որ մահճի մօտ շարունակ հսկող Ալին, Աբու Բեկրը, Օմարն և ուրիշներն առ ժամանակ տուն գնացին իրենց գործերը հոգալու։ Նրա մօտ մնաց միայն Այէշան։ Սակայն դիւրութիւնը խաբուսիկ էր. ցաւերը կրկնապատիկ սաստկացան։ Մեռնելու հիւանդը պատուիրեց ազատութիւն տալ իւր ամեն գերիներին, աղքատներին բաժանել իւր տան բոլոր արծաթը, և յետոյ աչքերը դէպի երկինք ուղղելով, գոչեց. «Մի՛ թողնիր ինձ, Տէր, հոգեվարքիս րոպէին։»

Այէշան իսկոյն մարդ ուղարկեց իւր հօր և Հաֆզայի ետևից։ Մահմեդի մօտ մենակ մնալով նա հի-

ւանդի գլուխն իւր ծունկերի վրայ դրաւ, գթասէր գորովանքով հսկեց վրան և աշխատեց մահուան երկունքը դիւրացնել։ Հիւանդը մերթ ընդ մերթ ջրի մէջ էր թաթխում իւր ձեռն և կամացուկ երեսը թրջում։ Վերջապէս դէպի վեր ուղղեց աչքերն և միքանի վայրկեան ակնապիշ նայելուց յետոյ՝ բեկբեկ ձայնով հեկեկաց. «Ո՞վ Ալլահ, թող այդպէս լինի... արքայութեանդ երանաւէտ սուրբերի դասում։»

«Այդ խօսքերից իմացայ,» ասաց Այէշան, Մահմեդի մահուան հանգամանքը պատմելիս, «թէ նրա վերջին րոպէն հասել էր, և նա գերերջանիկ կեանք էր ընտրել։»

Մի քանի վայրկեանից յետոյ հիւանդի ձեռքերը պաղեցան, և կեանքը շիջաւ։ Այէշան բարձի վրայ դրաւ նրա գլուխն և սկսաւ բարձրաձայն ողբալ, իւր երեսն ու կուրծքը հարուածելով։ Մահմեդի միւս կանայքն էլ, Այէշայի հեծութիւնը լսելով, վրայ հասան, և նրանց աղմկալի կոծ ու լացից մահուան գոյժն ամբողջ քաղաքին յայտնի եղաւ։ Սարսափ տիրեց ժողովրդին, ասես թէ մի սոսկալի հրաշք պատահած լինէր։ Առօրեայ գործերը դադարեցան։ Արդէն վրանները հաւաքած զօրքը հրաման ստացաւ կանգնելու, և չուելու պատրաստ Օսաման, որ արդէն ոտն ասպանդակ էր դրել, ձիի գլուխը դէպի Մէդինա շուռ տուաւ և մարգարէի տան առջև գետին վարսեց նիզակը։

Բազմութիւնը խռնուեցաւ. մեռելի դին տեսնելու, և նոյն իսկ ննջեցեալի սենեակում աղմուկ ու վէճ բարձրացաւ։ Ոմանք իրենց աչքերին անգամ չէին հաւատում։ «Ի՞նչպէս կարող է նա մեռնել,» գոչում

էին մարդիկ. «Միթէ նա չէ՞ մեր բարեխօսը Աստուծու առջև. Ուրեմն ինչպէս կարող է մեռած լինել. Անկարելի՛ է. Նա միայն յափշտակուած է և երկինք վերացած՝ Իսայի (Յիսուսի) և ուրիշ մարգարէների նման.»

Ամբոխը ժամէ ժամ սաստկանում էր տան առջև, աղաղակելով որ մարմինը չթաղուի. այդ միջոցին եկաւ Օմարը, որ նոր էր լսել մահուան բօթը. Նա սուրը հանեց և բազմութիւնը ճեղքելով՝ սպառնաց կտրել նրա ձեռքն ու ոտքը, ով որ միայն կըրյանդգնէր ասել, թէ մարգարէն մեռած է. «Նա չէ՛ մեռած,» գոչում էր նա, «այլ միայն առ ժամանակ հեռացած, ինչպէս որ քառասուն օրով սար էր ելած Իմրամի որդի Մուսան (Մովսէսը), և նրա նման յետ կըդայ.»

Քաղաքի հեռաւոր թաղում գտնուող Աբու Բեկըրը ժամանակին վրայ հասաւ յուսահատ ժողովրդին հանգստացնելու և Օմարին փոքր ինչ զսպելու համար. Նա ներս մտաւ, մեռելի ծածկոյթը յետ քաշեց և գունատ երեսը համբուրելով աղաղակեց. «Դու, որ և՛ հայր և՛ մայր էիր ինձ համար, մահուան մէջ էլ քաղցր ես և կենդանութեան բուրմունք հոսող. Այժմ յաւիտեան երջանիկ ես, որովհետև Ալլահ երբէք չի ենթարկիլ քեզ երկրորդ մահուան.»

Յետոյ վերստին ծածկեց մարմինն և դուրս ելաւ լռեցնելու Օմարին. բայց երբ տեսաւ, որ այդ անելն անհնարին է, բազմութեան դիմեց և ասաց. «Այո, եթէ ձեր երկրպագութեան առարկան միայն Մահմեդն է, նա մեռած է. իսկ եթէ Աստուծուն էք պաշտում, Աստուած մեռնել չէ կարող. Մահմեդը միայն Աստու-

ցու մարգարէն էր, և նոյն ճակատագիրն ունեցաւ, ինչ որ ունեցել են իրենից առաջ աշխարհ եկած առաքեալներն ու սուրբերը։ Ինքն Ալլահ ասել է Կուրանում, թէ Մահմեդը միայն իւր դեսպանն է և մահուան ենթակայ։ Էլ ինչ ուրեմն։ Միթէ մեռնելուն պատճառով երբեք կըդարձնէք նրանից և հաւատը կ՚ուրանա՞ք։ Գիտեցած եղէք, որ այդ ուրացութիւնը չի վնասիլ Ալլահին, այլ միայն ձեր դաստապարտութեան հաւաստի պատճառ կըդառնայ, մինչդեռ նրան հաւատարիմ մնացողների վրայ Աստուծու առատ օրհնութիւնը կ՚իջնի։»

Ժողովուրդը հառաչելով ու լալով ականջ էր դնում Աբու Բեկրին, և որքան աւելի էր ականջ դընում, այնքան էլ յուսահատութիւնը փարատւում էր։ Օմարն անգամ համոզուեցաւ, բայց մխիթարութիւն չէր գտնում, և գետնի վրայ տարածուած աշխարում էր Մահմեդին, որպէս իւր սպարապետին և ընկերին։

Մարգարէի մահը, արաբացոց Աբուլֆէդա և Ալ Ջաննաբի պատմաբանների ասելով՝ տեղի գտաւ իւր ծննդեան վաթսուն երեքերորդ տարեդարձի օրը։ Այդ էր հիջրէթի 11-դ և քրիստոնէական տումարի 632-դ տարին։

Մարմինը թաղման համար պատրաստելու հոգսը ազգականներն ու մտերիմները յանձն առին։ Նրանք պնդում էին, թէ այն հրաշալի բուրմունքը, որ Մահմեդի կանանց և աղջիկների վկայութեամբ ծավալում էր նրա մարմինը կենդանութեան ժամանակ, դուրս է գալիս և այժմ, այնպէս որ, Ալիի ասելով, «նա միևնոյն ժամանակ և մեռած էր թւում և կենդանի։»

Դին լուանալուց և օծելուց յետոյ՝ երեք պատանքով պատեցին—երկուսը սպիտակ, երրորդն Եմէնի շերտաւոր կտաւից։ Այնուհետև այդ բոլորը խունկեցին յամպարով, հալուէով և ուրիշ անուշահոտ բոյսերով, ապա թէ 'ի ցոյց դրին և վրան եօթանասուն երկու աղօթք կարդացին։

Մարգարէի մահը միայն յափշտակութիւն կամ թմրութիւն համարողներին միամտացնելու համար՝ մարմինն երեք օր անշարժ թողին և միայն ա՛յն ժամանակ թաղման պատրաստութիւն սկսան տեսնել, երբոր մահուան նշաններն ակներև դարձան։ Այդ միջոցին վէճ ծագեցաւ, թէ ո՞ր տեղ թաղեն։ Մոհաջէրիք կամ Մէկկայից եկած աշակերտները փաստաբանում էին 'ի նպաստ այդ քաղաքի, որ մարգարէի ծննդավայրն էր. իսկ Անսարեանք պահանջում, որ գերեզմանը Մէդինայում լինի, որովհետև նա ա՛յդ տեղ էր ապաստան գտել և կեանքի վերջին տասն տարին անցուցել։ Մի երրորդ կուսակցութիւն էլ խորհուրդ էր տալիս Երուսաղէմ տանել մարմինը, որովհետև մարգարէներն այն տեղ են թաղուած։ Աբու Բեկրը, որի խօսքը միշտ ահագին կշիռ ունէր, յայտարարեց, թէ Մահմեդն որոշակի ասած է եղել, թէ մարգարէն իւր մեռած տեղը պիտի թաղուի. ուստի և ճիշդ այդպէս վարուելով, գերեզմանը փորեցին Այէշայի տանը՝ իսկ և իսկ այն անկողնի տակ, որի վրայ Մահմեդն աւանդել էր հոգին։

Ծանօթութիւն։ Այէշայի տունը կից էր մզկիթին, որ այն ժամանակ մի անշուք հողէ շինուածք էր՝ կտուրը փայտէ սիւների վրայ հաստատուած և արմաւենու տերևներով ծածկուած։ Դրա շուրջը յետոյ մի ընդարձակ տա-

ճար կառուցին, որ քառակուսի սիւնակարգի ձև ունի, 165 քայլ երկայնութեամբ և 130 լայնութեամբ, անչարկ և չորս դռնով։ Զանազան հաստութեան, գաճած և գոյնզգոյն ներկուած բազմաշար սիւների խւրաքանչիւր կարգի վրայ շարքով բարձրանում են նեղ ու սպիտակ գմբեթներ։ Չորս անկիւնում կանգնած են թեթև ու նրբաւարտ աշտարակներ։

Քառակուսի սիւնակարգի հարաւ-արևելեան անկիւնի մօտ մի ուրոյն տեղ կայ, որ շրջապատուած է կանաչագոյն երկաթէ ցանկով, ցանկն էլ հիւսած է ոսկեզօծ արոյրի թելերով։ Ցանկն ունի մի թզաչափ քառակուսի լուսամուտ, և միայն դրա միջով կարելի է ներս նայել։ Ուխտաւորների երկրպագութեան գլխաւոր առարկան այդ Հաջիրա կոչուած փակ տեղն է, որովհետև դա ամփոփում է իւր մէջ Մահմեդի և իւր երկու բարեկամների և առաջին յաջորդների, այն է Աբու Բեկրի և Օմարի շիրիմները։ Մէդինա գնացող ուխտաւորները դրան հեռուից նշմարելուն պէս՝ չոքում և սկսում են աղօթք անել, մարգարէի դամբանը ողջունելով։ Այն հռչակաւոր հին աւանդութիւնը, թէ Մահմեդի դագաղն ինքն իրեն կախուած է օդի մէջ,— որ քրիստոնեայ գրագէտներն այնպէս էին բացատրում, թէ երկաթէ դագաղն երկու մագնէտի միջև է դրուած,— մի սնոտի առասպել է։

Մզկիթը շատ անգամ փոփոխութիւն կրեց։ Մի ժամանակ վնասուեցաւ ու քանդուեցաւ սոսկալի փոթորկից, բայց Եգիպտոսի սուլթանը վերաշինեց։ Շատ խալիֆներ ընդարձակեցին ու զարդարեցին նրան, և մանաւանդ Վալէդ Ա-նը, որի օրով նուաճուած էր Սպանիան։ Երբ որ Վահաբներն աւերման մատնեցին Մէդինան, մզկիթի մեծագումար գանձերը նրանց ձեռքն ընկան։ Այժմ մզկիթն առաջուայ պէս հոյակապ չէ, և կառավարվում է երեսուն աղաների խորհրդով, որոնց առաջնորդը կոչվում է Շէյխ Ալ Հարամ կամ սրբազան տան վերատեսուչ։ Դա Մէդինայի առաջաւոր անձն է։ Մէդինա ուխտ գնալը թէպէտ շատ աստուածահաճոյ և արժանաւոր գործ է համարուած, բայց Մէկկա գնալու կրօնական պարտքի չափ անհրաժեշտ չէ

մուսլէմների համար։ Այժմ սակաւ են Մէդինա յաճախում։

Այս բոլոր գիտելիքները քաղած ենք Բուրկհարդից, որ ծպտեալ գնացել էր Մէդինա և Մէկկա։ Յայտնի է, որ մուսլէմներից զատ ոչ ոք այդ քաղաքները մտնելու իրաւունք չունի։

## ԼԹ.

*Մահմեդի անձնաւորութիւնն ու բնաւորութիւնը։—Մի քանի մտքեր նրա մարգարէական ասպարէզի մասին։*

Մահմեդը, իւր ժամանակակիցների աւանդած նկարագրին նայելով, մի միջահասակ, թիկնաւէտ և ջլապինդ մարդ էր՝ մեծ ձեռքերով ու ոտքերով։ Երիտասարդութեան ժամանակ շատ ամրակազմ և ուժեղ էր. կեանքի վերջին տարիները սկսաւ գէրանալ։ Գըլուխը մեծ էր, վայելչաձև, և լաւ էր նստած վզի վրայ, որ սիւնակերպ բարձրանում էր լայն կրծքից։ Ճակատը բարձր էր, քունքերի մօտերքում լայն և ծածկուած մինչև յօնքերը տարածուող երակներով, որոնք ուռչում էին բարկութեան կամ գրգռութեան ժամանակ։ Դէմքը ձուաձև էր՝ որոշ և ազնիւ գծերով. կոր քիթ ունէր, սև աչքեր, կամարաձև ու գրեթէ միացած յօնքեր, մեծ և դիւրաշարժ բերան,—որ պերճախօսութեան նշան է,—շատ սպիտակ, փոքր ինչ անջատ և անկանոն ատամներ, ուսերի վրայ հարթ հարթ ընկնող անգանգուր սև մազեր, երկայն ու խիտ մօրուք։

Վարմունքն առ հասարակ հանդարտ էր և հաւասար. սիրում էր մի մի ժամանակ կատակ անել, բայց սովորաբար ծանրաբարոյ ու լուրջ էր, թէև ատամներին նայելով մի հրապուրիչ ժպիտ ունէր։ Երեսի գոյնն արաբներին յատուկ գունից կարմիր էր,

և դէմքը յուզման ու չափշտակութեան ժամանակ մի բորբոք փայլ էր տալիս, որ մարգարէութեան գերբնական լոյս էր թւում աշակերտներին։

Մտաւորական ձիրքերն անտարակոյս սովորականից դուրս էին։ Նա օժտուած էր արագ ըմբռնողութեամբ, զօրաւոր յիշողութեամբ, վառ երևակայութեամբ և հնարագիտ ոգով։ Թէև ՚ի մանկութիւնէ շատ կրթուած չէր, բայց և այնպէս ուշադիր դիտողութեամբ սրեց ու մշակեց իւր միտքն և ճոխացրեց բազմատեսակ գիտելիքներով, որոնք վերաբերվում էին իւր դարում գոյութիւն ունեցող և կամ հնուց աւանդուած կրօնական դրութիւններին։ Առօրեայ խօսակցութիւնը ծանր և առակաւոր էր և արաբներին սիրելի առածներով ու խրատական առասպելներով ճոխ համեմուած։ Երբեմն երբեմն, և յատկապէս յուզման միջոցին, պերճախօս էր, և այդ պերճախօսութեան նպաստում էր դաշնակաւոր ու հնչուն ձայնը։

Ներակրի և ըմպելիքի մէջ չափաւոր էր և խըստիւ պաս պահող։ Չէր սիրում արտաքին զարդ, որով շփանում են ցուցամոլ ու փոքրոգի մարդիկ, և հնարովի չէր իւր հագուստի պարզութիւնը, այլ ծագում էր այդ չնչին նշաններն իսկապէս արհամարհելուց։ Հագուստը երբեմն բրդից էր, երբեմն Եմէնի շերտաւոր կտաւից, և շատ անգամ կարկատուն։ Չալմա էր կրում գլխին, որովհետև իւր ասելով հրեշտակներն էլ չալմա են կրում, և այնպէս էր փաթաթում, որ մի ծայրն ուսերի միջով կախուած մնար, որովհետև հրեշտակներն էլ այդպէս են անում։ Արգելում էր զուտ մետաքսէ զգեստ հագնել, այլ թոյլ էր տա-

լիս մետաքսի ու վշի խառնուրդ։ Արգելում էր նաև կարմիր հագնել և ոսկէ մատանիներ գործածել։ Ինքն ունէր մի արծաթէ կնքաւոր մատանի, որի վրայ փորագրուած էր. «Մահմեդ՝ պատգամաւոր Ալլահի,» և մատանու փորուած երեսը դարձնում էր դէպի ներս, այսինքն դէպի ափը։ Շատ ուշադիր էր իւր մաքրութեան և սոէպ լուացվում էր։ Մի քանի բաներում հեշտասէր էր։ «Երկու բան մանաւանդ մեծ զմայլանք են պատճառում ինձ. կանայք և բուրմունք,» ասում էր նա։ «Դրանք աչքերս պարարում են և աղօթելու եռանդս բորբոքում։»

Երևի թէ մաքրութիւնից և հոտաւէտ իւղերի գործածութիւնից էր յառաջ գալիս այն քաղցր բուրմունքը, որ աշակերտների ասելով նրա մարմնին ընդաբոյս և գերահրաշ բան էր։ Մահմեդի կնասիրութիւնն իւր բոլոր գործերի վրայ ազդող էր։ Ասում են թէ մի որ և է գեղեցիկ կնոջ ներկայութեան ժամանակ նա սովոր էր շփել իւր ճակատն և մազերը կոկել, կարծես թէ աւելի վայելուչ երևնալու համար։

Թէ որքան կին ունեցաւ նա՝ ստոյգ յայտնի չէ։ Միւս արաբացի պատմաբաններից աւելի զգուշաւոր Աբուլֆէդան տասնհնգի է հասցնում նրանց թիւը, թէև ոմանց ասելով քսանհնգի էլ կը հասնէր։ Մեռնելու ժամանակ ինն կին ունէր. իւրաքանչիւրի բնակարանը ջոկ էր և բոլորինը Մէդինայի մզկիթի մօտերքում։ Իւր հետևողներին թոյլ տրուած թուից աւելի կին ունենալու արտօնութիւնը նա բացատրում էր իւր ազգի համար մարգարէների սերունդ յառաջ բերելու փափագով։ Եթէ այդ էր իրօք իւր փափագը, դա 'ի դերև ելաւ, որովհետև իւր ա-

մեն զաւակներից միայն Ֆաթման՝ Ալիի կինը, կեն-
դանի մնաց. բայց դա էլ հօր մահից յետոյ երկար
չապրեց։ Իսկ դրա զաւակներից ոչ ոք խալիֆների գա-
հի վրայ չնստաւ, բացի անդրանիկ Հասան որդուց։

Մահմեդն արդար էր իւր մասնաւոր գործերում։
Թէ բարեկամի և թէ օտարականի, թէ հարստի և
թէ աղքատի, թէ զօրեղի և թէ տկարի հետ հաւա-
սար էր վարվում, և սիրուած էր հասարակ ժողովր-
դից այն մարդասիրութեան համար, որով սովոր էր
ընդունել նրանց և գանգատները լսել։

'Ի բնէ ցասկոտ էր, սակայն գիտէր սանձել իւր
բարքը, այնպէս որ նոյն իսկ ընտանեկան կեանքի
անբռնազբօս պայմաններում համբերող ու բարեմոյն
էր։ «Ես ծառայել եմ նրան իմ ութնամեայ հասակից
սկսած,» ասում էր նրա Անաս սպասաւորը, «և եր-
բէք չէ պատահել, որ նա ինձ յանդիմանէր, թէև
շատ բան էի փչացնում։»

Այժմ խնդիր է ծագում, թէ արդեօք նա իրաւ մի
անսկզբունք խաբեբայ էր, ինչպէս որ շատերը պնդել
են։ Արդեօք Մահմեդի բոլոր տեսիլներն ու յայտ-
նութիւններն իրաւ գիտութեամբ հնարուած սուտեր
էին և իւր ամբողջ վարդապետութիւնը խաբէական
հիւսուածք էր։ Այս խնդիրը քննելիս չպիտի մոռա-
նանք, որ նա մեղադրելի չէ այն բազմաթիւ օտարո-
տի և այլանդակ բաների համար, որ գոյութիւն ու-
նին իւր անուամբ։ Շատ ու շատ յայտնութիւններ ու
տեսիլներ, որոնք լսուած են իբր թէ նոյն իսկ Մահ-
մեդի շրթունքից, շինծու են. իսկ իրեն վերագրուած
հրաշքները՝ մոլեռանդ մուսլէմների շարադրութիւն։
Նա ինքն բացորոշ կերպով և շատ անգամ մերժել է

ամեն հրաշք, բացի Կուրանից, որ նա ամեն հրաշքներից վեր էր դասում, 'ի նկատ առնելով դրա անզուգական արժանիքն և երկնքից իրեն յայտնուելու եղանակը։ Եւ այս տեղ մենք պարտաւոր ենք մի քանի դիտողութիւններ անել այդ հռչակաւոր յիշատակարանի մասին։ Մինչդեռ ջերմեռանդ մուսլէմների և ամենագիտուն մոլլաներից մի քանիսի համար արդէն Կուրանի ոճի ու յօրինուածքի աննման ազնուութիւնն և Մահմեդի վկայուած անգրագիտութիւնը նրա աստուածային ծագման ապացոյց են,—միւս կողմից ոչ այդքան բարեպաշտ քննիչները ուրիշ բան չեն տեսնում այդ գրքի մէջ, բայց եթէ գեղեցկութիւնների ու պակասութիւնների մի անկապ և անկարգ քաօս՝ մթութիւններով, կրկնութիւններով, Ս. Գրքի աղճատուած պատմութիւններով և ակներև հակասութիւններով լի և լի։ Ճշմարիտն այս է, որ այժմեան Կուրանը այն չէ, ինչ որ Մահմեդն էր աւանդել աշակերտներին, այլ շատ ու շատ աղաւաղուել է և յաւելուածներ կրել։ Նրա մէջ ամփոփուած յայտնութիւնները հաղորդուել են տարբեր ժամանակ, զանազան տեղ և զանազան անձերի առջև։ Երբեմն նրանք գրվում էին Մահմեդի քարտուղարների կամ աշակերտների ձեռքով մագաղաթի, արմաւենու տերևների և կամ ոչխարի թիկնոսկրի վրայ, և այդ ամենը միասին մի արկղ էր ձգվում,—որի պահապանը նրա կանանցից մէկն էր,—երբեմն էլ միայն ունկնդիրների յիշողութեան մէջ ամբարվում։ Հիմք կայ կարծելու, թէ ոչոք հոգ չէր տարել նոյն իսկ Մահմեդի օրով հաւաքելու և դասաւորելու այդ բոլորը. այնպէս որ նրա մեռնելու ժա-

մանակ դրանք գրուած բեկորներ էին։ Միայն նրա մահուանից մի քանի ժամանակ յետոյ Աբու Բեկրը հրամայեց ժողովել և արտագրել նրանց։ Այդ գործը նա յանձնեց Սէիդ իբն Թաբէթին, որ երբեմն Մահմեդի քարտուղարն էր։ Սէիդն ասում էր, թէ Կուրանի շատ մասերն անգիր գիտէ, որովհետև նոյն իսկ մարգարէի թելադրութեամբ գրած է. միւս մասերը, որոնք վերոյիշեալ կոպիտ ձևով էին գրի առնուած, այս և այլ անձերից հաւաքեց. շատ մասերն էլ զանազան աշակերտների շրթունքից գրեց, որոնք հաւաստում էին, թէ նոյն ինքն մարգարէի բերնից են լսել։ Այս եղանակով հաւաքուած բազմազան և այլասեռ կտորները, որոնց մէջ ոչ ժամանակագրական կարգ էր պահուած, ոչ էլ որ և է սիստէմ, Սէիդն անխտիր իրար հետ խառնեց։ Այդպէս կազմուած մատեանից Աբու Բեկր խալիֆը մի քանի օրինակներ արտագրել տուաւ և զանազան իսլամական քաղաքներ ուղարկեց գործածութեան համար։ Սակայն մի փոքր ժամանակ անցնելուց յետոյ այնքան վրիպակներ, յաւելուածներ և իրար հակասող ընթերցուածներ մտան այդ պատճէնների մէջ, որ երրորդ խալիֆ Օսմանը բոլոր ձեռագիրները հաւաքել տուաւ և դրանցից մի հատ Կուրան կազմելով, — որ իւր ասութեամբ իսկականն էր, — միւս ամենը ոչնչացրեց։

Այս պարզ ծանօթութիւնն արդէն հերիք է, որ հասկանանք այդ տարօրինակ յիշատակարանի թերութիւնը կազմող հակասութիւնների, կրկնութիւնների և ուրիշ անհարթութիւնների պատճառը։ Հաւանական է, որ ինչպէս ճշմարիտ նկատել են, Մահմեդը մի և նոյն խրատները կամ մի և նոյն առակներն այլ և այլ

ժամանակ, պէսպէս անձանց, տարբեր խօսքերով պատմած լինի. կամ թէ զանազան մարդիկ մի և նոյն ժամանակ լսած լինին նրա խօսքերն և այլ ձևով ուրիշներին հաղորդած, և նրա այլաբանութիւններն և Ս. Գրքից առած պատմութիւնները տարբեր եղանակով ուրիշներին աւանդած՝ համեմատ իրենց թերի ծանօթութիւններին կամ թէ սխալական յիշողութեան։ Հաւանական է, որ շատ բան, ինչ որ նա պատմած էր, որպէս հին ժամանակներում նախորդ մարգարէներին առաքուած յայտնութիւններ, աշակերտները կրկնած լինին որպէս իրեն իսկ եղած յայտնութիւններ։ Կարծիք էլ կայ, թէ Աբու Բեկրն իւր խալիփութեան սկզբում ձեռնտու համարած լինի շատ բան աւելացնել Կուրանի մէջ, այդ կերպով ապագայ դէպքերում իրեն օգնելու և Իսլամի իշխանութիւնը հաստատելու համար։ Իսկ թէ ինչպիսի նենգամիտ խանգարումներ ու յաւելուածներ կարող էին գործուիլ մարգարէի մահից յետոյ ուրիշ և աւելի անբարեխիղճ մարդկանց ձեռքով,—այդ կարելի է տեսնել մարգարէի Աբդալլահ իբն Սաադ քարտուղարի լիրբ փորձերից, որ արել էր դեռ Մահմեդի կենդանութեան ժամանակ

Այս ամենից երևում է, որ Մահմեդին վերաբերեալ նոյն իսկ գրաւոր յիշատակները չարաչար խարդախուած են, իսկ բերանացի աւանդութիւններն՝ առասպելով լի։ Այս հանգամանքն և՛ս աւելի դժուարացնում է նրա բնաւորութեան և վարմունքի հանելուկի լուծումը։ Նրա կեանքի պատմութիւնը կարծես թէ երկու գլխաւոր մասն ունի։ Առաջինի մէջ, մինչև իւր միջին տարիքը, մենք չենք նշմարում մի

այնպիսի մեծ օգուտ, որ նա կամեցած լինէր ձեռք բերել իրեն վերագրուած ամբարիշտ և աՀագին խաբէութեամբ։ Ի՞նչ էր ուզում ձեռք բերել։ Արդեօք Հարստութի՞ւն։ Նա Հարուստ էր արդէն, Քադիջայի Հետ ամուսնացած լինելով, և իւր կարծեցեալ տեսիլքից առաջ գոյք մթերելու ցանկութիւն ամենևին չէր ցոյց տուել։ Յարգ ու փա՞ռք։ Նա արդէն յարգելի ու մեծարոյ էր իւր ծննդեան քաղաքում, որպէս արդար և խելացի մարդ։ Նա ծագում էր Կորէյշների մեծանուն տոՀմից և դրա գերազնիւ շառաւղից։ Իշխանութի՞ւն։ Քեաբէի վերատեսչութեան և դրա Հետ միասին սրբազան քաղաքի վարչութեան պաշտօնն արդէն սերնդներէ 'ի վեր իւր մերձաւոր գերդաստանին էր պատկանում, և ինքն էլ, իւր դիրքին ու Հանգամանքներին նայելով, կատարեալ իրաւունք ունէր այդ բարձր պաշտօնին Հասնելու։ Այն իսկ օրից, որ նա փորձեց տապալել իւր մանկութեան կրօնը, որի մէջ սնուած էր, նա այդ բոլոր առաւելութիւնների արմատը կտրեց։ Այդ կրօնի վրայ էր Հիմնուած իւր գերդաստանի ամբողջ Հարստութիւնն ու փառքը։ Յարձակուելով այդ կրօնի վրայ նա յարուցանում էր իւր դէմ ազգականների թշնամութիւնը, քաղաքակիցների զայրոյթն և ժողովրդի ատելութիւնն ու զզուանքը, որովՀետև նրանք բոլորն էլ Քեաբէին երկրպագող կռապաշտներ էին։

Արդեօք մարգարէական ասպարէզի վրայ ոտք դնելիս նա ունէ՞ր իւր առջև մի և է փայլուն վիճակ, որ կարողանար փոխարինել այդ զոՀաբերութիւններն և Հրապուրել նրան։ ԸնդՀակառակն՝ նա վարանելով ու ծանրաբար ոտք դրաւ այդ ասպարէզի վրայ և

ամբողջ տարիներ ոչ մի շօշափելի յաջողութիւն չու-նեցաւ։ Իւր ուսմունքը տարածելիս և յայտնութիւն-ները քարոզելիս նա հետզհետէ հեգնութիւն, արհա-մարանք, բամբասանք և վերջապէս մի այնպիսի ան-ողոք թշնամութիւն գրգռեց իւր դէմ, որ թէ իւր և թէ իւր բարեկամների բարօրութիւնն 'ի չիք դարձրեց, իւր գերդաստանի անդամներին և մերձաւորներից շատերին օտար երկիր փախչել ստիպեց և յուսկ յետոյ իրեն էլ հարկադրեց մայրենի քաղաքում թաքնուած մնալ և ապա թէ որպէս աքսորական մի անհաստատ ապաւէն փնտռել տար աշխարհում։

Ի՞նչ էր դրդում Նրան տարիներով յարատևել խաբէութեան շաւղի վրայ, որ իւր բոլոր աշխարհա-յին բարիքը կործանեց, այն էլ կեանքի այն հասա-կում, երբ արդէն դժուար էր նորից վաստակել այդ բարիքը։

Բաւարար նիւթական շարժառիթ չգտնելով, հարկ դատեցինք մի ուրիշ բացատրութիւն տալ իւր խորհրդաւոր կեանքի այդ շրջանին, և յայտնեցինք մեր կարծիքը սոյն գրքի սկզբում, ուր ջանացինք ցոյց տալ, թէ ինչպէս Նրա բանդագուշող ու երազատես ոգին առանձնութեան, ճգնութեան, պահքի, աղօթ-քի, խոկման և մարմնի հիւանդութեան պատճառով աստիճանաբար մի տեսակ զառանցութեան վիճակի հասաւ, որի մէջ նա երևակայեց, թէ երկնային յայտ-նութիւններ է ընդունում և ինքն կոչուած է Ամե-նաբարձրելոյ մարգարէն լինել։ Հակամէտ ենք կար-ծելու, թէ այս դիպուածում մի անձնախաբութիւն կար, և թէ նա տեսիլքի կամ երազի ճշմարտութեան

հաւատում էր, մանաւանդ այն օրից, երբ եռանդուն ու մտերիմ Քադիջան և գիտնական ու խորամանկ Վարական նրա տարակոյսները փարատեցին։

Մի անգամ համոզուելուց յետոյ, թէ իրեն 'ի վերուստ կանչում են գնալ և հաւատ քարոզել, նա կարող էր իւր բոլոր հետագայ երազներն ու սրտի մղումները նոյնպէս մեկնել, բոլորն էլ զանազան կերպով իրեն, որպէս մարգարէի, հաղորդուած աստուածային կամքի ազդեցութիւն համարել։ Տեսանք, որ սաստիկ յուզման ու գրգռութեան միջոցներին նա յափշտակվում ու ցնորվում էր. այդպիսի րոպէներում նա դարձեալ կարող էր երևակայել, թէ Աստուծու հետ հաղորդակցութիւն ունի. և այդ դէպքերին գրեթէ միշտ յաջորդում էր որ և է յայտնութիւն։

Նայելով իւր բոլոր վարմունքին մինչև Մէկկայից փախչելը նա մի տեսակ մտային կուրութեան մէջ գտնուող երազատես է հանդիսանում, լիովին անձնատուր այն համոզման, թէ ինքն մի երկնային գործիք է՝ հաւատի վերաշինութեան համար առաքուած. և իրաւ մի սրտաշարժ ու վսեմ բան կայ այն լուսափայլ շաւղի մէջ, որ բաց էր անում իւր վառ ոգին իրար ներհակ կրօնների ու վայրենի առասպելների բաւղի միջով—դէպի այն մաքուր և հոգևոր երկրպագութիւնը միակ ճշմարիտ Աստուծուն, որ ձգտում էր հաստատել իւր մանկական օրերի կոյր կռապաշտութեան փոխարէն։

Կուրանի այն բոլոր մասերը, որոնք, ինչպէս կարծում են, այդ միջոցին են յայտարարուած,—որքան էլ անկապ հասած լինին մինչև մեր օրերն և որքան

էլ ձեռքէ ձեռք անցնելով կորցրած լինէին իրենց առաջին գեղեցկութիւնը,—պարզ ու վսեմ յատկութիւն ունէին և եթէ ոչ կրօնական, գէթ բանաստեղծական ոգևորութեան հոտ են բուրում։ Նրանք ցոյց են տալիս, որ Մահմեդն առատ ըմպել էր Քրիստոնէութեան կենդանի ջրից, և եթէ չէր յաջողել այդ ջուրը բիւրեղային պարզութեամբ խմել, պատճառն այն է, որ ստիպուած էր կտրուած աւազաններից և այնպիսի առուներից հանել, որոնք պղտորուած ու ապականուած էին նոյն իսկ այդ առուների պահպանութեան պաշտօնը կրող մարդկանց ձեռքով։ Նրա մինչև այդ ժամանակ քարոզած կրօնն աւելի մաքուր էր, քան թէ Արաբիայի սուտ քրիստոնեաների վարդապետած կրօնը, և իւր կեանքը համապատասխան քարոզած կրօնի սկզբունքներին։

Այդ է մեր հայեացքը Մահմեդի և իւր ընթացքի վրայ իւր ասպարէզի սկզբում, մինչ նա մի հալածուած և թշուառութեան մատնուած մարդ էր Մէկկայի մէջ։ Սակայն, ինչպէս որ ցոյց ենք տուել նախընթաց գլուխներում, մի էական փոփոխութիւն յառաջ եկաւ իւր Մէդինա փախչելուց յետոյ, ուր փոխանակ միայն ապաստան ու հովանաւորութիւն գտնելու, որոնց կարօտ էր, որպէս մարգարէ ընդունուեցաւ և հաւատացողների օր ըստ օրէ աճող հզօր ու ռազմասէր զօրութեան պետ և գլուխ հանդիսացաւ, որին անպայման հնազանդվում էին։ Այդ ժամանակից 'ի վեր նա սկսաւ ստէպ ստէպ առաջնորդուիլ իւր գործերում աշխարհային կրքերով, աշխարհային հաշիւներով՝ փոխանակ հետևելու այն հոգեռանդն յափշտակութեան, որ, ինչքան էլ սխա-

լական լինէր, դարձեալ մի բարեպաշտութեան փայլ էր տալիս իւր առաջուայ ընթացքին։ Գթութեան, ներողամտութեան, համբերութեան և հեզութեան հին քարոզները յանկարծակի դէն ձգուեցան. նա վրէժխնդիր դարձաւ մինչև այժմ իրեն հալածող անձերից և սկսաւ մի ընդարձակ իշխանութեան թեկնածել։ Նրա ուսմունքը, պատուէրներն ու գործերն սկսան իրար հակասել և ամբողջ վարմունքն անկանոն և երերուն դարձաւ։ Այդ ժամանակից 'ի վեր նրա յայտնութիւններն այնպէս ստէպ էին յարմարվում որոշ պէտքերին և ըստ պատեհի յառաջ գալիս, որ մենք ստիպուած ենք կասկածելի համարել իւր անկեղծութիւնն և չհաւատալ, թէ նա դարձեալ առաջուայ պէս կոյր լինէր նրանց նկատմամբ։ Սակայն պէտք է յիշել, ինչպէս որ արդէն ասած ենք, թէ այդ յայտնութիւններին վերաբերեալ տեղեկութիւնները միշտ վստահելի չեն։ Հաւանական է, որ շատ բան, ինչ որ նա յայտնել էր իբրև իւր անձնական կամքի արգասիք, յետոյ որպէս երկնային պատգամ պատմուած լինի։ Թերևս շատ անգամ էլ, ինչպէս որ ակնարկել ենք, նա իւր անձնական միտումներն ու ներքին դրդումներն աստուածային ազդեցութիւն համարած լինի, կարծելով թէ հաւատ տարածելու կոչումն ունեցող մարդու ամեն խորհուրդներն ու մտքերը, որոնք ծառայում են այդ նպատակին, անընդհատ և աստուածային ներշնչութեան մասեր են։

Եթէ անհամաձայն ենք կոպիտ և ամբարիշտ խաբեբայ համարել Մահմեդին, ինչպէս որ արել են շատերը, միւս կողմից էլ տրամադիր չենք ահագին

յառաջատեսութեան և խոր մտածուած աշխարհակալութեան գաղափարի պատիւ ընծայել նրան։ Անտարակոյս նա մեծ հանճարի և բազմահնար երևակայութեան տէր մարդ էր. սակայն մեզ թւում է, թէ ըստ մեծի մասին րոպէական դրդումների ու բերմունքների գերի էր և հանգամանքների ազդեցութեան շուտ ենթարկուող։ Նրա խորհուրդները ծագում էին յաջողութիւնից, և ոչ թէ յաջողութիւնը՝ խորհուրդներից։ Քառասուն տարեկան էր, երբոր սկսաւ իւր ուսմունքն աւետել, և տարիներ անցան, մինչև որ կարողացաւ այդ ուսմունքն իւր յատուկ գերդաստանում տարածել։ Իւր առաքելութեան հրատարակման օրից մինչև Մէկկայից փախուստ տալը տասներեք տարի էր սահել, և ինքն, որ առաջ հարուստ վաճառական էր, այժմ մի աղքատ տարագիր էր դարձել։ Մէդինա ժամանելիս նա գաղափար անգամ չունէր այն աշխարհական զօրութեան մասին, որ պիտի ստանար. իւր միակ ցանկութիւնն էր մի համեստ մզկիթ շինել իւր ուսմունքն աւանդելու համար, և ուրիշ յոյս չունէր, բայց եթէ այն, թէ իրեն թոյլ կըտան անարգել քարոզութիւն անել։ Երբոր յանկարծ իշխանութեան տէր դարձաւ, այդ իշխանութիւնը մի քանի ժամանակ չնչին ասպատակների և տեղական կռիւների համար գործ դրաւ։ Իւր զինուորական մտքերը նիւթական միջոցների հետ ընդարձակուեցան, սակայն ամենևին գերազանց չէին, այլ ստէպ անյաջող։ Նրանք ոչ համարձակ յղացուած, ոչ էլ պնդութեամբ գործ դրուած բաներ էին, այլ ստէպ փոխուող իւր մերձաւոր զօրավարների խորհրդով, երբեմն էլ անշնորհ մարդկանց

տադրանքով, որոնք մոլորեցնում էին նրան։ Եթէ նա հենց սկզբից Արաբիայի ցրուած ազգերը հաւաքե [illegible] 'ի մի ազգ ձուլելու գաղափար յղացած լինէր մի արտաքին աշխարհակալութեան հիմնադիր գլուխ բերելու համար, նա առաջին զինուորական հանճարներից մէկը կլինէր. բայց ընդարձակ աշխարհակալութեան գաղափարը, ինչպէս երևում է, յետոյ միայն, այն էլ յաջողուածքից յառաջ եկած արգասիք էր։

Սրի հաւատը հռչակելու և աւազակ արաբներին օտարի աւարով հրապուրելու րոպէից սկսած Մահմեդը ձգուեցաւ աշխարհակալութեան ասպարէզի վրայ, որ անդիմադրելի բռնութեամբ յառաջ մըղեց նրան։ Եւ զինուորական հմտութիւնից աւելի յաջողութեան նպաստողն այն կրօնամոլ եռանդն եղաւ, որ ներշնչել էր հետևողներին. Նրա քարոզած ճակատագրի հաւատն այնպիսի յաղթանակներ արտադրեց, որ ռազմագիտական ոչ մի հաշուով չէր կարելի գուշակել։

Իւր մարգարէութեան առաջին անստոյգ ու երկբայական քայլերն անելիս նա քաջալերուեցաւ գիտնական Վարակայի խորամանկ խորհուրդներով. իսկ աշխարհակալութեան ասպարէզի սկզբին իրեն օգնական էին Օմարը, Կալէդն և ուրիշ կրակոտ մարդիկ, որոնք յառաջ էին դրդում նրան և նպաստում այն ահագին զօրութիւնը կառավարելու, որ նա ձգել էր շարժման մէջ։ Սակայն այդ բոլոր աջակցութիւնը վայելելով հանդերձ՝ նա ստիպվում էր երբեմն իւր գերբնական առաքելութեան հնարները գործ դնել, և այդպէս անելուց յետոյ՝ հաշտուիլ նաև խաբէու-

թեան հետ, ներելի գտնելով դրան բարեպաշտական նպատակի տեսակէտից։

Մահմեդի պատերազմական յաղթանակները ոչ հպարտութիւն, ոչ էլ սնափառութիւն յարուցին իւր մէջ, որ սակայն անշուշտ կըյարուցանէին, եթէ նրանք շահադիտական նպատակներով ձեռք բերուած լինէին։ Իւր զօրութեան նոյն իսկ գագաթնակէտին հասնելուց յետոյ էլ նա պահպանեց բարք ու վարքի միևնոյն պարզութիւնը, որ ունէր դժբախտութեան օրերում։ Նա ոչ միայն չուզեց արքայական պերճութեամբ շրջապատել իւր անձը, այլ և տաղտուկ էր զգում, երբոր մի տուն մտնելիս յարգութեան անսովոր նշաններ էին ընծայում իրեն։ Նրա փափագած տիեզերական իշխանութիւնը, եթէ ունեցած էլ լինէր մի այդպիսի փափագ, կրօնական էր։ Իսկ գալով իւր ձեռքի տակ աճող աշխարհական զօրութեան, նա չէր պարծենում ու շփանում դրանով, ինչպէս որ չէր էլ աշխատում իւր սերնդի մէջ հաստատել դրան։

Տուրքերից և աւարից իւր շուրջը դիզուող հարստութիւնը գործ էր ածում հաւատի յաղթանակին նպաստելու և դրա չքաւոր աշակերտներին օգնելու համար, այնպէս որ շատ անգամ իւր գանձարանի մէջ մի կոպէկ իսկ չէր մնում։ Օմար իբն Ալ Հարէսի ասելով՝ Մահմեդը մեռնելիս ոչ միայն ոսկի, այլ նոյն իսկ մի արծաթի դրամ չթողաւ, ոչ էլ աղախին, ոչ էլ ստրուկ, և ոչինչ, բայց միայն իւր ծերացած Դալդալ ջորին, իւր զէնքերն ու կալուածքը, որ ընծայեց իւր կանանց, զաւակներին և աղքատներին։ «Ալլահ,» ասում է մի արաբացի մատենագիր,

«պարգեւել էր նրան աշխարհիս ամեն գանձերի բանալին, բայց նա չուզեց ընդունել։»

Այդ՝ բախտի ամեն վիճակներում հաւասար մընացող եւ կարծես թէ սրտագին բարեպաշտութեան հետ միացած կատարեալ անձնուրացութիւնն է, որ դժուարացնում է մարդուս ուղիղ դատել Մահմեդի բնաւորութիւնը։ Որքան էլ նա ստոր կրքեր ունեցած լինէր իւր բնութեան մէջ, մանաւանդ աշխարհական իշխանութեան հասնելուց յետոյ, բայց եւ այնպէս իւր հոգու նախկին ձգտումներն անդադար կրկնվում էին եւ ամեն հողեղէն բաներից վեր ամբառնում նրան։ Նա երբէք չէր մոռանում աղօթքը՝ Իսլամի այդ էական պարտքը, որ անշուշտ մաքրում է մարդուս հոգին։ «Յուսա առ Աստուած»․ այդ էր նրա սփոփանքն ու նեցուկը փորձութեան ու վշտի մէջ։ Ասածներին նայելով՝ նրա բոլոր յոյսը հանդերձեալ կեանքի երջանկութեան մասին հիմնուած էր միայն Աստուածային գթութեան վրայ։ «Ես մի անգամ հարցրի նրան,» պատմում է Այէշան.—Մարգարէ, միթէ ոչոք այսպէս արքայութիւն չի մտնիլ, բայց եթէ Աստուծու ողորմութեամբ, եւ նա պատասխանեց ազդու եւ ջերմ կերպով.—Ոչոք, ոչոք, ոչո՛ք։ —Իսկ դու, ո՛վ մարգարէ, միթէ դո՛ւ էլ նրա գթութեամբ միայն կըմտնես։ Մահմեդը ձեռը գլխին դըրաւ եւ երեք անգամ հանդիսաբար կրկնեց.—Ես էլ արքայութիւն չեմ մտնիլ, եթէ Աստուած իւր ողորմութեամբ ինձ հովանի չլինի։»

Նա Աստուծու կամքին հլու մնաց ամենադառն վշտի րոպէին, երբ գլխաւոր կանգնած էր վաղամեռիկ Իբրահիմ որդու մահճի մօտ, եւ իւր սփոփանքը

միայն այն յոյսն էր, թէ ինքն էլ շուտով կը միանայ որդուն արքայութեան մէջ։ Իբրահիմին հանգստարան յուղարկելիս պաղատում էր Նրա ոգուն՝ գերեզմանի անհեղ հարցաքննութեան ժամանակ հաստատ մնալ հաւատի էական հիմքերին—Աստուծու միութեան և իւր յատուկ առաքելութեան։ Նոյն իսկ իւր մահուան բոպէին, ուր այլ ևս չէր կարող մարդ խաբելու ստոր հաշիւներ ունենալ, դարձեալ նոյն կրօնական եռանդը ցոյց տուաւ և նոյն հաւատը դէպի իւր առաքելական կոչումը։ Իւր շրթունքի վրայ դողդոջող վերջին խօսքերը հաստատ յոյս էին արտայայտում, թէ ինքն էլ շուտով նախորդ մարգարէների երանաւէտ դասը կըմտնի։

Դժուար է հաշտեցնել մի այդպիսի եռանդալից ու հաստատուն բարեպաշտութիւն մի յարատև և ամբարիշտ խաբէութեան հետ. կամ թէ հաշտեցնել Կուրանի մարդասիրութեան մաքուր ու վսեմ քարոզները՝ անարգ կրքերով տոգորուած և միայն գետնաքարշ շահերին հպատակուող ոգու հետ։ Եւ մենք ուրիշ բաւարար եղանակ չենք կարող գտնել Նրա բնաւորութեան և ընթացքի հանելուկը լուծելու համար, բայց միայն ենթադրել, թէ այն մտային մոլորութեան ճառագայթը, որ փայլել էր Նրա զառանցող ոգու վրայ իւր կրօնական յափշտակութեան միջոցին Հարա լերան կէսգիշերային քարայրում, մինչև իւր կեանքի վերջը շարունակում էր քիչ թէ շատ կուրացնել Նրան մի տեսակ մենամոլութեամբ, և թէ Նա մեռաւ, մի երկնառաք մարգարէ կարծելով իրեն։

---

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ԻՍԼԱՄԻ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

Այս գրքի առաջին գլուխներից մէկում մենք հաղորդեցինք այն մասնաւոր գիտելիքները Մահմեդի քարոզած ուսման մասին, որոնք անհրաժեշտ էին հետեւեալ պատմութիւնը հասկանալու համար. այժմ տալիս ենք մի աւելի ընդարձակ տեսութիւն, թէեւ տեղ տեղ կրկնութիւններ անելով։

Իսլամի կրօնը, ինչպէս որ ասած ենք վերոյիշեալ առթիւ, երկու մասն ունի՝ Հաւատ և Դէս, և Հաւատը՝ վեց գլխաւոր գլուխ կամ մասն, որոնք են. 1) հաւատալն Աստուծուն, 2) Նրա հրեշտակներին, 3) Նրա գրքին կամ Կուրանին, 4) Նրա մարգարէներին, 5) յարութեան և վերջին դատաստանին, 6) նախասահմանութեան։ Այս կարգով էլ համառօտ կըխօսենք դրանց մասին։

Հաւատալն Աստուծուն։—Մահմեդն ուսուցանում էր, թէ էր, է և յաւիտեան լինելու է մի Աստուած՝ Արարիչ ամենայնի, որ միակ է, անփոփոխ է, ամենագէտ, ամենազօր, ամենողորմ և յաւիտենական։ Աստուծու միութիւնը՝ քրիստոնեաների Երրորդութեան հակառակ՝ խստիւ շեշտուած է։ Հաւատի դաւանութեան այդ մասն որոշակի արտայայտելու համար հաւատացողը բարձրացնում էր մէկ

մատն և գոչում. «Լա իլլահա իլ Ալլահ»—Աստուծուց զատ Աստուած չկայ, աւելացնելով «Մուհամմէդ ռէսուլ Ալլահ»—Մահմեդն Աստուծու մարգարէն է։

Հաւատալն հրեշտակներին։—Հրեշտակների կամ սպասաւորող ոգիների գեղեցիկ ուսմունքը, որ Արևելքի ամենահին և ընդհանուր դաւանանքներից մէկն էր, ամբողջութեամբ մտած է Իսլամի մէջ։ Նրանք ներկայացուցած են որպէս եթերական, կրակից՝ իբրև ամենամաքուր տարրից ստեղծուած, կատարեալ մարմնի և լուսափայլ գեղեցկութեան տէր, սակայն անսեռ էակներ,—ազատ ամեն կոպիտ զգայական կրքերից և մարդկային տկար ազգի ամեն ախտերից ու միտումներից, եմիշտ մատաղ ու անթառամ։ Նրանք զանազան աստիճաններ ու պարտքեր ունին և տարբեր շնորհք Աստուծու առջև։ Ոմանք երկրպագութիւն են անում երկնային աթոռի շուրջը. միւսներն անդադար փառաբանում են Ալլահին. ոմանք նրա պատգամները կատարող թևաւոր դեսպաններ են, և դարձեալ ոմանք՝ մարդկային զաւակների բարեխօսներ։

Այդ երկնային զինուորութեան գլխաւոր առաջնորդներն են չորս հրեշտակապետ՝ Աստուծու պատուէրները գրի անցնող Գաբրիէլ պատգամաբերը. հաւատի համար մարտնչող Միքայէլ ախոյեանը. մահուան հրեշտակ Ազրայիլն և յարութեան օրը փող հընչեցնելու աւեղ պաշտօնի կոչուած Իզրաֆիլը։ Ազազիլ կամ Արուսեակ անունով մի հրեշտակ էլ կար, որ երբեմն երկնային զօրքերի ամենապայծառ անդամն էր. բայց նա հպարտացաւ և ըմբոստացաւ։ Երբոր Աստուած հրամայել էր հրեշտակներին երկրպագել Ադամին,

Ազազիլն ընդդիմացաւ և ասաց. «Ինչու ես, որ կրակից եմ ստեղծուած, գլուխ տամ դրան, որ հողից է ստեղծուած։» Այդ յանցանքի համար Աստուած նրան նզովելով արտաքսեց դրախտից և անունը Իբլիս փոխեց, որ նշանակում է յուսահատութիւն։ Իւր անկման վրէժը հանելու համար Իբլիսն ամեն տեսակ չարիք է նիւթում մարդկային ազգի որդոց դէմ և ըմբռստութիւն ու ամբարշտութիւն ներշնչում նրանց։

Ստորին կարգի հրեշտակների մէջ կայ մի դաս, որ կոչվում է Մոաքքիբատ. այդ դասից երկու երկու հրեշտակ միշտ հսկում են իւրաքանչիւր մահկանացուի վրայ՝ մէկն աջ կողմից, միւսը ձախից, նրա ամեն մի խօսքն ու գործը դիտելով։ Իւրաքանչիւր երեկոյ նրանք թռչում են երկինք գրաւոր զեկուցումն տալու համար, և հետևեալ օրը նրանց յաջորդում են ուրիշ երկու հրեշտակներ միևնոյն դասից։ Մահմեդական առասպելի ասելով՝ աջակողմեան հրեշտակը ամեն մի լաւ գործ տասն անգամ է արձանագրում, և եթէ մահկանացուն որ և է վատ բան արած լինի, նոյն բարեմիտ հրեշտակն ասում է միւսին. «Եօթն ժամով յետաձգիր գրելդ. թերևս զղջայ, աղօթք անէ և ներումն ստանայ։»

Բացի հրեշտակների դասից՝ Մահմեդը պատուիրում էր հաւատալ նաև Ջին կամ դև կոչուած ոգիներին, որոնք նմանապէս հրեղէն են, սակայն զերծ չեն հողեղէն արարածների ախտերից ու կրքերից և վերջ 'ի վերջոյ դրանց նման մեռնում են։ Այդ կարգի անապատաշրջիկ ոգիներն էին, որ Մահմեդի ասելով, ինչպէս որ արդէն պատմած ենք, այցելել էին նրան

Նակլահի հովտում երեկոյեան հսկման ժամանակ։

Ազազիլ հրեշտակն ապստամբելուց և ընկնելուց և Էբլիս կամ սատանայ դառնալուց յետոյ էլ իշխան մնաց այդ ստորին ոգիների վրայ, որոնք արևելցոց ասելով երկու կարգի են բաժանուած՝ դևերի և պարիկների. դևերը չար հսկաներ են, պարիկները՝ բուրմունքով սնուող քնքուշ ու հեզ էակներ։ Կարծեօք պարիկները բոլորն էլ իգական սեռի են, թէև այս կէտը դեռ մթութեան մէջ է մնացել։ Կարծիք էլ կայ, թէ եւրոպական ըղձանոյշներն հենց այդ մտացածին էակներից սերուած լինին։

Այդ ամեն ոգիներից տարբերվում են Տակուինները և կամ բախտի դստերքը. դրանք պատգամ խօսող և մահկանացուներին չար դևերի որոգայթից զգուշացնող թևաւոր ու գեղեցիկ կանայք են։

Մահմեդը տարբեր աղբիւրներից քաղած լինելով իւր գիտելիքն այդ կիսերկնային էակների մասին, անորոշ ու շփոթ յատկութիւններ է վերագրում նրանց։ Նրա բոլոր ուսմունքն այդ միջանկեալ ոգիների մասին ուրիշ բան չէ, բայց միայն հրէաների, մոգերի և հրապաշտ հեթանոսների կրօններից և առասպելներից առնուած մի խառն հիւսուածք։

Հաւատի երրորդ մասն է հաւատալը Կուրանին, որպէս Աստուածային յայտնութիւն բովանդակող մատենի։ Իսլամական կրօնի ասելով եօթներորդ երկնքում 'ի սկզբանէ յաւիտենից մի գիրք կար, որի մէջ գրուած էին Աստուծու ամեն պատգամներն և բոլոր անցեալ, ներկայ և լինելիք դէպքերը։ Այդ Աստուածային կամքի գրքից ընդօրինակուած պատճէնները Գաբրիէլ հրեշտակը բերում

էր ստորին երկինք և ժամանակ առ ժամանակ այս կամ այն հանգամանքին և կամ պէտքին նայելով, Մահմեդին յայտնում մաս առ մաս։ Որպէս բուն Աստուծու խօսքեր՝ նրանք բոլորն էլ ասուած են առաջին դէմքով։

Թէ ինչպէս գրի առնուեցան ու պահուեցան գրագիրների ու աշակերտների ձեռքով այդ յայտնութիւններն և ինչպէս հաւաքուեցան Մահմեդի մեռնելուց յետոյ Աբու Բեկրի կարգադրութեամբ,—արդէն մանրամասն պատմած ենք։ Եւ այդ անկարգ ժողովածուն—և դա արդարև ուրիշ բան չէ—կազմում է մահմեդականների քաղաքական ու քրէական, որպէս և կրօնական օրէնսգիրքը, որին ամեն ուղղահաւատ գերագոյն մեծարանք է ընծայում։ Բարեպաշտ մարդիկ պարծանք են համարում ունենալ գրափառակազմ ու շքեղ օրինակները։ Կազմի վերնագիրը խստիւ արգելում է դիպչել նրան անմաքուր ձեռով, և անպատկառ գործ է համարվում՝ կարդալիս գօտուց վայր բռնել նրան։ Մուսլէմներն երդվում են նրա վրայ և գուշակութիւն անում, բանալով գիրքն և առաջին աչքի ընկնող տողը կարդալով։ Պէտք է ասել, որ այդ գիրքն իւր ամեն թերութիւններով ու հակասութիւններով հանդերձ,—եթէ դրան դիտելու լինենք լոկ որպէս մէկ մարդու, այն էլ անգրագէտ մարդու գործ,—մի անհատի օրէնսդրութեան սքանչելի յիշատակարան է։

Կուրանից կամ գրաւոր օրէնքից զատ՝ կան և ուրիշ, իբր թէ Մահմեդի շրթունքից լսուած, բազմաթիւ պատուէրներ ու առակներ, որոնք նրա մահից յետոյ ականջալուր վկաների ասութեամբ հաւա-

քուելով արձանագրուած են մի գրքի մէջ, որ «Սիւննի» կամ բանաւոր օրէնք է կոչվում։ Սիւննի ասուած մահմեդական աղանդաւորների համար այդ գիրքն էլ սուրբ է Կուրանի չափ. մինչդեռ Շիիտները մերժում են նրան, իբրև մի անվաւեր գործ։ Այս երկու աղանդների միջև ստէպ ծագել են հալածանքներ ու թշնամութիւններ, որոնք գրեթէ նոյնքան սաստիկ են եղել, որքան որ էին, 'ի վնաս քրիստոնէութեան, կաթոլիկների ու բողոքականների կռիւները։ Սիւննիները որոշվում են սպիտակ փաթթոցով, շիիտները՝ կարմիր. այդ տեղից էլ ծագել է դրանց Ղզլբաշ կամ կամ կարմիր գլուխ մականունը, որ ստացել են հակառակորդներից։

Զարմանալի է, որ ոչ Կուրանի, ոչ էլ Սիւննի մէջ մի բառ անգամ չէ ասուած թլպատութեան մասին. այն ինչ դա անպայման պահանջվում է բոլոր մահմեդականներից և նրանց կրօնի բնորոշ մասն է, որին իւրաքանչիւր նորադարձ պարտաւոր է ենթարկուիլ։ Կարծեօք դա հրէաներից լռելեայն առնուած մի ընդհանուր արաբական սովորութիւն էր, որ ոմանց ասելով Մովսիսից էլ առաջ տիրապետող էր Արևելքում։

Ասում են թէ Կուրանն արգելում է ո՛ր և է կենդանի արարածի պատկերը հանել, մի արգելք, որ կենդանագրութեան արուեստի յետ մնալուն պատճառ է դարձել մահմեդական աշխարհում։ Սակայն Կուրանի իբր թէ այդ արգելքը պարունակող յօդուածը ոչ այլ ինչ է, բայց եթէ լոկ արձագանք թէ հրէից և թէ քրիստոնէից համար սուրբ Երկրորդ պատգամի՝ «Մ'ի արասցես դու քեզ կուռս ըստ ա-

մենայն նմանութեան որ ինչ յերկին 'ի վեր է, և որ ինչ յերկրի 'ի խոնարհ, և որ ինչ 'ի ներքոյ երկրի։»
Մահմեդի դրօշակներից մէկի վրայ մի սև արծիւ էր նկարուած. Գրէնադայի Ալհամբրայի ամենագեղեցիկ մահմեդական զարդերից մէկն է քարաշէն առիւծնե-րի վրայ հաստատուած շատրուանը, և մուսլէմ վե-հապետներից շատերն են իրենց պատկերը դրամների վրայ քանդակել։

Մահմեդի ուսման վերաբերեալ մի ուրիշ ծանր թիւրիմացութիւնն էլ այն է, որ իբր թէ նա ուրա-նում է կանանց հոգին և ոչ մի տեղ չէ տալիս նը-րանց արքայութեան մէջ։ Այդ սխալ կարծիքը այն հանգամանքից է յառաջ եկել, որ նա զանց է արել կիշատակել կանանց հանդերձեալ կեանքի վայելքնե-րը, մինչդեռ իւր սեռինը մի առ մի պատմել է հեշտասէր մարդու մանրակրկիտ խնամքով։ Առաքի-նի կանանց երջանկութեան վրայ ակնարկներ կան Կուրանի ԾՁ. սուրայի մէջ, նոյնպէս և ուրիշ հա-տուածներում, թէև վեր 'ի վերոյ կարդալիս կարելի է կարծել, լեզուի անորոշութեան պատճառով, թէ այդ ակնարկներն եդեմական հուրիներին են վերա-բերվում։

Չ ա ւ ա տ ի չ ո ր ր ո ր դ մ ա ս ի ն ի ւ թ ը մ ա ր գ ա ր է ն ե ր ն ե ն։ Դրանց թիւը հասնում է երկու հարիւր հազարի, բայց գերագոյնները միայն վեց են, և յատկապէս նրանք, որ նոր օրէնք և նոր բարիք են տուել մարդկութեան, բառնալով հների այն կէտերը, որոնք իրարուց տարբեր էին և կամ իրար հակասող։ Այդ վեց գերագոյն մարգարէներն,

ըստ Մահմեդի, են՝ Ադամ, Նոյ, Աբրահամ, Մովսէս, Յիսուս և ինքն Մահմեդ։

Իսլամի հինգերորդ մասը յարութեան և վերջին դատաստանի ուսմունքն է։ Այս մեծակշիռ նիւթին գալով՝ Մահմեդը խառնել է քրիստոնէական դաւանանքի մի քանի մասերն արաբական հրէաների մէջ ընդունուած կարծիքների հետ։ Վերջին տեսակից է գերեզմանի ահեղ դատաստանը։ Երբոր Ազրայիլ մահուան հրեշտակը իւր գործն աւարտում է և մեռելը գերեզման է դրվում, քննութեան են գալիս Մունկար ու Նակիր անունով երկու զարհուրելի և ահեղակերպ սև հրեշտակներ, և դրանց հարցափորձի միջոցին հոգին վերստին միանում է մարմնի հետ։ Մեռելը հրաման է ստանում նստելու և պատասխան տալու հաւատի երկու մեծ մասերին, այն է՝ Աստուծու միութեան և Մահմեդի աստուածային առաքելութեան վերաբերեալ հարցերին, և թէ ինչ է գործել կենդանութեան ժամանակ, և նրա պատասխանները ճիշդ գրվում են դատաստանի օրուան վերապահուած գրքի մէջ։ Եթէ պատասխանները գոհացուցիչ են, հրեշտակները կամացուկ հանում են հոգին մարդու շրթունքից և թոյլ են տալիս, որ մարմինը հանգչի. իսկ եթէ ոչ, այն ժամանակ երկաթէ գաւազանով հարուածում են նրա ճակատն և սոսկալի չարչարանքով հոգին հանում։ Այս ահաւոր քննութիւնը դիւրացնելու համար՝ մահմեդականները սովոր են գոգաւոր կամ թէ կամարահարկ գերեզմանում թաղել մեռելին, այն էլ միայն սաւանով պատած, և ոչ թէ դագաղ դրուած։

Մահուան ժամից մինչև յարութեան օրն անող ժամանակը Բերզակ կամ միջոց է կոչվում։ Այդ միջոցին մարմինը մնում է գերեզմանում, իսկ հոգին երազներով ու տեսիլներով իւր ապագայ վիճակը գուշակում։

Մարգարէների հոգուն թոյլ է տրուած իսկոյն ճաշակել դրախտի ամեն վայելքները։ Մարտիրոսների և պատերազմի դաշտում ընկած նահատակների հոգին մտնում է մի տեսակ կանաչ թռչնի մարմինը կամ կտնառքը,—թռչնի, որ դրախտի պտուղներով է կերակրվում և եդեմական ջուր խմում։ Միւս ճշմարիտ հաւատացեալների հոգու վիճակը հաւասար չէ, սակայն ընդհանուր կարծիքն այն է, որ այդ հոգիները յուշիկ սաւառնում են իրենց գերեզմանների մօտերքում։ Այս տեղից է յառաջ գալիս մուսլէմների սովորութիւնը ստէպ ստէպ այցելելու ննջեցեալ բարեկամների և ազգականների գերեզմանը, որովհետև շնորհապարտ հոգիները վկայ են լինում այդ սիրոյ նըշաններին։

Մուսլէմներից շատերը հաւատացած են, թէ առաքինի մարդկանց հոգին ձիւնափայլ թռչունների պատկեր է ստանում և Ալլահի աթոռի ներքև բոյն դնում, որ համաձայն է մի հին եբրայական աւանդութեան, թէ արդարների հոգիներն երկնքում մի առանձին տեղ պիտի բռնեն փառաց աթոռի ներքև։

Անհաւատների հոգիներին գալով՝ ամենատարածուած կարծիքն այն է, թէ հրեշտակները պիտի արտաքսեն նրանց թէ երկնքից, թէ երկրից և գահավիժեն երկրի խաւար անդունդը, որպէս զի այն տեղ ահ ու դողով սպասեն վերջին օրուան դատաստանին։

**Ցարութեան օրը** կ'իմացուի երկնքում և երկրի վրայ կատարուելիք նշաններով ու հրաշքներով։ Լուսինն խսպառ կըխաւարի, արեգակն իւր ընթացքը կըշրջէ և փոխանակ արևելքից՝ արևմուտքից կըծագի. պատերազմներ ու դղրդիւններ կըլինին. Սուտ Քրիստոսը կըգայ. Գովգն ու Մագովգը*) կ'արձակուին աշխարհը կործանելու համար, և ամբողջ երկիրն ահագին ծխով կըծածկուի. այս և ուրիշ սարսափելի նշաններից մարդկանց հոգին կըտանջուի, կըզարհուրի. Նրանց սիրտը կը տագնապի ու դառնութիւն կըզգայ կեանքից. այնպէս որ մարդս գերեզմանի մօտով անցնելիս՝ մեռելի հանգստութեան կընախանձէ և կ'ասէ. «Երանի թէ ես էլ գերեզմանում լինէի։»

Սոսկալի օրուայ վերջին ահեղ նշանը Իսրաֆիլ հրեշտակի փողի ձայնը կըլինի։ Դրա հնչիւնից երկիրը կըսասանուի, դղեակներն և աշտարակները կը տապալուին և լեռները դաշտերի հետ կըհաւասարուին։ Երկնքի երեսը կըխաւարի, հաստատութիւնը կըհալուի, և արևն և լուսինն և աստղերը ծովը կընկ-

---

*) Գովգ և Մագովգ՝ անուններ են մի հիւսիսային իշխանի և ազգի, որոնց մասին Եզեկիէլի մարգարէութեան մէջ, Գլ. ԼԸ, 18—20, կարդում ենք. „Եւ եղիցի յաւուր յայնմիկ յորում եկեսցէ Գովգ 'ի վերայ երկրին Իսրայելի, ասէ Տէր Տէր, ելցէ սրտմտութիւն իմ բարկութեամբ, և նախանձ իմ հրով բարկութեան իմոյ. և խռովեսցին յերեսաց իմոց ձկունք ծովու և թռչունք երկնից և գազանք դաշտաց և ամենայն սողունք երկրի, և ամենայն մարդիկ որ 'ի վերայ երեսաց երկրի. լերինք պատառեսցին, և ձորք տապալեսցին, և ամենայն պարիսպք երկրին կործանեսցին:“
Ծանօթ. Թարգմ.

նին։ Ովկիանոսը կամ խսպառ կը ցամաքի և կամ եռ կըգայ ու հրեղէն կոհակներով կ'ալէկոծուի։

Մարդկային ազգը խոլական զարհուրանքով կը պաշարուի ահեղագոչ փողի ձայնից. եղբայրն եղբօրից կըփախչի, ազգականը՝ ազգականից, ամուսինը՝ ամուսնուց, և խուճապած մայրերը դէն կըձգեն գրկի մանկանց։ Անտառի ամեհի գազաններն և դաշտի հեզ կենդանիներն իրենց վայրենութիւնն ու փոխադարձ ատելութիւնը կը մոռանան և վախից միանալով՝ մի երամակ կըկազմեն։

Փողի երկրորդ որոտումը կործանման որոտումն կը լինի։ Այդ դղնչիւնից երկնքի ու երկրի վրայ, ջրի մէջ ու գետնի տակ եղած բոլոր արարածները, հրեշտակներն ու դևերը, մարդիկ ու անասունք, կարճ ասած՝ ամենքն էլ մահով կ'ոչնչանան, բացի Աստուծու խնայած սակաւաթիւ ընտրեալներից։ Նոյնպէս յետոյ մահուան հրեշտակ Ազրայիլը կըմեռնի։

Այդ ամենակործան թնդիւնից յետոյ՝ քառասուն օր, կամ մեկնիչների ասելով՝ քառասուն տարի անընդհատ անձրև կըգայ։ Այնուհետև Իզրաֆիլ հրեշտակապետի փողի ձայնն երրորդ անգամ կըհնչէ, և դա կըլինի դատաստանի կո՜չ։ Այդ ձայնը հնչելուն պէս՝ երկնքի ու երկրի միջև եղած բովանդակ տարածութիւնը մեռելների հոգիներով կըլցուի, որոնք կըճախրեն իրենց մարմիններն որոնելով։ Գետինը կըպատառուի. չոր չոր ոսկորները կըճարճատեն, ցիրուցան անդամները կըհաւաքուին, մազերն անգամ իրար կըկցուին և ամբողջ մարմինը կըմիանայ, և հոգին մէջը կըմտնի, և մեռելը յարութիւն կ'առնէ՝ արատներից ազատուած, ամեն մասերով կատարեալ և այնպէս մերկ,

ինչպէս որ էր ծնունելիս։ Անհաւատները գետնամած դէմ.քով կըսողան, հաւատացեալները բարձրագլուխ ման կըգան, իսկ ճշմարիտ արդարներն երկինք կը թռչեն՝ կաթնափայլ ու թեւաւոր, ոսկէհամետ ուղտեր հեծած։

Այն ժամանակ իւրաքանչիւր մարդ դատաստանի կըկանչուի հաշիւ տալու, թէ ի՞նչպէս է արդիւնաւորել իրեն շնորհուած ձիրքերն և ի՞նչ տեսակ գործեր արել կենդանութեան ժամանակ։ Գաբրիէլ հրեշտակապետը մի ահագին կշիռ բռնած կըլինի. Լոյս կոչուած թաթի մէջ բարի գործերը կըդրուին, իսկ միւսի մէջ, որի անունը Խաւար է, չար գործերը։ Մի փոքրիկ հիւլէ անգամ, մանանեխի մի հատիկն իսկ հերիք է, որ կշռի լուծը մի կողմ միտուի, և դատավճիռը կախուած կըլինի իւրաքանչիւր թաթի դիրքից։ Հենց այդ րոպէին ամեն մի անիրաւութիւն ու զրկանք հատուցումն կըստանայ։ Ով որ անիրաւութիւն արած լինի ընկերին, պարտաւոր կըլինի իւր սեփական բարի գործերի մէկ մասը նրան վճարել. իսկ եթէ պարծանք բերող բարի գործեր չունենայ, ստիպուած կըլինի նոյն չափով ուրիշների մեղքը յանձըն առնել։

Կշռի դատին կըյաջորդէ կամրջի փորձը։ Մարդաշատ բազմութիւնը կըկոչուի գնալ Մահմեդի յետեւից Ալ Սերաթ կամրջով, որ սրի սայրի պէս նուրբ է և անդնդախոր ջեհէննամի վրայ կախուած։ Անհաւատ ու մեղաւոր մուսլէմները խաւարի մէջ կըխարխափեն և վիհը կընկնին. իսկ բարեպաշտները, ճառագայթող լուսի օգնութեամբ, թռչնի պէս միւս կողմը կ՚անցնեն և արքայութիւն կըմտնեն։

Այդ կամրջի և ջեհէննամի խաւար թագաւորութեան գաղափարը մասամբ հրէաներից և ըստ մեծի մասին մոգերից առնուած կլինի։

Ջեհէննամը կամ գեհենը ամեն տեսակ արհաւիրքներով լի աշխարհ է։ Նոյն իսկ ծառերի ճիւղերն օձերից են, և պտղի տեղ՝ դեւերի գլուխներ են տալիս։ Հրաժարվում ենք երկարաբանել այդ սգաւոր բնակարանի վրայ, որ պժգալի ու մանրակրկիտ լիութեամբ նկարագրուած է Կուրանում։ Ջեհէննամն ունի եօթն՝ մինը միւսից ստոր յարկեր, մինը միւսից աւելի խիստ չարչարանքի յատկացուած։ Առաջին յարկը վերապահուած է անաստուածների համար, որոնք ուրանում են Արարչին և արարչութիւնը, և աշխարհը յաւիտենական համարում։ Երկրորդը մանիքեցոց և առհասարակ երկու սկզբունք ընդունողների, որպէս և Մահմեդի օրով ապրող կռապաշտ արաբների համար։ Երրորդը սահմանուած է հնդկաստանի բրահմանների համար, չորրորդը՝ հրէաների, հինգերորդը՝ քրիստոնեաների, վեցերորդը՝ մոգերի և պարսից հրապաշտների և եօթներորդը՝ դաւանած կրօնին չհաւատացող կեղծաւորների համար։

Այդ զարհուրելի աշխարհի պետը Թեբէկ կամ դահիճ կոչուած կատաղի դեւն է։

Պէտք է ասել, որ ջեհէննամի նկարագիրն և պատիժների դասաւորութիւնը բազմաթիւ մեկնութիւնների ու տարբեր կարծիքների առիթ է տուել մահմեդական գիտուններին։ Ոմանք պնդում են, գրեթէ ընդհանուր հաւանութիւն գտնելով, թէ Ալլահին և նրա մարգարէին հաւատացողներից ոչ մէկն էլ յաւիտենական պատուհասի չի ենթարկուիլ։ Նրանց

մեղքերը կըքաւուին այդ մեղքերի համեմատ չարչարանքի ժամանակից չետոյ, որ տարբերուելու է ինն հարիւր և ինն հազար տարիների միջև։

Աւելի մարդասէր գիտնականներից ոմանք հերքում են պատժի յաւիտենականութիւնը որ և է կարգի մեղաւորների համար, ասելով թէ Աստուած ամենագութ է, հետևաբար նոյն իսկ անհաւատներն էլ հետզհետէ թողութիւն կըստանան, և մանաւանդ նրանք, որոնք ունին մի բարեխօս, ինչպէս որ է քրիստոնեաների Յիսուս Քրիստոսը։ Սակայն այդ դերարգոյ մեկնիչների վեհանձնութիւնն այնքան մեծ չէ, որ քրիստոնեաներին էլ թոյլ տային մուսլէմների պէս դրախտ մտնել. Նրանք ասում են, թէ քրիստոնեաներն երկարատև պատուհասներ կրելուց չետոյ՝ կըոչնչանան, և այդպէս կ'ազատուին չարչարանքից,

Ջեհէննամի և արքայութեան միջև գտնվում է Ալ Արաֆ կամ միջնորմ կոչուած՝ խաղաղութիւնից ու վայելքներից զուրկ տեղը, որ սահմանուած է մանուկների, լուսնոտների, ապուշների և այնպիսի էակների համար, որոնք ոչ բարիք են գործում, ոչ չարիք։ Այդ տեղ կ'երթան և այնպիսիք, որոնց բարի ու չար գործերը զուգակշիռ են. սակայն Մահմեդի միջնորդութեամբ դրանք կարող են և' դրախտ մտնել, եթէ միայն մի աղօթք ասեն, որով անշուշտ կշռի թաթն իրենց օգտին կը հակուի։ Ասածներին նայելով՝ այդ սահմանի բնակիչները կարող են իրենց երկու կողմի հարևանների հետ էլ խօսակցել, այսինքն՝ թէ անիծածների, թէ երանելների, և թէ Ալ Արաֆն արքայութիւն է թւում դժոխքի բնակիչներին, և դժոխք՝ արքայութեան բնակիչներին։

Ալ Ջաննաթ կամ դրախտ։—Այդ ամեն փորձութիւնների միջով անցնելուց և բոլոր մեղքերը քաւելուց յետոյ՝ ճշմարիտ հաւատացեալը զովանում է մարգարէի լճում։ Այդ բուրաւէտ լիճն մի ամսուայ շրջանակ ունի և ջուրը ստանում է դրախտից հոսող Ալ Կաութեր գետից։ Լճի ջուրը մեղրահամ է, ձիւնի պէս սառն է և բիւրեղի նման վճիտ։ Մի անգամ նրա համն առնողը այլ ևս երբէք ծարաւ չի զգալ, —երջանկութիւն, որի վրայ առանձին ախորժանքով սիրում են ճառել հրատապ անապատի ծարաւին սովոր գրագէտները։

Այդ կենդանութեան ջրից խմելուն պէս՝ հաւատացեալը մտնում է դրախտ, որի դռները բացւում են Ռուշուան հրեշտակի ձեռով։ Ինչպէս որ երկայնաբան ու մանրախոյզ է ջեհէննամի ստորագրութիւնը, այնպէս էլ առատաբան ու ճոռոմ է արքայութեան վայելքների նկարագիրը, որի մանր մունր մասերից մարդու երևակայութիւնը շլանում ու շփոթւում է։ Նրա գետինը բուրմունքներով տոգորուած շարմաղուն ալիւրից է, և աւազի ու կոպճի տեղ՝ վրան ցանուած է մարգարիտ ու յակինթ։

Գետերից մի քանիսն ականակիտ ջրի ալիք են սահեցնում դալարուն ու ծաղկաւէտ ափերի միջով. միւսները կաթնից, գինուց ու մեղրից են, և հոսում են մշկի փոսերում, քափուրի ածուների միջով, որոնք քրքումով ու մամռով են եզերուած։ Օդն Սաբէի խնկաբոյր զեփիւռից էլ անուշ է և պաղպաջուն աղբիւրներով զովացած։ Այնտեղ է և Թաբան, այն հրաշալի կենաց ծառը, որի ստուերն այնպէս լայն է, որ ամենասրընթաց ձին անգամ հարիւր տարի պիտի վազէ,

որ կարողանայ նրա սահմանից դուրս անցնել։ Ճիւղերը լի են ամեն տեսակ ազնիւ ու ընտիր պտուղներով, և ինքեանք են խոնարհվում դէպի քաղաքի մեկնած ձեռը։

Այդ երջանիկ դրախտի բնակիչներն ականակուռ զգեստներ և ադամանդով ու մարգարտով ընդելուզուած ոսկէ թագեր ունին հագած. բնակվում են հոյակապ պալատներում կամ մետաքսէ վրաններում, հեշտալի գորգերի վրայ հանգչելով։ Այնտեղ իւրաքանչիւր հաւատացեալ հարիւրաւոր սպասաւորներ կ՚ունենայ, որոնք ոսկէձոյլ ամաններ ու բաժակներ են ման ածում՝ մատուցանելով նրան ամեն տեսակ ըզմայլական ուտելիք և ըմպելիք։ Նա կ՚ուտէ և չի յափրանալ, կըխմէ և չի հարբիլ. վերջին պատառն ու վերջին կաթիլը նոյնքան ախորժ կլինի, որքան և առաջինն էր. երբէք յագուրդ չի զգալ և վիժման կարիք չի ունենալ։

Օդը լի է Իզրաֆիլի քաղցրանուագ դաշնակներով և եդեմական կոյսերի երգով. Ծառերը հեշտալի սօսափիւն են յառաջ բերում և ճիւղերից կախուած միլիոնաւոր զանգակները, Ալլահի գահից փչող զեփիւռից շարժուելով, բերկրական եղանակներ հնչեցնում։

Սակայն հաւատացեալի երջանկութեան լրումն ու պսակը կանանց ընկերութեան վայելքը կըլինի՝ այն անսահման լիութեամբ, որ նոյն իսկ արևելեան երևակայութիւնից էլ գեր 'ի վեր է։ Բացի երկրի վրայ ունեցած կանանցից, որոնք պիտի կրկին միանան մուսլէմին իրենց նախկին թարմութեամբ, նրան կըծառայեն Հուր ալ Օյիւն կամ Հուրի կոչուած սևաչեայ կոյսեր՝ լուսափայլ, մարդկային արատներից

խսպառ ազատ, միշտ նորատի, միշտ սիրուն և մշտանորոգ կուսութեան տէր էակներ։ Ամեն մի հաւատացեալ եօթանասուն երկու այդպիսի հուրի կ'ունենայ։ Հաղորդակցութիւնը դրանց հետ, հաճոյքի համեմատ, կամ բազմածին կամ անծնունդ կըլինի և զաւակները մէկ ժամում ծնողների մեծութեան կըհաւասարուին։

Որպէս զի ճշմարիտ հաւատացեալը լիովին կարողանայ այդ երանելի աշխարհի հեշտութիւնները վայելել, նա կըյառնէ գերեզմանից տղամարդու ամենառոյգ երեսնամեայ հասակով և Ադամի բոյով, որ եօթն և կէս կանգուն էր,—կըյառնէ գերբնական կատարելութեան աստիճանին՝ հասած ձիրքերով, հարիւր մարդու ուժերով և ա՛յնպիսի փափագներով ու տենչերով, որոնք փոխանակ վայելումից յետոյ նուազելու՝ և՛ս աւելի կըսաստկանան։

Այդպիսի և դրանց նման զմայլանքներ են խոստացուած նոյն իսկ յետին հաւատացեալին. սակայն վայելքներն էլ արժանիքների պէս աստիճաններ ունին։ Բայց ամենից արժանաւոր մուսլէմներին ըսպասող վայելքների յիշատակութեան հասնելիս՝ Մահմեդի նկարչական զօրութիւնը սպառվում է, և նա շատանում է Ս. Գրքի խօսքերը կրկնելով, թէ «զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ՝ զայն պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց։»

Մահմեդական օրէնքի մեկնիչներն իրարուց տարբեր կարծիք են յայտնում այդ հատուցումների ու պատիժների ամբողջ դրութեան մասին։ Ոմանք ամեն բան ընդունում են փոխաբերական իմաստով,

ուրիշները՝ բառական։ Առաջինները պնդում են, թէ մարգարէն, ունկնդիրների կոպիտ մտքին և զգայական բնութեան յարմարուելու համար՝ առակներով էր խօսում, և համոզուած են, թէ երկնքի երջանկութիւնները և՛ հոգեկան և՛ մարմնաւոր կլինին, որովհետև յարութիւնը թէ հոգւով և թէ մարմնով պիտի ինի։ Հոգին իւր բոլոր կարողութիւնների գերակատար զարգացման ու գործադրութեան կըհասնի և բնութեան ամեն գաղտնիքների գիտութիւն և անցեալի, ներկայի և ապագայի լիակատար ծանօթութիւն կ'ունենայ։ Մարմնի վայելքներն էլ զանազան զգայարաններին յարմարուած և գերբնական կատարելութեան հասցուած կլինին։

Այդ մեկնիչների ասելով՝ ջեհէննամի նկարագիրն էլ այլաբանական է. Հոգու տանջանքն ա՛յն կլինի, որ նա յարատև զղջանք կըզգայ անցեալ մեղքերի պատճառով և խորին ու միշտ սաստկացող յուսահատութիւն՝ երկնքի արքայութիւնից զրկուելուն համար. իսկ մարմնի տանջանքը մի խոշտանգիչ և անվերջ ցաւ կլինի։

Ամեն բան բառական իմաստով ըմբռնող գիտուններն աւելի ուղղահաւատ են համարուած, և նրանց հետևողների թիւն էլ անհամեմատ աւելի է։ Հատուցումների դրութեան էական մասերը, ինչպէս որ արդէն յիշած ենք, մերձաւոր ազգակցութիւն ունին մոգերի և հրէից ռաբբիների սնոտիապաշտութեան հետ։

Մահմեդական դրախտում այնպիսի առաջնակարգ տեղ բռնող հուրիներն և կամ սևաչեայ կոյսերը պարսից մոգերի Հուրամ Բեհէստներն են, և քրիս-

տանեաց հետազօտիչները մեղադրում են Մահմեդին ասելով, թէ երկնքի և Նոր Երուսաղէմի նկարագրութեան մեծ մասը Յովհաննու Յայտնութեան գրքից է առել՝ միայն թէ այնպիսի փոփոխութիւններով, որ սովոր են անել խաբեբայ ակնագործները, երբ որ փորձում են գողացած գոհարներն իրենցի տեղ անցկացնել։

Իսլամի վեցերորդ և վերջին մասը Նախասահմանութիւնն է։ Պարզ է որ Մահմեդը գլխաւորապէս դրանից էր սպասում իւր պատերազմական գործերի յաջողութիւնը։ Նա քարոզում էր, թէ իւրաքանչիւր դէպք 'ի սկզբանէ և արարչութիւնից առաջ սահմանուած է Ալլահից և յաւիտենական տախտակների վրայ գրուած. թէ ամեն մի անհատի վիճակն ու մահուան րոպէն անդառնալի կերպով որոշուած է և չէ կարող փոխուիլ ոչ մարդկային ջանքերով, ոչ էլ մարդկային հնարներով։ Այս համոզմամբ պատերազմի խիզախելիս՝ մուսլէմները ոչ մի բան չէին կորցնում, և քանի որ պատերազմում ընդունուած մահը նահատակութեան հաւասար էր և անմիջապէս արքայութեան դռները բացող, — նրանք թէ ընկնելիս և թէ յաղթելիս հաւասարի շահ ունէին։

Այդ վարդապետութիւնը, որի ասելով մարդս չէ կարող իւր ազատ կամքով ոչ մեղքից խուսափիլ, ոչ էլ պատժից զերծ մնալ, մուսլէմներից շատերի աչքում Աստուծու արդարութեան և գթութեան նախատինք է. սակայն երկբայողների թիւը շատ չէ, և և նրանք օրթոդոքս չեն համարուած։

Նախասահմանութեան կամ ճակատագրի ուսմունքը ծագել է Մահմեդի այն պատեհ յայտնա-

թիւններից, որոնք 'ի դէպ ժամու վրայ հասնելով, գրեթէ միշտ հրաշալի էին թւում։ Դա տեղի գտաւ անմիջապէս Օհոդի չարաղէտ պատերազմից յետոյ, ուր նա այնքան հետևողներ կորցրեց, և 'ի միջի այլոց՝ իւր Համզա հօրեղբօրը։

Այդ տրտմութեան ու լքման րոպէին էր, որ Մահմեդը, իրեն շրջապատող աշակերտներին ահաբեկուած ու վշտահար տեսնելով, յայտարարեց, թէ իւրաքանչիւր մարդ սահմանուած ժամին պիտի մեռնի՝ որ տեղ էլ լինէր—անկողնում թէ ռազմի դաշտում։ Աւելացրեց և, թէ Գաբրիէլ հրեշտակի յայտնութեամբ՝ Համզան եօթներորդ երկինքն է ընդունուած «Ալլահի և Նրա մարգարէի Առիւծը» մակդիրով։ Ապա թէ աչքն ուղղեց դաշտում ընկած դիակների վրայ և գոչեց. «Ես երաշխաւոր եմ դրանց և դրանց նման Աստուծու դատը պաշտպանելով սպանուածների համար, թէ յարութեան օրը բոլորն էլ փառքով կ'երևնան և նրանց վէրքերը ծիրանի պէս կը փայլին և մշկի նման բուրմունք կըտա՛ն։»

Յղէտ և հուղկահար զինուորներին վայրագ աւպատակութեան ասպարէզի վրայ նետելու համար չէր կարելի մի աւելի յարմար ուսմունք հնարել, քան թէ այդ ուսմունքը, որ աւար ստանալու երաշխաւորութիւն էր տալիս նրանց, եթէ կենդանի մնային, և դրախտ մտնելու վստահութիւն, եթէ մեռնէին*)։ Դա գրեթէ անդիմադրելի արաւ մուսլէմների զէնքը, բայց դրա մէջ էլ ամփոփուած էր այն թոյնը, որով պիտի խորտակուէր նրա տիրապետութիւնը։ Չենց

*) Ճակատագրի նոյն հաւատով քաջալերում էր զինուորներին և՛ Նապոլէօն Ա., և այդ հաւատը սաստիկ ազդում էր գնդերի վրայ։

այն ժամանակից, որ մարգարէի յաջորդները դադարեցին նախայարձակ լինելուց ու աշխարհներ նուաճելուց և սուրը պատեան դրին, — ճակատագրի քարոզն իւր կործանաբեր գործը սկսեց։ Փափուկ կեանքըն և Կուրանի թոյլատրած զգայական վայելքները, — որոնք այնքան զանազանում են նրա ուսմունքը Մեսսիայի մաքուր և անձնուրաց կրօնից, — այնպէս ջլատել են մուսլէմին, որ նա սովորել է ամեն մի պատահար 'ի վերուստ նախասահմանուած և անխուսափելի չարիք համարել, որին պէտք է ստոյիկեան տոկունութեամբ դիմանալ, քանի որ մարդկային ճիգն ու նախահոգ զգուշութիւնն ապարդիւն բաներ են։ «Օգնիր քեզ, որ Աստուած էլ քեզ օգնէ» կանոնը ոչ մի ժամանակ վարկ չէ ունեցել մուսլէմների աշխարհում, և դրա հակառակն է եղել նրանց վիճակը։ Լուսնի մահիկը նսեմացել է Խաչի առջև և միայն քրիստոնէական մեծ պետութիւնների զիջողութեամբ և կամ լաւ ասել՝ նախանձով է, որ գեռ գոյութիւն ունի Եւրոպայում, ուր երբեմն այնքան զօրեղ էր, — և գուցէ շուտով մի նոր փաստ աւելացնէ յապացոյց այն ճշմարտութեան, թէ «ամենեքեան որ սուր առնուցուն, սրով անկցին։»

---



## Ծ Է Ս

Կրօնական ծէսերը չորս տեսակ են՝ աղօթք հանդերձ լուացմամբ, ողորմութիւնն, պահք, ուխտագնացութիւն։

Լուացումը սահմանուած է որպէս ա ղ օ թ ք ի

նախապատրաստութիւն, որովհետև մարմնի մաքրութիւնը հոգու մաքրութեան նշան է համարւած։ Այդ մասին Կուրանը մեծ ճշդութեամբ է խօսում։ Երեսը, բազուկները, արմունկները, ոտքերն և գլխի չորրորդ մասը մի մի անգամ պիտի լուացուին. ձեռքերը, բերանն ու ռնգունքը երեք անգամ. ականջները գլխի լուացումից մնացած ջրով պիտի թրջուին, իսկ ատամները մատներով մաքրուին։ Լուացումը ըսկսվում է աջ կողմից. ձեռքերն ու ոտքերը լուանալիս՝ սկսելու է մատներից և բոյթից։ Ջուր չեղած տեղը աւազ էլ կարելի է գործ ածել։

Աղօթքը օրը հինգ անգամ պիտի ասուի. առաջինն արշալուսին, երկրորդը՝ կէսօրին, երրորդը՝ արևի մայր մտնելուց առաջ, չորրորդը՝ արևի մայր մտնելուց յետոյ՝ մութն ընկնելու միջոցին, հինգերորդը՝ երեկոյեան աղօթքն է, որ պիտի ասուի մթնշաղի և գիշերուայ առաջին պահու մէջ տեղը։ Շատերն ինքնակամ ասում են և մի վեցերորդ աղօթք գիշերուայ առաջին պահու և այգի միջև։ Այդ աղօթքներն ոչ այլ ինչ են, բայց միայն միևնոյն փառաբանական խօսքերի կրկնութիւն՝ «Աստուած մեծ է, Աստուած ամենազօր է. Աստուած ամենազօր է,» որ բարեպաշտներն ասում են, համրիչի վրայ հաշուելով։ Դրանք կարող են ասուիլ թէ մզկիթում և թէ իւրաքանչիւր մաքուր տեղ։ Աղօթելիս հարկաւոր է դէպի կէբլան կամ աշխարհի այն կողմն ուղղել աչքերը, ուր որ գտնվում է Մէկկան, որ մզկիթում ճանաչվում է Ալ Մեհրաբ կոչուած խորշով, իսկ դըրսից՝ մինարէի ու դռների դիրքով։ Աղօթելիս մարմնին տալու դիրքն անգամ որոշուած է, և աղօթե-

ու ամենահանդիսաւոր եղանակն այն է, որ հաւատացեալը ճակատն երկիր խոնարհեցնէ։ Կանայք աղօթելիս բազուկները չպիտի տարածեն, այլ միայն կրծքերին ծալեն։ Տղամարդկանց պէս խոնարհ ծնրադրութիւն չպիտի անեն, և հանդարտ ու մեղմ ձայնով աղօթեն։ Նրանք ամուսինների հետ մզկիթ մըտնելու իրաւունք չունին, որպէս զի բարեպաշտների ուշք ու միտքը չցրուի։ Ճեշտելով շեշտուած է, որ Աստուծուն աղօթք վերառաքելիս՝ հաւատացեալն երկիւղածութեամբ մտածի Նրան և շքեղ զարդերն ու պայծառ հագուստները դէն ձգէ։

Աղօթքի վերաբերեալ մահմեդական կանոնները մեծ մասով առնուած են սաբէական դէնից. միւսները նման են հրէական ռաբբիների աւանդած սովորոյթներին։ Այսպիսիք են՝ մարմնի կացքը, ծնրադրութիւնը, երկրպագութիւնը և երեսն դէպի կէբլան դարձնելը, որ սակայն հրէից մէջ ընդունուած է դէպի Երուսաղէմ դարձնել։

Մուսլէմների համար աղօթք ասելն ամենօրեայ պարտք է. իսկ ուրբաթ օր քարոզ է խօսվում մզկիթում։ Այդ օրը սուրբ էր գրեթէ բոլոր արևելեան ազգերի համար, իբրև առաջին մարդու ստեղծման օր։ Սաբէականք նուիրում էին այդ օրը Աստարտէին կամ Աստղկան (Միրոյ մօրը), որ մոլորակների ամենագեղեցիկն է և աստղերի մէջ ամենապայծառը։ Մահմեդն էլ այդ օրը տօնելի, այսինքն՝ շաբաթ արաւ, մասամբ հին սովորութեան հետևելով, բայց գլխաւորապէս հրէաների շաբաթից և քրիստոնեաների կիրակիից զատուելու մտքով։

Կրօնական ծէսերի ե ր կ ր ո ր դ մ ա ս ն է ո-

ղորմութիւնը։ Երկու տեսակ ողորմութիւն կայ. մէկը քրիստոնէական եկեղեցու տասանորդի նման սահմանուած է օրէնքով. դա Զէկատն է, որ վճարվում է կամ դրամով և կամ գույքով, անասուններով, արմտիքով ու պտղով. միւսն է Սեդակաթը, որ կամաւոր է։ Իւրաքանչիւր մահմեդական պարտաւոր է տալ աղքատներին ու կարօտեալներին իւր արդիւնքի տասանորդը՝ այս կամ այն եղանակով։

Կրօնական հրահանգների երրորդ մասը պահքն է, որ նմանապէս հրէաներից է առնուած։ Իւրաքանչիւր հաւատացեալ պարտաւոր է տարին երեսուն օր, Ռամազան ամսին, արևի ծագելուց մինչև մայր մտնելը խստիւ հրաժարուիլ ուտել-խմելուց, լողանալուց, օծուելուց, կանանց հետ մերձաւորութիւն ունենալուց և ուրիշ ամեն զգայական վայելքներից ու գրգանքից։ Այդ ժուժկալութիւնն անձնուրացութեան մեծ յաղթանակ է համարուած, որովհետև դրանով մարդու կարիքները ճնշվում ու մեռցվում են և թէ մարմինն և թէ հոգին մաքրվում։

Այդ երեք հրահանգների մասին խօսելիս, Օբդալազիզ իշխանը սովոր էր ասել, թէ «Աղօթքը տանում է մեզ մինչև Աստուծու կէս ճանապարհը, պահքը հասցնում է Նրա շեմքին, իսկ ողորմութիւնը կանգնեցնում է Նրա երեսի առջև։»

Մահմեդականների վրայ դրուած չորրորդ գործնական պարտքը ուխտագնացութեան մեծ պարտքն է։ Ամեն մի հաւատացող պարտաւոր է իւր կեանքի ընթացքում գէթ մի անգամ Մէկկա ուխտ գնալ և կամ իւր տեղը մարդ

ուղարկել։ Վերջին դէպքում փոխանորդը պարտաւոր է իւր ամեն աղօթ-քի մէջ նրա անունը յիշել։

Ուխտագնացութիւնը պարտադիր է միայն ազատ ու չափահաս, մարմնով ու մտքով առողջ, ճանապարհի դժուարութեան տոկալու և ծախքերն հոգալու ձեռնհաս մուսլէմների համար։ Մեկնելուց առաջ պէտք է որ ուխտաւորն իւր ամեն տնային ու հասարակային գործերը կարգի բերէ, իբր թէ մեռնելու պատրաստուելիս լինէր։

Որոշեալ օրը, որ լինելու է կամ մի երեքշաբթի կամ հինգշաբթի և կամ շաբաթ,—դրանք յաջողակ են համարուած,—նա հաւաքում է իւր կանանց, տղայոց, տան բոլոր անդամներին և երկիւղածութեամբ յանձնում է Աստուծու խնամքին. Նրան է յանձնում և իւր ամեն գործերը։ Այնուհետև չալմայի մի ծայրը կզակի տակից դէպի յետ ձգելով և ձեռքը մի դառն մշենու հաստ գաւազան առնելով, բարև մնա է ասում մերձաւորներին և հեռանում է սենեակից, գոչելով. «Ձեռնարկում եմ այս սուրբ գործն Ալլահի անունով և նրա հովանաւորութեան տակ մտնում։ Հաւատում եմ նրան և նրա ձեռքն եմ դընում թէ գոյքս և թէ կեանքս։»

Գաւթից դուրս գալիս երեսը դարձնում է դէպի կէբլան և Կուրանի մի քանի տուները կրկնելուց յետոյ ասում է. «Դիմում եմ դէպի սուրբ Քեաբէն՝ Աստուծու աթոռը, նրա օրէնքով հրամայուած ուխտագնացութիւնը կատարելու համար, որ ինձ նրա մօտ պիտի տանէ։»

Վերջապէս ոտն ասպանդակ է դնում, թամբ է

նստում, իւր անձն ամենազօր, ամենիմաստ, ամենողորմ Աստուծուն յանձնում և չու ընկնում։

Ուղևորութեան ժամանակը պէտք է այնպէս հաշուել, որ կարելի լինի Դուլ հաջջի ամսի սկզբին Մէկկա հասնել։

Երեք կանոն հրամայուած է պահել այդ սուրբ ուխտագնացութեան միջոցին.

1. Ոչոքի հետ չվիճել։

2. Ամեն նեղութեան և թշնամանքի հեզութեամբ համբերել։

3. Նպաստել, որ հաշտութիւն ու մտերմութիւն թագաւորէ կարաւանի ուղեկիցների մէջ։

Բացի այդ՝ հարկաւոր է առատաձեռն լինել ուխտագնացութեան ժամանակ ողորմութիւն ու տուրք բաժանելիս։

Մէկկայի շրջակայքի մի որոշ կէտին հասնելուց յետոյ՝ ուխտաւորն այլևս չպիտի կտրէ իւր եղունգներն ու գլխի մազերը և մինչև կաշին մերկանալով՝ պիտի Իհրամ կամ ուխտաւորի հանդերձ հագնէ, որ բաղկացած է երկու չկարած և անզարդ շալերից, որոնք սակայն կարող են լինել ամեն նիւթից, միայն թէ ոչ մետաքսից։ Շալերից մէկը պիտի մէջքին փաթաթէ, միւսը վզին և ուսերին, ազատ թողնելով աջ բազուկը։ Գլուխը բաց պիտի մնայ. սակայն ծերերն ու տկարները կարող են, մի որոշ տուրք ընծայելով աղքատներին, որ և է բանով պատել գլուխը։ Կարելի է և հովանոց բռնել արեգակի դէմ, և կամ եթէ ուխտաւորը չքաւոր է, փայտի ծայրին կապած որ և է լաթ։

Ոտքերի ուլունքը պիտի մերկ լինի. այս պա-

հանդերձ համեմատ շատերը հագնում են առանձին սանդալներ, իսկ չքաւորները կտրում են կօշկի կաշու վերին մասը։ Այսպէս հագնուած ուխտաւորը կոչւում է Ալ Մոհրէմ։

Տանանց իհրամը մի լայն և ամբողջ մարմինը պատող վերարկու է՝ քողով հանդերձ, որ ծածկում է մինչև անգամ դաստակները, սրճեղներն և նոյն իսկ աչքերը։

Մի անգամ իհրամ հագնելուց յետոյ՝ պէտք է կրել մինչև ուխտի վերջանալը, որքան էլ անյարմար լինէր տարուայ ժամանակին կամ եղանակին։ Իհրամ հագած ուխտաւորը, քանի որ չէ հանել այդ շալը, պարտաւոր է զգուշանալ անհամեստ խօսքերից, բըզգայական վայելքներից, վէճ ու կռուից. նա իրաւունք չունի մինչև անգամ իրեն տանջող միջատին սպանել։ Բացառութիւն լինում է միայն կատաղի շան, կարճի կամ գիշատիչ թռչնի վերաբերութեամբ։

Մէկկա մտնելուն պէս նա թողնում է իւր բեռըրն որ և է կրպակում և աշխարհիս ամեն հոգսերը դէն ձգելով՝ ուղղակի գնում է Քեաբէ, մի մէթովէֆի կամ ուղեցոյցի առաջնորդութեամբ, որ միշտ պատրաստ է ծառայել նրան։

Բաբ էլ Սալամի կամ ողջունի դռնով տաճարի ներսը մտնելուց յետոյ՝ ուխտաւորը չորս անգամ երկրպագում է սև քարին և ապա թէ համբուրում, և կամ եթէ բազմութիւնը մեծ է, աջ ձեռով շօշափում քարն և ձեռը համբուրում։ Սև քարից հեռանալով, շինուածքի աջ կողմից սկսած՝ եօթն անգամ պտոյտ է անում դրա շուրջը, առաջին երեք պտոյտները շուտ շուտ, իսկ վերջին չորսը ծանր ու հանդարտ քայ-

լերով։ Իւրաքանչիւր պտոյտից յետոյ մեղմաձայն թոթովում է մի քանի աղօթք և համբուրում կամ շօշափում սև քարը։

Թովաֆը կամ Քեաբէի թափօրը դեռ Մահմեդից շատ առաջ ընդունուած կարգ էր, որ տղամարդիկ և կանայք միասին էին կատարում՝ բոլորովին մերկ մարմնով։ Մահմեդն արգելեց այդ մերկացումն և վերոյիշեալ իհրամը սահմանեց։

Այն հաջիներն ընդհանրապէս գիշերով են թովաֆ անում. բայց երբեմն էլ տղամարդկանց հետ՝ ցերեկով։*)

Եօթն շրջակայութիւն անելուց յետոյ ուխտաւորը, Քեաբէի դռան և սև քարի մէջ տեղը կանգնելով, կուրծքը տալիս է տաճարի որմին և բազկատարած աղօթք ասում իւր մեղքերի քաւութեան համար։

Այնուհետև գնում է Մակամ կամ Աբրահամի իջևանն և չորս անգամ երկրպագում, նահապետի բարեխօսութիւնը հայցելով. յետոյ գնում է դէպի Զէմ Զէմ աղբիւրը, որից և զօրածին չափ կուշտ խմում է։

Այդ ամեն ծէսերի միջոցին մէթովէֆը կամ առաջնորդը ոչ մի րոպէ չէ պլոկ գալիս տգէտ հաջիից, որին շարունակ աղօթքներ է թելադրում։ Յետոյ տանում է Բաբ էլ Զէֆա կոչուած դռնով՝ մզկիթից յիսուն քայլ հեռու գտնուող Զէֆա բլրակը, ուր հաջին բազկատարած աղօթք է անում, և ապա թէ սկսում Զաա կամ Զէէ կոչուած սուրբ ճեմքը։ Դա

*) *Burckhardt's Travels in Arabia*, *vol*, *I. p. 260*։ *Lond. edit.*, *1829*.

անցնում է Ըլ Մէսսա կոչուած վեց հարիւր քայլ երկայն փողոցով, որ երկու կողմից բազմաթիւ կրպակներ ունի, և վերջանում է Մերուվայի հրապարակում։ Ջէլէի ճեմքը սահմանուած է 'ի յիշատակ Հագարի, որ նոյն տեղումն էր անցկացել Իսմայէլ որդու համար ջուր որոնելիս։ Այս պատճառով ուխտաւորը նախ հանդարտ է յառաջ գնում, իբր թէ մի բան փնտռելիս լինէր. յետոյ վազում է, յետոյ քայլերը ծանրացնում և մերթ ընդ մերթ կանգ առնում, ասես թէ մոլորուած յետ նայելով։

Այդ փողոցի միջով եօթն անգամ վեր ու վար անցնելուց յետոյ՝ հաջին մտնում է վերջապէս Մերուվայի սափրիչներից մէկի կրպակը։ Սափրիչը նրա գլուխն ածելում է, եղունգները կտրում է, շարունակ պէսպէս աղօթքներ մրմնջելով, որ հաջին էլ պարտաւոր է ետևից կրկնել։ Ածելուած մազերն ու կտրուած եղունգները թաղում են նուիրական հողի մէջ, և դրանով ուխտագնացութեան ամենաէական պարտքերը վերջացած են համարվում *)։

Ըլ Դուլ հաջի ամսուայ իններորդ օրը ուխտա-

*) Մէկկայի, Մէդինայի և ուխտագնացութեան վերաբերեալ գիտելիքների մեծ մասը քաղել ենք անխոնջ և ստուգապատում Բուրկհարդ ճանապարհորդից, որ հաջիի հանդերձ հագած մտել է սրբազան տաճարն և ուխտագնացութեան բոլոր ծէսերն անձամբ կատարել։ Նրա գիրքը մեծ լոյս է սփռում արևելեան բարք ու վարքի և մահմեդական կրօնի ծէսերի վրայ։

Բուրկհարդի պատմածները համեմատել ենք ուրիշ ճանապարհորդների ու գրագէտների հաղորդած փաստերի հետ, և մի քանի գիտելիքներ վերցրել ենք նաև այդ վերջիններից։

ւորներն աՀագին բազմութեամբ վազում են դէպի Արաֆատ սարը, այն տեղ մնում են մինչև երեկոյ, գիշերը լուսացնում են Մոզդալիֆի աղօթարանում և առաւօտեան իջնում Մէնայի Հովիտը, ուր եօթն անգամ քար են նետում մի սիւնի վրայ, Հետևելով Աբրահամին և ըստ ոմանց՝ Ադամին, որ քարերով էր Հալածել աղօթքի ժամանակ իրեն վրդովող սատանային։

Դրանք են մաՀմեդական ուխտագնացութեան գլխաւոր ծէսերը. սակայն Իսլամի այս Համառօտ Նըկարագիրն և նրա Հիմնադրին վերաբերեալ առասպելախառն պատմութիւնը վերջացնելիս՝ կըցանկայինք անյիշատակ չթողնել և նրա սաՀմանած այն նոր կանոնը, որ շփոթել է բոլոր Հետևողներին և շատ նեղութիւն Հասցրել մանաւանդ բարեպաշտ ուխտաւորներին։

Արաբական տարին բաղկացած է 12 լուսնական ամիսներից, որոնք փոխ առ փոխ 30 և 29 օր ունին, միասին 354 օր կազմելով. այնպէս որ իւրաքանչիւր լուսնական տարուայ մէջ տասնմէկ օր կորչում է։ Այս պակասը լրացնելու Համար ՄաՀմեդի Թուականութիւնից առաջ ամեն մի երեք տարուայ վրայ աւելացվում էր մի տասներեքերորդ և կամ շարժական ամիս, ճիշդ այնպէս, ինչպէս որ մէկ աւելորդ օր են կցում քրիստոնէական տօմարի ամեն մի նաՀանջ տարուան։ ՄաՀմեդը, որ անուս մարդ էր և աստղաբաշխութեան անտեղեակ, վերցրեց այդ տասներեքերորդ և կամ յաւելուած ամիսը, իբրև լուսնի բոլորման աստուածադիր օրէնքին Հակառակ բան, և իւր վերջին ուխտագնացութեան ժամանակ

մի նոր յայտնութեամբ վերահաստատեց արաբացոց հին տօմարը։ Այդ մասին հետեւեալն է ասուած Կուրանի Թ. սուրայում.

«Ամիսների թիւնը տասներկու է, ինչպէս որ Ալլահ է կարգադրել և երկնքի ու երկրի ստեղծման օրը յաւիտենական տախտակների վրայ արձանագրել»։

«Մի փոխադրիր մէկ սրբազան ամիսը միւսի տեղ, որովհետև դա արդարև անհաւատների նորաձևութիւն է։»

Այսպիսով 33 տարուայ ընթացքում կորչող օրերի թիւը հասնում է 363-ի։ Հետևաբար մահմեդական թուականութիւնը քրիստոնէականի վերածելիս՝ անհրաժեշտ է իւրաքանչիւր երեսուն երեք տարուայ վրայ մէկ նահանջ տարի աւելացնել։

Մարգարէի այդ յայտնութիւնից յառաջ եկող մեծ անյարմարութիւնն այս է, որ մահմեդական ամիսներն իւրաքանչիւր տարի տասնմէկ օր առաջ ընկսնելով, տարուայ եղանակներին չեն համապատասխանում։ Այս հանգամանքը մի մի ժամանակ սաստիկ նեղութիւն է տալիս Մէկկայի բարեպաշտներին, որովհետև ուխտագնացութեան Դուլ Հաջի ամիսը, որի միջոցին նրանք կոչուած են իհրամ հագնել, այսինքն գրեթէ մերկ մնալ, պտտվում է տարուայ բոլոր եղանակների շուրջը և գալիս է մերթ ձմեռուայ ցրտերին և մերթ ամառուայ տապագին տօթին։

Եւ այսպէս թէպէտ Մահմեդը, աւանդութեան ասելով, հրամայեց լուսնին իջնել երկնքից և երեք անգամ սուրբ տաճարի շուրջը պտտել, սակայն չկարողացաւ նրա բոլորումներին տիրանալ, և տեսաւ որ

թուերի գիտութիւնն իւր մարգարէութեան շնորհից գերազանց և հրաշքներին անգամ դիմադրող բան է։

ՎԵՐՋ.

## ՆԻՒԹԵՐԻ ՑԱՆԿ

Է.



Ը.



Թ.



Ժ.



ԺԱ.

ԺԲ.



ԺԳ.



ԺԴ.



ԺԵ.



ԺԶ.

ԺԷ.



ԺԸ.



Ի.



ԻԱ.



ԻԲ.

## ԻԳ.



## ԻԴ.



## ԻԵ.



## ԻԶ.



## ԻԷ.

ԻԸ.



ԻԹ.



Լ.



ԼԱ.



ԼԲ.

ԼԳ.



ԼԴ.



ԼԵ.



ԼԶ.



ԼԷ.

## ԼԸ.



## ԼԹ.



## ՅԱՒԵԼՈՒԱԾ



---

## ՆՈՅՆ ԹԱՐԳՄԱՆՉԻ

| | | | Ր. | Կ. |
|---|---|---|---|---|
| 1. | **ՇՄԻԴԹ**, | *Ֆրանկլին, 2 տիպ. սակաւաթիւ* | — | 40 |
| 2. | ——— | *Վաշինգտոն, 2 տիպ.* » | — | 60 |
| 3. | ——— | *Հոմերի Իլիականը, պատկերներով* | 1 | — |
| 4. | ——— | *Հոմերի Ոդիսականը,* » | 1 | 20 |
| 5. | ——— | *Ռէյնեկէ աղուէսը* | — | 60 |
| 6. | **ՍՄԱՅԼՍ**, | *Բնաւորութիւն* | 1 | 50 |
| 7. | ——— | *Ինքնօգնութիւն* | 1 | 50 |
| 8. | **ԱՄԻՉԻՍ**, | *Սիրտ* | 1 | — |
| 9. | ——— | *Ապէնիններից մինչեւ Անդերը* | — | 20 |
| 10. | **ՌՈՒՍՏԷՄ** | *եւ Զոհրաբ,* | — | 20 |
| 11. | **ՇԻԼԼԵՐ**, | *Աւազակներ, ողբերգութիւն* | — | 50 |
| 12. | **ՏՕԼՍՏՕՅ**, | *Ռոբինզօն, փոքր. համար* | — | 20 |
| 13. | ——— | *Կոլումբ, փոքրերի համար* | — | 15 |
| 14. | **ՀԱՅՁԷ**, | *Բէաթրիչէ, վէպիկ* | — | 30 |
| 15. | ——— | *Նօնցայի բերդը, վէպիկ* | — | 30 |
| 16. | **ՎԱԼԴՆԷՐ**, | *Հաւատարիմ Սավիտրին* *) | — | 10 |
| 17. | **ԻՐՎԻՆԳ**, | *Մահմէդի կեանքը* | 1 | 20 |

---

### Շուտով կը տպուէ՝

Չ. **ԴԻԿԿԷՆՍ**, *Դաւիդ Կոպպէրֆիլդ, երեք հատոր, անգլիերէնից։*

---

Վաճառվում են թարգմանչի մօտ՝ Тифлисъ, Садовая, Маріино-Анановское училище, և կենդրոնական գրավաճառանոցում։

---

*) Տպագր. Հրատար. Ընկեր.

## ՆՈՅՆ ԹԱՐԳՄԱՆՉԻ

—

| | | Ռ. |
|---|---|---|
| 1. | ՇՄԻԴԹ, Ֆրանկլին, 2 տիպ. տպաւոր. . . . | — |
| 2. | ——— Վաշինգտոն, 2 տիպ. » . . . . | — |
| 3. | ——— Հոմերի Իլիականը, պատկերներով. . | 1 |
| 4. | ——— Հոմերի Ոդիսականը, » . . | 1 |
| 5. | ——— Ռէյնեկէ աղուէսը. . . . . . . . . | — |
| 6. | ՍՄԱՅԼՍ, Բնաւորութիւն. . . . . . . . . . . | 1 5 |
| 7. | ——— Ինքնօգնութիւն . . . . . . . . . . | 1 5 |
| 8. | ԱՄԻՉԻՍ, Սիրտ . . . . . . . . . . . . . . | 1 — |
| 9. | ——— Ապէնիններից մինչև Անդերը . . . | — 2 |
| 10. | ՌՈՒՍՏԷՄ և Զոհրաբ, . . . . . . . . . . . | — 2 |
| 11. | ՇԻԼԼԷՐ, Աւազակներ, ողբերգութիւն. . . . . | — 5 |
| 12. | ՏՕԼՍՏՕՅ, Ռոբինզօն, փոքր. համար . . . . . | — 2 |
| 13. | ——— Կոլումբ, փոքրերի համար . . . . . | — 1 |
| 14. | ՀԷՅԶԷ, Բէաթրիչէ, վէպիկ. . . . . . . . . | — 30 |
| 15. | ——— Նօնցայի բերդը, վէպիկ . . . . . . | — 30 |
| 16. | ՎԱԼԴՆԷՐ, Հաւատարիմ Սավիտրին *) . . . . | — 10 |
| 17. | ԻՐՎԻՆԳ, Մահմէդի կեանքը . . . . . . . . | 1 20 |

---

### Շուտով կըտպուի

2\. ԴԻԿԿԷՆՍ, Դաւիդ Կոպպէրֆիլդ, երեք հատոր, անգլիերէնից։

---

Վաճառվում են Թարգմանչի մօտ՝ Тифлисъ, Садовая, Маріино-Анановское училище, և Կենտրոնական գրավաճառանոցում։

---

տպգր. ·Պ... *) Տպագր. Հրատար. Ընկեր.

